# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1696 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 24 ՅՈՒՆՈՒԱՐ 2013 — ՀԱՏԸ ՉԵՌՔԷ 75 Ե. Դհկ. — عدد رقم ١٦٩٦ الخميس ٢٤ يناير ٢٠١٣


ՀԱՅԱՍՏԱՆ

## Է. ՆԱԼՊԱՆՏԵԱՆ «ԱՏՐՊԷՅՃԱՆ ԱՆԴԱԴԱՐ ԿԸ ՔԱՂԱՔԱԿԱՆԱՑՆԷ ՍՏԵՓԱՆԱԿԵՐՏԻ ՕԴԱԿԱՅԱՆԻ ՀԱՐՑԸ»




Լրագրողներուն հետ ունեցած հանդիպումին ընթացքին Հայաստանի արտաքին գործոց նախարար Էտուարտ Նալպանտեան յայտնած է, «Ատրպէյճան անդադար աղմկում է եւ փորձում է քաղաքականացնել Ստեփանակերտի օդանաւակայանի բացման հարցը»: Անոր համաձայն, թէեւ ԵԱՀԿ Մինսքի եռանախագահները բազմիցս կոչ ուղղած են հարցը չքաղաքականացնելու, բայց եւ այնպէս Ատրպէյճան կը շարունակէ այդ մէկը ընել: «Ատրպէյճանական կողմը խօսք է տուել, պարտաւորութիւն է վերցրել եռանախագահների հետ հանդիպման ժամանակ զերծ մնալ ուժի գործադրումից եւ դրա սպառնալիքից քաղաքացիական ինքնաթիռների դէմ, սակայն, չնայած դրան, ատրպէյճանական ղեկավարութիւնը

⇨ 4

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉԸ ՍԱՍՏԻԿ ԴԺԳՈՀ Է ԵԱՀԿ ԴԻՏՈՐԴՆԵՐՈՒ ՔՆՆԱԴԱՏՈՒԹԻՒՆՆԵՐԷՆ

Եւրոպական Խորհուրդի Խորհրդարանական Վեհաժողովի (ԵԽԽՎ) Հայաստանի պատուիրակութեան ղեկավար Դաւիթ Յարութիւնեան քննադատեց ԵԽԽՎ-ի դիտորդներու յայտարարութիւնները Հայաստանի նախընտրական իրավիճակի վերաբերեալ՝ պնդելով, թէ «ցնցուած է դրանց ձեւից եւ բովանդակութիւնից»:

Վեհաժողովի դիտորդական առաքելութիւնը Երեւանի մէջ մամլոյ ասուլիս հրաւիրած էր, մտահոգութիւն յայտնելով շարք մը խնդիրներու շուրջ, նախ եւ առաջ՝ ընտրացուցակներու շարունակական եւ էական անճշդութիւններու վերաբերեալ՝ ընդգծելով, որ ճշգրիտ ցուցակները որեւէ պատշաճ ընտրութեան համար նախապայման են:

Արձագանքելով այս գնահատականին, Դաւիթ Յարութիւնեան պնդեց, թէ այդ կազմուած է նախօրօք, մինչեւ իսկ պատուիրակութեան հանդիպումը ընտրացուցակներու մշակման համար պատասխանատու հիմնական կառոյցի՝ Ոստիկանութեան հետ, եւ արտատպուած՝ 2012-ի խորհրդարանական ընտրութիւններու վերաբերեալ Պարոնուհի Նիքըլսընի պատուիրակութեան զեկոյցէն:

«Քանի որ մենք այդ զեկոյցում տեղ գտած պնդումները համարում էինք կեղծ, իսկ Հայաստանի իշխանութիւնների բերած ողջամիտ փաստարկները՝ անտեսուած, ուստի հրաւիրեցինք ԵԽԽՎ-ին խորհրդարանական ընտրութիւններից յետոյ յետընտրական առաքելութիւն իրականացնել՝ ցուցակների ճշգրտութիւնը ստուգելու համար: Ցաւօք, սակայն, կազմակերպութիւնը չընդունեց մեր հրաւէրը եւ փոխարէնը որոշեց շարունակել նոյն ճանապարհը՝ անհիմն ու կեղծ մեղադրանքները ընտրացուցակների վերաբերեալ», - յայտարարեց Հայաստանի պատուիրակութեան ղեկավարը:

Եւրոպական կառոյցին յղած նամակին մէջ, իշխող Հանրապետական կուսակցութեան ներկայացուցիչը անգամ մը եւս կը պնդէ, թէ Հայաստանի իշխանութիւնները ըրած են առաւելագոյնը՝ ընտրացուցակներու մէջ եղած անճշդութիւնները վերացնելու համար:

Հայաստանեան պատուիրակութեան ղեկավարը անհիմն որակեց նաեւ ԵԽԽՎ-ի դիտորդական առաքելութեան միւս

⇨ 2

## ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆ.- «ԺԱՄԱՆԱԿՆ Է ՀԱՅԱՍՏԱՆ-ԹՈՒՐՔԻԱ ԳՈՐԾԸՆԹԱՑՈՒՄ ԱՆՑՆԵԼ ԳՈՐԾՈՂՈՒԹԻՒՆՆԵՐԻ»

Թուրքիոյ երկակի պահուածքը, այս կամ այն հանգրուանին նոր նախապայմաններու առաջադրումը, այս կամ այն իրավիճակը անհիմն ձեւով ըստ սեփական ցանկութեան մեկնաբանումը յանգեցուցին հոն, որ գործընթացը փաստօրէն սառեցուած է, յայտարարած է Հայաստանի նախագահ Սերժ Սարգսեան, «Անդին» ամսագրին տրուած հարցազրոյցի մը ընթացքին՝ ներկայացնելով հայ-թրքական յարաբերութիւններու վիճակը:

«Մենք Թուրքիայի հետ գործընթացը նախաձեռնեցինք շատ անկեղծ նպատակով՝ տարածաշրջանում հասնելու բարիդրացիութեան, անվտանգութեան եւ համագործակցութեան նոր մակարդակի: Ասել, թէ այնքան միամիտ էինք, որ կարծում էինք՝ դա հեշտ է լինելու, շատ սխալ կը լինի: Այսօր կարելի է գնահատել գործընթացի արդիւնքը. Թուրքիայի երկակի պահուածքը, այս կամ այն փուլում նոր նախապայմանների առաջադրումը, այս կամ այն իրավիճակն անհիմն ձեւով ըստ սեփական ցանկութեան մեկնաբանումը յանգեցրին նրան, որ գործընթացը փաստացիօրէն սառեցուած է: Եւ այսօր կարելի է արձանագրել հետեւեալը. նման զարգացումը մեզ համար, որքան էլ ցաւալի լինէր, անակնկալ չէր, իսկ ողջ միջազգային հանրութիւնը առնուազն իր համար արձանագրեց Թուրքիայի իրական դէմքը, եւ համոզուած եմ, որ այն բոլոր մտահոգութիւնները, որոնք մենք ունեցել ենք եւ ունենք Թուրքիայի առնչութեամբ, ներկայում արդէն ընկալելի են նաեւ մեր միջազգային գործընկերների համար: Թուրքիայի հետ այս ողջ գործընթացը մեզ հնարաւորութիւն տուեց սփիւռքի մեր հայրենակիցների եւ մեր սեփական հանրութեան հետ երկխօսութիւնը բարձրացնել մի նոր ու խոստումնալից մակարդակի: Մենք բոլորս ականատեսը եղանք քաղաքական նոր մշակոյթի դրսեւորման: Ի դէպ, ե՛ւ մեր հանրութիւնը, ե՛ւ ողջ աշխարհը համոզուեց նրանում, որ մեզ համար ամենաբարդ խնդիրներն անգամ, ամենայն անկեղծութեամբ, ներկայացուել են թէ՛ հանրութեանը, թէ՛ միջազգային գործընկերներին»:

⇨ 4

ԵՐՈՒՍԱՂԷՄ

## ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ ՍՈՒՐԲ ԱԹՈՌՈՅՍ ԼՈՒՍԱՐԱՐԱՊԵՏ ՆՈՒՐՀԱՆ ԱՐՔ. ՄԱՆՈՒԿԵԱՆ ԸՆՏՐՈՒԵՑԱՒ ՀԱՅ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ 97-ՐԴ ՊԱՏՐԻԱՐՔ

Սրբոց Յակոբեանց Ուխտի Միաբանական Ընդհանուր Ժողովը, գումարեց իր 22-րդ նիստը 24 Յունուար 2013-ին: Սրբոց Յակոբեանց Ուխտի միաբանութենէն երեսուն երեք հայրեր՝ Երուսաղէմէն եւ արտասահմանէն եկած էին ընտրելու երջանկայիշատակ Տ. Թորգոմ Արք. Մանուկեանի արժանաւոր յաջորդը:



Միաբանական Ընդհանուր Ժողովի նիստը բացաւ Պատրիարքական Տեղապահ՝ Գերշ. Տ. Արիս Արք. Շիրվանեան: Օրակարգի նիւթն էր՝ Հայ Երուսաղէմի Պատրիարքութեան արժանաւոր գահակալի ընտրութիւնը: 23 Յունուար 2013-ին, երեկոյեան ժամը 4:30-ին, Միաբանական Ընդհանուր Ժողովը պատրաստեց Պատրիարքական Ընտրութեան թեկնածուներու հնգանուն ցանկը: Թեկնածուներն էին, Պատրիարքական Տեղապահ՝ Գերշ. Տ. Արիս Արք. Շիրվանեան, սուրբ Աթոռոյս Լուսարարապետ՝ Գերշ. Տ. Նուրհան Արք. Մանուկեան, Տաթեւ Արք. Ղարիպեան, Սեւան Արք. Ղարիպեան եւ Գիսակ Արք. Մուրատեան:

24 Յունուար 2013-ին, առաւօտեան ժամը 10-ին, Պատրիարքական Տեղապահ՝ Գերշ. Տ. Արիս Արք. Շիրվանեան աղօթքով բացաւ Միաբանական Ընդհանուր Ժողովի երրորդ նիստը, որմէ յետոյ ժողովը անցաւ իր օրակարգին՝ ընտրելու հնգանուն

⇨ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՋՕՐԱԿՑՈՒԹԻՒՆ ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԻՆ



Հայաստանի նախագահական ընտրութիւններուն Ս.Դ. Հ.Կ.ի Հայաստանի շրջանի Վարիչ Մարմինը պիտի զօրակցի հանրապետութեան նախագահ Սերժ Սարգսեանի թեկնածութեան:

Կուսակցութեան Հայաստանի շրջանի Վարիչ Մարմինը վերջերս գումարեց ընդլայնուած նիստ, մէկ օրակարգով՝ Հայաստանի նախագահական ընտրութիւնները: Ժողովի համընդհանուր կարծիքները հաշուի առնելով, Հնչակեան Կուսակցութեան Հայաստանի ղեկավարութիւնը որոշեց սատար հանդիսանալ գործող նախագահի թեկնածութեան, նկատի առնելով անոր եւ կառավարութեան կողմէ իրականացուած որոշակի բարեփոխումները, փտածութեան դէմ պայքարը, մամլոյ ազատութեան բարձրացումը, ընդդիմադիրներու նկատմամբ հալածանքներու դադրեցումը, արտաքին քաղաքական ձեռքբերումները, նախընտրական ծրագրի ընկերային բնոյթը, Ցեղասպանութեան հարցին մէջ պահանջատիրական կեցուածքը եւ յայտարարութիւնները, Արցախի անվտանգութեան ապահովումը եւ շահերու համալիր պաշտպանութիւնը:

Հնչակեան Կուսակցութեան Հայաստանի շրջանի Վարիչ Մարմինը վերահաստատեց, որ Հայաստանի մէջ կը գործէ իբր քաղաքական ինքնուրոյն ուժ, չունի քաղաքական պայմանաւորուածութիւն եւ կը վերապահէ իշխանութիւնները քննադատելու իրաւունքը՝ քաղաքական հնարաւոր ոչ ճիշդ քայլերու պարագային: Կուսակցութիւնը նաեւ յոյս յայտնեց, որ Սարգսեան վերացնէ մենաշնորհները եւ պայքարի արտագաղթի պատճառներուն դէմ:

ԶԱՀԱԿԻՐ

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՍԵՒ ԾՈՎՈՒ ԵՒ ՊԱՐՍԻՑ ԾՈՑԻ ՆԱՒԱՀԱՆԳԻՍՏՆԵՐԸ ԿԱՊՈՂ ԱՄԵՆԱԿԱՐՃ ԵՐԿԱԹՈՒՂԻՆ ՊԻՏԻ ԱՆՑՆԻ ՀԱՅԱՍՏԱՆԷՆ

*Արաբական Միացեալ Էմիրութիւններուն մէջ արձանագրուած «Ռասիա ՖԶԷ» ընկերութիւնը պիտի փինանսաւորէ Հայաստանի հարաւային երկաթուղիի եւ Հայաստանի հարաւային արագընթաց ճանապարհի նախագծումը, կառուցումը եւ շահագործումը: «Հայաստանի հարաւային երկաթուղի» եւ «Հայաստանի հարաւային արագընթաց ճանապարհ» ծրագիրներուն մեկնարկը տրուեցաւ 18 Յունուարին՝ Հայաստանի փոխադրութեան եւ կապի նախարարութեան, «Ռասիա ՖԶԷ» ընկերութեան եւ «Հարաւկովկասեան երկաթուղիներ» ընկերութեան միջեւ ծրագիրներու ծիրին մէջ տարածաշրջանային համագործակցութեան մասին եռակողմանի փոխըմբռնման յուշագիրի ստորագրութեամբ: Ծրագիրներուն արժէքը 3 միլիառ տոլար է:*

*Հայաստանի փոխադրութեան եւ կապի նախարար Գագիկ Բեգլարեանի համաձայն, «արագընթաց ճանապարհը, որը սկսուելու է Մեղրիից եւ ձգուելու մինչեւ Գեղարքունիքի մարզի Գագարին գիւղ, տնտեսական մեծ նշանակութիւն կ'ունենայ Հայաստանի Հանրապետութեան համար: 18 ամսուայ ուսումնասիրութիւնից յետոյ պարզ կը լինի, թէ ինչ ժամանակահատուածում կ'աւարտեն ճանապարհի ամբողջական շինարարութիւնը: Երկաթուղու կառուցման տեխնիկական ուսումնասիրութիւնը սկսուել է ու կը տեւի 1.5 տարի, մէկ տարի էլ՝ ճանապարհի կառուցման տեխնիկական ուսումնասիրութիւնը»:*

*Ստորագրուած են Հայաստանի հարաւային արագընթաց ճանապարհի եւ Հայաստանի հարաւային երկաթուղիի վերաբերող համաձայնագիրներ, որոնց գործունէութեան ժամկէտը 30 տարի է՝ շինարարութեան աւարտէն ետք: «Ռասիա ՖԶԷ» ընկերութիւնը պարտաւոր է սեփական միջոցներով իրականացնել համաձայնագիրներով նախատեսուած նախագիծերու իրագործելիութեան ուսումնասիրութիւնը, որուն արդիւնքներուն հիման վրայ կը նախատեսուի հետագային պետութիւն-սեփական հատուած համագործակցութեամբ իրականացնել շինարարական աշխատանքները:*

## ՀԱՅԱՍՏԱՆ ԵՒՐԱԽՈՐՀՈՒՐԴԻՆ ՆԱԽԱԳԱՀՈՂ ԵՐԿԻՐ ՊԻՏԻ ԸԼԼԱՅ

*Հայաստանը այս տարուան Մայիսէն պիտի ըլլայ Եւրախորհուրդին մէջ նախագահող երկիր: 24 Յունուարին լրագրողներուն հետ ունեցած հանդիպումին ընթացքին Հայաստանի արտաքին գործոց նախարար Էդուարդ Նալբանդեան նշած է, որ ասիկա շատ պատուաւոր, բայց եւ այնպէս պատասխանատու առաքելութիւն է: «Մենք նախապատրաստում ենք այդ ժամանակաշրջանի մեր առաջնահերթութիւնները, համապատասխան ծրագիր է մշակւում, որը կը ներկայացուի Ապրիլին», յայտնած է արտաքին գործոց նախարարը աւելցնելով, որ Ապրիլին Հայաստան պիտի այցելէ Եւրախորհուրդի գլխաւոր քարտուղարը ծրագիրին ծանօթանալու նպատակով:*

*2013 Հայաստանը պիտի նախագահէ նաեւ Սեւծովեան տարածաշրջանային յանձնաժողովին մէջ: Էդուարդ Նալբանդեան յայտնած է, որ կը նախատեսուի, որ այս տարի Հայաստանի մէջ կայանայ «Արեւելեան գործընկերութիւն» ծրագիրին մասնակից երկիրներու արտաքին գործոց նախարարներու եւ ԵՄ ներկայացուցիչներու հանդիպումը:*

*2012 թուականին Հայաստան դիւանագիտական յարաբերութիւններ հաստատած է 4 պետութեան հետ: Արտաքին գործոց նախարարը կատարուած փոխայցելութիւնները արդիւնաւէտ նկատելով՝ մեծապէս գնահատած է ձեռք բերուած համաձայնութիւններն ու ստորագրուած հարիւր հինգ միջազգային համաձայնագիրներն ու միւս փաստաթուղթերը:*

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉԸ ՍԱՍՏԻԿ ԴԺԳՈՀ Է ԵԱՀԿ ԴԻՏՈՐԴՆԵՐՈՒ ՔՆՆԱԴԱՏՈՒԹԻՒՆՆԵՐԷՆ

1 ⇨

*...ղիտարկումը: Հակադարձելով ԵԽԽՎ-ի պատուիրակութեան ...այն կարծիքին, թէ անհրաժեշտ է վերականգնել քաղաքա...ցիներու վստահութիւնը, քանի որ ընտրութիւնները առանց...ային նշանակութիւն ունին ժողովրդավարական զարգացման համար, Դաւիթ Յարութիւնեան պնդեց, թէ նոյնիսկ իրենց՝ ...դիտորդներու յայտարարութիւնները կը պարունակեն «կեղծ ...մեղադրանքներ եւ ընտրութիւններ արդար անցկացման եւ ...նոյթի հետ կապուած չափազանցուած մտահոգութիւններ, ...ինչը ազդում է հանրութեան վստահութեան եւ հետաքրքրութեան վրայ՝ դրանով իսկ խափանելով Հայաստանում ժողովրդավարական գործընթացները»:*

## ՅԱՐՈՒԹ ՍԱՍՈՒՆԵԱՆ ՈՒՂԵՂԱՅԻՆ ԱՐԻՒՆԱՀՈՍՈՒԹԻՒՆ ՄԸ ՈՒՆԵՑԱԾ Է



*Ցաւով տեղեկացանք, թէ ազգային ծանօթ գործիչ, «Գալիֆորնիա Գուրիըր» թերթի խմբագրապետ Յարութ Սասունեան (63 տարեկան), անցեալ շաբաթ ունեցած է ուղղային արիւնահոսութիւն մը:*

*Հիւանդանոցէն դուրս եկած է, բայց ներկայիս աջ ոտքը անդամալոյծ է: Արագ ապաքինում կը մաղթենք իրեն:*

## ԳՈՀԱՐԵՂԷՆԻ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ԱՐՏԱԴՐՈՒԹԵԱՆ 6-ԷՆ 8%-Ը Կ'ԱՊԱՀՈՎԵՆ ՀԱՅ ՈՍԿԵՐԻՉՆԵՐԸ

*Երեւանի մէջ գումարուած «Հայ ոսկերչութեան զարգացման հեռանկարները» համագումարին ունեցած իր ելոյթին, Հայ ոսկերիչներու ընկերակցութեան (AJA) նախագահ Գէորգեան ըսած է, թէ հայ վարպետները կ'ապահովեն գոհարեղէնի համաշխարհային արտադրութեան 6-էն 8%-ը:*

⇨ 4

## ՀԵՐՄԻՆԷ ՆԱՂԴԱԼԵԱՆ ԵՒՐՈՊԱԿԱՆ ԽՈՐՀՈՒՐԴԻ ԽՈՐՀՐԴԱՐԱՆԱԿԱՆ ՎԵՀԱԺՈՂՈՎԻ ՊԱՏՈՒԱՒՈՐ ԱՆԴԱՄ



*Եւրոպական խորհուրդի խորհրդարանական վեհաժողովի նախագահ Ժան Քլոտ Մինիոն որոշում տուաւ Հայաստանի Ազգային ժողովի փոխնախագահ Հերմինէ Նաղդալեանին վեհաժողովի պատուաւոր անդամի կոչում շնորհելու մասին:*

*Ազգային ժողովի հաղորդագրութեան համաձայն, երկուշաբթի օրը կայացած պարգեւատրման հանդիսաւոր արարողութեան ներկայ էին Եւրոպական խորհուրդի խորհրդարանական վեհաժողովի անդամներ, յանձնախումբերու եւ պատուիրակութիւններու նախագահներ:*

⇨ 4

## ՓԱՐԻԶԻ ՄԷՋ ԱՆԱՐԳԱԲԱՐ ՍՊԱՆՆՈՒԱԾ՝ ՏԵՐՍԻՄԻ ՀԱՅԱԶԳԻ ՀԵՐՈՍՈՒՀԻ ՍԱՔԻՆԷ ՃԱՆՍԸԶԻ ԵՒ ՆԱՀԱՏԱԿ ԸՆԿԵՐՈՒՀԻՆԵՐՈՒՆ ԱՆՄԱՐ ՅԻՇԱՏԱԿԻՆ...



*Աւելի քան մէկ միլիոն գաղափարակիցներ եւ ազատութեան մարտիկներ, սգակիրներ եւ ընդվզած Թուրքիոյ քաղաքացիներ, ընկերակցեցան Տերսիմի հայազգի հերոսուհի, Քրտական աշխատաւորական կուսակցութեան հիմնադիրներէն՝ Սաքինէ Ճանսըզի, Ֆիտան Տողանի, Լէյլա Կէօյլէմիզի Փ.Ք.Ք-ի դրօշներով պարուրուած դագաղներուն՝ նմանը չտեսնուած յուղարկաւորութեան մը, Տիարպեքիրի մէջ:*

*Օրեր առաջ, Փարիզի իրենց կեդրոնատեղիին մօտակայքը սպաննուած ազատութեան եւ անկախութեան քաջարի մարտիկներուն անարգ մահը՝ յեղափոխական վերածնունդի նոր ալիք մը բարձրացուց բազմաթիւ կոտորածներու եւ ցեղասպանութիւններու վրայ իր պատմութիւնը «կերտած» Թուրքիոյ մէջ: Անգարան, խաբէութեամբ եւ միջազգային դաւերով ձեռք ձգած Օճալան-Աբոյին հետ կը նախապատրաստուէր իբր թէ «հաշտութեան» բանակցութիւններ սկսիլ, փաստօրէն անկարող ըլլալով յաղթել ժողովուրդի մը, որ ազատութիւնը աւելի վեր դասած է քան թէ ստրկութիւնն ու մահը:*

*Այդ պայքարը ղեկավարուած է նաեւ կրօնափոխ ու «գաղտնի» բազմաթիւ հայերու կողմէ, որոնք Ճանսըզի նման 1915 թուի հայոց ցեղասպանութեան եւ 1938 թուի Տերսիմի կոտորած ցեղասպանութեան վերապրողներու շառաւիղներէն էին: Քրտացած, Ալաուի կամ Քրմանճ, Սիւննի թէ Քըլպաշ, զէնն ի ձեռին, դարձած էին Փ.Ք.Ք.-ի մարտիկները, այսպիսով իրենց վրէժը լուծելով իրենց հայրերուն եւ նախահայրերուն դէմ գործուած ահաւոր ոճիրներուն հանդէպ: Իմրէլիի բանտին մէջ ահաւոր տանջանքներու եւ նուաստման ենթարկուած Աբօն անցեալին հրահանգած էր քրտական յանցագործ ցեղախումբերու անդամներուն՝ ծնկաչոք ներողութիւն խնդրել հայերէն՝ իրենց հանդէպ գործուած ոճիրներուն համար...:*

*Սուրիոյ մէջ գտնուած միջոցին Օճալան բազմիցս այցելած է հայկական ակումբներ, հանդիպելով իրենց պապենական հողերէն տարագրուած հայրենակիցներուն:*

*Անգարայի աղուէս վարիչներն ու «Միթ»ի գործակալները երեւի պահ մը մոռցան, թէ ինչպիսի անդրադարձ ունեցաւ «խաղաղութեան աղաւնի» Հրանդ Տինքի սպանութիւնը, երբ հազարներ փողոց իջան Պոլսոյ մէջ եւ այլուր՝ «Մենք բոլորս հայ ենք, Հրանդ Տինք ենք» գոռալով: Իսկ Յունուար 17-ին, Տիարպեքիրի մէջ տեղի ունեցած միլիոննոց յուղարկաւորութիւն ցոյցը՝ Թուրքիոյ ոճրագործ ղեկավարութեան կ'ազդարարէր, թէ անպատիժ սպանութիւններու եւ կոտորածներու ժամանակը վաղուց անցած է ու երկիրը նստած է եռացող հրաբուխի մը վրայ:*

*Հողը տերսիմեան թեթեւ գայ վրադ խիզախ հայուհի Սաքինէ Ճանսըզ, եւ քու նահատակ ընկերուհիներուդ հետ վերեւէն տեսնես ազատութեան յաղթանակը բռնատիրութեանց երկրին մէջ:*

ՀԱՄՕ ՄՈՍԿՈՖԵԱՆ

## ՊԱՔՈՒ ՄՏԱՀՈԳՈՒԱԾ Է ՂԱՐԱԲԱՂԻ ՄԷՋ ՍՈՒՐԻԱՀԱՅԵՐՈՒ ԲՆԱԿԵՑՄԱՆ ՀԱՐՑՈՎ

*Ատրպէյճանի արտաքին գործոց նախարար Էլմար Մամետիարով յայտարարած է որ, պաշտօնական Պաքուն մտահոգուած է եւ ուշադրութիւն կը դարձնէ Ղարաբաղի մէջ սուրիահայերու բնակեցման հարցին:*

*«Մենք այս հարցը բարձրացուցած ենք նաեւ ԵԱՀԿ-ի Մինսքի խումբին մօտ եւ ընդգծած ենք, որ այս անօրինական քայլ է: Վերաբնակուողներու թիւը կրնայ մեծ չըլլալ, բայց, ամէն պարագային, մենք ուշադրութիւն կը դարձնենք այս հարցին», ըսած է ազերի նախարարը:*

*Մամետիարով անդրադարձած է նաեւ Ստեփանակերտի օդանաւակայանի հարցին եւ պնդած է, թէ Պաքուն դէմ չէ օդանաւակայանի վերագործարկման, եթէ այդ դառնայ խաղաղութեան համաձայնագրի կէտերէն մէկը:*

*«Օդանաւակայանը ինքնին խնդիրներ չի ստեղծեր, այն կրնայ օգտագործուիլ մարդասիրական նպատակներով, սակայն այս ամէնը պէտք է կարգաւորուի խաղաղութեան մեծ փաստաթուղթի շրջագիծէն ներս», ըսած է Մամետիարով:*

*Սուրիահայերու հարցի կապակցութեամբ, Լեռնային Ղարաբաղի նախագահի խօսնակ Դաւիթ Պապայեան «Պլումպըրկ» լրատուական գործակալութեան յայտնած է, որ սուրիահայերը նախ եւ առաջ փախստական են, եւ անոնց ապաստան ու օգնութիւն տրամադրելը քաղաքակիրթ որեւէ պետութեան պարտքն է:*

# «ԱՐԱՖԱԹ. ԱՐԱՐԱՏ»

ԱՒԵՏԻՍ ՌԱԶՄԻԿ

*1973 թուական: Արաբ-իսրայէլեան հակամարտութեան ամենաթէժ տարիներէն մին:*

Հերթական պատերազմը արաբներու եւ Իսրայէլի միջեւ: Սուրիա եւ Եգիպտոս արձանագրած են մասնակի յաջողութիւն, որոշ չափով ամոքելով իրենց 1967-ի անփառունակ պարտութիւնը եւ մասամբ մըն ալ բարձրացուցած իրենց բարոյականն ու հայրենասիրական տրամադրութիւնները:

Միջին Արեւելքը կ'եռայ. առանցքային օրակարգը պաղեստինեան հարցն է. ռազմաքաղաքական եռեւեփուն կեանքին հիմնական նիւթը Պաղեստինի ազատագրական շարժումն է՝ իր մարտական գործողութիւններով, Արեւմուտքի եւ Իսրայէլի համար՝ ահաբեկչական արարքներով, արաբներու համար՝ ոգեւորիչ եւ օրինակելի սխրանքներով: Օրուան ամենաշատ հոլովուած անունը Արաֆաթն է, որ սկսած էր փայլիլ, որպէս ազատագրական պայքարի խորհրդանիշ ու մարտիկ. շրջանառութեան մէջ էր «ֆետայի» բառը, ակնարկելով այն պաղեստինցիներուն, որոնք անձնուիրական գործողութիւններով լարուած կը պահէին սիոնական պետութիւնը: Խանդավառ էր արաբական աշխարհը եւ կիրքերը իրենց բարձրակէտին՝ Պաղեստինը ազատագրուած տեսնելու յոյսով:

1973-ին, օր մը, տունը նստած, յանկարծ լսեցինք ինքնաշարժերու ճչակներ, շեփորներ՝ կ'ազդարարէին ինչ որ ցնծութեան ու յաղթանակի աւետիս մը. հարիւրաւոր ինքնաշարժերու շարասիւնը կը պտըտէր փողոցէ փողոց, թաղէ թաղ՝ խելայեղ վանկարկումներով, ցնծագին մոլեգնումով եւ անասելի բերկրանքով: Պատըշգամբ վազեցինք եւ փորձեցինք հասկնալ այս եռանդագին աղմուկին պատճառը, եթէ ոչ խնդակից ըլլալու, ապա գոնէ իրազեկ դառնալու յաղթական եղելութեան: Ինքնաշարժերէն վանկերով կը կրկնէին ինչ որ անուն մը՝ հետեւեալ յանգաւորումով՝ «Ա...ա...աթ», «Ա...ա...աթ». անհասկնալի էր անունը, չփոթի մատնող: Մեր դրացին, ելլելով օրուան ռազմա-քաղաքական իրավիճակէն եւ արաբ-իսրայէլեան 1973-ի պատերազմի արդիւնքէն, ենթադրեց որ ամբոխը կը վանկարկէ՝ «Արաֆա'թ», «Արաֆա'թ». - Երեւի արաբներուն յաղթանակը կը տօնեն այս պաղեստինցիները. ազատում չկայ ասոնցմէ:

Քիչ ետք աւելի սրեցինք մեր լսողութիւնը. ուզեցինք ճշգրիտ իմանալ պատահարը, հասկնալ ամբոխին գերերջանկութիւնը:

Ի՜նչ պարզուի. հայեր են. կը պոռան «Արարա'տ», «Արարա'տ». այդ օր Երեւանի «Արարատ» ֆութպոլի խումբը դարձեր է Խորհրդային Միութեան ախոյեան: Հայեր կը տօնախմբէին հայկական մարզական ակումբին նուաճումը, համազգային յաղթանակի մը իրագործումը:

Արաբական աշխարհի օրուան հերոսները ֆետայիներն էին, արաբական զօրքերը՝ Իսրայէլը վտանգող. իսկ մեր հերոսները՝ Զանազանեանը, Մարգարովը, Անդրէասեանը, Իշտոյեանը, Կաւալենկօն, Պոկտարենկօն. արաբները՝ իրենց տարտով, իսկ մենք Լիբանան ապրելով՝ մեր տարտով: Հակառակ արաբական միջավայրի մէջ մեր ապրելուն, ունէինք մեր առաջնահերթութիւնները՝ Հայաստանը, «Արարատ»ը, ֆութպոլի յաղթանակը: Երեւի այդ օրերուն, ֆիզիքապէս հոս բնակելով, ապրումներով եւ զգացումներով, բարոյական ոգիով կ'ապրէինք հայրենիքի իրադարձութիւններով. հաւանաբար, այդ օրերուն աւելի հայեր էինք, քան՝ լիբանանցիներ. աւելի լիբանանահայեր էինք, քան՝ «լիբանանցի՝ ծագումով հայեր»: Մեզի համար՝ նախ Արարատը. ապա՝ ուրիշ բան:

Բայց ի՞նչ առնչութիւն կայ Արաֆաթի եւ Արարատի միջեւ՝ բացի անուան նմանութենէն, որ մեզի մատնած էր շփոթի:





Երկուքն ալ լերան անուններ են: Ժողովուրդներ եւ կրօններ լեռները վերածած են սրբազան խորհրդանիշի, ինչպէս՝ Աթոսը (յոյներուն), Փենտատախթիլօն (կիպրացիներուն), Սիոնը (հրեաներուն), Արարատը (հայերուն), իսկ Արաֆաթը՝ իսլամներուն, Մեքքա սուրբ քաղաքին մօտ գտնուող, ուր ճգնած է Մուհամմէտ մարգարէն:

Այս նմանութիւնը միայն մեզի չփոթած չէր:

Արդարեւ, գրասեղանիս վրայ է 2006-ին Լոնտոն հրատարակուած Kevin Burns-ի «Eastern Philosophy» փիլիսոփայական հատորը, ուր «Իսլամական Փիլիսոփայութիւն» բաժինին մէջ (էջ 85) կայ լուսանկար մը. հոն իսլամ հաւատացեալ մը, Մեքքայի մէջ, ձեռքերը կարկառած դէպի երկինք՝ կ'աղօթէ. լուսանկարին տակ գրուած է. «The city of pilgrims' tents at the foot of Mount Ararat can be seen in the background». ուրեմն, օտարներն ալ Արաֆաթը վերածած են Արարատի...:

Միւս կողմէ, Եասէր Արաֆաթ որպէս ՖԱԹԱՀ կազմակերպութեան ղեկավար, Պաղեստինի ազատագրութեան պայքարի առաջնորդ, կը դառնար 20-րդ դարու պատմութեան կերտիչներէն եւ խորհրդանիշ մը ազատութեան իրաւունքի, ինչպէս որ Արարատը՝ հայկական ազատութեան եւ անկախութեան պայքարին: Ահա այլ նմանութիւն մը եւս:

«Կեանքի կարուսել»ը ի՞նչ վերապահած էր Արաֆաթին (Ապու Ամմար) եւ Արարատին:

Առաջինը՝ տասնամեակներ թափառական ապրելէ (Գահիրէ, Քուէյթ, Ամման, Պէյրութ, Դամասկոս, Թրիփոլի, Թունուզ, Ալճերիա) ետք, ԱՄՆ-ի եւ Արեւմուտքի կողմէ «տեռորիստ» պիտակաւորուելէ յետոյ, Իսրայէլի թիւ մէկ թշնամի համարուելէ ետք, 1993 Սեպտեմբեր 13-ին Ուաշինկթընի մէջ համաձայնութեան եկաւ Իսրայէլի հետ՝ ԱՄՆ-ի հովանաւորութեամբ: Երէկի հալածական «տեռորիստ»ը 1996-ին վերադարձաւ Պաղեստինի ինքնավար շրջան. ընտրուեցաւ անոր նախագահը. ահաբեկչական արտաքին արարքներէն Պաղեստինի պայքարը փոխադրեց հայրենի հողին վրայ. յաչս աշխարհին ընդունուեցաւ որպէս Պաղեստինի պաշտօնական եւ ընդունուած ղեկավարը. ՄԱԿ-էն ունեցաւ խիզախ եւ յանդուգն ելոյթներ՝ ատրճանակը մէջքին: Աւելին, 1964-էն սկսած պաղեստինեան զինեալ պայքարը, տասնամեակներու կատաղի եւ արիւնալի մաքառումներէ ետք, հազարաւոր նահատակներու զոհաբերութենէն յետոյ, 29 Նոյեմբեր 2012-ին ՄԱԿ-ի կողմէ Պաղեստինին տրուեցաւ դիտորդ պետութեան կարգավիճակ: Յետ-մահու Արաֆաթ հասած էր իր նպատակին. անոր հերոսական կեանքը պսակուած էր յաղթանակով:

«Կեանքի կարուսել»ը բարեհաճ եւ արդար գտնուած էր Արաֆաթին նկատմամբ:

Իսկ Արարա՞տը... տակաւին կը մնայ չղթայուած. ան կը մնայ գերի՝ իր որդիներուն կարօտով:

«Պիտի հանինք սրբազան լեռ կատարից...»

«Հո՛ն, Արարատի փէշերուն պիտի զարնենք մեր վրանները...»

↳ 4

# «ԵՒՐՈՏԵՍԻԼ 2013»ԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԸ ՊԻՏԻ ՆԵՐԿԱՅԱՑՆԷ ԳՈՌ ՍՈՒՋԵԱՆԸ



Հայաստանի հանրային պատկերասփիւռի կայանէն աղբիւրներ հաղորդած են, որ «Եւրոտեսիլ 2013»ի մրցումին Հայաստանը պիտի ներկայացնէ ռոք երգիչ Գոռ Սուջեանը:

Յառաջիկային այս մասին արդէն պաշտօնական հաղորդագրութիւն պիտի հրատարակուի: Եւրոտեսիլի մէջ Հայաստանեան պատուիրակութեան ղեկավար Գոհար Գասպարեանը «Թերթ»ին հետ ունեցած զրոյցին ընթացքին ո՛չ հերքեց, ո՛չ հաստատեց այդ տեղեկատուութիւնը, այնուամենայնիւ, խոստանալով այդ մասին ճշգրիտ ու հաստատ տեղեկութիւն ունենալու պարագային փոխանցում կատարել:

Միւս կողմէ, Գոռ Սուջեան «Թերթ»ին հետ զրուցելով յայտնած է, որ տակաւին յստակ չէ մասնակցութեան պարագան, սակայն շուտով ամէն ինչ յստակ կը դառնայ:

Նշենք, որ նախապէս խօսուած էր նաեւ Սիրուշոյի մասնակցութեան կարելիութեան մասին, որուն անդրադարձած էր նաեւ Եւրոտեսիլի պաշտօնական կայքէջը Eurovision.tv-ն:

Խումբը 2012-ի Եւրոտեսիլին համար պատրաստած էր This is Our World երգը, սակայն Հայաստան չմասնակցեցաւ Պաքուի մէջ կայացած այդ մրցումին:

Նշենք նաեւ, որ Գոռ Սուջեանը վերջերս «Մենք ենք մեր հայերը» յայտագիրը ամանորեայ յատուկ ծրագիրին ընթացքին յայտարարած էր, թէ «Դորիանս» խումբի պառակտման մասին լուրերը չեն համապատասխաներ իրականութեան, իրենք պարզապէս ժամանակաւոր դադար առած են:

# ԵԱՆՆԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ ԵԼՈՅԹ ՊԻՏԻ ՈՒՆԵՆԱՅ




Աշխարհահռչակ երգահան Եաննիի հայաստանեան համերգը Երեւանի Կարէն Տէմիրճեանի անուան մարզահամերգային համալիրին մէջ տեղի պիտի ունենայ 20 եւ 21 Ապրիլին:

Եաննին Հայաստանի մէջ հանդէս պիտի գայ ինչպէս հին եւ սիրուած, այնպէս ալ նոր եւ հետաքրքրական ստեղծագործութիւններով: Համերգին պիտի մասնակցի նաեւ ջութակահար Սամուէլ Երմինեան:

Նախագիծին մէջ կայ նաեւ Հայաստանի մէջ Սթինկի եւ Մարք Անթոնիի համերգներու կազմակերպումը, որուն վերաբերեալ արտադրիչը ոչինչ ըսած է, քանի որ այդ մէկը դեռ նախագծային փուլին մէջ է:

# ԱՐԱՄ ԽԱՉԱՏՐԵԱՆԻ ՅՈԲԵԼԵԱՆ ՊԻՏԻ ՆՇՈՒԻ ԱՇԽԱՐՀԻ ՏԱՐԲԵՐ ՔԱՂԱՔՆԵՐՈՒ ՄԷՋ



Բազմազան հանդիսութիւններով այս տարի պիտի նշուի հանրածանօթ հայ երաժշտահան, 20-րդ դարու երաժշտարուեստի մեծագոյն ներկայացուցիչ Արամ Խաչատրեանի 110-ամեայ յոբելեանը: Այս մասին յայտնած է Հայաստանի մշակոյթի նախարար Յասմիկ Պօղոսեան:

Յոբելենական տարին հնարաւորութիւն պիտի տայ ոչ միայն անգամ մը եւս յիշելու, հնչեցնելու խաչատրըրեանական ժառանգութեան լաւագոյն նմոյշները, այլ նաեւ անոր ստեղծագործութիւններուն միջոցով հանրահռչակելու հայկական մշակոյթը: Յոբելեանները, նախարարին խօսքով, լաւ առիթ են ամբողջ ազգով կեդրոնանալու ռեւէ անհատի թողած ժառանգութեան վրայ: «Մենք կ'օգտուինք իւրաքանչիւր առիթէ, հնարաւորութենէ, որ առաւելագոյն կերպով օգտակար է հասարակական, բարոյական եւ հոգեւոր մթնոլորտի ձեւաւորման համար», նշած է նախարարը:

Տարուան ընթացքին Արամ Խաչատրեանին նուիրուած ձեռնարկները պիտի ըլլան բազմաթիւ եւ բազմատեսակ. մշակուած է նաեւ յատուկ ձեւաչափ: Կը նախատեսուի երաժշտահանի ծննդեան օրը՝ 6 Յունիսին, աշխարհի բոլոր հնարաւոր երկիրներու եւ քաղաքներու մէջ կազմակերպել յոբելենական համերգներ, ուր պիտի հնչէ Արամ Խաչատրեանի երաժշտութիւնը:

↳ 4

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## ԱՐԱՄ ԽԱՉԱՏՐԵԱՆԻ ՅՈԲԵԼԵԱՆ ՊԻՏԻ ՆՇՈՒԻ ԱՇԽԱՐՀԻ ՏԱՐԲԵՐ ՔԱՂԱՔՆԵՐՈՒ ՄԷՋ

3

*Թէեւ Խաչատրեան մեծ ճանաչում ունի Հայաստանէն դուրս, այնուամենայնիւ, ըստ նախարար Պօղոսեանի, յատկապէս կը կատարուին առանձին պալէտներէ հատուածներ, իսկ շատ արժանաւոր համանուագները եւ համերգները կը մնան ստուերի մէջ:*

*Արամ Խաչատրեանի տուն-թանգարանի տնօրէն Արմինէ Գրիգորեան նոյնպէս վստահ է, որ խւրաքանչիւր երաժշտահան կարիք ունի հանրահռչակման: «Այդ խնդիրը ունի նաեւ Արամ Խաչատրեանը, եւ մենք պէտք է ընենք ամէն հնարաւոր բան, որ յարաւորին չափ շատ ներկայացուի անոր թողած ժառանգութիւնը: Բնականաբար թանգարանը իր մեծ ներդրումը ունի այդ հարցին մէջ», ըսած է ան:*

*Թանգարանին մէջ տարուան ընթացքին տեղի պիտի ունենան երաժշտական տարբեր երեկոներ՝ կապուած յոբելենական տարուան հետ: Հրաւիրուած տեսաբաններու մասնակցութեամբ պիտի իրականացուի գիտաժողով: Լոյս պիտի տեսնէ լուսանկարչական ալպոմ՝ թանգարանի արխիւային նիւթերէն:*

*Տպագրութեան կը պատրաստուի «Խաչատրեանը Ժամանակակիցներու Յուշերուն Մէջ» առաջին հատորը:*

*Տարին աչխոյժ պիտի ըլլայ նաեւ «Արամ Խաչատրեան» եռեակին համար: Յոբելենական առաջին համերգը պիտի կայանայ Մարտին՝ Զինաստանի մէջ, որուն պիտի յաջորդեն չարք մը համերգներ Մերձաւոր Պալթեան երկիրներու մէջ:*

## «ԱՐԱՖԱԹ. ԱՐԱՐԱՏ»

3

*«Աշխարհ անցիր, Արարատի նման ճերմակ գագաթ չկայ...»*

*Նոյնիսկ, Արարատը դարձած է խորհրդանիշ ու կանչ հայոց ազգահաւաքման, քանի 1980ականներուն Հայաստանի ազատագրութեան գաղափարախօսութիւնը ոմանք կ'առաջարկէին կոչել Արարատիզմ (Սիոն լեռ, սիոնիզմ):*

*1973-ին Եասէր Արաֆաթ արաբական աշխարհին հերոսն էր, պաղեստինցիներուն կուռքը. մենք՝ 1973-ին «Արարատ» փութպոլի խումբին նուաճած բաժակով արբեցած. իսկ արդեօք ե՞րբ եւ ո՞ր հայ սերունդը ազատագրուած Արարատ լերան չուրջ պիտի պարէ խոստացուած քոչարին...: «Կեանքի կարուսել»ը ի՞նչ ճակատագիր վերապահած է արդեօք ազատատենչ Արարատին:*

*Կը սպասենք:*

## ՍՈՒՐԲ ԱԹՈՌՈՅՍ ԼՈՒՍԱՐԱՐԱՊԵՏ ՆՈՒՐՀԱՆ ԱՐՔ. ՄԱՆՈՒԿԵԱՆ ԸՆՏՐՈՒԵՑԱՒ ՀԱՅ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ 97-ՐԴ ՊԱՏՐԻԱՐՔ

1

*ցանկէն արժանաւորը՝ բազմելու Սրբոց Յակոբեանց Պատրիարքական գահին վրայ: Գաղտնի քուէարկութեամբ կատարուեցաւ Պատրիարքական թեկնածուի ընտրութիւնը: Քուէներու բացարձակ մեծամասնութեամբ՝ ընտրուեցաւ Գերչ. Տ. Նուրհան Արք. Մանուկեան որպէս 97-րդ Պատրիարք:*

*Ընտրութենէն անմիջապէս ետք, նորընտիր Պատրիարքը իր շնորհակալական խօսքն ըրաւ միաբան հայրերուն, որմէ յետոյ երգուեցաւ «Սիոնի» Օրհներգը: Սրբոց Յակոբեանց Մայր Տաճարի զանգակները ղօղանջեցին ընտրութեան լուրը: Միաբան հայրեր՝ շնորհաւորեցին նորընտիր Պատրիարքը ու թափօր կազմելով առաջնորդուեցան դէպի Սրբոց Յակոբեանց մայր Տաճար: Գլխադիրի մատրան առաջ, նորընտիր Պատրիարքը կատարեց իր ուխտը եւ տուաւ իր առաջին Օրհնութիւնն ու պատգամը որպէս նորընտիր Պատրիարք յաջս սաղիմահայ գաղութին ու դպրոցական սաներուն:*

*Նորընտիր Պատրիարքի օրհնութենէն ու պատգամէն վերջ, Միաբանութիւն եւ ժողովուրդ բարձրացան Պատրիարքարան, շնորհաւորելու նորընտիր Պատրիարքը:*

*Նորընտիր Պատրիարք՝ Նուրհան Արք. Մանուկեան ծնած է Հալէպ, Սուրիա 1948ին: Ձեռնադրուած է աբեղայ 1971-ին: Ընտրուած է Սուրբ Աթոռոյս Լուսարարապետ՝ 1998-ին եւ 1999-ին Եպիսկոպոսական Ձեռնադրութիւն ստացած է ձեռամբ՝ Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Բ. Ամենայն Հայոց Հայրապետէն:*

*ԵՐՈՒՍԱՂԷՄ, 24 /1/2013*

**ԴԻՒԱՆ**
**ՍՈՒՐԲ ԱԹՈՌՈՅ ԵՐՈՒՍԱՂԷՄ**

## «ՋԱՀԱԿԻՐ»ԻՆ

Ողբ. Պետրոս Մովսէսեանի մահուան տխուր առթիւ վասն ցաւակցութեան կը նուիրեն.-

| | |
|---|---|
| Տէր եւ Տիկին Խէչօ Յակոբեան | 100 |
| Տիար Կարպիս Եազըճեան | 100 |

## ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀ

Ողբ. Անուշ Պալաեանի մահուան տխուր առթիւ կը նուիրեն.-

| | |
|---|---|
| Տիկին Արմինէ Աւագեան | 100 |
| Տէր եւ Տիկին Օննիկ եւ Շողիկ Կարիպեան | 100 |
| Տիարք Արբակ եւ Աչոտ Տատուրեան (ԱՄՆ) | 100 |
| Տէր եւ Տիկին Պարգեւ եւ Անի Թօսունեան | 100 |
| Տէր եւ Տիկին Արթօ եւ Լուսի Թօսունեան | 100 |
| Տէր եւ Տիկին Կարէն եւ Սօսի Ծոճոեան | 100 |
| Տիկին Սոնա Սվաճիպաչեան | 50 |
| Տիկին Ալիս Գարանֆիլեան | 50 |

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

Ողբ. Անուշ Պալաեանի մահուան տխուր առթիւ Տէր եւ Տիկին Օննիկ Պըլըքտանեան կը նուիրեն՝

| | |
|---|---|
| Եկեղեցւոյ Պայծառութեան | 100 |
| «Ջահակիր»ին | 100 |

## ԵԿԵՂԵՑՒՈՅ ՊԱՅԾԱՌՈՒԹԵԱՆ

Ողբ. Անոյշ Պալաեանի (Ածիկեան) մահուան տխուր առթիւ կը նուիրեն՝

| | |
|---|---|
| Օր. Անայիս Ճիզմէճեան | 50 |
| Տիկին Ալիս Ճիզմէճեան | 50 |

## ԳՈՀԱՐԵՂԷՆԻ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ԱՐՏԱԴՐՈՒԹԵԱՆ...

2

*«Ներկայիս, անոնք կը նկատուին աշխարհի լաւագոյնները: Իրենց կը վստահուի հանրածանօթ անձնաւորութիւններու, քաղաքական դէմքերու, երաժիշտներու, դերասաններու գոհարեղէններու պատրաստութիւնը» ըսած է ան, աւելցնելով. «Հայկական գոհարեղէնները թանկարժէք են, որովհետեւ ոչ միայն ձեռակերտ են, այլ նաեւ որովհետեւ թրծուած են հայկական հին մշակոյթով»:*

## ԵՒՐՈՊԱԿԱՆ ԽՈՐՀՈՒՐԴԻ ԽՈՐՀՐԴԱՐԱՆԱԿԱՆ ՎԵՀԱԺՈՂՈՎԻ ՊԱՏՈՒԱՒՈՐ ԱՆԴԱՄ

2

*«Շուրջ 10 տարի աշխատած եմ «Եւրոպական խորհուրդի խորհրդարանական վեհաժողովին մէջ եւ ատիկա կը նկատեմ իմ քաղաքական ասպարէզիս լաւագոյն էջերէն մէկը», շնորհակալութիւն յայտնելով բարձր պարգեւին համար յայտարարեց Հերմինէ Նաղդալեան: Ան վստահեցուց, որ այս տարիներուն միշտ իր պարտականութիւնը նկատած է եւրոպական արժէքները եւ վեհաժողովի սկզբունքները Հայաստանի հետ կամրջելը:*

## ՏԽՐՈՒՆԻ

Տէր եւ Տիկին Թագւոր եւ Սաթօ Արապեան (ԱՄՆ) եւ զաւակը՝ Ռաֆֆի, Տիար Մարտիկ Պալաեան եւ զաւակները՝ Ժիրայր եւ Մարալ, Տէր եւ Տոքթ. Վահէ եւ Հերմինէ Վարժապետեան, Տէր եւ Տիկին Տէյվիտ եւ Անի Ֆօլգ (ԱՄՆ) եւ դուստրը՝ Ալիա Անուշ, Տէր եւ Տիկին Կարօ եւ Հանատի Վարժապետեան եւ զաւակները՝ Ալեգ եւ Թալիա, Տէր եւ Տիկին Արմէն եւ Վէրոնիքա Վարժապետեան, Տիկին Ռոզա Ածիկեան (Հայաստան), Տիկին Լուսի Պալաեան (Գանատա), Տիկին Զարուհի Զօրայեան, Տէր եւ Տիկին Ուաէլ Ֆարահ, Տէր եւ Տիկին Խուան Գարլօս Պէրնարտի (Արժանթին) ինչպէս նաեւ Պալաեան, Ածիկեան, Նազաչեան, Վարժապետեան եւ Ծոճոեան ընտանիքները խոր ցաւով կը գուժեն իրենց սիրելի մօր, մեծ մօր, մեծ մեծմօր եւ ազգականին Ողբ.՝

**ԱՆՈՒՇ ՊԱԼԱԵԱՆ-ի**

**(Ծնեալ Ածիկեան)**

մահը, որ տեղի ունեցաւ Ուրբաթ, 18 Յունուար 2013-ին:

Յուղարկաւորութեան տխուր արարողութիւնը տեղի ունեցաւ Շաբաթ 19 Յունուար 2013-ին, ժամը 1.00-ին, Հելիոպոլսոյ Ամենայն Սրբոց գերեզմանատան մատուռին մէջ, ուրկէ ողբացեալին մարմինը փոխադրուեցաւ եւ ամփոփուեցաւ ընտանեկան չիրիմին մէջ:

*Ողբացեալ Անուշ Պալաեանի մահուան առիթով «Ջահակիր»ի խմբագրութիւնը իր խորին ցաւակցութիւնները կը յայտնէ զաւակներուն՝ Տէր եւ Տիկին Թագւոր եւ Սաթօ Արապեաններուն, Տիար Մարտիկ Պալաեանին, Տէր եւ Տոքթ. Վահէ եւ Հերմինէ Վարժապետեաններու, եւ հանգուցեալին սգակիր բոլոր պարագաներուն:*

## «ԱՏՐՊԷՅՃԱՆ ԱՆԴԱԴԱՐ ԿԸ ՔԱՂԱՔԱԿԱՆԱՑՆԷ ՍՏԵՓԱՆԱԿԵՐՏԻ ՕԴԱԿԱՅԱՆԻ ՀԱՐՑԸ»

1

*կոպտօրէն խախտում է դա», դիտել տուած է Էտուարտ Նալպանտեան:*

*Նախարարը չեշտած է, որ ոչ Լեռնային Ղարաբաղի Հանրապետութիւնը, ոչ ալ Հայաստան հարցը քաղաքականացնելու ուղղութեամբ քայլեր առնուած են: «Ստեփանակերտի օդանաւակայանի բացումը միայն քաղաքացիական եւ հումանիտար նպատակներ ունի», յիշեցուցած է նախարարը աւելցնելով, որ Ատրպէյճան գաղտնի չի պահեր իր հիմնական նպատակը մեկուսացնել Ղարաբաղը եւ ժողովուրդը, սակայն ան չի յաջողիր այդ մէկը ընել:*

## «ԺԱՄԱՆԱԿՆ Է ՀԱՅԱՍՏԱՆ-ԹՈՒՐՔԻԱ ԳՈՐԾԸՆԹԱՑՈՒՄ ԱՆՑՆԵԼ ...»

1

*Սարգսեան ըսած է թէ, չատերը թերահաւատութեամբ կը մօտենան մեր կողմէ նախաձեռնուած հայ-թրքական յարաբերութիւններու նորմալացման՝ պնդելով, թէ արձանագրութիւնները նպաստաւոր են Թուրքիային: «Պատասխանէք, խնդրում եմ, մի պարզ հարցի. եթէ արձանագրութիւններն իսկապէս նուէր էին Թուրքիային, ապա ինչո՞ւ դրանք դարձան Թուրքիայում ներքաղաքական լարուածութեան առիթ, իսկ դրանց վաւերացումը՝ անիրականանալի», հարց տուած է Հայաստանի նախագահը:*

*«Եթէ նայենք ապագային, կարծում եմ՝ ժամանակն է Հայաստան-Թուրքիա գործընթացում մեզ աջակցած ուղղակի եւ անուղղակի միջնորդների հետ յստակեցնել «ողջամիտ ժամկէտներ» կոչուածը, եւ այդ ժամկէտների ընդհանրական ընկալումն ապահովելուց յետոյ, եթէ այդ ընթացքում Թուրքիայի կողմից չիրականացուեն համապատասխան քայլեր, անցնել գործողութիւնների: Մենք չունենք ցանկութիւն՝ արձանագրութիւնների ինքնանպատակ գոյութիւնը պահպանելու: Սա, կարծում եմ, պիտի յստակ լինի բոլորի համար: Առիթ ենք ունեցել բազմիցս կրկնելու եւ մէկ անգամ եւս ուզում եմ նշել՝ Թուրքիայի հետ որեւէ քայլ չի կարող հարցականի տակ դնել ցեղասպանութեան եւ դրա արդիւնք հանդիսացող՝ հայրենազրկման միջազգային ճանաչման ու դատապարտման ուղղութեամբ մեր ակտիւ գործունէութիւնը»,- ըսած է Սերժ Սարգսեանը:*

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly


P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com


Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1697 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 14 ՓԵՏՐՈՒԱՐ 2013 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դիկ. عدد رقم ١٦٩٧ الخميس ١٤ فبراير ٢٠١٣


**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆ ԽԻՍՏ ՔՆՆԱԴԱՏՈՒԹԵԱՆ ԵՆԹԱՐԿԵՑ ՐԱՖՖԻ ՅՈՎՀԱՆՆԻՍԵԱՆԻՆ

Փետրուար 18-ին կայանալիք Հայաստանի նախագահական ընտրութիւններէն շաբաթ մը առաջ, Գործող նախագահ, նախագահի թեկնածու Սերժ Սարգսեան Երեւանի Նուբարաշէն համայնքէն ներս իր համակիրն երուն հետ հանդիպման ընթացքին խիստ քննադատական խօսքեր հնչեցուց իրենց «կոռեկտ չպահող» նախագահի միւս թեկնածուներու հասցէին, մասնաւորապէս ակնարկելով թեկնածու Րաֆֆի Յովհաննիսեանին:



Նախագահ Սերժ Սարգսեան ելոյթ կ'ունենայ ընտրական հաւաքի մը ընթացքին

«Երէկ թեկնածուներից մէկը ձայնին խրոխտ արտայայտութիւն տուած յայտարարեց, թէ «սա բարու եւ չարի պայքար է»: Տեղ հասանք, ինչպէս ասում են, որովհետեւ գոնէ շատ թէ քիչ, մինչեւ հիմա թեկնածուները իրենց կոռեկտ էին պահում: Մէկը լինի հարցնի, ասի էլի սկսեցի՞ք մերոնք, ձերոնք..., նորից էլի սկսուեց սեւ-սպիտակի բաժանելը, նորից չար, նորից բարի: Վարակուած են էդ մարդիկ, ոնց որ վարակ կայ մեր օդում, էլի սկսեցին իմ ու քո Հայաստանը, էլի բաժանարար գծեր: Ես չեմ հասկանում, թէ էդ մարդիկ ե՞րբ են հասկանալու, որ էս երկիրը ուղղակի մեղք է էս մասնատումների ձեռքին: Հո՞ մեր ժողովուրդը կրակը չի ընկել մի քանի մարդկանց ամբիցաների ձեռքը», - յայտարարեց Սերժ Սարգսեան իր նախընտրական հանդիպման ընթացքին, որուն ներկայ էին Նուբարաշէնի դպրոցներու, մանկապարտէզներու, սոցիալական ծառայութեան եւ հոգեբուժարանի աշխատակիցները:

Յայտնենք, որ «բարու եւ չարի պայքարի» մասին խօսած էր «Ժառանգութեան» առաջնորդ, նախագահի թեկնածու Րաֆֆի Յովհաննիսեան: Գիւմրիի մէջ իր նախընտրական հանդիպման ընթացքին Յովհաննիսեան, անդրադառնալով նախագահական ընտրութիւններուն, ըսած էր, թէ այս «ոչ թէ անձերի ու քաղաքական կուսակցութիւնների պայքար է, այլ բարու ու չարի»:

«Երբ ասում է՝ սա բարու ու չարի պայքար է, հետաքրքիրը է նա կարո՞ղ է ասել, որն է չարը, ըստ իրեն: Իսկ միւս հաշուով ի՞նքն է որոշողը, թէ որն է չարը, որը բարին: Եւ ընդհանրապէս հարց է առաջանում. այսպիսի մարդիկ կեանքում լուրջ որոշումներ կայացրե՞լ են, թէ՞ ոչ: Նրանք հասկանում են, թէ ի՞նչ է նշանակում որոշում կայացնել, ի՞նչ է նշանակում, երբ ընկերոջդ կամ եղբօրդ ուղարկում ես կրակի բերան, նրանք հասկանում են, թէ ի՞նչ է նշանակում մարդուն ուղարկել պետական կարեւոր առաջադրանք կատարելու: Խօսքը լուրջ որոշումների մասին է եւ ոչ թէ մեծ-մեծ յայտարարելու, որ «վաղը ես նախագահ դառնամ, ճանաչելու եմ Լեռնային Ղարաբաղի անկախութիւնը»: Ոնց որ թէ Ղարաբաղի համար է պոռչը ճաքում», - հեգնանքով ըսաւ Սերժ Սարգսեան:

Գործող նախագահի կարծիքով, այս պահուն Ղարաբաղի անկախութիւնը ճանչնալը մեծ արկածախնդրութիւն է:

«Եւ խօսում է մարդը, ով իրեն ներկայացնում է որպէս արտաքին քաղաքականութեան մեծ մասնագէտ: Այսպիսի ճանապարհը ոչ մի տեղ տանող ճանապարհ է, երբ սկսում են չարի եւ բարու կռուի մասին, դրանով սկսում են, յետոյ սկսելու են գայթակղուել, խօսել ինչ-որ բաներ կազմաքանդելու մասին, յետոյ սկսելու են խօսել մահակների մասին, եւ վերադառնալու ենք մի իրողութեան, երբ մի խումբ մարդիկ, փոքրամասնութիւնը, փորձում է իր կամքը պարտադրել մեծամասնութեանը: Չի լինելու այդպէս, պրծանք, անցաւ մի անգամ... Ես խորհուրդ կը տամ, որպէսզի նրանք թողնեն այդպիսի խօսակցութիւնները, պայքարեն լաւ բաների համար: Եւ այդ մարդկանց բոլորին ասում եմ, որ կայ լոյսը եւ լոյսի յետեւից պէտք է գնան: Բայց երեւում է, որ այդ մարդիկ նայում են, բայց չեն տեսնում: Լաւ կը լինի, որ տեսնեն», - ըսաւ ան:

Յայտնենք, որ ընդամէնը մէկ շաբաթ առաջ Սերժ Սարգսեան գովեստի խօսքեր շռայլած էր նախագահի միւս թեկնածուներու հասցէին. մասնաւորապէս, Րաֆֆի Յովհաննիսեանի մասին ըսած էր ան մարդ մըն է, որ դարձած է «անընդունելի երեւոյթների դէմ պայքարող հայրենասէրի խորհրդանիշ»:

## ԷԴՈՒԱՐԴ ՆԱԼԲԱՆԴԵԱՆ.- «ՊԷՏՔ ՉԷ ՔԱՂԱՔԱԿԱՆԱՑՆԵԼ ՍՏԵՓԱՆԱԿԵՐՏԻ ՕԴԱԿԱՅԱՆԻ ՀԱՐՑԸ»

Փետրուար 12-ին, Թիֆլիսի մէջ կայացած մամլոյ ասուլիսի մը ընթացքին, Հայաստանի արտաքին գործոց նախարար Էդուարդ Նալբանդեան Ատրպէյճանի Հանրային Հեռատեսիլի լրագրողի՝ «Խոջալուի օդանաւակայանի» բացման վերաբերեալ հարցումին պատասխանելով ըսած է թէ, գոյութիւն ունի ԵԱՀԿ Մինսկի խումբի համանախագահներու յայտարարութիւնը Լեռնային Ղարաբաղի՝ Ստեփանակերտի օդանաւակայանի բացման վերաբերեալ, որ կոչ կ'ընէ կողմերուն չքաղաքականացնել օդանաւակայանի բացման հարցը:

«Ո՛չ Ղարաբաղը, ո՛չ Հայաստանը երբեւէ չեն քաղաքականացրել եւ որեւիցէ մտադրութիւն չունեն քաղաքականացնելու այդ հարցը:

«Ատրպէյճանը իր ամենօրեայ յայտարարութիւններով քաղաքականացնում է այն, ուստի խախտում է բոլոր պարտաւորութիւնները, որ ստանձնել է համանախագահների առաջ: Երկրորդ, համանախագահները կոչ են արել չկիրառել ուժ կամ ուժի սպառնալիք քաղաքացիական ինքնաթիռների նկատմամբ: Ո՛չ Հայաստանը եւ ո՛չ էլ Ղարաբաղը երբեւիցէ չեն սպառնացել ուժ կիրառել քաղաքացիական ինքնաթիռների նկատմամբ:

«Ատրպէյճար սպառնացել եւ շարունակաբար սպառնում է ուժ կիրառել քաղաքացիական ինքնաթիռների նկատմամբ՝ խախտելով համանախագահների առաջ այդ հարցի վերաբերեալ ստանձնած պարտաւորութիւնները:

«Դուք գիտէք, որ համանախագահները նաեւ նշել էին, որ Ստեփանակերտի օդանաւակայանի բացումը չպէտք է կ'անխորոշի Լեռնային Ղարաբաղի կարգավիճակը:

«Ո՛չ Հայաստանը, ո՛չ Լեռնային Ղարաբաղը երբեւէ չեն կապել Ստեփանակերտի օդանաւակայանի բացումը Լեռնային Ղարաբաղի հիմնախնդրի կարգաւորման հետ, այդ թւում նաեւ Լեռնային Ղարաբաղի կարգավիճակի հետ:

«Բազմիցս Հայաստանում, ի միջի այլոց Լեռնային Ղարաբաղում նոյնպէս, ամենաբարձր մակարդակով յայտարարուել է, որ Ստեփանակերտում օդանաւակայանի բացումը հետապնդում է միայն հումանիտար եւ քաղաքացիական նպատակներ:

«Հարկաւոր է իրերին նայել այնպէս, ինչպէս դրանք կան, եւ չսրել իրավիճակը յայտարարութիւններով, որոնք հակասում են համապատասխան միջազգային մանդատ ունեցող ԵԱՀԿ Մինսկի խմբի համանախագահների միջոցով արտայայտուող միջազգային հանրութեան մօտեցումներին»,- ըսած է ՀՀ Էդուարդ Նալբանդեան:

## ՀԱԶԱՐԱՒՈՐ ՄԱՐԴԻԿ ՀԱՅԱՍՏԱՆԻՑ ՀԵՌԱՆՈՒՄ ԵՆ ՈՉ ԹԷ ԱՇԽԱՏԵԼՈՒ, ԱՅԼ ԸՆԴՄԻՇՏ

Տարեկան հարիւր հազարաւոր մարդիկ Հայաստանից մեկնում են աշխատելու, իսկ տասնեակ հազարաւորներ լքում են երկիրն ընդմիշտ: Այս մասին յայտարարեց «Ժառանգութիւն» կուսակցութեան վարչութեան փոխնախագահ Ստեփան Սաֆարեանը, նախագահի թեկնածու Րաֆֆի Յովհաննիսեանի քարոզարշաւի շրջանակում Նոյեմբերեանի ընտրողների հետ հանդիպմանը:

«Անցած անգամ մենք Նոյեմբերեանում էինք Յունուարին, եւ աւելի շատ մարդ կար, քան հիմա: Աւանդոյթի համաձայն՝ տարուայ սկզբին երիտասարդութիւնը մեկնում է արտասահման, վաստակելու, սակայն շատերը ընդմիշտ են լքում հայրենիքը: Մարդիկ չեն վերադառնում, քանի որ չեն տեսնում սեփական երկրի ապագան, չեն տեսնում յոյս իրենց եւ իրենց ընտանիքների համար: Մենք այսօր բերել ենք այդ յոյսը: Անհրաժեշտ է վերցնել կոռուպցիան, կրճատել ստուերային տնտեսութիւնը, աւելացնելու համար սոցիալական ոլորտին, գիւղատնտեսութեանը, առողջապահութեանը, պաշտպանութեանն ուղղուած ծախսերը:

Նախագահ ընտրուելով, Րաֆֆի Յովհաննիսեանը կը փոխի իրավիճակն ու խաղի կանոնները: Այնպէս կը փոխի, որ դա կը զգան մարդիկ, որոնց տները գրաւի տակ են՝ բանկերի բարձր տոկոսների պատճառով: Մարդիկ այլեւս չեն տարակուսի, թէ ինչու պետութիւնն իրենց չի օգնում մեխանիզացիայի հարցում: Այս եւ միւս հարցերը կարող են լուծում ստանալ ձեր ձայների շնորհիւ»,-ասել է Ս. Սաֆարեանը:

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ԱՏՐՊԷՅՃԱՆԱԿԱՆ ԿՈՂՄԷՆ ԿՐԱԿԱԾ ԵՆ ՀԱՅԿԱԿԱՆ ԳԻՒՂԵՐՈՒՆ ՈՒՂՂՈՒԹԵԱՄԲ

Տաւուշի մարզի սահմանամերձ գիւղերի ուղղութեամբ Փետրուար 12-ին ատրպէյճանական կողմից արձակուած ինտենսիւ հրաձգութեան հետեւանքով կայ մէկ վիրաւոր: Հայաստանի Պաշտպանութեան նախարարութեան հաղորդմամբ՝ վիրաւորը 22-ամեայ զինծառայող է: Նրա կեանքին վտանգ չի սպառնում: Զոհեր չկան:

Նախարարութիւնը հաւաստիացնում է, որ գնդակոծուած Ջինարի, Այգեպար, Մովսէս, Ներքին Կարմիրաղբիւր գիւղերում առաւօտից վիճակը խաղաղ է՝ հայկական կողմի պատասխան գործողութիւնների արդիւնքում:

Հրաձգութիւնը սկսուել էր ցերեկը, աստիճանաբար դարձել է աւելի ինտենսիւ՝ մինչեւ կէսգիշեր. վնասուել են բնակելի տներ, Ջինարի գիւղի գազատարը, որն այսօր արդէն վերականգնուած է:

Ինչպէս «Ազատութիւն» ռատիոկայանին փոխանցեց Պաշտպանութեան նախարարի խօսնակ Արծրուն Յովհաննիսեանը, հակառակորդն օգտագործել է տարբեր տրամաչափի, այդ թւում նաեւ մեծ տրամաչափի հրաձգային զէնքեր: Նախնական տուեալներով, աշխատել են նաեւ դիպուկահարներ: Պաշտպանութեան Նախարարութեան հաւաստմամբ, նման մասշտաբի հրաձգութիւն վերջին անգամ եղել էր մօտ վեց ամիս առաջ:

Սահմանամերձ բնակավայրերի գիւղապետերը ասում էին, որ ատրպէյճանական կողմը կրակել է հենց գիւղերի վրայ:

Այգեպարի գիւղապետ Անդրանիկ Այդինեանը «Ազատութիւն» ռադիոկայանին փոխանցեց, որ գիւղացիները ստիպուած են եղել պատըսպարուել նկուղներում. - «Պատկերացրէք, 93 թիւն էր եկել, բոլոր տների լոյսերը հանգցրած, մարդիկ նկուղներում, էդ վիճակն էր: Մեր մօտ, որ կրակոցները սկսւում են, գիտենք, թէ արդէն 90-ական թուականները սկսուել են»:

Գիւղապետերի փո-

☞ 4

ՖՐԱՆՍԱ

# ՖՐԱՆՍԱՅԻ ԽՈՐՀՐԴԱՐԱՆԸ ՊԻՏԻ ՔՆՆԱՐԿԷ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԵԱՆ ԺԽՏՈՒՄԸ ՔՐԷԱԿԱՆԱՑՆՈՂ ՆՈՐ ՕՐԻՆԱԳԻԾ

*Փետրուարի 6-ին Ֆրանսայի Ազգային Ժողովի երեսփոխան Վալերի Պուայէ եւ իր հինգ գործընկերները Հայոց ցեղասպանութեան ժխտման դէմ նոր օրինագիծ ներկայացուցած են Ֆրանսայի Ազգային Ժողով:*



Ֆրանսայի Ազգային Ժողովի երեսփոխան Վալերի Պուայէ

*Օրինագիծը կը միտի Ֆրանսայի ներքին օրէնքները համապատասխանեցնել 2008 թուականի Նոյեմբեր 28-ի Եւրոպական Միութեան Խորհուրդի այն որոշումին հետ, որ կ'առաջարկէ ժխտողականութեան դէմ պայքարիլ՝ պատժիչ օրէնքի միջոցաւ:*

*Երկու տարի առաջ, նոյն Վալերի Պուայէի ներկայացուցած օրինագիծը խորհրդարանի երկու պալատներուն կողմէ քուէարկութեամբ ընդունուելէ ետք, մերժուեցաւ Սահմանադրական յանձնաժողովի կողմէ, այն առարկութեամբ, թէ չէր համապատասխաներ երկրի Սահմանադրութեան:*

*Նոր օրինագիծը կ'առաջարկէ 45 հազար եւրօ տուգանքով եւ/կամ 2 տարի բանտարկութեամբ պատժել անոնց, որոնք «մտադրուած կերպով ատելութիւն ու բռնութիւն կը հրահրեն, լարուածութիւն կը յառաջացնեն հակառակելով մէկ կամ մի քանի ցեղասպանութիւններու գոյութեան կամ անոնց իրաւական որակման, ինչպէս նաեւ մարդկութեան դէմ ոճիրին, պատերազմական ոճիրներուն, ստրուկներու վաճառքին կամ Հայոց ցեղասպանութեան»:*

*Առայժմ յայտնի չէ թէ, Ֆրանսայի Ազգային Ժողովը երբ կը քննարկէ ներկայացուած օրինագիծը:*

# APPLE-Ը ՆԱԵՒ ՀԱՅԵՐԷՆՈ՞Վ

*Հայաստանի կրթութեան եւ գիտութեան նախարար Արմէն Աշոտեան նամակ յղեց Apple ընկերութեան գործադիր տնօրէն Թիմ Գուքին, որուն մէջ առաջարկեց հայերէն ստեղնաշարով (keyboard) օժտել ընկերութեան համայնատարած արտադրութիւններէն iPhone-ը եւ iPad-ը:*

*«Ընկերութեան չարժական սարքաւորումները լայն տարածում կը գտնեն Հայաստանի եւ արտերկրի մէջ բնակող սփիւռքահայութեան մօտ: Նշեալ արտադրութիւնները կը համարուին ազդեցիկ ուսումնական միջոցներ, կ'օգտագործուին նաեւ վարժարաններու մէջ: Սակայն անոնք չեն ապահովեր հայերէնով աշխատելու հնարաւորութիւն, որովհետեւ համակարգը (iOS systems) չունի հայերէն ստեղնաշար: Վստահ եմ, որ նման ստեղնաշարի ստեղծումը կը բխի մեր ընդհանուր շահերէն», ըսաւ նախարար Աշոտեան:*

*Նշենք, որ Apple-ի մրցակից Samsung ընկերութեան նմանօրինակ արտադրութիւնները օժտուած են հայերէն ստեղնաշարով:*

ՀԱՅԱՍՏԱՆ

# ՍՈՒՐԻԱՀԱՅ ՈՍԿԵՐԻՉՆԵՐՈՒՆ ՍԵՓԱԿԱՆ ԳՈՐԾ ՀԻՄՆԵԼՈՒ ԱՌԱՋԱՐԿ

*ՀՀ սփիւռքի նախարար Հրանոյշ Յակոբեան, Երեւանի ոսկերչական գործարանին մէջ հանդիպում ունեցաւ Հայաստան գտնուող սուրիահայ ոսկերիչներու հետ:*

*Ողջունելով ներկաները, նախարարը ուրախութեամբ նշեց, որ անոնք ցանկութիւն յայտնած են Հայաստանի մէջ իրենց գործը հիմնելու, միեւնոյն ժամանակ չթաքցուց իր մտահոգութիւնը հմուտ եւ իրենց գործին մէջ յաջողակ ոսկերիչներու ժամանակաւոր անգործութեան կապակցութեամբ:*

*Հ. Յակոբեան յորդորեց Հայաստան գտնուող սուրիահայերուն, որ անոնք օր առաջ հիմնեն իրենց գործը ու կոչ ըրաւ առանց մտավախութիւններու ձեռնարկել առաջին գործնական քայլերը. «Պետութիւնը կանգնած է խրաքանչիւրիդ կողքին՝ պիզնէս հիմնելու առաջին քայլից: Մենք պատրաստակամ ենք անհրաժեշտ խորհրդատուութեամբ ապահովել, աջակցել կազմակերպութեանը՝ գրանցումից մինչեւ կայանալն ու շահոյթ ստանալը»:*

*Նախարար Հ. Յակոբեան յաջողակ գործ ունենալու հարցը կարեւորեց վստահելի գործընկերոջ ընտրութեան, պետութեան կողմէ յստակ ու հաւաստի խորհրդատուութիւն ստանալու գործօնը:*

*Հանդիպման ներկայ եղաւ Երեւանի ոսկերչական գործարանի գլխաւոր տնօրէն Էմիլ Գրիգորեանը, որ տեղեկացուց, թէ գործարանին մէջ ներկայիս կ'աշխատին հինգ սուրիահայեր: Է. Գրիգորեան սուրիահայ գործարարներուն երկու առաջարկ ըրաւ. ընդունուիլ աշխատանքի՝ որպէս ոսկերիչ, կամ ալ յառաջիկայ 6 ամիսներուն ընթացքին անվճար աշխատանքային տարածք վերցնել:*

*Այս պարագային անոնք հնարաւորութիւն կ'ունենան օգտուիլ նաեւ գործարանի աշխատանքային գործիքներէն, տարատեսակ արտադրամասերէն: Գործարանի ղեկավարութիւնը պատրաստակամութիւն յայտնեց նաեւ աջակցիլ օրէնսդրական եւ շուկայագիտական ոլորտներու խորհրդատուութեամբ:*

*Համագործակցութեան պարագային՝ գործարանին կողմէ պիտի տրամադրուին նաեւ արտաքին շուկաներու հնարաւորութիւններն ու կապերը:*

*Հանդիպման մասնակիցները հետաքրքրուեցան արտահանման հնարաւորութիւններով, հարցեր բարձրացուեցան մաքսային ու հարկային օրէնսդրութեան որոշ դրոյթներու վերաբերեալ: Նշուեցաւ, որ Հայաստանի՝ տուեալ ոլորտը կարգաւորուող օրէնսդրութիւնը աշխարհի մէջ լաւագոյններէն կը համարուի, ինչ որ հնարաւորութիւն կու տայ ոսկեր-*


4

# ՍՏԵՂԾՈՒԵԼ Է «ՀԱՅ ԱԶԳԱՅԻՆ ԿՈՆԳՐԷՍ» ԱՆՈՒԱՄԲ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԻՒՆ

*Հայաստանի առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանի գլխաւորութեամբ 28 հոգի դիմել են արդարադատութեան նախարարութիւն «Հայ Ազգային Կոնգրէս» անուամբ կուսակցութիւն ստեղծելու նպատակով:*

*Այդ մասին յայտնեց «Հայ Ազգային Կոնգրէս» դաշինքի համակարգող Լեւոն Զուրաբեանը նշելով, որ ինքն էլ է մտնում այդ 28 հոգու մէջ եւ կազմակերպիչների կողմից լիազօր ներկայացուցիչ է նշանակուել:*

*Նոր կուսակցութեան հիմնադիր համագումարը կայանալու է Մարտի 22-ին եւ այդ օրն էլ կ'որոշուի նոր ուժի ղեկավար կազմը:*

*28 հոգու շարքում են նաեւ Ազգային ժողովի ՀԱԿ խմբակցութեան անդամ Գագիկ Ջհանգիրեանը, Երեւանի նախկին քաղաքապետ Վահագն Խաչատրեանը, Կոնգրէսի արտաքին կապերի պատասխանատու Վլադիմիր Կարապետեանը, ՀԱԿ անդամ Զոյա Թադեւոսեանը, ՀԱԿ խօսնակ Արման Մուսինեանը եւ այլք:*

*«Ուզում եմ յատուկ շեշտել, որ սա անհատների նախաձեռնութիւն է, բնականաբար, նաեւ հրաւիրում ենք Կոնգրէսի մասնակից քաղաքական ուժերին նոյնպէս միանալ: Նախնական խօսակցութիւններ եղել են եւ հիմա քաղաքական ուժերի արձագանքը կ'ունենանք», - յայտարարեց Զուրաբեանը:*

*Զուրաբեանը յաւելեց, թէ նորաստեղծ կուսակցութիւնը դաւանելու է սոցիալական լիպերալիզմի գաղափարախօսութիւն եւ կողմ է լինելու բազմավեկտոր արտաքին քաղաքականութեանը:*

ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

## ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

Այսու կը տեղեկացնենք Աղեքսանդրիոյ Պատկ. Թեմական Ժողովի 2012-ի Բ. ՆԻՍՏԸ գումարուեցաւ Ուրբաթ, 14 Դեկտեմբեր 2012-ին, առաւօտեան ժամը 10.30ին Ազգային Առաջնորդարանի մէջ, նախագահութեամբ եգիպտահայոց Թեմի բարեխնամ Առաջնորդ Գերշ. Տ. Աշոտ Սրբ. Մնացականեանի, եւ ներկայութեամբ 18 երեսփոխաններու: Սրբազան հօր տէրունական աղօթքէն ետք տեղի ունեցաւ Պատկ. Թեմական ժողովի դիւանի ընտրութիւն:

Միաձայնութեամբ ընտրուեցան Թեմական ժողովի դիւանը մինչեւ Թեմական մասնակի ընտրութեան թուական Կիրակի 7 Ապրիլ 2013 հետեւեալ կազմով՝

Տիար Մկրտիչ Խանճեան Ատենապետ

Տիար Պերճ Հալաճեան Փոխ Ատենապետ

Տիար Յակոբ Մանուկեան Ատենադպիր

Օրակարգի 3րդ հարցն էր ընտրութիւն 2011-ի տարեշրջանի քննիչ Յանձնախումբի:

Թեմական ժողովի Ատենապետ Տիար Մկրտիչ Խանճեանի առաջարկին վրայ միաձայնութեամբ ընտրուեցան 2011-ի տարեշրջանի քննիչ յանձնախումբը հետեւեալ կազմով՝

Տիար Ժորժ Լէյլէկեան

Տիար Զաւէն Լէյլէկեան

Տիար Ժիրայր Մանուկեան

Օրակարգի 5րդ հարցն էր Թեմական ժողովի Մասնակի ընտրութեան Թուականի ճշդում եւ ընտրողական Յանձնախումբի երկու անդամներու նշանակում:

Մասնակի ընտրութեան Թուականը որոշուեցաւ Կիրակի, 7 Ապրիլ 2013-ին եւ ընտրողական Յանձնախումբի 2 անդամներ ընտրուեցան յանձինս Տոքթ. Էտուար Րաֆֆի Մանուկեան եւ Տիար Գէորգ Հրանդ Գավուքճեան որոնք պիտի գործակցին Աղեքսանդրիոյ Առաջնորդական փոխանորդ Արժ. Տ. Գրիգոր Քհնյ. Մուրատեանի հետ վարելու ընտրական գործերը:

Օրակարգի 6րդ էր վիճակաձգութիւն Պատկ. Թեմական ժողովի անդամներու իբրեւ պատրաստութիւն մասնակի ընտրութեան որ պիտի ընտրուին 12 հոգի միայն:

Սոյն նիստին, նախքան վիճակաձգութիւնը, Աղեքսանդրիոյ Թեմական ժողովի յաջորդ շրջանին իրենց թեկնածութիւնը նկատի չառնելու խնդրանքով իրենց հրաժարականը ներկայացուցին Տիարք Պերճ Սաղաթել Հալաճեան եւ Վահէ Նորայր Պէնօհանեան, ինչպէս նաեւ հանուեցաւ ընթացիկ շրջանին հանգուցեալ երեսփոխան Արթին Գրիգոր Գասպարեանին անունը:

Այս հիման վրայ 12-ի փոխարէն վիճակաձգութիւնը կատարուեցաւ 9 երեսփոխաններու միայն:

Վերջաւորութեան տեղի ունեցած վիճակաձգութեամբ դուրս եկան հետեւեալ երեսփոխանները՝

Տոքթ. Էտուար Ռաֆֆի Մանուկեան

Տիար Պերճ Էտուար Խորասանճեան

Տիար Արթին Վահրամ Թօսունեան

Տիար Մկրտիչ Կարապետ Խանճեան

Տոքթ. Արմէն Հրանդ Գավուքճեան

Տոքթ. Արամ Սամուէլ Գալայճեան

Տիար Զաւէն Երուանդ Գութնուլեան

Տիար Արթին Կարապետ Խանձեան

Տիար Ժորժ Լեւոն Լէյլէկեան

Նշենք նաեւ որ, ըստ կազմական կանոնագրի, վիճակաձգութեամբ դուրս եկած ազգայինները վերընտրելի են:

Ժողովը փակուեցաւ Սրբազան հօր պահպանիչով կէսօրուան ժամը 12:15ին:

**ՏԵՂԵԿԱՏՈՒ ԴԻՒԱՆ ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ**
**ԱԶԳԱՅԻՆ ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ**

## ՎԻՃԱԿԱԳՐԱԿԱՆ ՏՈՒԵԱԼՆԵՐ ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ՀԱՄԱՅՆՔԻ 2012 ՏԱՐԵՇՐՋԱՆԻՆ

2012-ին Ս. Պօղոս-Պետրոս եկեղեցւոյ մէջ տեղի ունեցած են

**Մկրտութիւն** Մանչ 1

**Պսակադրութիւն** 1

**Թաղում** 14

| | Այր | Կին | |
|---|---|---|---|
| - | - | 1 | 1 – 50 տարեկան |
| | 2 | 11 | 50-էն վեր |

**ԴԻՒԱՆ ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ**
**ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**

# ՀԱՅ ՏՊԱԳԻՐ ԳԻՐՔԻ 500-ԱՄԵԱԿ... ԳԻՏԵԼԻՔԻ ԽԶՈ՞ՒՄ

## Յետ-տպագրային ընթերցում մը

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

«Հիմնարկներու եւ մասնագէտներու կողմէ ի վերուստ ձեւաւորուած գիտելիքը [knowledge] կ'արտայայտէ կեղծ իմաստներ: Եթէ նայինք մեր շուրջը, կը նկատենք որ հակառակ գիտելիքի վերջին 300 տարիներուն կատարած հսկայական աճին, կեանքը շատ մակարդակներով կը շարունակէ վատթարանալ՝ հասարակական հոգեւոր հիւսուածքի, ուտելիքի, օդի, ջուրի եւ հողի մակարդակով, ինչպէս նաեւ ուրախութեան եւ կեանքի իմաստի, զուարճութեան, եւ միջմարդկային յարաբերութիւններու մակարդակով: Կը նկատենք որ անցեալ 300 տարիներուն արտադրուած գիտելիքը աւելի շատ հարցեր յառաջացուցած է քան կրցած է զանոնք լուծել (թէեւ բաւական լուծած է)»

Մունիր Ֆաշէ(1)

Անցեալ տարի, ամբողջ աշխարհով Հայերս բարձր տրամադրութեամբ, անասելի հպարտութեամբ, մեծ հայրենասիրութեամբ, անձնուրաց նուիրուածութեամբ, խոր յագեցուածութեամբ, աննախադէպ նախաձեռնութեամբ (նկատեցէք նկարագրութիւններուն խզուածութիւնը) տօնեցինք Հայերէն առաջին գիրքի տպագրութեան 500-ամեակը: Այդ գիրքը կը կոչուէր *Ուրբաթագիրք*:

Եգիպտոսի մէջ 500-ամեակը նշուեցաւ երկու առիթով: Առաջինը Հայկական Ընթերցասրահի ցուցահանդէս-վաճառքն էր, Պըլըքտանեան Սրահին մէջ, 20-21 Հոկտեմբերին, երկրորդը Յուսաբեր Մշակութային Ընկերակցութեան եգիպտահայ գիրքերու ցուցահանդէսն էր, Գարագաշեան Սրահին մէջ, 10-11 Նոյեմբերին:

Կը պարզուի, Գահիրէի 500-ամեակի ձեռնարկները այցելողներուն մեծ մասը չէր լսած առաջին գիրքին խորագիրը: Խզում մը:

Ներկաներէն քանի՞ հոգի կարդացած էր *Ուրբաթագիրքը*: Մէ՞կ, երկո՞ւ, առաւելագոյնը երե՞ք: Ես անձամբ փորձած եմ կարդալ զայն, բայց ձախողած եմ, հաճոյք չեմ առած: Փորձած եմ այնտեղ քով-քովի շարուած բնագիրներու համադրութիւններէն իմաստներ քաղել, չեմ յաջողած: Փնտռած եմ հեղինակներ՝ որոնք իբրեւ գիտելիքի աղբիւր գործածած ըլլան *Ուրբաթագիրքը*, չեմ գտած, քանզի գիրքն ինքնին հին բնագիրներու եւ միտքերու վերարտադրութիւնն է: Կարճ. *Ուրբաթագիրքը* չէ մտած գաղափարական շրջանառութեան մէջ: Շրջանառած է «տպագրութեան» երեւոյթը, անկախաբար իր պարունակած գիտելիքէն: Խզում մը:

Կը փառաւորուի ոչ թէ գիրք-գիտելիքը իբրեւ մէկութիւն, այլ գիտելիքէն անջատուած գիրքը իբրեւ շօշափելի նիւթ: Տպագրութիւնն ինքնին սկիզբն էր գիրքի եւ բովանդակութեան (գիտելիքի) խզումին, քանի որ տպագրութիւնը հաւասար է դրամի, առանց դրամի տպագրութիւն գոյութիւն չունի, մինչդեռ գիտելիքն իր էութեամբ հակա-դրամային է: Քափիթալիզմին կը մնար այս գիտելիքին աւելցնել օտարացած իմաստ մը՝ դրամը, որպէսզի տիրէր անոր ազատ երթեւեկութեան վրայ, քանզի դրամը կաշկանդող է եւ հակա-ազատագրական:

Շօշափելի գիրքը պէտք է հասութաբեր ըլլար հրատարակիչներուն: Հրատարակիչներուն մեծամասնութիւնը չուկայի մարդիկ էին, որով դիւրութեամբ կրցան գիտելիքը ենթարկել դրամին: Աստիճանաբար այս հասութաբերութիւնը վերածուեցաւ իշխանութեան, քանի որ հրատարակիչը կա՛մ ինքը դրամատէրն է եւ կա՛մ դրամ հայթայթելու կարողութիւնն ունի: Առանց այս դրամատէր-հրատարակիչին գրողը չի կրնար իր գիրքը հրատարակել, քանի որ մեծ մասամբ գրողները աղքատ մարդիկ պէտք է ըլլան եւ այդպէս ալ մնան: Հրատարակիչները աղքատ գրողին կը հարստացնեն այն ժամանակ երբ ան այլեւս վտանգ չի ներկայացներ իշխող վերնախաւի շահերուն, կամ աւելի ճիշդ կը ծառայէ անոնց նպատակներուն: Այսքան ուժեղ է տպագիր գիտելիքին ազդեցութիւնը: Եւ քանի որ ան ուժ է, քափիթալիզմը պէտք է օգտուէր անկէ եւ զայն հպատակեցնէր իրեն: Օրինակ, Cambridge University Press-ը պիտի չհրատարակէ գիրք մը, ուր փաստուած ըլլան Իրաքի մէջ ամերիկացի զաւթիչներու միջուկային զէնքերուն գործածութիւնը եւ կատարած անպատմելի ոճիրները, կամ պաղեստինցիներուն դէմ Իսրայէլի կառավարութեան հետեւողական ու ծրագրուած ցեղասպանութեան իրագործումը: Ինչո՞ւ: Որովհետեւ Քէմպրիճը պէտք ունի շուկայի՝ ծախելու համար գիտելիքն իր մէջ կալանաւորած գիրքը, իսկ այդ շուկան ամբողջապէս տիրակալուած է դրամատէրերու, ազդեցիկ լոպպիներու (մեծ մասամբ սիոնական) կողմէ: Ասոնք կը նշեմ փոխան հայկական կողմնակցական հրատարակչատուներու արգիլուած բովանդակութիւններուն, կամ հայկական գիտելիքներու թաքուններուն: Խզում մը գիրքի եւ բովանդակութեան միջեւ, քանի որ երկրորդը պիտի հանդիսանայ առաջինին ենթական, առաջինը պիտի ճնշէ երկրորդին վրայ, իսկ առաջինը պիտի նոյնանայ շուկային հետ:

Կ'ըսեն՝ տպագրուած գիրքը տարածեց գիտելիքը: Այս խօսքին մէջ արդէն խզում կայ, քանի որ մէկ առարկան պէտք է հանդիսանայ միւս առարկայի տարածումին պատճառը: Ասիկա մէկ կողմ: Միւս կողմէն, իրապէ՞ս տպագրուած գիրքը տարածեց գիտելիքը: Սկսիմ հեռուէն: Ի սկզբանէ գիտելիքը եղած է բանաւոր: Այն ինչ որ այսօր կը կոչենք բանաւոր աւանդութիւն, գոյութիւն ունեցած է անյիշատակ ժամանակներէ ի վեր: Բանաւոր գիտելիքը բաց է, կապուած է հանրային փորձառութեան հետ, չի ճանչնար գրականութեան, փիլիսոփայութեան, պաշտամունքի եւ այլ սահմանազատումներ՝ արդի գրաւորութեան եզրաբանութեամբ ան բոլոր ճիւղերն ալ կը պարունակէ իր մէջ, ան տարբերակային է ժամանակային տարածութեան մէջ՝ զերծ կուտակուած բարդութիւններէ: Տուեալ տարածութեան մը բանաւոր մշակոյթը յարատեւած է այնքան որքան կրցած է դիմադրել արդիւնաբերականացումը (industrialisation) եւ քաղաքայնացումը (urbanisation): Ափրիկեցիներուն, ամերիկացի բնիկ ժողովուրդներուն եւ ուրիշներու թողած բանաւոր ժառանգութիւնը՝ որոնք այսօր մատչելի են մեզի իրենց գրանցումներով եւ թարգմանութիւններով, նմոյշներ են բանաւորութեան վերը յիշուած յատկանիշներուն:

Գրաւոր գիտելիքը՝ որ գոյութիւն ունեցած է յիշատակելի ժամանակներէ ի վեր (շուրջ 5500 տարի), փակ է, եւ զուտ աքատեմիք նեղմտութեան պարագային դիւրութեամբ կրնայ ուղղուիլ դէպի փորձառութեան անհատապաշտումը, գիտելիքի ճիւղերու սահմանազատումը եւ խզումը՝ այն աստիճան որ գիտելիքներն իրենց միջեւ կը դառնան անճանաչելի (լեզուաբանը լուր չունի բանասիրութեան մասին, երաժշտահանը գաղափար չունի կատարողական գործադրութեան (performance practice) մասին), դէպի անփոփոխութիւնը եւ ինքնակուտակուած (հակա-տարբերակային) բարդացումները եւ ապա այդ մշտագոյ բարդութիւններուն նոյնացումը արդիականութեան չվերջացող գաղափարին հետ: Հիմնահոսանքային (mainstream) գրաւոր-տպագիր գիտելիքը, յատկապէս ԺԹ. դարու քափիթալիզմի ժամանակ, ընթացաւ դէպի այս «նեղ աքատեմիք» ուղղութիւնը, քանի որ արմատաւորուեցան գիտելիքէն անդին գտնուող երեւոյթները՝ տպարանը, հրատարակիչը, հրատարակչատունը, հովանաւորը, կուսակցութիւնը, դպրոցը, համալսարանը, որոնց շնորհիւ եւ միջոցով կարելի եղաւ հսկել գիտելիքին վրայ:

### ԳԻՏԵԼԻՔԸ ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՀԱՄԱԿԱՐԳԻՆ ՄԷՋ

Տպագիր գիրքի հետ առաջին առնչութիւնը տեղի կ'ունենայ դպրոցին մէջ: Ուսումնական շրջանին (դպրոց եւ համալսարան) աշակերտ-ուսանողը կը կարդայ հսկայ քանակութեամբ տպագիր գիրքեր: Դպրոցական շրջանին՝ գիրքերը կը հասնին մինչեւ աշակերտին ձեռքը, համալսարանական շրջանին՝ այդ հասնող գիրքերուն կ'աւելնան պատրաստ գրականութեան ցանկ մը, զոր առանց դժուարութեան կարելի է ձեռք ձգել համալսարաններու գրադարաններէն: Աշակերտ-ուսանողները կը կարդան իրենց պարտադրուած ապա թելադրուած գրականութիւնը, քանի որ իրենք տակաւին անտեղեակ պէտք է ըլլան գիտելիքի հանդէպ եւ պէտք ունին գիտելիքի տեղեակ անձի մը հովանաւորութիւնը: Այնքան կը սորվին կարդալ՝ որ անոնց մեծամասնութիւնը դպրոց-համալսարանէն ետք հաճոյքով կը կարդայ լրագիրներու ոճիրներու սիւնակները, կամ կը կարդայ միայն ու միայն այն գիտելիքները որոնք օգտակար կրնան ըլլալ իր *մասնագիտութեան* եւ ոչ թէ *իրեն*՝ իբրեւ մարդ-մտածողի:

Իսկ տոքթորականի ուսանողնե՞րը: Տարածուած է այն տպաւորութիւնը՝ որ գոնէ այստեղ թեկնածուն ազատ է կարդալ ինչ որ կ'ուզէ: 20-25 տարի պարտադիր ընթերցումէ ետք, այստեղ վերջապէս ուսանողը ազատ պէտք է զգայ: Արդարեւ, ան ազատ է կարդալու իր ընտրութեամբ՝ որքան որ ազատ է ընտրելու տոքթորականին նիւթը: Չեմ գիտեր «տեմոքրաթիք» Ֆրանսայի մէջ ուսանողը որքան ազատ է թեզ պաշտպանել Թալիպաններուն կամ Արեւմուտքի կողմէ «ահաբեկիչ» հռչակուածներուն մասին, այնտեղ տեսնելով, օրինակ, հակա-իմփերիալիսթական գաղափարախօսութիւն՝ հաւասարեցնելով իմփերիալիզմը (Արեւմուտքի հակա-Արեւելեան գիտելիքը) ահաբեկչութեան (Արեւելքի հակա-Արեւմտեան գիտելիքի) հետ: Չեմ գիտեր որքան կարելի է Հայաստանի մէջ թեզ պաշտպանել հայ առաջին «փրոֆեսիոնէլ» երաժշտահան, առաջին հայկական օփերայի եւ Միջին Արեւելքի ու հայութեան առաջին օփերէթներու հեղինակ Տիգրան Չուհաճեանի *Լէպլէպիճի հօր հօր աղա* օփերէթի մասին, բառերը վերլուծելով թուրքերէն բնագիրի հիման վրայ՝ ճիշդ այնպէս ինչպէս գրած էր հեղինակը, եւ մեկնաբանելով երաժշտութեան եւ թուրքերէն ինքնագիր բնագիրի առնչութիւնները:

Ուսումնական գիրքերը գրուած պէտք է ըլլան իշխանական լեզուով՝ առիթ չտալով աշակերտին մտածելու այլընտրանքներու եւ չերտաւորումներու մասին: Ահաւասիկ քանի մը մտորում ուսումնական համակարգի գիտելիքներուն մասին.

1.-«Տիգրան Մեծ աշխարհակալ հսկայ մըն է»: Վերջ: Տեղ չկայ մտածելու, որ ան աշխարհակալ դառնալու եւ նոր, «ոչ-հայկական» տարածութիւններ գրաւելու համար «ստիպուած» եղած է անցնիլ ուրիշ ազգերու վրայով: Այդ Այլը՝ անծանօթ, անանուն եւ հեռաւոր, անկարեւոր է *մեր* յաղթանակին համար:

2.-«Հայերս դարեր շարունակ շրջապատուած եղած ենք իսլամներով եւ կրցած ենք պահպանել մեր սուրբ քրիստոնէութիւնը»: Այսպէս գրուած են հայոց պատմութեան դասագիրքերը. մէկ կողմը իսլամ, միւս կողմը քրիստոնէութիւն, որոնք իրարու չեն հանդիպիր: Աշակերտ-ուսանողը հայկական դպրոցին մէջ իրաւունք չունի մտածելու իսլամ-քրիստոնէութեան յարաբերութիւններուն մասին: Հայ դպրոցը պիտի մերժէ սորվեցնել, օրինակ, Սեդա Տատոյեանի հրաշալի ուսումնասիրութիւնը՝ յատկացուած հայ-իսլամական ներթափանցումներուն(2), քանի որ այստեղ գիտելիքը մեկնաբանուած է այլընտրանքային դիտարկումներով, գիտելիքը կը գտնուի տրամախօսութեան մէջ եւ զերծ է գիտելիք-պատմութեան առարկայական օտարացումներէն ու մանաւանդ պարտադիր թաքուններէն: Ներթափանցում բառն ընդհանրապէս չկայ հայոց պատմութեան գիրքերուն մէջ: Կայ յաղթանակ, կամ պարտադրեալ պարտութիւն՝ որ կը համատեղուի զոհուածութեան հետ: Չկայ ակնարկում, որ մեր յաղթանակը պիտի նշանակէր ուրիշին պարտութիւնը, իսկ մեր զոհուածութիւնը՝ ուրիշին յաղթանակը: Մէջտեղները գոյութիւն չունին:

3.-«Քափիթալիզմը արդի տնտեսութեան զարգացումի ուժն ու կորիզն է»: Լիպերալ կոչուող Ամերիկայի համալսարաններու տնտեսական բաժանմունքներուն մէջ կը դասաւանդեն միայն քափիթալիսթական տնտեսութիւն: Ոչ մէկ խօսք կայ Մարքսի մասին: Թէեւ համալսարաններուն մէջ կան Մարքսի առանձին ընտրողական դասընթացքներ, բայց մէկ բան է հիմնական համակարգէն անջատուած դասընթացքը, ուրիշ բան է գիտելիքը ընդելուզել բուն համակարգին մէջ: Պատճառն այն է՝ որ Մարքսը առաջինն է որ մերկացուցած է քափիթալիզմի շարժումին ներքին մեքանիզմը եւ բացայայտած անոր վտանգը: Այսօր, շնորհիւ այդ քափիթալիզմին, աշխարհի բնակչութեան 1 տոկոսը կը տիրէ միւս 99 տոկոսին վրայ: Ես, դուն, յօդուածս կարդացողները (եթէ կան) կը գտնուինք մեծամասնական 99 տոկոսին մէջ, քանի որ չեմ հաւատար թէ մնացած 1 տոկոսին մէջ *Ձահակիր* կարդացող ըլլայ: Ամերիկեան տնտեսական համալսարանը կը նախընտրէ խօսիլ 1 տոկոսին անունով: Մարքսիզմը պիտի խօսէր 99 տոկոսին անունով եւ պիտի սպառնար 1 տոկոսին: Ուրեմն, անհրաժեշտ է խզել քափիթալիզմն ու մարքսիզմը իրարմէ, առաջին գիտելիքին տալով վճռականութիւն եւ ամրակուռ կառուցուածք, երկրորդին տալով լուսանցքային կարեւորութիւն եւ յաճախ դիտաւորեալ սխալականութեամբ կապել համայնավարութեան (communism) հետ:

4.-Հօուըրտ Զինն ունի իւրայատուկ գիրք մը՝ *Միացեալ Նահանգներու ժողովուրդի մը պատմութիւն*(3), ուր լուսանցքային մնացած մարդիկ ու դէպքեր կը դառնան ԱՄՆ-ի պատմութեան կրողները, մտածել տալով որ պատմութիւն կոչուածը կը գտնուի ժողովուրդի մէջ՝ բանուորներ, մտաւորականներ, զանազան խաւեր, եւ ոչ պարտադրաբար նախագահներ ու յաղթարշաւ պատերազմներ: Աշխատութիւնը կ'ունենայ բացառիկ յաջողութիւն: Այս գիրքը կը մտնէ ԱՄՆ-ի որոշ դպրոցներու եւ համալսարաններու ուսումնական ծրագիրներուն մէջ(4), հակառակ որ ան գրուած է Նոր Ձախի (New Left) համոզուածութեամբ եւ հարցերը կը քննարկէ հակաուժային եւ այլաբանական մօտեցումներով: Հետաքրքրական է: Ինչո՞ւ Մարքսի *Քափիթալը* տեղ չի գտներ ամերիկեան տնտեսագիտական կրթութեան մէջ, մինչդեռ Զինը կրնայ տեղ մը գրաւել նոյն կրթական համակարգին մէջ, երբ երկուքն ալ հակառակ են ամերիկեան հիմնահոսանքին: Պարզապէս որովհետեւ Մարքսը ուղղակի սպառնալիք մըն է Wall Street-ին, մինչդեռ Զինի գիտելիքը հսկողութեան տակ է տակաւին: Ամբողջ աշխարհը չորս տարին անգամ մը կը դիտէ ամիսներ շարունակուող ամերիկեան նախագահական ընտրարշաւային թատերգութիւնը՝ շատ աւելի գրաւիչ քան Շեքսփիրի թատերգութեան մը լաւագոյն բեմադրութիւնը: Այս թատերականացուած ընտրարշաւները առայժմ հեռու են Զինի ուսումնասիրութենէ մը ազդուելու կարելիութենէն:

5.-Զինը հայերուս յիշեցնել պիտի տայ հայոց պատմութեան գիրքերը: Հայերը միակը չեն որոնք տակաւին չունին ժողովրդական պատմութիւն: Հայաստանի եւ սփիւռքի դպրոցներուն մէջ հայոց պատմութիւնը ներկայացուած է թագաւորներու, նախարարներու եւ կաթողիկոսներու բացարձակացման միջոցով: Ամէն քայլ անձ մըն է որ կը շողշողայ ու կը փայլի՝ մեծ մասամբ իբրեւ հայրենիքը փրկող (հազարաւոր տարիներ հերոսները փրկեցին հայրենիքը մինչեւ որ մնաց պատմական Հայաստանին մէկ տասներորդը եւ երեք «աւանդական» կուսակցութիւններ), երբեմն իբրեւ դաւաճան: Ի դէպ, հերոսն ու դաւաճանը կը նոյնանան պատմութեան անհատականացման առումով:

ԺԹ դարու 80-ականներուն, արեւելահայ ազգայնականութեան բուռն շրջանին, Րաֆֆի հետեւեալը կը գրէր *Սամուէլ* պատմավէպի «Յառաջաբան»-ին մէջ.

«Մեր պատմութեան մէջ գրեթէ բոլորովին մոռացուած է *ամբոխը*. Մեր պատմագիրները չեն նկատել, որ բացի թագաւորներից եւ իշխաններից, բացի հոգեւորականներից եւ զինուորներից, Հայաստանում կար եւ *ժողովուրդ*, որ ապրում էր, որ իւր կեանքն ունէր, որ իւր տօները, հանդէսները եւ ցնծութիւններն ունէր, եւ որի հոգեկան եւ բարոյական հակումները արտայայտւում էին այս եւ այն հասարակական երեւոյթների մէջ: Մեր պատմութեան մէջ ժողովուրդը չկայ, կան միայն տիրապետողներ: Մենք չգիտենք, ինչպէ՞ս էր ապրում հայոց շինականը, ի՞նչ տեսակ յարաբերութիւնների մէջ էր իւր տէրերի հետ, կամ ի՞նչ էր ուտում եւ ի՞նչ էր հագնում եւ ի՞նչ տեսակ զուարճութիւններ ունէր: Մենք չգիտենք, թէ ի՞նչ էր շինում հայոց արհեստաւորը, ո՞ր երկրների հետ առեւտուր ունէր հայոց վաճառականը, կամ ի՞նչ տեսակ անասուններ էր սնուցանում հայոց խաշնարածը: Մեր պատմութիւնը լուռ է այդ բոլորի մասին: Բայց վէպի համար դրանք կարեւոր են:

4

3

## ՀԱՅ ՏՊԱԳԻՐ ԳԻՐՔԻ 500-ԱՄԵԱԿ... ԳԻՏԵԼԻՔԻ ԽԶՈ՞ՒՄ

[...]

«Եւ այդպէս, մեր պատմութիւնը, իբրեւ չոր ու ցամաք տարեգրութիւն, խիստ նուազ նիւթ է տալիս մի վիպասանի, որով կարող լինէր նա նկարել անցեալի ճիշտ պատկերը իւր բոլոր երեւոյթներով:»(5)

Րաֆֆիի համար ժողովուրդը կարեւոր էր այնքանով որ նիւթ տրամադրէր իր վէպերուն: Իր գրութիւններուն մէջ ան ժողովուրդին համար պայքարող մը չէր, իշխանական կարգերու դիմադրող մը չէր: Իրեն համար ժողովուրդը իշխանականներուն ենթական էր եւ այդ ենթական էր զոր կը փափաքէր տեսնել հարուստ, մանրամասնուած ու գեղագիտացուած: Բայց նոյնիսկ իր այս ծիրին մէջ, Րաֆֆիի դիտարկումը ուշագրաւ է եւ իրական կը հնչէ այսօր եւս:

Րաֆֆիէն ետք, Խորհրդային Հայաստանի մէջ փորձեր կատարուեցան հայոց պատմութեան մէջ տեսնել հասարակական շերտը: Մարքսիսթական գաղափարախօսութիւնը դրականապէս օգնեց այս քայլին դիմելու: Գրուեցան ոչ մեծ քանակութեամբ գիրքեր եւ յօդուածներ, ուր վերընթերցուեցան նոյն պատմական բնագիրները տարբեր անկիւններէ: Օրինակ, Ներսէս Թովմասեանի *Հայ սոցիալ-տնտեսագիտական միտքը վաղ միջնադարում*(6) աշխատութիւնը: Բայց ասոնք, նոյնիսկ Խորհրդային պայմաններուն, չդարձան հայ պատմագրութեան բաղկացուցիչը, քանի որ համայնավարութիւնը կուսակցական իշխանականութեան վերարտադրութեան մեքանիզմի մը վերածուեցաւ, եւ շատ կողմերով քօղարկուած հակա-մարքսիսթական քաղաքականութիւն մը վարեց (ազգ պետութիւններու (nation state) կազմութիւնը եւ ամրացումը՝ որ ԺԹ. դարու քափիթալիզմի ձեռնարկներէն մէկն էր, կամ դրամի կուտակումը յաւելեալ արժէքի (surplus value) գործադրութեամբ՝ ի շահ պետութեան, եւլն.): Ալ ուր մնաց Հայաստանի «անկախացումէն» ետք, մանաւանդ Քոչարեան-Սարգսեան օլիկարքական ազգայնապաշտութեան ամբոխավարական շրջանին:

6.-Ուսումնական ձեռնարկներու (տպագրուած գիրքերու) տեղեկութիւնները վերջնական են, անառարկելի, որպէսզի դիւրութեամբ ենթարկուին տարեվերջի թուանշանային գնահատումի: Գիտելիքը համանուն դարձած է թուանշանին, թուանշանն է որ ուսումնական համակարգին մէջ կը սահմանէ գիտելիքին որակը (ստոյգ՝ անորակութիւնը): Այն աշակերտը որ կը հարցադրէ (հարցադրել չի նշանակեր հերքել) Տիգրան Մեծի մեծութիւնը կը ստանայ զէրօ, քանի որ փորձած է փշրել գիտելիքի կարծրութիւնը:

7.-Մունիր Ֆաշէ կը համառօտագրէ արդի կրթութեան հարցը.

«Մենք յաճախ չենք նկատեր կրթութեան, գիտելիքի եւ զարգացումի բնագաւառներուն մէջ գործող անպարկեշտութիւնը, որովհետեւ յաճախ (դպրոցներուն մէջ) բաւական պաշտպանուած ենք կեանքի հետ կապ ունենալէ: Այս պաշտպանուածութիւնը տեղի կ՚ունենայ շեշտադրելով բառային, խորհրդանշային [symbolic] եւ թեքնիք «գիտելիքը», արգիլելով մարդոց փորձառութիւնն ու շրջապատը, հետապնդելով մարդը գնահատելու միջոցները, եւ անտեսելով պատմութիւնը (մարդոց, գաղափարներու պատմութիւն...): Օրինակ, 1970-ականներուն, իբրեւ Արեւմտեան Ափի (Պաղեստին) բոլոր դպրոցներու մաթեմաթիքի ուսուցումի գլխաւոր վերահսկիչ, երեխաներուն շարունակ կը հարցնէի մէկ հարցում մը. «արդեօ՞ք 1=1»: 1=1-ը իրական է դասագիրքերու մէջ եւ քննութիւններու ժամանակ բայց իրական կեանքի մէջ ան ունի իր գործածութիւնները, չարաշահումները, թերագնահատումները, բայց չունի իրական օրինակներ: Դասագիրքերու մէջ մենք կը վերացականացնենք խնձորները՝ զանոնք հաւասարեցնելով իրարու, թէեւ իրական կեանքին մէջ չկան երկու հաւասար խնձորներ: Երբ աշակերտներն ու ուսուցիչները կը բողոքեն, կ՚ըսեմ իրենց՝ «պարզապէս գործածեցէք ձեր զգայարաններն ու փորձառութիւնները»: 1=1 տիեզերականօրէն ճիշդ յայտարարութիւն մը չէ: Նոյնպէս, 1+1=2 իրական է միայն սակաւաթիւ պարագաներու: Այլ կերպ խօսիլը պարզապէս դասաւանդումի անհամեստութիւն է: Նոյնն է նաեւ երբ կ՚ըսենք թէ Նյութընն գտաւ ծգողութիւնը: Գրեթէ բոլոր մէկ տարեկան երեխաները կը յայտնաբերեն զայն: (Օրինակ, երբ թոռնիկս 15 տարեկան եղաւ, օր մը տեսայ թէ ինչպէս հացահատիկները կը վերցնէ եւ կը դնէ բերանը: Ամէն անգամ որ հատիկ մը կորսնցնէ, զայն կը փնտռէ վարը, երբե՛ք վերը): Սորվեցնելով որ Նյութընն յայտնաբերեց ծգողականութիւնը, մենք ոչ միայն կը ստենք, այլեւ կը ծախողինք բացայայտելու Նյութընի իրական ներդրումը: Նոյնպէս, դասաւանդելով որ Քոլումպուսը յայտնաբերեց Ամերիկան...:»(7)

8.-Կրթութիւնը իր բովանդակած անվիճելի գիտելիքներուն, անշեղելի օրէնքներուն եւ անվերջ պարտադրանքներուն շնորհիւ դարձած է անհրապոյր: Պիլ Ուաթթերսընի (Bill Watterson) *Calvin and Hobbes* երգիծանկարներու շարքը սուր կերպով կը պատկերէ արդիական կեանքի հակասութիւնները: Անոնցմէ մէկը՝ կազմուած չորս նկարներէ, կը գծագրէ սեղանին առջեւ նստած դաս սորվող Քալվինը եւ քովը նստած Հոպպսը: Տեղի կ՚ունենայ հետեւեալ խօսակցութիւնը.

«ՔԱԼՎԻՆ - Եթէ *ինձի* հարցնես, այս պարտականութիւնները քեզի չեն սորվեցներ ինչպէս գրել: Անոնք քեզի կը սորվեցնեն ինչպէս գրելը *ատել*: Ժամկէտներ, գրելու օրէնքներ, թուանշաններ... ինչպէ՞ս կրնաս ստեղծագործական ըլլալ եթէ մէկը անընդհատ կը հետապնդէ քեզի:

ՀՈՊՊՍ - Կարծեմ պէտք է ջանաս շատ չմտածել վերջնական արդիւնքին մասին եւ հաճոյք ստանաս ստեղծագործելու ընթացքէն:

ՔԱԼՎԻՆ - Ամէն անգամ որ այդպէս կ՚ընեմ, ինքզինքս կը գտնեմ դպրոցի հոգեբանական գրասենեակը:

ՀՈՊՊՍ - Լաւ. երեւի ոչ *այդքան* շատ հաճոյք:»(8)

Դպրոցն ու համալսարանը, այսպէս, կ՚արտադրեն գրողներէ, աքատեմիքներէ եւ փրոֆեսիոնէլներէ կազմըւած հսկայ մեքանիզմ մը եւ գիտելիքի վերահսկուած շուկայ մը՝ կտրուած կեանքի փորձառութենէն եւ զբաղուած ինքնավերարտադրութեամբ: Այս խաւին հետ բացարձակապէս անկարելի է խօսիլ վերոյիշեալ եւ ներքոյիշեալ նիւթերուն մասին: Անոնք ամէն տեղ են, կ՚իշխեն, կը հրամայեն, կը զբաղուին ինքնագովաբանութեամբ, կը ստիպեն քեզի խօսիլ իրենց լեզուով, կը սահմանեն *քու* տեղդ *իրենց* հասարակութեան մէջ, հաճոյք կը ստանան նոյնաբանութիւններու կրկնութիւններով եւ չեն ձանձրանար կարծրատիպերու կրկին հաստատումով:

Հայաստանի մէջ ԻԱ դարը սկիզբ դրաւ այլընտրանքային գրական, մշակութային եւ գաղափարական տեղաշարժերու, որոնք համախմբուեցան զանազան շարժումներու եւ գրական ու գեղարուեստական հանդէսներու շուրջ: Հանդէսներէն կարելի է յիշել՝ *Ինքնագիր* (խմբագիր՝ Վիոլէտ Գրիգորեան, տնօրէն՝ Վահան Իշխանեան), *Գրանիշ* (խմբագրական խորհուրդ՝ Աշոտ Գաբրիէլեան, Արքմենիկ Նիկողոսեան, Կարէն Անտաշեան, Յասմիկ Յակոբեան, Արամ Պաչեան), *ա* ակտուալ արուեստ ամսագիր (համախմբագիրներ՝ Էլլա Զաքարեան, Վարդան Ֆերեշէթեան, Միսակ Խոստիկեան, Լեւոն Գիւլխասեան, Մկրտիչ Մաթեւոսեան, Սիրանոյշ Դվոյեան) եւ *Առաջին ապառնի*, որոնք բոլորն ալ ունին ոչ-պետական հովանաւորութիւն եւ որոնց կը գործակցին Հայաստանի եւ փոքր չափով նաեւ սփիւռքի ազատագրուած միտքով գրողներու ամբողջ հոյլ մը: Յառաջացան նշանակալի քանակով համացանցային կայքեր՝ *Գրանիշ գրական ակումբ* (9), *Գրողուցաւ*, ժամանակին կից գրականութիւն (10), *Ռեւիզոր*, արուեստի պատմութեան հանդէս(11), *Արտերիա*, մշակութային քննադատական ամսագիր(12), ինչպէս նաեւ անհատ գրողներու պլոկեր: Հիմնուեցան արուեստի նոր հիմնարկներ՝ AICA-Հայաստան հասարակական կազմակերպութիւն (հիմնուած 2005), Արտ-Լաբորատորիա հասարակական կազմակերպութիւն (հիմնուած 2007), ICA/Ժամանակակից Արուեստի Ինստիտուտ (հիմնուած 2012), արուեստի նախաձեռնութիւններ՝ Ուտոպիանա մշակութային-ստեղծագործական հասարակական կազմակերպութիւն (հիմնուած 2003), DVD Յեղափոխութիւն արուեստագէտների նախաձեռնութիւն (հիմնուած 2008), եւլն.: Այս բոլորին զուգահեռ եւ ասոնց հետ կապուած, 2007-էն յառաջացան աքթիվիսթական շարժումներ, որոնք հասան չօչափելի արդիւնքներու՝ ինչպէս «Փրկե՛նք Կինօ Մոսկուայի բացօդեայ դահլիճը» շարժումը(13), կամ «Մե՛նք ենք այս քաղաքի տէրը» շարժումը(14): Անոնք յաջողեցան կասեցնել Երեւանի հանրային տարածքներու (Կինօ Մոսկուա, Մաշտոցի պուրակ) վաճառքը իշխանամերձ օլիկարքներուն: Եթէ այս աքթիվիսթները գոյութիւն ունեցած ըլլային 2007-էն առաջ, վստահաբար մեծ գլխացաւ պատճառած պիտի ըլլային Քոչարեանին՝ Հիւսիսային Պողոտայի կառուցումին համար: Իշխանական գաղափարախօսութիւնը դիմադրող եւ կեանքի փորձառութեան վրայ հիմնուած այս շարժումները կարելի է անուանել յետ-աքատեմիք (post-academic) կամ այլընտրանքային: Գիտելիքն այստեղ խզուած չէ միջավայրէն:

Եգիպտոսի մէջ յետ-աքատեմիք շարժումը սկսած էր 1990-ականներու կէսերուն: Գրական-գաղափարական այս շարժումին համար հիմնուեցան երկու սեփական հրատարակչատուներ՝ Տար Մերիթ եւ Տար Ալ-Ծարքեյաթ, որոնք տպագրեցին հսկայ քանակութեամբ գրականութիւն, յաճախ ենթարկուելով տարբեր տեսակ հետապնդումներու: Նոյն տարիներուն Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ մէջ սկսաւ թատերական ազատ շարժում մը, յառաջացան փոքրակազմ նոր խումբեր՝ համարձակ գաղափարներով մղուած, որոնք ներկայացումներ կու տային որեւէ տեղ, կ՚իջնէին փողոց, կ՚երթային պետութեան կողմէ լքուած ու արհամարհուած վայրեր: ԻԱ դարու սկիզբը, Եգիպտոսի պատմութեան ամենաերկարամեայ մշակոյթի նախարարը պայքար մղեց անոնց դէմ, պետական տարբեր միջոցներով փորձելով չէզոքացնել զանոնք, օրինակ՝ զանազան անորակ փառատօներու անուան տակ զանոնք համախմբելով պետական հովանաւորութեան տակ: Ասոնցմէ գրեթէ ոչ ոք մուտք գործած է Աղեքսանդրիոյ Մատենադարանը իբրեւ դասախօս, ալ ուր մնաց իբրեւ գիտաշխատող: Այս նոր գաղափարական շարժումին անմիջական արդիւնքն էր 25 Յունուարի յեղափոխութիւնը: Մտաւոր առումով ազատագրուած այս երիտասարդութիւնն էր յեղափոխութիւնը հրահրողը, որոնց անմիջապէս միացաւ եգիպտացի ժողովուրդն իր զանազան խաւերով:

Արդ, դպրոցական-համալսարանական կրթութեան փակուածութեան հակազդեցութիւնն է յետ-աքատեմիք մտածողութիւնը, որ համանուն է գիտելիքի ազատագրութեան եւ որուն նպատակն է գիտելիքի ու շրջապատի միջեւ ստեղծուած արհեստական խզումին վերացումը:

Յետ-աքատեմիքը ժամանակային արտայայտութիւն մը չէ, թէեւ, հասկնալի է, ան պիտի կապուած ըլլար աքատեմի հասկացողութեան հաստատագրութեան հետ՝ եթէ ոչ իբրեւ անոր անպայմանօրէն յաջորդը, գոնէ իբրեւ անոր այլընտրանքը: Վերոյիշեալ հայկական եւ եգիպտական շարժումները մեծապէս կապուած են յետարդիականութեան (postmodernism) հետ, բայց ոչ հիմնահոսանքին, քանզի հիմնահոսանքային յետարդիականութիւնը գեղարուեստականացումն է նէօլիպերալիզմին՝ քափիթալիզմի ամենէն աւելի վայրագ ու կլանիչ փուլին:

Ի-ԻԱ դարերու յետաքատեմիքներէն կարելի է նշել՝ Ֆրանքֆորդի Դպրոցը (Frankfurter Schule), Նոր Ձախը (New Left), Մարք Նշանեան, Սեդա Տատոյեան, Գրիգոր Պըլտեան, Անահիտ Քասապեան, Մունիր Ֆաշէ, Ասա՚ատ Ապու Խալիլ, Ժորժ Թարապիշի, Antonio Gramsci, Edward Said, Noam Chomsky, Howard Zinn, Alain Badiou, Slavoj Žižek եւ հարիւրաւոր նման հռչակաւոր անուններ:

Զուտ կրթական առումով, այսօր աշխարհի մէջ զգալի շարժում կայ գիտելիքը ձերբազատելու իշխանական պարտադրանքէն, ինչպէս հնդկական Swaraj շարժումները(15), պաղեստինցի Մունիր Ֆաշէի Ալ Մուլթաքա Ալ Թարպաուի Ալ Արապի(16), աւստրիացի Իվան Իլլիչի Ապադպրոցական Հասարակութիւնը (Deschooling Society)(17), եւ շատ ուրիշներ:

## ԳԻՏԵԼԻՔԻ ԱՆՑՈՒՄԸ ԲԱՆԱՒՈՐԷՆ ԴԷՊԻ ԳՐԱՒՈՐ

Կամ՝ գրաւոր գիտելիքին ճնշումը բանաւորին վրայ:

Ասիկա ծաւալուն նիւթ մըն է եւ շատ բան գրուած է ասոր մասին: Պիտի համառօտագրեմ մէկ պարագայ մը՝ Սայեաթ-Նովան: Ինչո՞ւ Սայեաթ-Նովան: Զեմ գիտեր: Հաւանաբար որովհետեւ քանի մը ամիս առաջ խնդրեցին ինձմէ դաշնակով նուագակցիլ Սայեաթ-Նովայի երգերը, առանց որ ես ինքս համոզուած ըլլայի կատարածիս վրայ:

Սայեաթ-Նովա (1712-1795) հայկական բանաւոր գիտելիքի արգասիքն էր: Իբրեւ բանաւոր արուեստագէտ, ան բանաստեղծութիւն կը գրէր երեք լեզուով՝ հայերէն, վրացերէն եւ թուրքերէն (հայ ըլլալուն եւ ըլլալնուս՝ «թուրքերէն» բառը պէտք է գործածենք հայերէնէն ու վրացերէնէն ետք, թէեւ իր թուրքերէն երգերը թիւով ամենաշատն են), կը ստեղծէր անոնց երաժշտութիւնը, կ՚երգէր ու ինքն իրեն կը նուագակցէր քամանչայով (թէեւ «նուագակցութիւն» բառը այնքան ալ ճիշդ չէ բանաւորութեան համար, քանի որ ան ուշադրութիւնը կատարում-մեկնաբանութենէն կը շեղէ դէպի բանաւորութեան համար անհարազատ երկրորդում-մեկուսացումը): Այդ երեք լեզուները, բնականաբար, Սայեաթ-Նովա չէր սորված դպրոցներու մէջ ինչպէս կը սորվինք այսօր, այլ իր ապրած տեղավայրերու կենդանի լեզուներն էին, սերտօրէն կապուած բնիկ փորձառութեան հետ: Այս բոլորը՝ երեք լեզուներու իմացութիւն, բանաստեղծ, երաժշտահան, երգիչ եւ նուագող, ապշեցուցիչ բազմազանութիւն մը չէ բանաւորութեան համար, քանի որ բանաւորութիւնը չի ճանչնար «մասնագիտութիւններ», այնտեղ ամէն բան կը շարժի միասնական ընթացքով: Սայեաթ-Նովայի բացառիկութիւնը կու գար ոչ թէ այս բոլորի տիրապետումէն, այլ իր յօրինում-կատարումի բովանդակութեան (գիտելիքի) որակէն ու ցնծութիւն պատճառելու յատկութենէն: Իսկ ցնծութիւնը՝ ոչ թէ արդի քէֆ-ուրախութեան այլ համակրանքի ու հաւանութեան շատ աւելի խոր իմաստով, բանաւոր ընկալումի էական յատկանիշ մըն է: Ընկալողը չի գոյանար ծափահարելու կամ սուլելու համար, այլ հոգեպէս մասնակցելու եւ գիտելիքը վերապրելու:

Հասանք Ի դարու արդիականութեան՝ աքատեմիք գիտելիքի կիզակէտը: Գրաւորութիւնը որոշեց որ բանաւորութիւնը կորուստի եզրին է եւ իր պարտականութիւնը համարեց հաստատագրել զայն, իր՝ գրաւորութեան տիրապետած միջոցներով:

Սայեաթ-Նովայի միասնական գիտելիքը մասնատուեցաւ: Աքատեմիքները չէին կրնար երեք լեզու (հայերէն, վրացերէն, թուրքերէն) գիտնալ, հետեւաբար Սայեաթ-Նովայի բանաստեղծութիւններու ուսումնասիրութիւններն ու հրատարակութիւնները բաժնեցին երեք խումբի՝ ըստ լեզուական գործօնին: Բազմացան երաժշտանոց աւարտած «փրոֆեսիոնէլ» կատարողները իրենց ճշգրիտ բաժանումներով՝ մեներգիչ, նուագող, երաժշտահան: Կատարողները պէտք ունեցան գրուած նոթաներու: Երաժշտահանները ստեղծեցին թէ՛ իրենց յօրինողական թեքնիքը բացայայտող եւ թէ՛ նուագակցողներուն համար որոշակի կատարողական մարտահրաւէր ներկայացնող գործիքային նուագակցութիւններ: Ընդհանրապէս, այս նուագակցութիւններուն հարմոնիք ու հիւսուածքային խտութիւնն ու բարդութիւնը ճնշեցին երգին շարժունակութիւնը, կատարողական տարբերակայնութեան կարելիութիւնը եւ երգչային ձայնային չերտաւորումներուն հնարաւորութիւնը: Հասանք այնտեղ, որ մէկ Սայեաթ-Նովա մը մեկնաբանել-կատարելու համար պէտք ունեցանք բանասէրի, երաժշտահան-մշակողի, մեներգիչի եւ գործիքային կատարողի, որոնցմէ ոչ մէկը ընդունակ է միւսին աշխատանքը կատարել: Բանաւոր Սայեաթ-Նովայի միասնական գիտելիքը խզուեցաւ գրաւոր բազմաթիւ գիտելիքներու:

Արդ, ինչպէ՞ս մօտենալ Սայեաթ-Նովա երեւոյթին այսօր:

Առարկութիւն չկայ Սայեաթ-Նովայի մեղեդիներուն համար յօրինել ամենատարբեր նուագակցութիւններ, նոյնիսկ զանոնք վերածել ճազի եւ փոփի: Խնդիրը կը սկսի երբ այս բոլորը կը սեւեռի Սայեաթ-Նովայի անձին ու անունին վրայ եւ կ՚ամրացուի իբրեւ զուտ ու անխառն Սայեաթ-Նովա: Կարեւոր է այստեղ հարցը առնչել նաեւ Կոմիտաս Վարդապետի երեւոյթին հետ: Վերջինս հայկական բանաւոր երգին հետ վերաբերուեցաւ ճիշդ այնպէս ինչպէս փրոֆեսիոնէլները՝ Սայեաթ-Նովայի հետ: Այսինքն, Կոմիտաս Վարդապետ հայկական բանաւորութիւնը վերածեց գրաւորութեան, եւ այդպէս ընելով նոր «ստեղծագործութիւնը» արդարօրէն կապուեցաւ իր

6

# «ՀԱՅ ԳԻՐՔԸ ԵԳԻՊՏՈՍԻ ՄԷՋ 1888-2011 ՄԱՏԵՆԱԳԻՏԱԿԱՆ ՑՈՒՑԱԿ»

Ի տարբերութիւն հայ գաղութներու մեծամասնութեան, Եգիպտոսի հայ գաղութը Մեծ Եղեռնէն առաջ իսկ կայացած ու կազմաւորուած համայնք մըն էր: Տնտեսական, մշակութային, քաղաքական, կրթական թէ բարեսիրական ոլորտներէն ներս խոր արմատներ ունեցող այս գաղթօճախը, բնականաբար պիտի ըլլար նաեւ հայ գրչի ու մտքի գործիչներու հանդիպման վայր մը: Արդարեւ, Եգիպտոս այցելած, ապրած, գործած կամ անկէ անցած են մեր մտաւոր մշակոյթի կարկառուն ներկայացուցիչներէն շատեր:

Այս ազգային-մշակութային կեանքի եռուզեռին մէջ հայատառ մամուլն ու գիրքը, մէկ խօսքով տպագրութիւնը, կ'ապրին նշանակալից վերելք մը՝ հայ տպագրութեան եւ մշակութային ժառանգութեան կտակելով լուրջ ու ծանրակշիռ ներդրում մը:

Այս ծիրէն ներս, եգիպտահայ կեանքի երկար պատմութեան ընթացքին լոյսին կու գան բազմաթիւ անուններով թերթեր ու գիրքեր, որոնց հաւաքագրումը, թուարկումը եւ ցանկագրումը կը կարօտէր բծախնդիր, բարեխիղճ, լուրջ ու մանրազնին աշխատանքի, հետեւողական պրպտումի:

Այս երախտաշատ, այլապէս ալ խիստ օգտակար աշխատանքը կատարած է Տոքթ. Սուրէն Պայրամեան՝ ուսումնասիրողի եւ հետազօտողի գրասեղանին յանձնելով յոյժ կարեւոր երկու աշխատութիւններ՝ «Հայ Մամուլը Եգիպտոսի Մէջ. մատենագիտական ցուցակ» (Գահիրէ, 2005) եւ «Հայ Գիրքը Եգիպտոսի Մէջ 1888-2011. մատենագիտական ցուցակ» (Գահիրէ, 2012):

Գրասեղանիս վրայ է այս երկրորդ հատորը, որ կը բաղկանայ 287 էջերէ: Հատորը տպագրուած է Գահիրէի Ազգային Առաջնորդարանի Փօլ Քիլիտճեան հրատարակչական ֆոնտին միջոցներով (Տպագրատուն Նուպար-Գահիրէ): Հեղինակը հատորը ձօնած է իր բարեյիշատակ ծնողքին՝ Նարպէյ եւ Սիրանոյշ Պայրամեաններուն, «որոնց անձնազոհ եւ հայավայել դաստիարակութիւնը ներշնչման աղբիւր դարձաւ հայ մշակոյթին, գիրին եւ գրականութեան հանդէպ ունեցած պաշտամունքիս» կը գրէ ան: Հատորը նուիրուած է հայ տպագրութեան 500-ամեակի փառապանծ յոբելեանին:

Հատորին մուտքին հեղինակը շնորհակալիք կը փոխանցէ այն բոլոր գրադարաններու եւ մարմիններու պատասխանատուներուն, որոնք դիւրացուցած են իր այս ուսումնասիրութեան իրագործումը: Իր հերթին, Երեւանէն, Տոքթ. Պետրոս Պետիրեան գնահատանքի խօսք կ'ուղղէ հեղինակին: Ապա «Յառաջաբան» մը հեղինակին կողմէ. որմէ ետք կը ծանօթանանք հեղինակին որդեգրած աշխատելաձեւին, գիրքին կառոյցին, ներկայացման ոճին, օգտուելու եւ օգտագործելու եղանակներուն:

Կան նաեւ ցանկեր համառօտագրութիւններու եւ օգտագործուած աղբիւրներու: Այս բոլորը առաւել հասկնալի եւ մատչելի կը դարձնեն գիրքէն տեղեկութիւններ քաղելու եւ սորվելու մեր ցանկութիւնը:

Կը պարզուի, որ Եգիպտոսի մէջ առաջին հայ գիրքը լոյս տեսած է 1888-ին. մինչեւ 2011 թուականը հրատարակուած են 1932 անուն հեղինակային գիրքեր, գեղարուեստական գրականութեան հատորներ, գրքոյկներ, թերթօններ, հոգեւոր գրականութիւն, մատենաշարներ, տարեցոյցներ, թարգմանութիւններ, կանոնագրութիւններ, յուշագրութիւններ, յոբելենական հրատարակութիւններ, վերատպութիւններ, երգարաններ եւ այլն: Հեղինակը իւրաքանչիւր գիրքի մասին կու տայ մանրամասն տեղեկութիւններ (հրատարակութեան տարեթիւ, էջ, չափ, ծաւալ, տպարան, մատենաշարի թիւը, տպագրութեան վայրը, այդ օրուան սակը, հրատարակութիւն եւ այլն): Իրօք խիստ բծախնդիր ու տքնաջան աշխատանք կ'ենթադրէ այսքան մանրամասնութեանց հաղորդումը: Մատենագիտական այս օգտաշատ գիրքի աւարտին կան այնպիսի ցանկեր, որոնք կը հեշտացնեն ցանկացած պրպտողի գործը. ինչպէս՝ անձնանուններու, վերնագրերու, թարգմանիչներու, մատենաշարներու, հրատարակութիւններու, տպարաններու, ծրագիր-կանոնագիր յայտագիրներու, տեղեկագիր-զեկուցում-հաշուեցոյցներու, տարեցոյց-տարեգիրք-օրացոյցներու, ներառնուած մամլոյ հրատարակութիւններու:

Կարելի է ըսել՝ կատարեալ ու ամբողջական գործ մը՝ հայ մատենագէտին խիստ պիտանի:

Իսկ ո՞վ է հատորին հեղինակը՝ Տոքթ. Սուրէն Պայրամեան: Ծնած Գահիրէ՝ 1943-ին. նախակրթական ու երկրորդական վարժարաններէ ետք աւարտած Գահիրէի համալսարանը (1965) որպէս ատամնաբոյժ-վիրաբոյժ: 1975-էն անդամ Գահիրէի Պատկառելի Թեմական Ժողովին. «Յուսաբեր» օրաթերթի խմբագիր (1982-1987). Սբ. Էջմիածնայ Սահակ-Մեսրոպ շքանշանակիր(1999):

Երանի ամէն հայագաղութ ունենար իր մատենագէտը, հայ ուսումնասիրողին հրամցնելու իր ապրած գաղութին մէջ լոյս տեսած հայ գիրքերուն մատենագիտական մանրամասնեալ ու ամբողջական ցանկը: Երանի Տոքթ. Սուրէն Պայրամեանի նախաձեռնութիւնը, բծախնդրութիւնը եւ ջանադիր աշխատանքը վարակիչ ըլլան բոլոր հայագաղութներու մատենագէտներուն եւ պրպտողներուն:

Վարձքը կատար՝ հեղինակին եւ շնորհակալութիւններ անոր օգտաշատ աշխատանքին:

*(ԱՐԱՐԱՏ)* **Ա. Ռ.**

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ ՆՈՒԱԶԱԾ Է ՍՊԱՆՈՒԹԻՒՆՆԵՐՈՒՆ ԹԻՒԸ

*Հայաստանի մէջ յանցագործութիւններու ընդհանուր թիւին նուազեցման զուգահեռ արձանագրուած է որոշ տեսակի յանցագործութիւններու աճ: Այս հաստատումը կատարած է գլխաւոր դատախազի տեղակալ Մնացական Սարգըսեանը՝ Հայաստանի գլխաւոր դատախազութեան աշխատակազմի ընդլայնուած նիստին ընթացքին:*

*Դատախազութեան տուեալներով, 2012ին արձանագրուած է 15776 յանցագործութիւն, որ 796-ով նուազ է 2011-ի ցուցանիշէն:*

*Միաժամանակ բարձրացած է մարդու դէմ ուղղուած յանցագործութիւններուն թիւը՝ 3499էն հասնելով 4536-ի:*

*Բարձրացած են դիտաւորեալ կերպով առողջութեան վնաս հասցնելու (1359էն հասած է 1640-ի), սեռական անձեռնմխելիութեան դէմ յանցագործութիւններու (71-էն հասած է 105-ի), բռնաբարութիւններու եւ բռնաբարութեան փորձերու (15-էն հասած է 19-ի) դէպքերը:*

*Նուազած են սպանութիւններու (60էն նուազած է 50-ի), սպանութեան փորձերու (29-էն նուազած է 25-ի) դէպքերը: Մարդու դէմ ուղղուած յանցագործութիւններուն 86.1 տոկոսը կը հանդիսանայ առողջութեան վնաս հասցնելու յանցագործութիւնները:*

*2012 թուականին արձանագրուած է յանցագործութիւններու բացայայտման մակարդակի աճ՝ հասնելով 96.2 տոկոսի: Դատախազութիւնը նկատել տուած է, որ մարդու դէմ ուղղուած յանցագործութիւններու մակարդակի աճը պայմանաւորուած է նման յանցագործութիւններու հաշուառման բարելաւմամբ, ոչ թէ քանակական աճով:*

## ՀԱՅԿԱԿԱՆ ԳԻՆԻԻ ՏԵՍԱԿՆԵՐՈՒ ՊԱՀԱՆՋՔ՝ ԵՒՐՈՊԱԿԱՆ ԵՒ ԱՄԵՐԻԿԵԱՆ ՇՈՒԿԱՆԵՐՈՒ ՄԷՋ

*Եւրոպական հանրայայտ մատակարար մը հաստատեց, թէ հայկական գինիի տեսակները մեծապէս պահանջուած են Միացեալ Նահանգներու եւ եւրոպական կարգ մը երկիրներու շուկաներուն մէջ, շնորհիւ անոնց բարձր որակին: Հայկական գինիի տեսականին կրնայ արտածուիլ դէպի Միացեալ Նահանգներ, Ֆրանսա, Իտալիա եւ Արժանթին:*

*2008 թուականին, տարուան լաւագոյն մատակարար ճանչցըւած հայազգի Սերժ Ղուկասեան հաստատեց, թէ ինք իր երկրորդ այցելութիւնը կը կատարէ Հայաստան, «ուր նկատած եմ գինեգործութեան մարզէն ներս զգալի փո-*

4

## ՄԱՄԼՈՅ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ
## ՎԵՆԵՏԻԿԻ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ՀԱՅ ԼԵԶՈՒԻ ԵՒ ՄՇԱԿՈՅԹԻ ԱՄԱՌՆԱՅԻՆ ԽՏԱՑԵԱԼ ԴԱՍԸՆԹԱՑՔ
### Օգոստոս 2013

Վենետիկի Համալսարանի Հայ Լեզուի եւ Մշակոյթի ամառնային խտացեալ դասընթացքը, գործակցութեամբ Պո-Արաքս Մշակութային Ընկերակցութեան, տեղի պիտի ունենայ Օգոստոս 1-20:

Քննութիւնները՝ Օգոստոս 21ին: Ժամանում՝ Յուլիս 30-31ին, մեկնում՝ Օգոստոս 22-23ին:

Դասընթացքը ունի չորս մակարդակ՝ բացարձակ սկսնակներէ մինչեւ յառաջադէմներ: Դասերը տեղի կ'ունենան Երկուշաբթիէն Ուրբաթ, օրը հինգ պահ՝ առաւօտեան: Դասերու ներկայութիւնը ՊԱՐՏԱԴԻՐ է: Մասնակցութեան համար պահանջուած նուազագոյն տարիքն է 18: Դիմումները պէտք է կատարել ԱՆՁԱՄԲ եւ ԳՐԱՒՈՐ, նշելով միշտ ՀԵՌԱԽՕՍԻ, ՀԵՌԱՊԱՏՃԷՆԻ (ֆաքս) թիւ մը եւ ԵԼԳՐԱՅԻՆ (EM) հասցէ մը: Դասընթացքին զուգահեռ տեղի պիտի ունենան մշակութային այլեւայլ ձեռնարկներ:

ՓԱՓԱՔՈՂՆԵՐՈՒՆ, կէսօրէ վերջերը, ՋՐԻԱԲԱՐ ՊԻՏԻ ԱՒԱՆԴՈՒԻՆ նաեւ՝ ԴՈՒԴՈՒԿԻ և ՀԱՅԿԱԿԱՆ ՊԱՐԵՐՈՒ ԴԱՍԵՐ:

Արձանագրութեան սակն է՝ **700 €** կամ համապատասխանը՝ տարարժոյթով ըստ օրուան սակին:

Այս գումարին **500** Եւրոյի բաժինը պէտք է վճարուի կանխաւ՝ մինչեւ Մարտի **31**ը, այդ թուականէն վերջ պէտք է վճարուի **550** Եւրոյ մինչեւ ՅՈՒՆԻՍի **30**ը, որ արձանագրութեան համար վերջին պայմանաժամն է:

Արձանագրութեան մնացեալ մասը ՊԷՏՔ Է ՎՃԱՐՈՒԻ ԱՆՊԱՅՄԱՆ ՄՈՒՏՔԻ ՕՐԸ: ՎԱՐԿԱԹՂԹԱՅԻՆ վճար (Credit card) չ'ընդունուիր: **10%** զեղչ մը կը կատարուի անոնց՝ որոնք նախապէս լաւ արդիւնքով մասնակցած են դասընթացքին, գոնէ երկու անգամ: Նոյն զեղչը կը կատարուի նաեւ միասին յաճախող մօտիկ ազգականներէն մէկուն (ծնողք, քոյր, եղբայր, կողակից): ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԵԱՆ ՍԱԿԸ ՈՉ ՄԷԿ ՊԱՐԱԳԱՅԻ ԿԸ ՓՈԽՈՒԻ ԵՒ ԿԱՏԱՐՈՒԱԾ ՎՃԱՐՈՒՄԸ ՈՐԵՒԷ ՊԱՏՃԱՌՈՎ ԵՏ ՉԻ ԴԱՐՁՈՒԻՐ:

Ամէն վճարագիր (չէք), որ պէտք է անպայման ԴՐԱՄԱՏՆԱՅԻՆ եւ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ըլլայ, պէտք է հասցէագրուի միայն՝ ASSOCIAZIONE PADUS-ARAXES եւ ղրկուի՝ Assoc. Padus-Araxes – c/o Dip. Studi Asiatici – San Polo 2035- 30125 Venezia (Italia): Ընդունելի չեն անձնական եւ փոստային չէքերը: Ամէն չէք պէտք է ունենայ դրամատան երաշխիքը եւ յենուի բաժնեկից իտալական դրամատան մը: Անոնք որ կը նախընտրեն դրամատնային փոխանցումով (bank transfer) վճարել, պիտի ստանան այս մասին հարկաւոր տեղեկութիւնները (հաշուի թիւ եւլն.): Դրամատնային բոլոր ծախսերը դիմողին կը պատկանին: Իսկ փոստի միջոցով փոխանցումը պէտք է կատարուի միայն միջազգային վճարագիրներու միջոցով, որ է՝ mandat-poste international / international money-order:

Կ'ընձեռուի բնակութեան հնարաւորութիւն համալսարանական ուսանողատուն մը՝ Վենետիկի պատմական կեդրոնին մէջ, օժտուած՝ խոհանոցային յարմարութիւններով: Յուլիս 30-Օգոստոս 22 ներառեալ, ամբողջ շրջանին համար, բնակութեան սակն է՝ **820 €** առանձին սենեակի մէջ, **610 €** երկու հոգինոց սենեակի մէջ: Բնակութեան վճարը, տուեալ ժամանակաշրջանի ընթացքին, ենթակայ չէ օրական հաշուարկումի: Ճաշ մը կամ ընթրիք մը, Համալսարանի սեղանատան կամ այլ պայմանագրուած հաստատութեան մը մօտ, պիտի արժէ **8-9 €**: Անոնք որ կը խորհին նշեալ թուականներէն աւելի առաջ ժամանել կամ յետոյ մեկնիլ, պէտք է իրենք հոգան իրենց բնակութեան յարմարութիւնը այդ օրերուն համար:

Յաւելեալ ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՆԵՐու համար ելգիր մը ուղարկել հետեւեալ հասցէին՝ daniela@padusaraxes.com կամ հեռապատճենել **+39.041.2414448** թիւին: Ի հարկին հեռաձայնել **+39.041.2414448** թիւին, Երկուշաբթի եւ Հինգշաբթի առաւօտները ժամը **10.30-13.00**, և կամ **+39.347.4562981** թիւին՝ Երեքշաբթի, Չորեքշաբթի և Ուրբաթ իրիկունները ժամը **20-21.30** (ԻՏԱԼԻՈՅ ԺԱՄՈՎ): Լաւ ստուգել երկիրներու միջեւ ժամերու տարբերութիւնը: Բացակայութեան պարագային կրկին փորձել եւ յստակ ու հասկնալի լուր մը թողուլ ընկալուչին՝ նշելով անուն եւ հեռախօսի համար: ԵՐԲԵՔ չհեռաձայնել Վենետիկի Համալսարանի գրասենեակներուն: Բջիջային համարին կարելի է զանգել նաեւ Երկուշաբթի և Հինգշաբթի առաւօտները:

# ՁԱՀԱԿԻՐ

## ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ**

**ՀԱՆԴԻՊՈՒՄ-ԶՐՈՅՑ**

**ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԵՆԷՆ ՄԻՆՉԵՒ ՍՈՒՄԿԱՅԻԹ**

Ելոյթ կ'ունենան

**ՀԱՅԱՍՏԱՆԷՆ ՅԱՏԿԱՊԷՍ ՀՐԱՒԻՐՈՒԱԾ**

**ՀՀ ԳԻՏՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ ԱԿԱԴԵՄԻԱՅԻ ԱՐԵՒԵԼԱԳԻՏՈՒԹԵԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏԻ ՏՆՕՐԷՆ**

**ՓՐՈՖ. ՌՈՒԲԷՆ ՍԱՖՐԱՍՏԵԱՆ**

եւ

**ՀՀ ԳԻՏՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ ԱԿԱԴԵՄԻԱՅԻ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏԻ ՓՈԽ-ՏՆՕՐԷՆ**

**ՓՐՈՖ. ԿԱՐԷՆ ԽԱՉԱՏՐԵԱՆ**

**ԿԻՐԱԿԻ, 24 ՓԵՏՐՈՒԱՐ 2013, ԺԱՄԸ 7:30-ին**

**«ՊԸԼԸՔՏԱՆԵԱՆ» ՀԱՆԴԻՍԱՍՐԱՀ, ՀԵԼԻՈՊՈԼԻՍ**

*Միրալիր հրաւէր բոլորին*

**Ծանօթ.** Նոյն օրը դպրոցին խաղադաշտը պիտի տրամադրուի ինքնաշարժերը կայանելու համար:

**ԴԻՒԱՆ ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**

## ՀԱՅԿԱԿԱՆ ԳԻՆԻԻ ՏԵՍԱԿՆԵՐՈՒ ՊԱՀԱՆՋՔ՝ ԵՒՐՈՊԱԿԱՆ ԵՒ ԱՄԵՐԻԿԵԱՆ ՇՈՒԿԱՆԵՐՈՒ ՄԷՋ

3

*փոխութիւններ: Հայաստան պէտք է զարգացնէ զբօսաշրջութեան յատուկ գինիի մարզը, եւրոպական փորձառութեամբ»:*

*«Հայաստան բոլոր հնարաւորութիւնները ունի (զարգանալու), որովհետեւ կը պահէ իր ազգային եւ աւանդական սովորութիւնները: Նաեւ ունի խաղողի լաւ տեսականի: Անոր միայն կը պակսին յաւելեալ փորձառութիւն եւ արուեստաբանութիւն (թեքնոլոճի) գինիի արտադրութեան ասպարէզին մէջ», նշեց մատակարարը:*

## ՀԱՅ ՏՊԱԳԻՐ ԳԻՐՔԻ 500-ԱՄԵԱԿ... ԳԻՏԵԼԻՔԻ ԽԶՈ՞ՒՄ

4

անունին հետ: Նոյնն է Սայեաթ-Նովայի պարագան, ուր Մ. Մազմանեանի, Ա. Տէր-Ղեւոնդեանի, Վ. Տալեանի, Կ. Զաքարեանի, Ա. Դոլուխանեանի, Վ. Արարատեանի, Ռ. Աթայեանի «մշակում»-ները(18) կը կրեն վերջիններու անհատականութիւններուն յստակ դրոշմը: Անշուշտ, չեմ առաջարկեր հանել Սայեաթ-Նովայի անունը, որ պարզապէս կարեւոր վրիպում մը պիտի ըլլար: Կոմիտասի բանաւորութիւնը հեղինակ չունէր՝ ինչպէս փոլքլորն ընդհանրապէս, մինչդեռ Սայեաթ-Նովայի բանաւորութիւնը ունէր հեղինակ՝ նոյն ինքը Սայեաթ-Նովան: Փափաքս է միայն չտալ այն տպաւորութիւնը, որ ներկայացուածը վճռականօրէն կ'արտայայտէ Սայեաթ-Նովայի գիտելիքին ամբողջութիւնը: Շատ ձեւեր կարելի է գտնել այս թիւրիմացութենէն խուսափելու համար՝ ի նպաստ Սայեաթ-Նովայի արդար ընկալումին: Պարզապէս պէտք է մտածել: Կարելի է, օրինակ, աւելի չեշտել «մշակող»-ներուն անունները: Կարելի է նուագահանդէսներուն եւ ձեռնարկներուն սկիզբը բացատրել այս հարցը: Կարելի է կատարողները ազատագրել գրուած նոթայի անվիճարկելի վիճակէն: Կարելի էր անցեալ Նոյեմբեր 22-ի Սայեաթ-Նովայի ձեռնարկին համար գտնել աւելի խելամիտ դաշնակահար մը...:

(Շար. 1/2)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

1.-Mounir Fasheh: *Bombardment by "rootless" and "cluster" words*, http://almoultaqa.com/news_view_en.aspx?NewsId=75

2.-Seta B. Dadoyan: *The Armenians in the Medieval Islamic World: Paradigms of Interaction*, Volume one, Transaction Publishers, 2011

3.-Howard Zinn: *A People's History of the United States*, առաջին հրատարակութիւն՝ 1980

4.-Adel Ferguson: "Controversy brews over school textbook", *The Arlington Times*, 5 Հոկտեմբեր 2005, էջ A7

5.-Րաֆֆի, *Երկերի ժողովածու*, հատոր եօթերորդ, Հայպետհրատ, Երեւան, 1963, էջ 6

6.-Ներսէս Թովմասեան, *Հայ սոցիալ-տնտեսագիտական միտքը վաղ միջնադարում*, Հայկական ՍՍՀ ԳԱ Հրատարակչութիւն, Երեւան, 1973

7.-Mounir Fasheh: *The Trouble with Knowledge*, http://almoultaqa.com/news_view_en.aspx?NewsId=86

8.-http://web.mit.edu/manoli/mood/www/calvin-full.html

9.-http://granish.org

10.-http://groghucav.blogspot.com/

11.-http://2012.revisor.am/

12.-http://www.arteria.am/hy/home

13.-Facebook: SAVE Cinema Moscow Open-Air Hall

14.-Facebook: Մե՛նք ենք այս քաղաքի տէրը

15.-http://www.swaraj.org/shikshantar/ կամ՝ http://www.swarajuniversity.org/news.html

16.-http://almoultaqa.com/default.aspx

17.-http://www.preservenet.com/theory/Illich/Deschooling/ intro.html

18.-Տե՛ս, օրինակ, *Հայ գուսանական երգեր*, դաշնամուրի նուագակցութեամբ, Հայպետհրատ, Երեւան, 1959, էջ 15-68

## «ՁԱՀԱԿԻՐ»ԻՆ

Ողբ. Անուշ Պալաեանի մահուան տխուր առթիւ Ընկեր Աւետիս Մովսէսեան կը նուիրէ 50

Ողբ. Ժիլպէր Յովակիմեանի մահուան եւ քառասունքին տխուր առթիւ Ընկեր Աւետիս Մովսէսեան կը նուիրէ 50

Ողբ. Ժիլպէր Յովակիմեանի մահուան եւ քառասունքին տխուր առթիւ Տիար Մարտիկ Պալաեան եւ զաւակունք կը նուիրեն 100

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

**ԵԿԵՂԵՑՒՈՅ ՊԱՅԾԱՌՈՒԹԵԱՆ**

Իր շատ սիրելի եւ կարօտալի ամուսնոյն, նախկին Եկեղեցւոյ եւ Գերեզմանատան Միացեալ Հոգաբարձութեան երկարամեայ Ատենապետ՝ ողբացեալ Ժիլպէր Ղուկաս Յովակիմեանի մահուան քառասունքին առթիւ եւ անոր քաղցր յիշատակին կը նուիրէ՝ Տիկին Սեդա Յովակիմեան 1000

Ողբ. Անուշ Պալաեանի (ծնեալ Ածիկեան) մահուան տխուր առթիւ Տէր եւ Տիկին Պերճ Թէրզեան կը նուիրեն 100

## ՍՈՒՐԻԱՀԱՅ ՈՍԿԵՐԻՉՆԵՐՈՒՆ ՍԵՓԱԿԱՆ ԳՈՐԾ ՀԻՄՆԵԼՈՒ ԱՌԱՋԱՐԿ

2

*չութեան բնագաւառին մէջ չահաւէտ գործունէութիւն ծաւալել:*

*Այսպիսով, շատ մասնագէտներ տեղւոյն վրայ նախանշեցին իրենց յառաջիկայ ընելիքները՝ ընդունելով առաջարկուող տարբերակներէն որեւէ մէկը:*

*Այնուհետեւ սուրիահայ ոսկերիչները շրջեցան գործարանին մէջ՝ ծանօթանալով իրենց ապագայ գործընկեր կազմակերպութեան գործունէութեան, պարզաբանելով շարք մը յուզող հարցեր:*

## ԱՏՐՊԷՅՃԱՆԱԿԱՆ ԿՈՂՄԷՆ ԿՐԱԿԱԾ ԵՆ ՀԱՅԿԱԿԱՆ ԳԻՒՂԵՐՈՒՆ ՈՒՂՂՈՒԹԵԱՄԲ

1

*խանցմամբ՝ կրակոցները սկսուել են Ուրբաթ օրուանից՝ Փետրուարի 8-ից: Փետրուարի 9-ի վաղ առաւօտեան ատրպէյճանական կողմի դիպուկահարի կրակոցից զոհուել էր պայմանագրային զինծառայող: Այդ օրը կրակոցները պարբերաբար կրկնուել են եւ ակտիւացել են:*

*Պաշտպանութեան նախարարութիւնը յայտարարում է, որ իրավիճակը հայկական զինուած ուժերի կողմից լիովին վերահսկւում է, ձեռնարկուած են բոլոր քայլերը հակառակորդին զսպելու համար:*

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Տէր եւ Տիկին Թադէոս եւ Սաթօ Արապեան (ԱՄՆ) եւ զաւակը՝ Րաֆֆի, Տիար Մարտիկ Պալաեան եւ զաւակները՝ Ժիրայր եւ Մարալ, Տէր եւ Տոքթ. Վահէ եւ Հերմինէ Վարժապետեան, Տէր եւ Տիկին Տէյվիտ եւ Անի Ֆօլզ (ԱՄՆ) եւ դուստրը՝ Ալիա Անուշ, Տէր եւ Տիկին Կարօ Վարժապետեան եւ զաւակները՝ Ալեգ եւ Թալիա, Տէր եւ Տիկին Արմէն Վարժապետեան, Տիկին Ռոզա Ածիկեան (Հայաստան), Տիկին Լուսի Պալաեան (Գանատա), Տիկին Զարուհի Զօրայեան, Տէր եւ Տիկին Ուաէլ Ֆարահ, Տէր եւ Տիկին Խուան Գարլօս Պէրնարտի (Արժանթին) ինչպէս նաեւ Պալաեան, Ածիկեան, Նազաչեան, Վարժապետեան եւ Ճոճըրեան ընտանիքները նեկայիս կը ծանուցանեն, թէ Կիրակի, 3 Մարտ 2013, կ.ե. ժամը 1.00-ին, Հելիոպոլսոյ Ամենայն Սրբոց գերեզմանատան մէջ, հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց մօր, մեծ մօր եւ ազգականին Ողբ.՝

**ԱՆՈՒՇ ՊԱԼԱԵԱՆ-ի**

**(Ծնեալ Ածիկեան)**

մահուան քառասունքին առթիւ:

Հանգուցեալին յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ գտնուիլ:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Տիար Մարտիկ Պալաեան եւ զաւակները՝ Ժիրայր եւ Մարալ, Տիկին Զարուհի Զօրայեան, Տէր եւ Տիկին Ժիրայր Զօրայեան (Գանատա), Տէր եւ Տիկին Հայկ Նազաչեան եւ զաւակները, Տոքթ. եւ Տիկին Տիգրան Զօրայեան (Ֆրանսա), Տէր եւ Տիկին Թադէոս Արապեան եւ զաւակները (ԱՄՆ), Տէր եւ Տիկին Վահէ Վարժապետեան, Տէր եւ Տիկին Աշոտ Նազաչեան եւ զաւակները (Գանատա), Տէր եւ Տիկին Կարօ Վարժապետեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Արմէն Վարժապետեան ինչպէս նաեւ Զօրայեան, Պալաեան եւ Ճոճըրեան ընտանիքները, նեկայիս կը ծանուցանեն, թէ Կիրակի, 3 Մարտ 2013, կ.ե. ժամը 1.00-ին, Հելիոպոլսոյ Ամենայն Սրբոց գերեզմանատան մէջ, հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի, իրենց սիրելի կնոջ, մօր, զաւակին, քրոջ եւ ազգականին Ողբ.՝

**ՍՈՆԱ ՊԱԼԱԵԱՆ-ի**

մահուան Դ. տարելիցին առթիւ:

Հանգուցեալին յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ գտնուիլ:

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ**

**Ի ԳԻՏՈՒԹԻՒՆ ՄԵՐ ԲԱՐԵՊԱՇՏ ԺՈՂՈՎՈՒՐԴԻՆ ԽԱՂԱՂԱԿԱՆ ԵՒ ՀԱՆԳՍՏԵԱՆ ԺԱՄԵՐԳՈՒԹԻՒՆՆԵՐԸ ՊԻՏԻ ԿԱՏԱՐՈՒԻՆ**

Ամէն **ՀԻՆԳՇԱԲԹԻ**՝ **ՄԵՐՃԱՆԵԱՆ ՄԱՏՈՒՌԻՆ ՄԷՋ**

Ամէն **ՈՒՐԲԱԹ**՝ **Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ԱՌԱՋՆՈՐԴԱՆԻՍՏ ԵԿԵՂԵՑՒՈՅ ՄԷՋ**

Ժամերգութիւններու սկիզբը՝ երեկոյեան ժամը 5-ին

Կը հրաւիրենք ներկայ ըլլալու հոգեզմայլ եւ հոգեպարար սոյն արարողութիւններուն, որպէսզի աղօթքի միջոցով Աստուծոյ Խաղաղութիւնը եւ Սէրը մշտապէս բնակութիւն հաստատեն մեր հոգիներէն ներս:

**Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ**

Մեծ Պահոց շրջանին, ամէն **Ուրբաթ երեկոյեան**, Հելիոպոլսէն դէպի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցի հաւատացեալներուն փոխադրութիւնը դիւրացնելու համար, եկեղեցւոյ Հոգաբարձութիւնը կարգադրած է հանրաշարժի մասնաւոր սպասարկութիւն «Եկեսցէ»-ի արարողութեան համար: Հանրաշարժի կանգառներն են.

Սալահ էլ-տին Հրապարակ
(ծաղկավաճառին առջեւէն) ժամը 3:45-ին
Այծեմնիկ Հանգստեան Տան շէնքին առջեւէն ժամը 4:00-ին

**Իսկ Կիրակի առաւօտները**

Սալահ էլ-տին Հրապարակ
(ծաղկավաճառին առջեւէն) ժամը 9:00-ին
Այծեմնիկ Հանգստեան Տան շէնքին առջեւէն ժամը 9:10-ին

**Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1698 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 28 ՓԵՏՐՈՒԱՐ 2013 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٦٩٨ الخميس ٢٨ فبراير ٢٠١٣


ՀԱՅԱՍՏԱՆ

## ՍԱՐԳՍԵԱՆ՝ ՆԱԽԱԳԱՀ, ԲԱՐԵՓՈԽՈՒՄՆԵՐՈՒ ԽՈՍՏՈՒՄՈՎ



Հայաստանի ընտրական կեդրոնական յանձնաժողովի նախագահական ընտրութիւններու քուէարկութեան նախնական եզրափակիչ արդիւնքներուն համաձայն, գործող նախագահ Սերժ Սարգսեան վերընտրուած է:

Ընտրութիւններուն նախնական արդիւնքներն են.-

| | | |
|---|---|---|
| Սերժ Սարգսեան | 58,64 % | 861160 քուէ |
| Րաֆֆի Յովհաննիսեան | 36,75 % | 539672 քուէ |
| Հրանդ Բագրատեան | 2,15 % | 31643 քուէ |
| Պարոյր Հայրիկեան | 1,23 % | 18093 քուէ |
| Անդրիաս Ղուկասեան | 0,57 % | 8328 քուէ |
| Վարդան Սեդրակեան | 0,42 % | 6203 քուէ |
| Արման Մելիքեան | 0,24 % | 3516 քուէ: |

Ընտրական գործընթացին իրենց մասնակցութիւնը բերած են ընտրողներու 60,05 առ հարիւրը՝ 1 միլիոն 518 հազար 407 ընտրող:

Ընտրական կեդրոնական յանձնաժողովի նախագահ Տիգրան Մուկուչեան յայտարարեց, որ ընտրութիւնները ընթացան բոլորովին նոր, բարձր որակով բնականոն հունով՝ ընտրական օրէնքներու սկզբունքներուն համապատասխան: Մուկուչեան վերստին նշեց, որ իրենք ցարդ չեն ստացած պաշտօնական բողոքագիր, ընտրական խախտումներու կապակցութեամբ:

«Լրատուամիջոցներու հաղորդած խախտումները կը վերաբերին առանձին դէպքերու», ըսաւ ան: Ընտրութեան օրուան ընթացքին, ոստիկանութիւնը քննեց խախտումներու 104 դէպք:

**«Դէպի ապահով Հայաստան»**

Վերընտրուած նախագահ Սերժ Սարգսեան յայտարարեց, որ միացեալ ուժերով պիտի ապացուցենք, որ Հայաստան ի վիճակի է սեփական ջանքերով լուրջ փոփոխութիւններ իրականացնել:

«Ընտրութիւններով կը սկսի տքնաջան աշխատանք: Ես յոյս ունիմ, որ բոլորը ըմբռնումով կը մօտենան մեծամասնութեան որոշումին, որպէսզի ստեղծենք կայուն միջավայր եւ զարգացրնենք մեր հայրենիքը», ըսաւ Սարգսեան:

Շնորհաւորելէ ետք նաեւ իր մրցակիցները, Սարգսեան հպարտանք յայտնեց, որ կը կանգնի ապահով Հայաստանի ճանապարհին գտնուող իւրաքանչիւր հայաստանցիի կողքին:

**«Մէկ քայլ առաջ», ըստ դիտորդներուն**

ԵԱՀԿի դիտորդներու խումբի մամլոյ ասուլիսը առկախուեցաւ: Միջոցառումին ընթացքին սրահ ներխուժեցին աքթիւիստներ, որոնք բողոքեցին ընտրութիւններուն դէմ, զանոնք որակելով խայտառակ: Մինչ այդ, ԵԱՀԿի դիտորդները եզրակացուցին, որ ընտրութիւնները կարելի է համարել՝ քայլ մը առաջ, դէպի ժողովրդավարական չափանիշերով ընտրութիւններ: Իսկ ԵԱՀԿի խորհրդարանական վեհաժողովի դիտորդները յայտարարեցին, որ ընտրութիւններուն մէջ բարելաւում կար, սակայն կը բացակայէր իսկական մրցակցութեան մթնոլորտը:

Դիտորդներուն համաձայն, զգալի յառաջընթաց նկատուած է եւ խախտումները չեն ազդած արդիւնքներուն վրայ:

Անկախ Պետութիւններու Համարակապետութեան դիտորդական առաքելութիւնը Հայաստանի մէջ արձանագրեց ազատ, թափանցիկ եւ մրցակցային ընտրութիւններ: Առաքելութեան ղեկավար Սերկէյ Լեպետեւի համաձայն, ընտրութիւնները օրինական էին եւ չկայ նախագահի վերընտրութիւնը կասկածի տակ դնող փաստ: Իսկ ընտրական համակարգերու միջազգային դիտորդական կեդրոնը դրական, միջազգային չափանիշերուն համապատասխանող, ժողովրդավարական եւ մրցակցային որակեց նախագահական ընտրութիւնները:

Դիտորդները սակայն նշեցին, որ կարգ մը ընտրատեղամասերու մէջ ընտրութեան յարմար մթնոլորտ չկար, սակայն քուէներու հաշուարկը ընթացած է առանց խնդիրներու:

2

## «ՊԱՅՔԱՐ, ՊԱՅՔԱՐ՝ ՄԻՆՉԵՒ ՎԵՐՋ» ԼԵՒՈՆԻ ԼՈԶՈՒՆԳԸ՝ ՌԱՖՖԻԻ ԼԵԶՈՒՈՎ



Հայաստանի նախագահական ընտրութիւններու երկրորդ դիրքը գրաւած թեկնածու Րաֆֆի Յովհաննիսեան յայտարարեց, որ վաղը հաւաքներ պիտի կազմակերպէ Աշտարակ, Վանաձոր եւ Կիւմրի քաղաքներուն մէջ, ապա Կիրակի օր՝ կեդրոն ական հաւաք Երեւանի մէջ, մարզերու բնակիչներու մասնակցութեամբ:



Երեւանի Ազատութեան հրապարակին վրայ կայացած հաւաքի ընթացքին, Յովհաննիսեան բացայայտեց Հայաստանի Հանրապետութեան նախագահ Սերժ Սարգսեանի հետ իր ունեցած հանդիպումին բովանդակութիւնը:

Ան նշեց, որ Սարգսեանէն պահանջած է ճանչնալ ժողովուրդին յաղթանակը եւ չհրաժարելու պարագային՝ հաշուեյարդարի ենթարկել ընտրախախտումներու պատասխանատուները, ընտրական օրէնքը բարեփոխել բոլորովին համամասնական դրութեան, որպէսզի նոր ընտրութիւններու միջոցաւ իշխանութիւնը վերադարձուի ժողովուրդին:

«Ես այլեւս ըսելիք չունիմ Սարգսեանին: Երբ իմ բոլոր առաջարկներուն հնչեց բացասական պատասխան, ինծի կը մնայ միայն յայտարարել, որ մենք պիտի շարունակենք պայքարը՝ մինչեւ յաղթանակ», ըսաւ Յովհաննիսեան:

Նշենք, որ Ժառանգութիւն կուսակցութեան ղեկավարի հաւաքին իրենց մասնակցութիւնը բերին քաղաքական այլ ուժեր եւ նախագահի թեկնածուներ: Հանրահաւաքը իր աւարտին հասաւ երթով:

Ընտրական գործընթացին հետ առնչուած իրադարձութեամբ, Շիրակի մարզպետ Աշոտ Կիզիրեան ներկայացուց իր հրաժարականը՝ Հայաստանի վարչապետին: Կը կարծուի, որ հրաժարականի պատճառը՝ մարզին մէջ նախագահ Սերժ Սարգրսեանի կրած պարտութիւնն էր, նախագահական ընտրութիւններուն:

### ՇՆՈՐՀԱՒՈՐԱԳԻՐ

Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան Կուսակցութեան Հայաստանի Վարչութեան Շնորհաւորագիրը ՀՀ Նախագահի Սերժ Սարգսեանին

Յարգելի Պարոն Նախագահ

Սրտանց շնորհաւորում ենք Ձեզ ՀՀ Նախագահի ընտրութիւններում տարած յաղթանակի առթիւ:

Հնչակեան կուսակցութեան ներկայացուցիչները ուշիուշով հետեւում էին ընտրական գործընթացին եւ փիքսել են, որ չնայած որոշ մանր-մունր միջադէպերի, ընտրութիւններն անցել են մրցակցային պայմաններում եւ արտացոլել են Հայաստանի քաղաքացիների կամարտայայտութիւնը:

Յարգելի պարոն Նախագահ, վստահ ենք, սակայն, որ այս ընտրութիւնները պէտք է սկիզբ լինեն բարեփոխումների այն գործընթացին, որ յայտարարուել է Ձեր եւ Հայաստանի կառավարութեան կողմից՝ երկրի առջեւ ծառացած մարտահրաւէրների լուծման առումով:

Մենք պատրաստ ենք աջակից լինել Ձեզ՝ տնտեսական մենաշնորհների դէմ պայքարի, մրցակցութեան եւ սոցիալական արդարութեան հաստատման Ձեր պայքարում:

Վստահ ենք նաեւ, որ առաջիկայ 5 տարիները պէտք է բեկումնային լինեն Ցեղասպանութեան միջազգային ճանաչման եւ Արցախեան հիմնախնդրի լուծման համար: Դուք բացառիկ հնարաւորութիւն ունէք այսօր յաւերժանալ՝ դառնալով ողջ հայութեան Նախագահը:

ԱՐՑԱԽ

## ՅԱՂԹԱՆԱԿԻ ՊԱՀՊԱՆՈՒՄ

ԼՂՀ նախագահ Բակօ Սահակեան ուղերձ յղեց հայ ժողովուրդին, Արցախեան ազգային-ազատագրական շարժումի 25 ամեակին առթիւ:

«Մենք ազգովին ոտքի ելանք միջազգային հիմնարար սկզբունքներուն համահունչ խաղաղ եւ օրինական պահանջով: Մենք այսօր կրնանք պատուով ու հպարտութեամբ արձանագրել, որ կեանքի կոչելով 1988-ի գաղափարները, հայ ժողովուրդը վերականգնեց իր պետականութիւնը եւ այսօր Հայաստան-Արցախ-Սփիւռք եռամիասնութեան շնորհիւ կը տնօրինէ իր ճակատագիրը, անսասան կը պահէ հայրենի երկրի սահմանները», ըսաւ Արցախի Հանրապետութեան նախագահը:

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՍԱՐԳՍԵԱՆԻ ԵՐԴՄՆԱԿԱԼՈՒԹԻՒՆԸ՝ ԱՊՐԻԼ 9-ԻՆ

Հայաստանի վերընտրուած նախագահ Սերժ Սարգսեանի երդմնակալութեան արարողութիւնը տեղի կ'ունենայ Ապրիլ 9-ին:

Նոյն օրը, կառավարութիւնը կը ներկայացնէ իր հրաժարականը: Սարգսեան երէկ գլխաւորեց Ազգային Անվտանգութեան գերագոյն խորհուրդի ընդլայնուած նիստը:

Հայաստանի Ազգային Ժողովի նախագահ Յովիկ Աբրահամեան իշխանութիւններու անունով պատրաստակամութիւն յայտնեց քննարկելու իւրաքանչիւր ողջամիտ առաջարկ:

Մամլոյ ասուլիսի մը ընթացքին Աբրահամեան դիտել տուաւ, թէ որեւէ բռնութիւն պատիւ չի կրնար բերել երկրին: «Բոլոր միջազգային դիտորդները բարձր կը գնահատեն նախագահական ընտրութիւնները», ըսաւ Ազգային Ժողովի նախագահը, աւելցրնելով, որ իրենք տակաւին կը քննարկեն յետընտրական զարգացումները քննարկելու խորհրդարանական ձեւաչափը:

Իր կարգին, Ժառան- 6

## Է. ՆԱԼՊԱՆՏԵԱՆ.-
## ՊԱՔՈՒ ԿԸ ՀԵՌԱՆԱՅ ՄԿՋԱԶԳԱՅԻՆ ԸՆՏԱՆԻՔԷՆ

*Հայաստանի արտաքին գործոց նախարար Էտուարտ Նալպանտեան շարունակեց իր Աւստրիա այցելութիւնը եւ տեսակցեցաւ խորհրդարանական պատուիրակութեան հետ: Նալպանտեան հարցազրոյց ունեցաւ աւստրիական լրատուական գործակալութեան ներկայացուցիչին հետ, խօսեցաւ ներքին ու արտաքին հարցերուն մասին: Նալպանտեան դիտել տուաւ, որ իր ընտրած ռազմատենչ եւ կործանարար քաղաքականութեան պատճառով, անդունդը կը խորանայ Ատրպէյճանի եւ միջազգային հանրութեան միջեւ:*

*«Թուրքիան սակայն միակողմանիօրէն կը պաշտպանէ Ատրպէյճանին եւ բնականաբար կարողութիւն չունի հանդէս գալու որպէս միջնորդ: Խաղաղութեան հաստատման ջանքերը յաջողութեան չեն հասած Ատրպէյճանի ապակառուցողական դիրքորոշումին պատճառով», ըսաւ նախարարը:*

*Անդրադառնալով տարածաշրջանային ծրագիրներուն Նալպանտեան նշեց, որ անոնք յաջողութեան կը հասնին, եթէ հիմնուին ներգրաւման, ոչ թէ բացառման սկզբունքներու վրայ: Նախարարը դրական եւ լաւ որակեց Եւրոմիութեան հետ համարկման համաձայնութեան գծով արձանագրուած յառաջընթացը: Ան խոստացաւ շարունակել Հայաստանի ներքին բարեփոխումները, հասնելու համար միջազգային չափանիշերու:*

## ՎԱՏԻԿԱՆԻ ՊԱՊԻՆ ՀՐԱԺԱՐԱԿԱՆԸ



Փետրուար 11-ին, Վատիկանի Պենետիքթոս ԺԶ. Պապը իր խորհրդատու խումբ մը քարտինալներուն տեղեկացուց, որ իր յառաջացած տարիքին պատճառաւ անկարող է լաւագոյնս շարունակել իր ծառայութիւնը որպէս Կաթողիկէ Եկեղեցւոյ պետ, եւ հետեւաբար ան յայտնեց որ Փետրուար 28-էն սկսեալ կը հրաժարի իր պաշտօնէն:

Արդի պատմութեան մէջ աննախընթաց դէպք է սա, որ գրեթէ վեց հարիւր տարիներէ ի վեր առաջին անգամ կը պատահի: Պապին գահակալութիւնը, ինչպէս գիտենք, որեւէ կաթողիկոսի կամ պատրիարքի պէս, ցկեանս է եւ կ'երկարի ընտրութենէն մինչեւ մահ:

Մէկ միլիառէ աւելի կաթողիկէներու գերագոյն պետին հրաժարականը սակայն կարելի է դաս նկատել բոլոր անոնց, որոնք «Տանի'ր Զքեզ» խորհուրդին պէտք ունին:

Դաս է ան մեր իւրաքանչիւրին, որ ընդունինք մեր տկարութիւնները, ըլլան անոնք մարմնային կամ ոչ-մարմնային, որպէսզի կարելիութիւն ընծայուի անոնց, որոնք մեզմէ աւելի կարող են ստանձնելու պարտականութիւն եւ պարտաւորութիւն :

Դաս է ան բոլոր անոնց, որոնք պաշտօնի եւ դիրքի ամուր կառչածութեամբ, եւ կամ իրաւունքներ վաստակածի հոգեբանութեամբ, անփոխարինելի ըլլալու խաբկանքը կ'ապրին, եւ ցոյց կու տան անվերջ տիրելու եւ տիրապետելու մարմաջը:

Դաս է ան մեծ աթոռներուն վրայ պզտիկ երեւցողներուն, եւ փոքր թեւերով երկինք թռչիլ ուզողներուն, որ բնութեան օրէնքին ենթակայ ենք ամէնքս, մեր կազմով ու հասակով, պոյով ու պոսով, եւ մեր այլազան մտային եւ մարմնային կարողութիւններով:

Դաս է ան բոլոր մեծաւորներուն, աշխարհական եւ եկեղեցական, որ ճիշդ եւ ճշմարիտ որոշումներ առնելով փրկեն իրենց հաստատութիւններն ու եկեղեցիները դէպի տկարութիւն տանող ճամբաներէն:

«Տանի'ր Զքեզ» խորհուրդով տակաւին ինչե՜ր կարելի է ըսել:

Պիտի ուզենք ըսել որ այս նիւթապաշտ ներկայ ընկերային կեանքով ընթացող աշխարհէն թող հեռու մնան եկեղեցին եւ եկեղեցականները, որպէսզի ալեկոծ ճամբով ընթացող մեր մարդկութեան նաւը գոնէ տեղ մը ժայռ գտնելով չընկղմի...:

Պիտի ուզենք ըսել որ Հայ Եկեղեցին իր անցեալի հմայքն ու փրկարար դերը գործածելով գիտնայ ինքզինք նորոգել եւ բարեմշակել, որպէսզի իր կարող սպասարկուները քիչ մը հոս ու հոն չկարգալուծ է եւ չկորսնցնէ...:

Եւ վերջապէս, պիտի ուզենք ըսել որ պետութիւն եւ եկեղեցի, ձեռք-ձեռքի տուած, գործեն այնպէս, որ ոչ մի Հայ, ի Հայաստան կամ ի սփիւռս աշխարհի, չյուսալքուի եւ չյուսահատուի, ու գործեն այնպէս, որ հարուստ դասակարգը միայն չօգտուի ու չմեծարուի:

**ՄԵԹՐ ՊԱՐԳԵՒ ԴԱՒԻԹԵԱՆ**

## ՔԻՄ ՔԱՇՔԱՇԵԱՆ «ԿՐԵՄՄԻ»Ի ՄՐՑԱՆԱԿԱԿԻՐ ԱՇԽԱՐՀԱՀՌՉԱԿ ՀԱՅ ԱԼԹԱՀԱՐՈՒՀԻԻՆ ՍՈԼՕ-ԿԱՏԱՐՈՒՄԸ ԼԱՒԱԳՈՅՆԸ ՃԱՆՉՑՈՒԱԾ Է



*Միացեալ Նահանգներու Լոս Անճելըս քաղաքին մէջ կայացած է «Կրեմմի»ի ամենամեայ երաժշտական մրցանակաբաշխութեան 55-րդ արարողութիւնը:*

*«Լաւագոյն Դասական Գործիքային Սոլօ» անուանակարգին մէջ մրցանակի արժանացած է աշխարհահռչակ հայ երաժիշտ Քիմ Քաշքաշեանը` «Kurtág and Ligeti: Music For Viola» սոլօ-ալպոմին համար:*

*Քաշքաշեան ծնած է Միացեալ Նահանգներու Տիթրոյթ քաղաքին մէջ` 1952 թուականին: Ան ուսանած է Փիպոտի երաժշտանոցին մէջ (ԱՄՆ): 1986 թուականին տեղափոխուած է Գերմանիա, ուր դասաւանդած է Ֆրայպուրկի երաժշտական համալսարանին մէջ, ինչպէս նաեւ «Հանս Այսլըր» երաժըշտական ուսումնարանին մէջ:*

*Քաշքաշեան այսօր իր սերունդի ամէնէն յայտնի երաժիշտներէն է: Անոր մեծ ճանաչում բերած է յատկապէս յաղթանակը` հեղինակաւոր Լայոնել Թերթիսի անուան ալթահարներու միջազգային մրցոյթին մէջ:*

*Որպէս մենակատար, Քաշքաշեան հանդէս կու գայ Նիւ Եորքի, Պերլինի, Վիեննայի, Լոնտոնի, Միլանի, Միւնիխի եւ Թոքիոյի ճանչցուած նուագախումբերուն հետ` խմբավարներ Ռիքարտօ Շայիի, Քրիսթոֆ Էշենպախի, Ռիքարտօ Մութիի ղեկավարութեամբ: Քաշքաշեան հանդէս եկած է նաեւ հանրայայտ «Թոքիօ Լարային Քառեակ»ին հետ:*

*Ալթահարը համագործակցած է աշխարհահռչակ շարք մը երաժշտահաններու հետ (Սոֆիա Կուպայտուլինա, Քրիշթոֆ Փենտերեցքի, Կիա Գանչելի, Արւօ Փեարթ) Քաշքաշեան երկար տարիներ համագործակցած է նաեւ յայտնի երաժշտահան Տիգրան Մանսուրեանի հետ: Մանսուրեան «Հաւատով Խոստովանիմք» ալթի համանուագը 1998 թուականին գրած է Քիմ Քաշքաշեանի եւ Երեւանի քամերային երգչախումբին համար:*

*«Կրեմմի»ի մրցանակաբաշխութիւնը հիմնադրուած է 1958 թուականին եւ կը գնահատէ բազմառճ երաժիշտներու, երգիչներու եւ երգահաններու տարուայ ձեռքբերումները:*

## ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ
## «ԵԳԻՊՏՈՍԻ ԵԿԵՂԵՑԻՆԵՐՈՒ ԽՈՐՀՈՒՐԴ»

Երկուշաբթի, 18 Փետրուար 2013-ին Ղպտի Ուղղափառ Եկեղեցւոյ Պատրիարքարանին մէջ տեղի ունեցաւ Եգիպտոսի եկեղեցիներու պետերու եւ առաջնորդներու ժողով, հովանաւորութեամբ Ղպտի Ուղղափառ Եկեղեցւոյ Պատրիարք՝ Նորին Սրբութիւն Թաւատրոս Բ.-ի:

Սոյն ժողովին, որուն կը մասնակցէին նաեւ Թեմիս Բարեխնամ Առաջնորդ Գերշ. Տ. Աշոտ Եպիսկոպոս Մնացականեան եւ Եգիպտոսի Հայ Կաթողիկէ Համայնքի Վիճակաւոր Գերապայծառ Գրիգոր Օգոստինոս Գուսան Եպիսկոպոս, հիմնուեցաւ «Եգիպտոսի Եկեղեցիներու Խորհուրդ»-ը եւ ներկաներուն կողմէ ստորագրուեցան վերոյիշեալ Խորհուրդի հիմնադրութեան որոշումներու եւ հիմնական սկզբունքներու վաւերաթուղթերը: Այս մասին մամլոյ յայտարարութիւն մը հրապարակուեցաւ զոր կը ներկայացնենք ստորեւ.

## ՄԱՄԼՈՅ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ
## «ԵԳԻՊՏՈՍԻ ԵԿԵՂԵՑԻՆԵՐՈՒ ԽՈՐՀՈՒՐԴ»-Ը ՀԻՄՆԵԼՈՒ ՄԱՍԻՆ

**Երկուշաբթի, 18 Փետրուար 2013.**

Երկար տարիներ կ'երազէինք հիմնել «Եգիպտոսի Եկեղեցիներու Խորհուրդ»-ը, որ կը ձգտի խորացնել սէրը, ընկերակից կեանքը եւ համագործակցութիւնը Եգիպտոսի եկեղեցիներուն միջեւ եւ զօրացնել քրիստոնէական գործը ու հայրենիքի ծառայութիւնը՝ ազնիւ քաղաքացիութեան հովանիին ներքեւ:

Այս յոյսը, ծայր տուաւ երջանկայիշատակ Նորին Սրբութիւն Շնուտա Գ. Պատրիարքի գահակալութեան շրջանին, եւ ինք այս մասին քննարկումներ ունեցաւ եկեղեցւոյ պետերուն հետ: Գաղափարը հաւանութեան արժանացաւ Ապրիլ 2010-ին, եւ այս ծրագիրին մասին յայտարարուեցաւ Մորկոսեան տաճարին մէջ Չորեքշաբթի 15 Փետրուար 2012-ի երեկոյեան կայացող շաբաթական հանդիպումին ընթացքին, նախքան Նորին Սրբութեան վախճանումը:

Հինգ եկեղեցիներու ներկայի գլուխները՝ Նորին Սրբութիւն Թաւատրոս Բ. Պատրիարք, Վերապատուելի Տոքթոր Սաֆուաթ Ալ Պայատի, Ամենապատիւ Անպա Իպրահիմ Իսհաք, Նորին Սրբութիւն Թէոդորոս Բ. Պատրիարք եւ Գերաշնորհ Մունիր Սրբազան Հաննա հետապնդեցին «Եգիպտոսի Եկեղեցիներու Խորհուրդ»-ը ստեղծելու ծրագիրը, որուն իրագործումին համար գոհութիւն կը յայտնեն Աստուծոյ:

Այս Խորհուրդը կը համարուի եկեղեցական խորհուրդ, որ կը գործէ եկեղեցւոյ եւ հայրենիքի ծառայութեան համար ու կապ չունի քաղաքականութեան հետ եւ միջամուխ չըլլար անոր:

Նոյնպէս Եգիպտոսի Եկեղեցիներու Խորհուրդը կը գործակցի եկեղեցական էկումենիկ քրիստոնեայ խորհուրդներու հետ, որոնց մասին ներկայիս բոլորին կողմէ համաձայնութիւն գոյութիւն ունի եւ անոնք են՝ Եկեղեցիներու Համաշխարհային Խորհուրդը, Միջին Արեւելքի Եկեղեցիներու Խորհուրդը եւ Համայն Ափրիկէի Եկեղեցիներու Խորհուրդը:

Այսօր, Երկուշաբթի, 18 Փետրուար 2013-ին, համաձայնութիւն գոյացաւ ընդմէջ հետեւեալ եկեղեցիներու պետերուն՝ Ղպտի Ուղղափառ Եկեղեցի, Աւետարանական Համայնք (Աւետարանական Եկեղեցիներ), Կաթոլիկ Եկեղեցի, Յոյն Ուղղափառ Եկեղեցի եւ Եպիսկոպոսական Եկեղեցի, հիմնելու եկեղեցական այս խորհուրդը՝ զօրացնելու համար սէրը եւ շարունակելու մշտական օգտաշատ համագործակցութիւնը, կարծիքներու փոխանակումը, երկխօսութիւնը եւ ի նպաստ Եգիպտոսի ծառայութիւնը:

Եկեղեցիներու պետերը կ'աղօթեն որ Աստուած օրհնէ «Եգիպտոսի Եկեղեցիներու Խորհուրդ»-ի աշխատանքը եւ գործունէութիւնը:

**ԴԻՒԱՆ**
**ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**

1 ՍԱՐԳՍԵԱՆ՝ ՆԱԽԱԳԱՀ, ԲԱՐԵՓՈԽՈՒՄՆԵՐՈՒ...

*Միջազգային լրատուամիջոցները եւս անդրադարձան Հայաստանի նախագահական ընտրութիւններուն, զանոնք որակելով դրական: Լրատուամիջոցները մեծ մասամբ համաձայնեցան այն գաղափարին շուրջ, որ հայ ժողովուրդը քուէարկած է յանուն երկրի կայունութեան եւ անվտանգութեան: Voice of America ռատիօկայանը, The New Work Times եւ Le Figaro պարբերականները նշում կատարեցին նախագահի տնտեսական քաղաքականութիւններուն, որոնց շնորհիւ Հայաստան կը գոյատեւէ` հակառակ տնտեսական պաշարումի պայմաններուն:*

*Նախագահ Սարգսեանին շնորհաւորական ուղերձ յղեց ԼՂՀ նախագահ Բակօ Սահակեանը: «Վստահ եմ, որ ձեր բոլոր ջանքերը, կեանքի փորձը, գիտելիքներն ու հմտութիւնները պիտի ուղղէք հայոց պետականութեան հզօրացման, երկրի պաշտպանութեան ամրապնդման եւ համազգային ծրագիրներու իրականացման համար», ըսաւ Սահակեան: Իսկ Ռուսիոյ Նախագահ Վլատիմիր Փութին, Սարգսեանի հետ ունեցած հեռախօսազրոյցի ընթացքին շնորհաւորեց նախագահին համոզիչ յաղթանակը եւ մաղթեց յաջողութիւն, խաղաղութիւն, կայունութիւն եւ բարօրութիւն:*

# ՀԱՅ ՏՊԱԳԻՐ ԳԻՐՔԻ 500-ԱՄԵԱԿ... ԳԻՏԵԼԻՔԻ ԽԶՈ՞ՒՄ

## Յետ-տպագրային ընթերցում մը

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

### ԳԻՏԵԼԻՔԻ ԿՈՐՈՒՍՏԸ ԵԳԻՊՏԱՀԱՅ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԻՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՄԷՋ

Վերջին տասը տարին եգիպտահայութիւնը ունեցաւ քանի մը նշանակալի կորուստներ.

1.-ԻԱ. դարը եգիպտահայ մշակոյթին համար սկսաւ 2001-ին տպագիր մամուլի մը ձեռագիր դիւանին (archive) ոչնչացումով: Մինչեւ այստեղ հարց չկայ: Մամուլ մը չի կրնար իր տպագրուած յօդուածներուն ամբողջ ձեռագիրները պահել: Տեղ չկայ, անհրաժեշտութիւն ալ չկայ, չեմ յիշեր աշխարհի որ մամուլը կը պահէ իր ձեռագիրները: Բայց...: Ամէն բանէ ետք բայց մը կայ: Անձ մը (կարեւոր չէ ով) հեռաձայնեց ինծի՝ տեղեկացնելու համար նետուելիք թղթակոյտին մասին: Ճուտով խմբագրատուն էի: Երկու ժամ խառնելէ ետք «աղբ»-երը, գտայ երեք ձեռագիր ծրարներ, որոնք կապ չունէին թերթի նիւթերուն հետ եւ ըստ երեւոյթին այնտեղ դրուած էին պահպանուելու կամ յետագային Հայաստան ղրկուելու համար: Այդ ժամանակուայ խմբագիրին ըսի որ միջամտէ՝ կասեցնելու համար թուղթերու ապրանքային վաճառքը, քանզի կրնայ ըլլալ նման ուրիշ ծրարներ ալ կորսուած ըլլան կոյտերուն մէջ: Ըսաւ՝ իմ գործս չէ: Խզում մը՝ խմբագրական գիտելիքի եւ դիւանային գիտելիքի միջեւ:

Անմիջապէս վերցուցի երեք ծրարները եւ տուն տարի: Երեքն ալ կը բովանդակէին խիստ կարեւոր ձեռագիրներ, բոլորն ալ մնացած անտիպ.

ա.-Արփիար Արփիարեանի անձնական ծրարը, ուր կը գտնուէին Արշակ Զօպանեանի, Լեւոն Բաշալեանի, Տիգրան Արփիարեանի եւ այլոց նամակները՝ ուղղուած Ա. Արփիարեանին:

բ.-Թէոդիկի նամակները՝ ուղղուած Արարատ Քրիսեանին:

գ.-Միքայէլ Կիւրճեանի ֆրանսերէն բանաստեղծութիւններու սեւագրութիւնները:

Ա. Արփիարեան (ի տես իր սպաննողներուն ուրախութեան), Զօպանեան, Բաշալեան, Տ. Արփիարեան, Թէոդիկ եւ Կիւրճեան՝ դէպի աղբաման, եւ ասիկա ոչ «թշնամիին» ձեռքով: Եթէ «թշնամին» մտածած ըլլար նման բան ընել՝ քաղաքական հարց պիտի դառնար, ի շահ հարցը քաղաքականացնողներուն եւ ազգայնականութեան անունով խօսողներուն, եւ ոչ ի նպաստ գիտելիքին:

Արփիարեանի եւ Կիւրճեանի ծրարները այժմ կը գտնուին Երեւանի Գրականութեան եւ Արուեստի Թանգարան, իսկ Թէոդիկը՝ Փարիզի Նուպարեան Մատենադարան: Փրկուեցա՞ն արդեօք: Ֆիզիքապէս՝ այո՛: Գիտելիքի առումով՝ ո՛չ, քանի որ անոնք ցարդ կը մնան իբրեւ քարթարանի ցուցակներ:

2.-Ծարունակուեցաւ եգիպտահայութեան ԻԱ. դարը:

Քանի մը տարի առաջ Թուրքիոյ Եւրոմիութիւն մուտք գործելու բանակցութիւններուն մետիամթիք հրավառութեան շրջանն էր: Թուրք իշխանութիւնները ամէն կերպ կը փորձէին «քաղաքակիրթ» Եւրոպային փաստել որ իրենք եւս «քաղաքակիրթ» են: Հայերը պէտք է նպաստէին հիմնաւորելու թուրք իշխանութեան «քաղաքակրթութիւնը», քանի որ հայերը աշխարհի ամենահին «քաղաքակիրթ» ազգերուն գլխաւորներէն են: Եւ թուրք իշխանութիւնները պէտք ունէին հայկական «քաղաքակրթութեան»: Ճիշդ այդ շրջանին էր որ Եգիպտոս կու գար թուրք մը՝ գնելու եգիպտահայ նկարիչներու գործերը: Եգիպտահայ ազգային մը կը ստանձնէ միջնորդութեան պարտականութիւնը, անշուշտ տոկոսային շահ մը ունենալով իւրաքանչիւր վաճառքէն: Այս ազգայինը առաջարկեց այցելել բնակարանս նկարներ գնելու: Մերժեցի: Ըսաւ որ այս թուրքը շատ կիրթ անձնաւորութիւն մըն է (չեմ կասկածիր), շատ դրամ ունի (չեմ կասկածիր, բայց որո՞ւն դրամն է), հայերուն շատ կը սիրէ (կը կասկածիմ), հայկական նկարներ կը գնէ եւ կը տանի Թուրքիա (չեմ կասկածիր) զանոնք պահպանելու համար (չեմ հաւատար): Պահպանելո՞ւ: Այո՛, պահպանելու: Թէ՛ այցելութեան ժամանակաշրջանը, եւ թէ՛ վերոյիշեալ տուեալները կը յուշեն՝ որ ան կը գործադրէր թուրք իշխանութիւններուն ցուցմունքները: Կրնայ ըլլալ կը սխալիմ: Բայց դժուար է ընդունիլ հայկական գիտելիքը (գեղանկարը համանուն է գիտելիքի) ծախել անորոշ ուղղութեամբ, մանաւանդ եթէ հիմնաւորուած կասկած կայ գիտելիքի քաղաքական չահագործումին՝ ի վնաս այդ նոյն գիտելիքին: Այսպէս վարուելով գիտելիքին աւելցուցած կ'ըլլանք օտարացած իմաստ մը՝ քաղաքականութիւն:

Երկրորդ հեռաձայնային խօսակցութեամբ մը հայ միջնորդը պնդեց որ այցելեն բնակարանս գնումներ կատարելու: Դարձեալ մերժեցի: Գիներ առաջարկեց: Փորձեցի բացատրել՝ որ վտանգաւոր քայլ մըն է ըրածը, քանի որ թուրք այցելուին իրական ինքնութիւնը անծանօթ է: Ըսաւ՝ թուրք ըլլալ չի նշանակեր անպայմանօրէն վատ ըլլալ: Ըսի՝ լրիւ համաձայն եմ, եւ աւելցուցի որ ես անձամբ կը պայքարիմ որ երկխօսութիւն գոյանայ հայ եւ թուրք մտաւորականներու, հայ եւ թուրք ժողովրդական խաւերու միջեւ, բայց կտրականապէս դէմ եմ իշխանական, կուսակցական եւ վերնախաւային հայ-թուրք յարաբերութիւններուն, ուր իւրաքանչիւր տեսակցութիւն կապուած է վերնախաւի ինքնավերարտադրութեան հիմնագաղափարին հետ: Իսկ այս թուրքին ոչ-իշխանական պատկանելութիւնը խիստ կասկածելի է: Այս ամբողջ հարցին հետաքրքրական կողմն այն է, որ այս թուրքը՝ մեր այս հայուն օգնութեամբ, մտաւ այնպիսի մարդոց տունը՝ որոնք հայկական բեմերուն վրայ 40 տարի է կը պնդեն խզել թուրքերու հետ յարաբերութիւնները, թուրքին կը ներկայացնեն իբրեւ աշխարհի քաղաքակրթութեան թշնամի, եւ դաւաճան կը համարեն բոլոր անոնց որոնք կը փորձեն կապ պահպանել թուրքերուն հետ: Այստեղ տեղի ունեցաւ գիտելիքի խոր եւ արմատական խզում. պաշտօնական կեանքի մէջ ազգայնական՝ բառիս երեւակայական իմաստով, եւ իրական կեանքի մէջ անտարբեր՝ իրենց իսկ հնարած երեւակայական ազգայնականութեան նկատմամբ: Երկու կեանք, երկու հոգեբանութիւն, երկու հակասութիւն՝ խզում:

Շատ պատասխանատուներու հետ խօսած եմ այս հարցին մասին: Կարելի էր գործընթացը կանգնեցնել իր ժամանակին: Հիմա ալ ուշ չէ պաշտօնապէս խօսելու ու բանակցելու այս հայ անձերուն հետ (անունները գիտեմ) ոչ թէ հակաճառութեան սկզբունքով այլ պարզապէս կանխելու յետագայ նմանօրինակութիւնները եւ մանաւանդ՝ պաշտպանելու գիտելիքը: Անընդհատ կը խօսիմ այս նիւթին շուրջ, վերջինը ճիշդ քանի շաբաթ առաջ էր: Պատասխանները միանշանակօրէն նոյնն են. ի՞նչ կրնանք ընել: Անշուշտ, շատ բան կրնանք ընել, եթէ անձը ի վերուստ հասած գիտելիքի հանդէպ դրսեւորած առարկայական ենթարկուածութիւնը վերածէ հասարակական ենթակայութեան, ուր գիտելիքը կազմէ հաւաքականութեան բաղադրիչը, համերաշխօրէն անցնի մէկ անձէն միւսը, եւ դառնայ անհատի առօրեական մտածելակերպի շարժիչը՝ գերծ անձնական ու հիմնարկային շահերը ծառայող վերնախաւային երեւակայութիւններէ:

Գործադրութիւնը խզուած է գործողութենէն, կարելիութիւնը՝ կարողութենէն: Գիտելիքները այնքան խզուած են իրարմէ, որ անկարելի դարձած է մէկ գիտելիքի մը կրողը մտածէ կանխել ուրիշի գիտելիքի մը կորուստը:

3.-2004-ին կը մահանար եգիպտահայ խմբավար, նուագավար, երաժշտահան, երաժշտագէտ, մանկավարժ, ազգային բարերար Եդուարդ Յակոբեան: Ան անընդհատ ըսած ու գրած էր՝ թէ ունէր Կոմիտասի, Եկմալեանի, Զուհաճեանի, Լիմոնճեանի եւ շատ ուրիշներու ինքնագիր ձեռագիրներ: Եթէ այդքան ձեռագիր ունէր, ինչո՞ւ չէր տպագրած զանոնք՝ ըլլալու համար անոնց առաջին խմբագիրը, կամ ինչո՞ւ զանոնք չէր ղրկած Հայաստանի դիւանները: Ինչեւէ: Իր մահէն ետք, իր ունեցուածքը տնօրինեց ժամանակաւորապէս Գահիրէ գտնուող քոյրը: Ամբողջ մշակութասէր գաղութը իմացաւ՝ որ Յակոբեանին ունեցուածքը բաժնեց երեք մասի: Առաջինը ուղարկեց Գահիրէի Ազգային Առաջնորդարան: Գացի, տեսայ նիւթերը: Ոչնչութիւններ էին, քանի մը չարական ձեռագիր ընդօրինակութիւններ հայկական ձայնանիշերով, որոնցմէ հարիւրաւոր օրինակներ կը գտնուին ամենուրեք աշխարհի մէջ: Երկրորդ մաս մը իր հետ տարաւ Միացեալ Նահանգներ: Ասիկա իր բացարձակ իրաւական իրաւունքն էր, քանի որ պաշտօնական ժառանգորդն էր իր եղբօր (իրաւական օրէնքները միշտ դէմ են գիտելիքի հասարակայնացման, գիտելիքը կը հանդիսանայ այսինչին կամ այնինչին սեփականութիւնը): Բովանդակութեան մասին ոչ ոքի տեղեակ պահեց: Ամբողջ հարցը կապուած է երրորդ խումբին հետ, որ լսեցինք թէ սնտուկներու մէջ դրուած կը պահուի այսինչ կազմակերպութեան պահեստանոցը եւ պատրաստ է ուղարկուելու Երեւանի Գրականութեան եւ Արուեստի Թանգարան: Մինչեւ այսօր Թանգարանը նման բան չէ ստացած: Որո՞ւն մեղադրել: Գահիրէի Առաջնորդարանի՞ն, Հայաստանի դեսպանատա՞ն, Սփիւռքի Նախարարութեա՞ն, Հայաստանի Արտաքին Գործոց Նախարարութեա՞ն, Հայաստանի Մշակոյթի Նախարարութեա՞ն, ինծի՞, քեզի՞...: Իւրաքանչիւրը արդարացիօրէն պիտի ըսէ՝ իմ պարտականութիւնս չէ: Իրաւունք ունին, քանի որ արդի աշխարհի մէջ իշխանութիւնները բաժնուած են՝ ամէն կազմակերպութիւն ունի ի՛ր պարտականութիւնը, ամէն հիմնարկ ունի ի՛ր մասնագիտութիւնը, իւրաքանչիւրն ունի ի՛ր գիտելիքը: Կարելի չէ՞ արդեօք մէկը կատարէ արտա-պարտականութիւն մը, եւ մտածէ ո՛չ իրեն եւ ո՛չ մէկ ուրիշ կազմակերպութեան պատկանող, այլ համայն հայութեան պատկանող գիտելիքի մասին: Հապա ո՞ւր մնաց ամենօրեայ բեմերէն եւ ամենօրեայ մամուլին մէջ հռետորացուող ազգայնականութիւններն ու հռչակուող թշնամիները: Եթէ 2004-էն մինչեւ այսօր իւրաքանչիւր Հայաստան այցելողի մէկ ձեռագիր մը կամ կամ մէկ գիրք մը տրուէր, այսօր դիւանը համալրուած կ'ըլլար Թանգարանին մէջ:

Վերջապէս, ի՞նչ է տպագիրին մասնակցութիւնը այս երեք կէտերուն մէջ: Արտաքին հայեացքէն, յիշեալ կորուստները ոչ-տպագիրներ են: Իբրեւ առարկաներ՝ այդպէս են: Բայց իրենց գոյութիւնը շատ բանով կախուած է տպագիրէն: Առաջին կէտին մէջ, դիւանին կազմութիւնը ուղղակիօրէն տպագիր մամուլի գոյութեան արդիւնքն է, անիկա տպագիրին դիւանն է: Երկրորդ կէտին մէջ, թուրք այցելուն փարաւոններուն երկիրը պիտի չայցելէր առանց ուսումնասիրած ըլլալու հայ գեղանկարիչները (արդէն հայ միջնորդն ըսաւ ինծի թէ թուրք գնորդը քաջատեղեակ է բոլոր հայ նկարիչներուն մասին եւ գիտէ նկարներուն գիները), որոնց մասին առատ տեղեկութիւն կարելի է գտնել տպագիր հրատարակութիւններու մէջ: Կը մնար այդ տպագիրներէն քաղել անհրաժեշտ (*միայն* անհրաժեշտ) տեղեկութիւնները, անոնց տալով չյայտարարուած քաղաքական իմաստ:

Առաջին կէտին մէջ նշուած Արփիարեան-Թէոդիկ-Կիւրճեան անտիպները, եւ երրորդ կէտի Յակոբեանի դիւանին ենթադրաբար պարունակող իր եւ ուրիշներու անտիպները, «անտիպ» պիտի չկոչուէին առանց «տպագիրի» գոյութեան: Տպագրութիւնը յառաջացուց անտիպներու անվերջանալի գոյութիւններ, անտիպներ՝ որոնք կը ձգտին տպագրութեան, անտիպներ՝ որոնք մնալով անտիպ կը ստանան ինքնուրոյն ճանապարհ, պատմութեան մէջ կը հռչակուին իբրեւ «անտիպ», կարծես անոնց տպագրութիւնը անկարելի բան մը ըլլար, մտածել տալով տպագրութեան անկարելիութեան մասին: Անտիպութիւնն ունեցաւ իր ինքնութիւնը: Տպագրութեան համար ստեղծուեցաւ գրադարան հասկացութիւնը, անտիպութեան համար՝ դիւան:

### ԳԻՏԵԼԻՔԻ ԿԵՐՏՈՒՄԸ ԵԳԻՊՏԱՀԱՅ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԻՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՄԷՋ

Ասիկա անդրադարձ մըն է վերջին տասնամեակի եգիպտահայութեան արտադրած տպագիր գիտելիքին մասին՝ կապուած եգիպտահայութեան եւ Եգիպտոսի յեղափոխութեան մասին: Նկատի չունիմ այն գիտելիքը որ ենթադրուած է ներկայացուիլ իբրեւ «առարկայական», թէեւ այսօր մշակութաբանները քաջ գիտեն թէ գիտելիքի առարկայականութիւն գոյութիւն չունի, քանի որ ամէն բան արդիւնքն է տեղի, ժամանակի, փորձառութեան, յիշողութեան, եւ վերջապէս՝ մարդուն: Այլ նկատի ունիմ այն գիտելիքը որ հրապարակուած է յատուկ գնահատում եւ գունաւորում ստանալու վճռականութեամբ:

Պիտի հիմնուիմ եգիպտահայ մամուլին վրայ: Քաղուածքները պիտի կատարեմ առանց նշելու լրագիրի կամ յօդուածագիրի անունը, քանի որ գիտելիքը աւելի պարփակուն երեւոյթ է քան անունը:

Հարցը համախմբեմ քանի մը կէտերու շուրջ.

1.-Եգիպտահայ ձեռնարկները միշտ զարդարած են կուսակցական ակումբները, որոնցմէ ետք ինքնագովաբանական քննախօսականները զարդարած են տուեալ կուսակցութեան լրագիրը: Ինքնագովաբանութիւնը դարձած է չափանիշ: Միայն յատուկ պարագաներու եւ մասնաւոր պատճառներով մէկ կուսակցական լրագիրը կը գրէ միւսի ձեռնարկին մասին՝ անպայմանօրէն գովաբանելով:

2.-Եգիպտահայերուն համար սովորական դարձած է պասքէթպոլի գաղութային մրցաշարերուն կռիւները: Անգամ մը թղթակից մը որոշեց ոչ թէ բացայայտել երեւոյթին գռեհկութիւնը եւ բացատրել անոր արմատները, այլ քննադատել դէպք մը՝ միայնակ դէպք մը, ուր ըստ իրեն *միւս* կուսակցութիւնը անիրաւութիւն կատարած էր *իր* կուսակցութեան դէմ: Մրցումը կը կայանար 2004-ին, *միւս* կուսակցութեան դաշտին վրայ: Ան «տեղի ունեցաւ խիստ լարուած մթնոլորտի մէջ, որուն պատճառը իրաւարարներու ակնյայտ կողմնակցութիւնն էր դաշտի տէրերուն», գրեց թղթակիցը: *Միւս* կուսակցութիւնը գայրացաւ եւ պատասխան յօդուածի մը մէջ այս գրութիւնը անուանեց «անհաճոյ», «անպատասխանատու» եւ «պառակտիչ»: Հարց կը ծագի: Եգիպտահայութեան ուղղուած քննադատական գրութիւններու խպառ բացակայութեան պարագային, ինչո՞ւ միակ սուր քննադատութիւնը տեղի ունեցաւ *միւս* կողմի *մէկ* դէպքի մը առիթով: Որովհետեւ գիտելիքները մասնատուելով տարածուած են մէկուն եւ միւսին միջեւ եւ էապէս խզուած իրարմէ, խզուած այնքան՝ որ համագաղութային գիտելիքը համազօր դարձած է արտագիտելիքային կամ գերգիտելիքային վիճակին եւ ակամայօրէն մնացած անտեսանելի: Կարեւորը *իմ* գիտելիքս է, որ հակասական է (երբեմն ալ հակասող *պէտք է* ըլլայ) *միւս* գիտելիքին հետ:

3.-Եգիպտահայութեան կարեւոր մաս մը կը գործէ եգիպտական հասարակութեան մէջ, կուսակցական ծիրէն դուրս: Լէյլէպա, Նելլի, Անուշքա եգիպտական շարժանկարի եւ երգի «աստղեր» են: Անոնք հայկական պաշտօնական եզրաբանութեամբ Սփիւռքահայեր են, բայց կը բացակային եգիպտահայ մամուլին մէջ: Հրաշալի գեղանկարիչ-արուեստագիտուհի Աննա Պօղիկեանի գիրքերը(19) չեն գրախօսուած, քանի որ ան մէկ կողմէն արտա-կուսակցական է, միւս կողմէն չի մտներ կուսակցութիւններուն ինքնասահմանած «հայկականութեան» ծիրէն ներս: «Ոչ-հայ» միջավայրի մէջ հայու մը գոյութիւնը կրնայ ներկայացուիլ անհատական յարաբերութիւններու եւ ազդեցութիւններու միջոցով, ինչպէս վերջին քանի մը ամիսը կը փառաբանուի երկրորդ կարգի արուեստագէտ մը՝ «օտար» հասարակութեան մէջ իր ունեցած տարօրինակ գործունէութեան համար: Իսկ որքանո՞վ են «հայկական» ինքնափառաբանուող ձեռնարկները: Եւ արդե՞օք «հայկական» ըլլալ պիտի մեքենայաբար նշանակէր որակաւոր ըլլալ: Անշուշտ, չկայ «հայկականութեան» եւ «որակի» որեւէ չափանիշ, քանի որ ինքնութիւնը անսահմանելի չերտերու ծրար մըն է, որ կ'ապրի անընդհատ փոփոխութիւններով ու շրջապատի ներթափանցումներով: Ինքնութիւնը անշարժացնելով սահմանեալ առարկաներու կամ առարկայացուած տիպարներու մէջ՝ դրօշակ, հիմներգ, երգ, տարազ, խոհանոց, Կոմիտաս, Շիրազ, Սարեան (որոնք իրենք իրենց էութեամբ շարժուն երեւոյթներ են) կը նշանակէ չտեսնել ինքնութեան յարափոփոխութիւնը եւ հայութիւնը զրկել իր տարբերակային գեղեցկութենէն ու մարդկային պատկանելութենէն:

4.-25 Յունուար 2011-ին յեղափոխութիւն էր

4

3

## ՀԱՅ ՏՊԱԳԻՐ ԳԻՐՔԻ 500-ԱՄԵԱԿ... ԳԻՏԵԼԻՔԻ ԽԶՈ՞ՒՄ

Եգիպտոսի մէջ: 25 Յունուար-11 Փետրուար երկարող ժամանակաշրջանը իրական յեղափոխութիւն էր՝ ժողովրդական-զանգուածային հսկայ շարժումի մը արդիւնքը: Յեղափոխութեան թեման բազմիցս երեւցաւ եգիպտահայ մամուլին մէջ: Ուրիշ հարց թէ ան ինչ մօտեցումով ներկայացուեցաւ՝ իշխանական փոփոխութի՞ւն թէ ժողովրդային ճնշում, 18 օրուայ ժամանակային սառեցո՞ւմ թէ տարիներ շարունակուող հասարակական գաղափարական եւ աքթիվիսթական դիմադրութիւն: Առիթով մը հետաքրքրական պիտի ըլլար մանրամասն հետեւիլ եգիպտահայ մամուլի արձագանքներուն:

Կարեւորը: Այսօր Եգիպտոս տակաւին կ'ապրի յեղափոխական դրութեան մէջ: Մուպարաքի իշխանաթողութենէն ետք, նէօլիպերալ ուժերը բանակի առաջնորդութեամբ (Եգիպտոսի տնտեսութեան մէկ երրորդը բանակի սեփականութիւնն է) շուտով վերականգնեցին իրենց իշխանութիւնը: Նէօլիպերալիզմի ռահվիրաներ, գերհարուստ անհատներ, ինչպէս՝ Նակիպ Սաուիրէս, առանց ոչ մէկ դժուարութեան փայլեցան յետ-յեղափոխական թատերաբեմին վրայ, պետական հաղորդամիջոցներուն մէջ ներկայացան իբրեւ յեղափոխականներ: Մահմետական Եղբայրները՝ որոնք իրենց գերհարուստ անդամղեկավարներուն եւ անոնց տնտեսական-քափիթալիսթական ուժին շնորհիւ անբաժան մաս մըն էին նէօլիպերալիզմին, դիւրութեամբ իրենց ուժը կրցան օրինականացնել: Մուպարաքեան իշխանութեան ուժերը՝ բոլորն ալ հիմնուած իրենց նէօլիպերալ ուժին վրայ, քիչ մնաց իշխանութեան գլուխը հասնէին Ահմատ Շաֆիքի մարմնաւորումով: Տակաւին մուպարաքականներուն ձեռքն է իշխանութեան կարեւոր բանալիները: Նէօլիպերալիզմը յաղթեց՝ բերկրանք պարգեւելով ինքզինքը բարձր դասող, բարձրութեան ձգտող, ինքզինքը բարձր դասին ենթակայ համարող խաւերուն: Մինչդեռ Եգիպտոսի յեղափոխութեան գլխաւոր նպատակներէն մէկը ուղղուած էր նէօլիպերալիզմի դէմ, որ կլանած էր երկրի բարիքներուն մեծագոյն մասը: Այսօր, Եգիպտոսի մէջ, կամաց-կամաց կը վերականգնուին եւ նորովի կը կազմաւորուին քաղաքական կուսակցութիւններ եւ հասարակական շարժումներ, որոնց նպատակն է մօտիկ ըլլալ ժողովուրդին: Թէ որքան պիտի կարողանան դիմադրել նէօլիպերալիզմը՝ դժուար է կռահել, բայց անկասկած անոնք կը ներկայացնեն յեղափոխական դրութեան կարեւոր մասնիկը: Այս իրավիճակին մէջ, եւ այս յեղափոխական դրութեան մեկնաբանութեան բացակայութեան պարագային, եգիպտահայ մամուլին մէջ ներկայացուած հայերու հետ առնչուող անջատ գիտելիքները ճիշդ հակառակ ուղղութիւն կու տան Եգիպտոսի կացութեան:

Օրինակ, 2011 Դեկտեմբերին կ'առեւանգուի եգիպտահայ մեծահարուստի մը զաւակը՝ փոխան դրամական պահանջի: Ամբողջ եգիպտահայութիւնը կ'ալեկոծուի, ձեռնարկներ կը ջնջուին: Լաւ է որ գոնէ դժբախտ պատահարներու կարեկցական պատմողականութիւն մը կը հաւաքէ գաղութը: Զաւակը շուտով կը գտնուի եգիպտական ոստիկանութեան կողմէ: Ամբողջ գաղութը կը տեղեկանայ՝ թէ առեւանգումը կատարուած էր զաւակին հայ մօրը կարգադրութեամբ (վարձելով առեւանգողները) որպէսզի գումար պահանջէ ամուսինէն: Ամբողջ գաղութը կ'իմանայ՝ բացի մէկ թղթակիցէ մը: Վերջինս պէտք է լուրը տեղաւորէ իր թերթի սիւնակներուն մէջ եւ վարժուած չէ գաղութը «քննադատել»: Կ'ընտրէ անպարկեշտ վերնագիր մը՝ «Անպարկեշտ տեղացիներ կ'առեւանգեն հայ երեխայ մը», բարեբախտաբար չմոռնալով տեղեկացնել՝ թէ «48 ժամ ետք, երեխան կը վերադարձուի իր ծնողքին»: Լուրը բոլորովին կ'անտեսէ որ առեւանգումը կատարուած էր գաղութահայի մը նախաձեռնութեամբ եւ ամբողջ ոճիրը կը վերագրէ «տեղացիներուն»: Յեղափոխութեան դրութեան շրջանն էր: Նոյն լրագիրը, իր նոյն թիւին մէջ, այս յեղափոխական դրութիւնը կը նկարագրէ իբրեւ «խռովութիւն»: Ամէն ինչ կ'ուղղուի Եգիպտոսի դէմ: Տեղի կ'ունենայ գիտելիքի դիտաւորեալ շեղում: Փոխանակ ան ուղղուած ըլլար անուն ունեցող ճշգրիտ անձի եւ ստոյգ հայկական դէպքի մը, շրջեցաւ դէպի անուն չունեցող, անորոշ ոչ-հայկական երեւոյթի մը, եւ նոյնիսկ այս ոչ-հայկական երեւոյթը իր շարժունակութենէն (յեղափոխական դրութիւն) վերածուեցաւ կայունութեան (խռովութիւն):

Երկրորդ օրինակ մը: Քանի մը ամիս առաջ, ուրիշ թերթ մը, գաղութահայ ձեռնարկի մը յատկացուած ծայրագոյն գովաբանական յօդուածի մը մէջ, հայկական ճշգրիտ դէպքին (ձեռնարկին) յաջողութիւնը կը հակադրէ եգիպտական ընդհանուր ձախողութեան հետ, շեշտելով ներկայ Եգիպտոսի «տժգոյն օրերը» եւ աւելցնելով՝ որ մենք հայերս չենթարկուեցանք «երկրիս մէջ շարունակուող հիասթափեցուցիչ, անմիտ, անկայուն քմայքներուն»: Իր այս բնաբանով՝ եգիպտական հասարակութեան շերտաւորումներու բացակայութեամբ, «երկրիս մէջ»-ը կը վերագրուի Եգիպտոսին իր ամբողջականութեամբ: Մենք՝ եգիպտահայերս, գերադաս հանդիսացանք եգիպտացիներէն, քանի որ դիմադրեցինք անոնց անմտութիւնը, անկայունութիւնը եւ քմայքները: Եգիպտոսի յեղափոխական դրութիւնը նոյնացաւ անմտութեան հետ: Յիշենք, որ 1919-ի Եգիպտոսի ժողովրդական յեղափոխութեան ժամանակ, խումբ մը հայեր Գահիրէի մէջ ցոյց կատարեցին Բրիտանական գաղութատիրութեան ի նպաստ, քանի որ այդպէս կը թելադրէին անձնական շահերը: Մինչեւ այսօր մենք չենք ուզեր ընդունիլ մեր կատարածին «անպարկեշտութիւնը», բայց կ'ուզենք որ այլ պարագաներու ուրիշը ընդունի *մեր* դէմ կատարածը: Առանց հաշտուելու մենք մեզի հետ, դժուարութիւն պիտի ունենանք երկխօսութեան մտնել ուրիշներու հետ:

Այս չորս կէտերը կը պարզեն գիտելիքի մասնատումը՝ յստակօրէն գծուած սահմաններով, յստակօրէն բաժնուած *մենքով* եւ *միւսով*: 1-ը եւ 2-ը *մենքը* եւ *միւսը* կը բաժնէ կուսակցութիւններուն միջեւ: 4-րդը *մենքը* կը վերապահէ ամբողջ եգիպտահայերուն՝ առանց կուսակցական միջամտութեան, իսկ *միւսը*՝ ոչ-հայ եգիպտացիներուն: 3-րդը *մենքը* կ'ընդունի իբրեւ կուսակցութեան մը հետ կապ ունեցող եգիպտահայ, *միւսը*՝ իբրեւ արտա-գաղութային եգիպտահայ:

Բոլոր պարագաներուն *մենքը* կը պատմէ ինքն իր մասին, իսկ *միւսը* կը խօսի միայն *մենքի* միջոցով: *Միւսը* կը ներկայանայ իբրեւ գլխագիր Այլը (Other): Ասկէ բխելով, պարտադիր գնահատումի պայմաններուն, գիտելիքը կը բաժնուի երկուքի՝ լաւի (հիմնականը՝ *մենք*) եւ վատի (հիմնականը՝ *միւսը*), իսկ լաւն ու վատը կը ներկայանան առանց երկխօսութեան կարելիութեան:

Տպագրութիւնը չէր որ ստեղծեց *մենքը* եւ *միւսը*, բայց երբ վերածուեցաւ իշխանական տիրապետութեան, ան վստահաբար սուր անկիւններ աւելցուց անոնց: Տպագրութիւնը՝ որ համանուն պէտք է ըլլար գիտելիքի տարածումին, *մենքին* չծանօթացուց *միւսին* հետ, չվերացուց Այլը:

### ԵԶՐԱԿԱՑՈՒԹԻՒՆ՝ ԻԲՐԵՒ ՍԿԻԶԲ

Այսօր, որեւէ ժամանակներէ աւելի, գիտելիքը կախուած է իրմէ անդին գտնուող երեւոյթներէ, որոնց պատճառով ան մասնատուեցաւ ինքն իր մէջ եւ խզուեցաւ միջավայրէն: Դրամն այստեղ վճռական դեր խաղաց: Տպագիր գիրքը եւ մամուլը գնելու համար դրամ է պէտք: Համացանցի մէջ գտնուող անվճար գիտելիքը թէ՛ տեղադրելու եւ թէ՛ կարդալու համար անհրաժեշտ է գնել համակարգիչ եւ արձանագրուիլ համացանցի ընկերութեան մը մօտ:

Որքան տպագրական «շուկան» կը սեփականացուի, այնքան կը խստանան «հեղինակային իրաւունքի» օրէնքները, որոնք կը միտին աւելցնել հիմնահոսանքային, շուկային տիրապետող հրատարակիչներու եւ հեղինակներու դրամական կուտակումները, պաշտօնապէս արգիլելով գիտելիքի վերերեւումը ուրիշ հրատարակութեան մը մէջ եւ մերժելով անոր շրջանառութիւնը: Նեթանիահու որքան պաղեստինցի կ'ուզէ թող սպաննէ՝ հարց չկայ, բայց Անրի Թրուաեա 2003-ին ֆրանսական դատարանին կողմէ կրնայ յանցաւոր հռչակուիլ ու տուգանքուիլ գիտելիքի «առեւանգումի» համար:

Դրամի պատճառով գիրքը՝ եւ ոչ թէ գիտելիքը, անցաւ շուկայական յարաբերութիւններու մրցակցութեան կռուադաշտը, եւ այդ մրցակցութենէն «յաղթական» դուրս գալու համար գիրքը ծանուցուեցաւ Փեփսի-քոլայի եւ Մաղպորոյի նման: Այս ծանուցումի ձեւերէն մէկը հանդիսացաւ հեղինակի անունին ֆեթիշիզացումը կամ աստղայնացումը՝ անկախ հեղինակի գիտելիքէն: Ասիկա քափիթալիսթական շուկայի յայտնի օրէնքներէն մէկն է: Գիտելիքը թաքնուած մնաց հեղինակի ֆեթիշիզացումին եւ գիրքի նիւթականացումին մէջ: Միասնականութիւնը վերածուեցաւ օտարացած առարկաներու՝ տպարան, հեղինակ, գիրք, շուկայ, գնորդ-ընթերցող, գիտելիք:

Գիտելիքն ինքը մասնատուեցաւ եւ մէկ գիտելիքը դարձաւ օտարացած գիտելիքներու կապոցներ: Մասնատուածութեան շնորհիւ, քափիթալիսթական շուկան կրցաւ տիրել գիտելիքին վրայ, զայն ուղղելով ըստ իր քմահաճոյքին:

Այս օտարացուած ուղղութիւններուն մասին/դէմ էր յատկացուած յօդուածս:

Կարելի է՞ վերացնել այս օտարացումը: Աւելի ճիշդ, կարելի՞ է դիմադրել գիտելիքի իշխանականացումը: Կարելի է, եթէ ցանկութիւն ունենանք մտածել ու գործել այլաբանօրէն, եթէ ստեղծուած իրավիճակները դադրինք ընդունիլ իբրեւ վճռուած իրականութիւններ:

Ընթերցող-ընկալողը կրնայ որոշիչ դեր ունենալ՝ գիտելիքը դուրս հանելով իր տպագրուած շրջանակէն եւ դարձնելով երկխօսութեան եւ հասարակական հաղորդակցութեան միջոց: Գիտելիքը տարածուելով բերնէբերան կը կորսնցնէ իր կաշկանդուածութիւնը: Բաշխողականութիւնը փոխարինելով մրցակցութեան, գրաւոր մշակոյթը կրնայ վերականգնել կորսուած բանաւորին մտային ազատագրումը: Գիտելիքը կրնայ վերածուիլ յետ-գրքային, յետ-տպագրային վիճակի («յետ» չի նշանակեր «հակա», ասոնք երկու տարբեր իմաստներ են):

Վերը յիշեցի Հայաստանի եւ Եգիպտոսի նոր գրական-մշակութային-գաղափարական եւ աքթիվիսթական շարժումներուն մասին, զորս անուանեցի յետ-աքատեմիք: Ասոնք արդէն իրենց լեզուով ու գործելակերպով կապուած են փորձառութեան հետ, կը ստեղծագործեն ժողովուրդին մէջ եւ ոչ թէ ներշնչուելով ժողովուրդէն: Իրենց մտայղացքը կը ձգտի դէպի օտարացումի վերացումը: Բայց անոնք տակաւին ստիպողաբար կապուած են տպագրութեան, հրատարակչութեան եւ վաճառքի հետ:

2001 Ապրիլ 21-ին, Ռոն Հորնպէյքըր (Ron Hornbaker) համացանցի (Internet) միջնորդութեամբ հիմնեց գիրքի փոխանակման միջոց մը զոր անուանեց BookCrossing (Գիրքի խաչաձեւում), շուտով ցանցեր ունենալով աշխարհի զանազան երկիրներ(16):

Տաս տարի ետք, 2011 Յունիս 1-ին, Հայաստանի գրքասէր աքթիվիսթներ Արման Ղազարեան եւ Ինեսսա Սադէյեան ձեռնարկեցին նմանատիպ գործունէութիւն մը եւ հիմնեցին Դիմագիրքի (Facebook) էջ մը BookCrossing Armenia անունով: Իրենց տուած բացատրութիւնը ամբողջութեամբ եւ նոյնութեամբ կ'ընդօրինակեմ ստորեւ.

«About:

Կարդացի՞ր՝ փոխանցիր մէկ ուրիշին:

Description:

- Ի՞նչ ենք մենք սովորաբար անում կարդացած գրքի հետ:

- Տարիներով մոռանում դրանք դարակներում...

«Բայց ինչո՞ւ թողնել, որ գիրքը փոշու տակ կորի, եթէ այդ ամբողջ ընթացքում այն կարող է օգտակար լինել ինչ-որ մէկին...»: 2001թ.-ին մտածեց ինտերնէտային տեխնոլոգիաների մասնագէտ Ռոն Խորնբեկէրը եւ սկսեց «BookCrossing« կամ ինչպէս ասում են »գրքերի ազատում« շարժումը:

«BookCrossing»-ի գաղափարը հետեւեալն է՝ մարդիկ թողնում են իրենց կարդացած գրքերը զբօսայգիներում կամ այլ հասարակական վայրերում (նախապէս գրանցելով համապատասխան կայքում կամ էջում), այն գտնում է մէկ այլ մարդ, որն էլ իր հերթին նոյն ձեւով »ազատում« է գրքից, այն կարդալուց յետոյ, եւ այդպէս շարունակ գիրքը մեկնում է մի երկար շրջագայութեան...

Հայաստանում այս շարժումը սկիզբ է առել 2001 յունիսի 1-ին ԵՊԲՀ-ի [Երեւանի Պետական Բժշկական Համալսարան] ուսանողներ՝ Արման Ղազարեանի եւ Ինեսսա Սադէյեանի շնորհիւ: Առաջին BookCrosser-ները հենց Արմանը եւ Ինեսսան էին, որոնք իրենց օրինակով ներքաշեցին նաեւ ընկերներին:

Այժմ նրանց շնորհիւ գործում է էջ Facebook սոցիալական կայքում նուիրուած BookCrossing-ին Հայաստանում (BookCrossing Armenia), որտեղ եւ տեղի է ունենում մասնակիցների շփումը, կարծիքների եւ տպաւորութիւնների փոխանակութիւնը:

Էջի օգնութեամբ մասնակիցները հնարաւորութիւն ունեն հետեւելու իւրաքանչիւր գրքի «պատմութեանը» (թէ ում կողմից է ազատուել տուեալ գիրքը, ով է կարդացել այն), քանի որ գիրքը «բաց թողնելուց» առաջ՝ BookCrossing էջում տեղադրւում է հետեւեալ ինֆորմացիան՝ գրքի նկար, հեղինակ, անուանումը, բովանդակութեան մասին կարճ ակնարկ, կարծիք եւ տպաւորութիւններ գրքից:

Ներկայումս պատրաստւում է գրասէրների համար նախատեսուած նոր կայք, որտեղ աւելի մշակուած եւ յարմար ձեւով կը հետեւենք BookCrossing-ին Հայաստանում:

«BookCrossing»-ը աներեւակայելի յայտնի է Արեւմուտքում, աստիճանաբար այն մեծ թափ է հաւաքում նաեւ մեր երկրում: Արդէն մի քանի հարիւր գիրք պտտւում է Երեւանում այս շարժման շնորհիւ եւ այդ գրքերի թիւը օրէցօր աճում է:

Մի պահէք BookCrossing-ի գիրքը տանը... ազատէք այն... մի գուցէ հենց այդ գիրքն է, որը պիտի փոխի ինչ-որ մէկի կեանքը:

BookCrosser-ների գերնպատակն է դարձնել ամբողջ աշխարհը մի մեծ գրադարան...»(20)

Կարծեմ կարելի չէ աւելի լաւ բացատրել կատարուածը:

Այս այլընտրանքները կրնան գոնէ մեղմացնել գիտելիքի մասնատումը եւ անոր խզումը իր միջավայրէն: Երբ հանրային ենթակայութիւնը վերադառնայ գիտելիքին մէջ, երբ կտոր-կտոր բաժնուած հիմնարկները, նախարարութիւնները, կուսակցութիւնները, մարդիկ, ունենան փոխներթափանցումի եւ ընդհանրականութեան զգացողութիւն (ասիկա չի նշանակեր անոնց վերացումը, այլ անոնց վերակազմաւորումը հանրային նշանակութեամբ), այս պարագային միայն կարելի է արգիլել հայ նկարիչներու գործերու անհետացումը, փրկել Արփիարեանի, Թէոդիկի եւ Կիւրճեանի ձեռագիրները, գտնել ու Հայաստան ուղարկել Յակոբեանի դիւանը, վերադարձնել Սայեաթ-Նովայի շարժունակութիւնը, համերաշխօրէն ինքնաքննադատել, վերացնել Այլը, տեսնել հայ-եգիպտական եւ հայ-իսլամական ներթափանցումները (ներթափանցում չի նշանակեր ազդեցութիւն, չի նշանակեր հայութեան նուազեցում), ամերիկեան համալսարաններու մէջ սորվեցնել մարքսիզմը: Միայն այս պարագային է որ մարդ պիտի դադրի ըսելէ՝ «իմ գործս չէ»: Իրականութեան մէջ, մեր շուրջը պտըտուող ամէն բան՝ «մեր գործն է», ուր *մերը* կը բովանդակէ թէ՛ *մերը* եւ թէ՛ *միւսը* եւ աւելի յառաջացած քայլով մը կը տարրալուծէ Այլը (միւսը): Բանաձեւն է՝ 1+1+1+1...=1 (յիշենք Մունիր Ֆաշէի վերը յիշուած 1+1=2-ի խնդրականացումը), ուր ձախ կողմի 1-երը անհատներն են՝ իւրաքանչիւրն իր գոյութեան ու մտածելու իրաւունքով, աջ կողմի 1-ը այդ անհատներուն տիալեքթիք հաղորդակցականութիւնն է հանրային ենթակայութեամբ: Այս է սկիզբը:

### ՅԵՏ ԳՐՈՒԹԻՒՆ

Յօդուածս անձերու կամ կազմակերպութիւններու «դէմ» չէ, ինչպէս պիտի ուզեն մեկնաբանել ոմանք, այլ կը ձգտիր մեր բոլորին միջոցով եւ մեր արտադրած գիտելիքին ընդմէջէն կատարել որոշ դիտարկումներ: Բոլորս՝ ներառեալ ես ինքս, կը գտնուինք գրութեանս մէջ: Ասիկա «դատապարտութիւն» մը չէ ինձմէ անկախ իրադարձութիւններու, այլ ինքնադիտարկում եւ ինքնապատում մըն է: Ան որ կ'ուզէ բովանդակութիւնը վերածել անձնականի, աւելցուցած պիտի ըլլայ գիտելիքի յաջորդական խզում մը:

(Վերջ 2/2)

### ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

19.-Harry E. Tzalas: *Farewell to Alexandria*, illustrated by Anna Boghiguian, The American University in Cairo Press, 2000

Anna Boghiguian: *Anna's Egypt: An Artist's Journey*, The American University in Cairo Press, 2003

20.-Մանրամասնութիւններու համար այցելէ՝ http://www.bookcrossing.com

# ԵՍ ԱՅՍՕՐԸ ՍԻՐԵՑԻ

Այսօր՝ Փետրուար 19-ը, հայ գրականութեան ամենափայլուն անհատականութեան Յովհաննէս Թումանեանի ծննդեան օրն է:

Վերջին տարիներուն, Հայաստանի մէջ, այս նշանակալից օրը հռչակուեցաւ նաեւ՝ «գիրք նուիրելու օր»: Հիմքը դրուեցաւ օրինակելի եւ գեղեցիկ աւանդութեան մը, որ պահ մը մոռցնել կու տայ հայրենական կեանքին խոժոռ պատկերը, յոռի երեւոյթներն ու ընչաքաղցութեան հետեւանքով ստեղծուած ընկերային անարդարութիւններն ու աչք ծակող բեւեռացումները. որովհետեւ՝ գիրքը կ'ազնուացնէ հոգին, կը մօտեցնէ մտաւոր մշակոյթին եւ կ'ամոքէ գիտութեան եւ իմաստութեան ծարաւի հայորդին:


Յովհաննէս Թումանեանի 1915-ին

Հայաստանի մէջ արդէն հող գտնող այս աւանդոյթը, չեմ գիտեր սփիւռքի մէջ որեւէ արձագանգ ունեցա՞ւ թէ ոչ. սակայն կռահելի է անոր վիճակուած ճակատագիրը, երբ նկատի կ'ունենանք մեր շուրջի մարդկանց անտարբերութիւնը գիրի եւ գրականութեան նկատմամբ:

Վստահաբար, մեր կեանքին մէջ ստացած ենք նուէրներ եւ փոխադարձաբար ընծայած նուէրներ, բայց անոնց մէջ եթէ պատահմամբ գիրք եղած է՝ ներքուստ դժգոհած. քիչ մը արհամարհելով՝ վերջին տեղը դասած ենք գիրքը. քիչ մը անարժէք եւ քիչ մըն ալ հնաոճ նուէր նկատած:

Դուք պատահականութեա՞ն կը վերագրէք արդէն կարծրացող այս մտայնութիւնը, արմատ նետող կարծիքը: Ես՝ ոչ, հոն նշմարելով արեւմտեան քաղաքականութեան չարամիտ նպատակները, որն է՝ քարոզչութեամբ, ուղեղալուացքով եւ հանրային կարծիքին միջոցաւ ընդգծել նիւթեղէնին կարեւորութիւնը եւ մարդ արարածը հեռացնել մտածող-մարդ կարգավիճակէն դէպի մեքենայ-մարդ իրավիճակը: Թեքնոլոժիի անուան տակ կատարուող այս ահեղ միտքի ջարդը, գիրքէ եւ մտաւոր մշակոյթէ հեռացումը կը մտադրէ ստեղծել սորկամիտ, ոչխարամիտ եւ ռոպոթացած հասարակութիւն: Ուստի, ըստ իս, գիրքի դէմ արշաւը, գիր ու գրականութեան նկատմամբ հալածանքը ունի քաղաքական-գաղափարախօսական ենթախորք. յստակ եւ ընդգծուած թիրախ:

Վերադառնալով Յ. Թումանեանի տարեդարձին եւ գիրք նուիրելու օրուան առնչութեան, պէտք է այս համանչումը համարել խելամիտ եւ խորհրդանշական իմաստուն քայլ, քանի «մեր նոր քերթութեան անհաս Արարատը» իրօք եղած է հանրաճանաչ գրքամոլ: Ան իր տան գրադարանները իր զաւակներուն կը ներկայացնէր որպէս մէկական համալսարաններ. ան իր գրադարաններուն վրայ յայտարարութիւն մը դրած էր, գրելով՝ «խնդրում եմ՝ գիրք չխնդրել». եւ մոլի հաւաքող մը եղած է տարբեր տեսակի եւ բովանդակութեան գիրքերու: Այս բոլորի մասին հաճելի ոճով յուշագրած է իր դուստրը՝ Նուարդ Թումանեանը («Յուշեր Եւ Զրոյցներ», Երեւան, 1969):

Բանաստեղծ Պարոյր Սեւակ ակնարկելով Յ. Թումանեանի ծննդեան, կը գրէ.

*«Սակայն այդ թուին Մայր Հայաստանի*
*Արգանդը եղաւ սրբօրէն բեղուն:*
*Մի մանուկ ծնուեց Լոռուայ Դսեղում...*
*Նա յետոյ պիտի դառնայ պատանի,*
*Եւ երիտասարդ, եւ այր իմաստուն»:*

Նոյն տարին ծնան Կոմիտասը, Լեւոն Շանթը, Երուանդ Օտեանը. սակայն գիրք նուիրելու օրը իրաւամբ զօդեցին ամենայն հայոց բանաստեղծին ծննդեան օրուան հետ:

Ինչո՞ւ. որովհետեւ՝ Յ. Թումանեանի գրականութենէն կրնան օգտուիլ, սորվիլ եւ հարըստանալ ամէն տարիքի ընթերցողները. անոր ստեղծագործական ժառանգութիւնը մատչելի է փոքրիկէն մինչեւ ծերունիին, ուսանելի եւ խրատելի է բոլորին համար: Տարիքի, սեռի եւ ճաշակի խտրութիւն չի ճանչնար Թումանեանի կտակած գրական գանձարանը: Ահա հոս է Յ. Թումանեանի մեծութիւնը, որուն ծննդեան տարեդարձին օրը պէտք է գիրք նուիրենք կամ գիրք ակնկալենք մեր սիրելի մէկ հարազատէն:

Գրքասիրութեամբ հանրաճանաչ եղած են նաեւ համաշխարհային պատմական եւ քաղաքական դէմքեր: Տեղին է մէջբերել ԱՄՆ-ի կարկառուն նախագահներէն եւ միջազգային պատմութեան կերտիչներէն Աբրահամ Լինքոլնի խօսքը. «իմ լաւագոյն ընկերս այն անձն է, որ ինծի գիրք մը կը նուիրէ, զոր կարդացած չեմ»: Փետրուար 19-ին, գիրք նուիրելու օրուան առիթով քանինե՞ր պիտի կարողանան բացայայտել իրենց լաւագոյն ընկերները:

Բոլորիս յայտնի է, որ գիրքը անշունչ առարկայ մըն է. իսկ ինծի համար անհասկնալիօրէն գիրքը ապրող էակ մըն է. կարծէք ափերուս մէջ ան կը խօսի, կ'ապրի, կը շնչէ: Եթէ կլանուած ընթերցէք պիտի չնկատէ՞ք որ նշեալ գիրքին հեղինակը ձեզի հետ կը խօսի, կը գրուցէ, միտք ու կարծիք կը փոխանցէ. երբեմն կը յորդորէ կամ կը սաստէ:

Ինչպէս մարդ հետամուտ կ'ըլլայ իր մարմնական սնունդին, նոյնպէս պէտք է մտահոգ ըլլայ իր հոգեմտաւոր սնունդով, որ այս պարագային կը փոխանցուի գիրքով:

Հաւանաբար, այսօր գիրք նուէր չստանամ, բայց կը բանամ նուէր ստացած վերջին գիրքս, տող մը որսալու, միտք մը իւրացնելու կամ մտածում մը կիսելու նպատակով: Նուէրը եկաւ Ժընեւէն՝ Տէր Աբէլ քհնյ. Մանուկեանէն. նորատիպը վերնագրուած է «Գալիլեայի Առաքելութիւնը՝ Սկիզբ Մը Որ Վախճան, Եւ Վախճան Մը՝ Որ Նոր Սկիզբ Ունեցաւ». էջ 108-ին մէջ կը կարդամ. «Արդարեւ, ի՞նչ կ'արժէ շահիլ աշխարհը, սեփական գոյութիւնը խարսխել միայն ունեցուածքին վրայ, բայց կործանել ներքին անձը՝ հոգին: Լինելու սկզբունքը պայմանաւորուած չէ ունենալով: Եթէ ունենալը միջոց մը չէ, այլ՝ պարզապէս ապրելու բարձրագոյն նպատակ մը, վտանգաւոր է եւ կործանարար ոչ միայն սեփական անձին, այլ նաեւ շրջապատին համար: Մարդուն արժանիքը անտարակոյս կը կայանայ ոչ թէ ի՛նչ եւ որքան շատ ունենալուն, այլ ինչպիսի անձ մը, կամ աւելի ճիշդ՝ ո՛վ լինելուն մէջ»:

Ահա հրատապ հարց մը՝ ունենալու եւ ըլլալու հակամարտութիւնը: Ժամանակակից հասարակութիւնը մարդը կը գնահատէ իր ունեցածով եւ ոչ թէ ինչպիսի՛ մարդ ըլլալու հանգամանքով: Եթէ ան կալուած, նիւթական մեծ կարողութիւն եւ գումար ունի, ուրեմն՝ իմաստուն, խելացի, ձեռներէց եւ պիտանի է. ղեկավար ու առաջատար դիրքերու արժանի: Եթէ ան դրամ չունի, բայց առաքինի, ազնիւ, ուղղամիտ է եւ գիտելիք ունի, ապա յաչս հանրութեան թոյլ եւ ոչ պիտանի մարդ է: Մարդու արժեչափը դարձած է նիւթն ու դրամը. հեղինակութիւն ձեռք ձգելու միջոցը դրամն է: Այս է այժմու մտայնութիւնը՝ իր էութեամբ դրամատիրական. վաշխառուն եւ չահագործողը խրախուսող:

Այս բացասական մթնոլորտին մէջ ո՞ւր է գիրքին արժէքը. եւ մանաւանդ ո՞ւր է գիրք նուիրելու օրուան խորհրդանշական իմաստը:

Այսօր գիրք պիտի նուիրէ՞ք ձեր բարեկամին. կը տարակուսիմ:

*«ԱՐԱՐԱՏ»* ԱՒԵՏԻՍ ՌԱԶՄԻԿ
*19 Փետրուար 2013*

ԳԱՀԻՐԷ

## ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

Կիրակի, 17 Փետրուար 2013-ին, երեկոյեան ժամը 7:30-ին, Պըլըքտանեան հանդիսասրահին մէջ տեղի ունեցաւ «Մեծ Մայրիկիս Դաջուածքները» (Grandma's Tattoos) ֆիլմի ցուցադրութիւնը եւ անոր հեղինակին՝ Սիւզան Խարտալեանի հետ հանդիպում-զրոյցը:

Հանդիպման ներկայ էին Թեմիս Բարեխնամ Առաջնորդ Գերշ. Տ. Աշոտ Եպիսկոպոս Մնացականեան, Գահիրէի Հոգեւոր Հովիւ Արժ. Տ. Յակոբ Քհնյ. Յակոբեան, ՀՀ Արտակարգ եւ լիազօր դեսպան Դոկտ. Արմէն Մելքոնեան, Պատկ. Թեմական ժողովի ատենապետ Տիար Նուպար Սիմոնեան, Պատ. Քաղաքական Ժողովի ատենապետ Տիար Օննիկ Պըլըքտանեան, Ազգային Իշխանութեան անդամներ, մշակութային, կրթական եւ մամուլի ներկայացուցիչներ եւ համայնքի անդամներ:

Առաջնորդ Սրբազան Հայրը երեկոյի բացումը կատարելէ ետք հրաւիրեց ֆիլմի հեղինակ եւ բեմադրիչ Սիւզան Խարտալեանը, որ մի քանի խօսքով ներկայացուց ֆիլմի չարժաոիթը, նշելով նաեւ որ Ալ Ժազիրա կայանէն բազմաթիւ անգամներ ներկայացուած է, ինչպէս նաեւ ցուցադրուած՝ Թուրքիոյ եւ Շուէտիոյ մէջ: Ֆիլմի դիտումէն ետք հեղինակը պատասխանեց ներկաներու հարցումներուն եւ առաւել լուսաբանութիւններ տուաւ ֆիլմի մասին:

Վերջաւորութեան, յանուն Ազգային Իշխանութեան գնահատանքի խօսք ուղղեց Պատկ. Թեմական Ժողովի ատենադպիր Տոքթ. Սուրէն Պայրամեան եւ նոր յաջողութիւններ մաղթեց արուեստագիտուհիին:

**ԴԻՒԱՆ**
**ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**

ՖՐԱՆՍԱ

## ԱՇԽԱՐՀԻ ՄԵԾԱԳՈՅՆ ԱԴԱՄԱՆԴԸ ՑՈՒՑԱԴՐՈՒԵՑԱՒ ՓԱՐԻԶԻ ՄԷՋ



Ընթացիկ Փետրուար ամսուան 18-ին, Փարիզի «Ինթըրքոնթինենթըլ» պանդոկի սրահներէն մէկուն մէջ, Հայ Ոսկերիչներու Միութիւնը (Հ.Ո.Մ.) հանրութեան ներկայացուց դեղին ադամանդ մը, որ մեծագոյնը կը նկատուի աշխարհի մէջ:

Հաղորդուած տեղեկութիւններուն համաձայն, ցուցադրուած ադամանդը կը պատկանի ամերիկահայ ոսկերիչ Յակոբ Պարտաղեանին, Նիւ Եորքէն: Ադամանդին մեծութիւնը 110 քարաթ գնահատուած է:



Նշեալ ադամանդին ցուցադրութիւնը կ'ընդգրկուէր այլ հաւաքական ցուցահանդէսի մը ծիրէն ներս, որ կազմակերպըուած էր Հ.Ո.Միութեան անդամ 23 հայ ոսկերիչներու միատեղ մասնակցութեամբ:

6

ԹՈՒՐՔԻԱ

## ԱՄԵՆ. ՄԵՍՐՈՊ Ս. ՊԱՏՐԻԱՐՔ ՍՐԲԱԶԱՆԸ ԽՏԱՑԵԱԼ ԴԱՐՄԱՆՈՒՄԻ ՏԱԿ ԱՌՆՈՒԵՑԱՒ

### Ջերմութիւնը Բարձրացաւ 40 Աստիճանի

*Յաւով կը տեղեկանանք որ Շաբաթ գիշեր յանկարծ մտահոգիչ փոփոխութիւն մը արձանագրուեցաւ Ամեն. Մեսրոպ Ս. Պատրիարքի կայուն վիճակին մէջ, արեան ճնշումի անկումի հետեւանքով ամբողջական խանգարում մը եւ ջերմութեան բարձրացում եւ շնչարգելութիւն արձանագրուեցաւ, ջերմութիւնը բարձրացաւ մինչեւ քառասուն աստիճան: Պատրիարք Հայրը անմիջապէս փոխադրուեցաւ խտացեալ դարմանումի բաժին, անթիպիոթիքներու փոփոխութեամբ նոր դարմանումի մը ձեռնարկուեցաւ:*

*Ներկայիս աշխատանք կը տարուի որպէսզի արեան ճնշումը վերադարձուի բնականոն աստիճանին:*

*Հիւանդանոցի Բժշկապետ Տքթ. Արտաշ Ագտաղի հետ եւ յայտնեց թէ Պատրիարք Սրբազանին մօտ տեսնուած է բորբոքումի հետեւանքով արեան շրջանառութեան անհանգստութիւն (Հիփովոլէն): Սա պահուն աշխատանք կը տարուի որպէսզի այժմու լուրջ վիճակը սրբագրուի եւ ամէն ինչ վերադարձուի բնականոն կայուն վիճակին:*

6

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

# ԱՐԱՄ ԽԱՉԱՏՐԵԱՆ

ԾՆՆԴԵԱՆ 110-ԱՄԵԱԿ

## ՅՈԲԵԼԵՆԱԿԱՆ ՀԱՄԵՐԳ

ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ
**ԳԵՐՇ. Տ. ԱՇՈՏ ԵՊՍ. ՄՆԱՑԱԿԱՆԵԱՆԻ**

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԵԱՄԲ
**ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ**

ԿԱՏԱՐՈՂՈՒԹԵԱՄԲ
**«ԱՐԱ-ՔՍ» ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻ**

ՄԱՍՆԱԿՑՈՒԹԵԱՄԲ
**ԴԱՇՆԱԿԱՀԱՐ ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆԻ**

**ՄԵՆԵՐԳԻՉՆԵՐՈՒ**

**«ԶԱՆԳԵԶՈՒՐ» ՊԱՐԱԽՈՒՄԲԻ**
**ՊԱՐՈՒՍՈՅՑ՝ ՍԻՒԶԱՆ ՅԱԿՈԲԵԱՆ-ԳԱՐԳՈՒՐ**

**«ՄԱՐԴԱՐԱՊԱՏ» ՊԱՐԱԽՈՒՄԲԻ**
**ՊԱՐՈՒՍՈՅՑ՝ ԳԱՐՈԼԻՆ ՄԱԶԼՈՒՄԵԱՆ**

**ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՂԵԿԱՎԱՐ ԵՒ ԽՄԲԱՎԱՐ**
**ՄԻՀՐԱՆ ՂԱԶԷԼԵԱՆ**

**ՇԱԲԱԹ, 16 ՄԱՐՏ 2013, ԺԱՄԸ 7:30-ին**
**«ՊԸԼԸ-ՔՏԱՆԵԱՆ» Հանդիսասրահ, ՀԵԼԻՈՊՈԼԻՍ**
Ծանօթութիւն. Մինչեւ 8 տարեկան երախաներու մուտքը արգիլուած է

**ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ**

## ՅՄԸՄ-ՆՈՒՊԱՐ ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

Ուրբաթ, 8 Մարտ 2013-ին կ.վ. ժամը 2-էն սկսեալ

**ՄԻՋԻՆՔԻ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆ**
**ՃԱՇԿԵՐՈՅԹ**

**Ազատ Շքասեղան**

Աղցաններ, Կերակուրներ եւ Անուշեղէններ

*Կը խնդրուի նախապէս արձանգրուիլ հեռաձայնելով*

*0122-3484508 թիւին*

**ՎԱՐՉՈՒԹԻՒՆ**

## ՀԱՅ ԲԱՐԵՍԻՐԱՑ ՄԱՐՄԻՆ-ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

**ԾԱՂԿԱԶԱՐԴԻ ՏՕՆԻՆ ԱՌԹԻՒ**

**ԱՒԱՆԴԱԿԱՆ ՃԱՇԿԵՐՈՅԹ**

ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ

**ԳԵՐՇ. Տ. ԱՇՈՏ ՍՐԲ. ԵՊՍԿ. ՄՆԱՑԱԿԱՆԵԱՆԻ**

Բարեխնամ Առաջնորդ Եգիպտոսի Հայոց Թեմի

ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ

**ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ՄԻՍԱՔ ԼԷՅԼԷԿԵԱՆԻ**

Կիրակի, 24 Մարտ 2013-ին, յետ միջօրէի ժամը 2-ին

JUNGLE Շքեղ Ճաշարանին մէջ

**ՀԱՅ ԹԵՐԹԸ ԸՆԿԵՐՆ Է ՀԱՅ ՏԱՆ**

## «ՋԱՀԱԿԻՐ»ԻՆ

Ողբ. Անուշ Պալաեանի մահուան տխուր առթիւ Տէր եւ Տիկին Պարգեւ եւ Անի Սարգիսեան կը նուիրեն 100

## ԱՇԽԱՐՀԻ ՄԵԾԱԳՈՅՆ ԱԴԱՄԱՆԴԸ ՑՈՒՑԱԴՐՈՒԵՑԱՒ ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

5

Այս առիթով կը նշուի, որ Հայ Ոսկերիչներու Միութիւնը կը ծրագրէ գործունէութիւն ծաւալել Հայաստանի մէջ, ոսկերչական աշխատանքներու յատուկ Ազատ գօտի (free zone) մը հիմնելով, ուր կը նախատեսուի, որ աշխատանքային հազարաւոր առիթներ ստեղծուին յառաջիկայ տարիներուն:

Նաեւ կ'արժէ նշել, որ հայ ոսկերիչներուն կողմէ պատրաստուող եւ արուեստագիտական ընոյթ կրող ոսկերչական թէ այլ յարգի մետաղներով հրապարակ իջնող գործերը եւ անոնց առնչուող աշխատանքները մեծապէս գնահատուած են աշխարհով մէկ, Միջին Արեւելքէն մինչեւ Արեւմուտք, անցնելով Եւրոպայէն եւ համաշխարհային դիրք ունեցող այլ երկիրներէ:

## ՍԱՐԳՍԵԱՆԻ ԵՐԴՄՆԱԿԱԼՈՒԹԻՒՆԸ՝ ԱՊՐԻԼ 9-ԻՆ

1

*գութիւն կուսակցութեան նախագահ Րաֆֆի Յովհաննիսեան Սիւնիքի մէջ ունեցած հանդիպումներու ընթացքին յայտարարեց, որ ոչ մէկ կողմ պէտք չէ ճնշում գործադրէ ընտրողներու կամքին վրայ: Ան պահանջեց Սիւնիքի մարզպետին հրաժարականը: Յովհաննիսեանի խումբը տակաւին չէ վճռած ընտրութիւններու արդիւնքները բողոքարկելու որոշումը:*

***ՆԱԹՕ-ի** ընդհանուր քարտուղար Անտէրս Ֆոկ Ռազմուսըն շնորհաւորեց Հայաստանի նախագահ Սերժ Սարգսեանը եւ հայ ժողովուրդը՝ միջազգային չափանիշերու համապատասխան ընտրութիւններ կազմակերպելու մէջ յառաջընթաց արձանագրելուն համար:*

***ՆԱԹՕ-ի** բանբերին փոխանցմամբ, կազմակերպութիւնը կ'ուսումնասիրէ միջազգային դիտորդներու նախնական տեղեկագրերը, որոնք կը փաստեն թէ ընտրութիւնները լաւ կազմակերպուած էին, յարգելով մարդու հիմնարար ազատութիւնները:*

## ԱՄԵՆ. ՄԵՍՐՈՊ Ս. ՊԱՏՐԻԱՐՔ ՍՐԲԱԶԱՆԸ ԽՏԱՑԵԱԼ ԴԱՐՄԱՆՈՒՄ

5

*Բժիշկները ուշադիր կը հսկեն ու միջոցի մը համար Պատրիարք Հայրը պիտի մնայ խտացեալ դարմանումի բաժնին մէջ:*

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Տէր եւ Տիկին Թագւոր եւ Սաթօ Արապեան (ԱՄՆ) եւ զաւակը՝ Րաֆֆի, Տիար Մարտիկ Պալաեան եւ զաւակները՝ Ժիրայր եւ Մարալ, Տէր եւ Տոքթ. Վահէ եւ Հերմինէ Վարժապետեան, Տէր եւ Տիկին Տէյվիտ եւ Անի Ֆօլզ (ԱՄՆ) եւ դուստրը՝ Ալիս Անուշ, Տէր եւ Տիկին Կարօ Վարժապետեան եւ զաւակները՝ Ալեգ եւ Թալիա, Տէր եւ Տիկին Արմէն Վարժապետեան, Տիկին Ռոզա Ածիկեան (Հայաստան), Տիկին Լուսի Պալաեան (Գանատա), Տիկին Զարուհի Զօրայեան, Տէր եւ Տիկին Ուաէլ Ֆարահ, Տէր եւ Տիկին Խուան Գարլօս Պէրնարտի (Արժանթին) ինչպէս նաեւ Պալաեան, Ածիկեան, Նազաչեան, Վարժապետեան եւ Ճոճըրեան ընտանիքները նեկայիւս կը ծանուցանեն, թէ կիրակի, 3 Մարտ 2013, կ.ե. ժամը 1.00-ին, Հելիոպոլսոյ Ամենայն Սրբոց գերեզմանատան մէջ, հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց մօր, մեծ մօր եւ ազգականին Ողբ.՝

### ԱՆՈՒՇ ՊԱԼԱԵԱՆ-ի

**(Ծնեալ Ածիկեան)**

մահուան քառասունքին առթիւ:

Հանգուցեալին յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ գտնուիլ:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Տիար Մարտիկ Պալաեան եւ զաւակները՝ Ժիրայր եւ Մարալ, Տիկին Զարուհի Զօրայեան, Տէր եւ Տիկին Ժիրայր Զօրայեան (Գանատա), Տէր եւ Տիկին Հայկ Նազաչեան եւ զաւակները, Տոքթ. եւ Տիկին Տիգրան Զօրայեան (Ֆրանսա), Տէր եւ Տիկին Թագւոր Արապեան եւ զաւակները (ԱՄՆ), Տէր եւ Տիկին Վահէ Վարժապետեան, Տէր եւ Տիկին Աշոտ Նազաչեան եւ զաւակները (Գանատա), Տէր եւ Տիկին Կարօ Վարժապետեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Արմէն Վարժապետեան ինչպէս նաեւ Զօրայեան, Պալաեան եւ Ճոճըրեան ընտանիքները, նեկայիւս կը ծանուցանեն, թէ կիրակի, 3 Մարտ 2013, կ.ե. ժամը 1.00-ին, Հելիոպոլսոյ Ամենայն Սրբոց գերեզմանատան մէջ, հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի, իրենց սիրելի կնոջ, մօր, զաւակին, քրոջ եւ ազգականին Ողբ.՝

### ՍՈՆԱ ՊԱԼԱԵԱՆ-ի

մահուան Դ. տարելիցին առթիւ:

Հանգուցեալին յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ գտնուիլ:

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

### Ի ԳԻՏՈՒԹԻՒՆ ՄԵՐ ԲԱՐԵՊԱՇՏ ԺՈՂՈՎՈՒՐԴԻՆ ԽԱՂԱՂԱԿԱՆ ԵՒ ՀԱՆԳՍՏԵԱՆ ԺԱՄԵՐԳՈՒԹԻՒՆՆԵՐԸ ՊԻՏԻ ԿԱՏԱՐՈՒԻՆ

Ամէն **ՀԻՆԳՇԱԲԹԻ՝ ՄԵՐՃԱՆԵԱՆ ՄԱՏՈՒՌԻՆ ՄԷՋ**
Ամէն **ՈՒՐԲԱԹ՝ Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ԱՌԱՋՆՈՐԴԱՆԻՍՏ ԵԿԵՂԵՑՒՈՅ ՄԷՋ**
Ժամերգութիւններու սկիզբը՝ երեկոյեան ժամը 5-ին

Կը հրաւիրենք ներկայ ըլլալու հոգեզմայլ եւ հոգեպարար սոյն արարողութիւններուն, որպէսզի աղօթքի միջոցով Աստուծոյ Խաղաղութիւնը եւ Սէրը մշտապէս բնակութիւն հաստատեն մեր հոգիներէն ներս:

**Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Մեծ Պահոց շրջանին, ամէն **Ուրբաթ երեկոյեան**, Հելիոպոլսէն դէպի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցի հաւատացեալներուն փոխադրութիւնը դիւրացնելու համար, եկեղեցւոյ Հոգաբարձութիւնը կարգադրած է հանրաշարժի մասնաւոր սպասարկութիւն «Եկեսցէ»-ի արարողութեան համար: Հանրաշարժի կանգառներն են.

Սալահ էլ-տին Հրապարակ (ծաղկավաճառին առջեւէն) ժամը 3:45-ին
Այծեմնիկ Հանգստեան Տան շէնքին առջեւէն ժամը 4:00-ին
Իսկ **Կիրակի առաւօտները**
Սալահ էլ-տին Հրապարակ (ծաղկավաճառին առջեւէն) ժամը 9:00-ին
Այծեմնիկ Հանգստեան Տան շէնքին առջեւէն ժամը 9:10-ին

**Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),



Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com



Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1699 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 14 ՄԱՐՏ 2013 | ՀԱՏԸ ՉԵՈՔԷ 75 Ե. Դհկ. | عدد رقم ١٦٩٩ الخميس ١٤ مارس ٢٠١٣


ՀԱՅԱՍՏԱՆ

## ՀՀ ՆԱԽԱԳԱՀ ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆ ԿԸ ԿԱՐԵՒՈՐԷ Ս.Դ.Հ.Կ.-Ի ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹԵԱՆ ՊԱՏՐԱՍՏԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

Հայաստանի Հանրապետութեան նախագահ Սերժ Սարգսեան Մարտ 9-ին ընդունեց Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան Կուսակցութեան պատուիրակութիւնը, գլխաւորութեամբ Կեդրոնական Վարչութեան ատենապետ Ընկ. Սեդրակ Աճեմեանին, ընկերակցութեամբ Կեդրոնական Վարչութեան անդամ Ընկ. Վազգէն Գալթաքճեանին եւ կուսակցութեան Հայաստանի վարիչ մարմնի ատենապետ Ընկ. Գէորգ Պերկուպերկեանին:

Ընկ. Աճեմեան կուսակցութեան անունով շնորհաւորեց Սարգսեանի վերընտրութիւնը: Ան բարձր գնահատեց նախագահին ու կառավարութեան գործունէութիւնը, ընդգծելով, որ տակաւին առկայ են բազմաթիւ խնդիրներ, որոնց նախագահը անդրադարձած է իր նախընտրական քարոզարշաւի ամբողջ ընթացքին:

Սարգսեան իր կարգին բարձր գնահատեց Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան Կուսակցութեան պատմական դերակատարութիւնը համազգային խնդիրներու լուծման գործին մէջ ու կարեւորեց կուսակցութեան համագործակցութեան պատրաստակամութիւնը: Ընկ. Աճեմեան դիտել տուաւ, որ Հայաստան կ'ընթանայ բարեփոխումներու ուղիով, ընտրութիւնները յառաջընթաց արձանագրած են, այնպէս ինչպէս կը վկայեն միջազգային մարմինները: Ան նաեւ դրուատեց սուրիահայերու նկատմամբ իշխանութիւններու իրականացուցած քաղաքականութիւնը: Կեդրոնական վարչութեան ատենապետ ընկերը, նշում կատարելով հայ ժողովուրդի դիմագրաւած դժուար մարտահրաւէրներուն, կարեւորեց համազգային խնդիրներու լուծման գործին մէջ միասնականութիւնը ու վերահաստատեց կուսակցութեան պատրաստակամութիւնը՝ շարունակելու աշխատանքը պետութեան կողքին՝ այդ խնդիրներու լուծման ուղղութեամբ:

## ԸՆԿ. ՍԵԴՐԱԿ ԱՃԵՄԵԱՆ. «ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ՄԷԿ ՔԱՅԼ ԱՌԱՋ ԷԻՆ»



Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան Կուսակցութիւնը ներկայացնող պատուիրակութիւն մը, գլխաւորութեամբ Կուսակցութեան Կեդրոնական Վարչութեան ատենապետ Ընկ. Սեդրակ Աճեմեանի, Մարտ 6-ին հանդիպում ունեցաւ Հայաստանի վարչապետ Տիգրան Սարգսեանին հետ: Հանդիպումին ներկայ գտնուեցան նաեւ Կեդրոնական Վարչութեան անդամ Ընկ. Վազգէն Գալթաքճեան եւ կուսակցութեան Հայաստանի վարիչ մարմնի ատենապետ Ընկ. Գէորգ Պերկուպերկեան:

Զրուցակիցները անդրադարձան Հայաստանի նախագահական ընտրութիւններուն: «Մեր նախորդ հանդիպումին դուք համոզմունք յայտնեցիք, որ Հայաստանի մէջ պիտի կայանան ազատ ու թափանցիկ ընտրութիւններ: Այսօր կրնանք նշել, որ Հայաստանի իշխանութիւնները ունեցան այդ քաղաքական կամքը: Ընտրութիւնները մէկ քայլ առաջ էին, այնպէս ինչպէս կը վկայեն միջազգային կառոյցները», ըսաւ Ընկ. Աճեմեան, պատրաստակամութիւն յայտնելով սերտացնելու իշխանութիւններուն հետ փոխադարձ յարաբերութիւնները: Ան նաեւ դրուատեց սուրիահայերուն տրամադրուած օժանդակութիւնները: Վարչապետ Սարգսեան իր կարգին նշեց, որ ժողովրդավարական գործընթացներու կազմակերպումը՝ իշխանութիւններու պարտքն է:

ՄՈՍԿՈՒԱ

## ՄՈՍԿՈՒԱՅԻ ՄԷՋ ԿԱՅԱՑԱԾ Է ՍԱՐԳՍԵԱՆ-ՓՈՒԹԻՆ ՀԱՆԴԻՊՈՒՄ

Հայաստանի Հանրապետութեան նախագահ Սերժ Սարգսեան, վերընտրուելէ ետք առաջին այցելութեամբ ուղղուեցաւ Մոսկուա, ուր Մարտ 12-ին պաշտօնական հանդիպում ունեցաւ իր ռուս պաշտօնակից Վլատիմիր Փութինի հետ, անոր՝ մայրաքաղաքէն դուրս գտնուող նստավայրին մէջ:

Սարգսեանի համաձայն, վերընտրուելէ ետք առաջին այցելութեամբ՝ Ռուսիա ուղեւորուիլը զարմանալի չէ, նկատի առնելով երկու երկիրներուն միջեւ գոյութիւն ունեցող ռազմավարական յարաբերութիւնները: «Մենք բացառիկ արդիւնքներու հասած ենք բոլոր ոլորտներուն մէջ եւ յառաջընթաց արձանագրուած է ռազմական մարզէն ներս, մեր վերջին հանդիպումէն ետք»,- ըսաւ Սարգսեան եւ Փութինին հրաւիրեց այցելելու Հայաստան:

Սերժ Սարգսեանի եւ Վլատիմիր Փութինի Մոսկուայի մէջ տեղի ունեցած հանդիպումի ընթացքին Ռուսիոյ նախագահը իր կարգին նշում կատարած է երկկողմանի առանձնայատուկ յարաբերութիւններուն: «Մենք ունինք մեծ, հեռանկարային, լաւ համատեղ ներդրումային ծրագրեր: Մեր մօտ շատ հայեր կան, անոնք մեր երկրի օրինապահ, ստեղծագործ եւ աշխատող քաղաքացիներն են»,- ըսած է Փութին:

Երկու նախագահներու հանդիպումը տեւած է մօտ մէկ ժամ, հանդիպման աւարտին որեւէ փաստաթուղթ չէ ստորագրուած:

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՅՈՎՀԱՆՆԻՍԵԱՆ ՊԱՏՐԱՍՏ Է ՇԱՐՈՒՆԱԿԵԼ ՀԱՑԱԴՈՒԼԸ ՆՈՅՆԻՍԿ ՄԻՆՉԵՒ ԱՊՐԻԼ 9-Ը



Րաֆֆի Յովհաննիսեան Ազատութեան հրապարակի վրայ հացադուլ կը կատարէ: Կողքին իր երիտասարդ համակիրները:

Հայաստանի նախագահական ընտրութիւններու պաշտօնական արդիւնքները վիճարկող թեկնածու՝ Րաֆֆի Յովհաննիսեան Ազատութեան հրապարակի վրայ, ուր յայտարարած է հացադուլ, կրկին անգամ պնդեց, որ պատրաստ է նախագահ Սերժ Սարգսեանի հետ քննարկել բոլոր հարցերը, սակայն՝ նոյն հրապարակի վրայ միայն:

Ընդդիմադիր գործիչը աւելցուց, որ նախագահի նստավայր կ'երթայ, «միայն որպէս հայ ժողովրդի ընտրուած ներկայացուցիչ»: Ան յայտարարեց, որ պատրաստ է հացադուլը շարունակել նոյնիսկ մինչեւ Ապրիլ 9-ը՝ նոր նախագահի երդումի օրը:

Անցնող շաբթուայ ընթացքին Յովհաննէսեան դարձեալ այցելեց շրջաններ, ուր ժողովուրդի հետ ունեցած իր հանդիպումներէն մէկուն ընթացքին յայտարարեց, որ պատրաստ է համաձայնելու նոր ընտրութիւններու եւ կամ երկրորդ փուլի:

«Ազգային համաձայնութիւնը, միասնական ազգը հնարաւոր է միմիայն իրաւական, սահմանադրական ընտրութիւններու միջոցով: Հայ ժողովրդի մեծ մասը ունի այն տեսակէտը եւ ունենք ապացոյցները, փաստերը, ցոյց տալու համար, որ հերթական անգամ ընտրութիւնները խեղուեցին, գողցուեցին, եւ չի կարելի հիմա հռետորաբանութեան համար ասել, որ [Սերժ Սարգսեանը] ընտրուած նախագահ է: Ներկայ դրութեամբ եթէ ընտրուած նախագահ կայ, դա պարոն Սարգսեանը չէ: Բայց ես ունեմ այնքան համեստութիւն, չասելու համար յաջորդ նախագահութիւնը: Ասում եմ, որ ժողովրդի մեծ մասի կարծիքն այն է, որ մէկ ուրիշն է ընտրուած նախագահ, բայց ես պատրաստ եմ հիմա լուծում գտնել: Եւ եթէ պարոն Սարգսեանը ↪ 6

## «ՄԵՆՔ ՈՒՆԻՆՔ ՊԱՊ ՄԸ»՝ ՖՐԱՆՍԻՍ Ա.



Կաթողիկէ աշխարհը ունի սրբազան նոր քահանայապետ: Արժանթինցի կարտինալ Խորխէ Մարիօ Պերկոլիօ դարձաւ Հռոմի 266-րդ Պապը, ընտրելով Ֆրանսիս Ա. պապական անունը:

Նոր Պապը յայտնուեցաւ Վատիկանի հրապարակները ողողած տասնեակ հազարաւոր հաւատացեալներուն առջեւ եւ կոչ ուղղեց եղբայրութեան, սիրոյ եւ խաղաղութեան: Նոր Պապը աղօթեց հրաժարեալ Պապ Պենետիքտոս ԺԶ.-ին համար, ապա հաւատացեալներէն խնդրեց, որ աղօթեն իր նոր առաքելութեան յաջողութեան համար: «Այսօր կը սկսինք սիրոյ, վստահութեան ու եղբայրութեան ուղի մը: Կ'աղօթենք իրարու համար, որպէսզի բոլորը ըլլան եղբայրներ», ըսաւ Նոր Պապը, Վատիկանի կեդրոնական պատշգամէն արտասանած առաջին յայտարարութեան մէջ:

Նշենք, որ սպիտակ ծուխը Վատիկանի Սիստինեան մատուռի ծխնելոյզէն ↪ 2

## ՍԵԴՐԱԿԵԱՆ ՊԱՏՈՒԻՐԱԾ Է ՀԱՅՐԻԿԵԱՆԻ ՄԱՀԱՓՈՐՁԸ

Հայաստանի Ազգային Անվտանգութեան Ծառայութիւնը, նախագահական նախկին թեկնածու Պարոյր Հայրիկեանի մահափորձի թղթածրարին գծով պաշտօնապէս մեղադրանք արձակեց նախագահական մէկ այլ թեկնածու Վարդան Սեդրակեանին դէմ:

Անվտանգութեան ծառայութիւնները նաեւ երկու ամիսով կալանաւորած են Սեդրակեանին ու այժմ կը կայանայ հարցաքննութիւն:

Նախագահական նախկին թեկնածուն կը մերժէ ցուցմունք տալ կամ խոստովանութիւններ կատարել: Ապահովական միաւորներ նախապէս քննութիւններ իրականացուցին Սեդրակեանի գրասենեակին մէջ: Կը կարծուի, որ ան պատուիրած է Հայրիկեանի սպանութիւնը:

## ԿԻՊՐԱՀԱՅ ԿԵԱՆՔ

# ԿԻՊՐԱՀԱՅՈՒԹԻՒՆԸ ԸՆՏՐԵՑ ՆՈՐ ԹԵՄԱԿԱՆ ԺՈՂՈՎ

*Մարտ 3-ին, Կիրակի օր, կիպրահայերը ուղղուելով Նիկոսիոյ, Լարնաքայի եւ Լիմասոլի մէջ գտնուող քուէատուփերը, ընտրեցին Ազգային Իշխանութեան նոր պատկառելի Թեմական Ժողովի անդամները: Իրենց քաղաքէն Թրքական գրաւման հետեւանքով տեղահան եղած Ֆամակուսթացի կիպրահայեր եւս մասնակցեցան ընտրութեանց, իրենց բնակած քաղաքներուն մէջ:*

*Նոր Թեմական Ժողովը կը բաղկանայ 11 անդամներէ: Ընտրութիւնները ընթացան խաղաղ մթնոլորտի մէջ՝ կազմակերպութեամբ Կիպրոսի Թեմի Առաջնորդարանին կողմէ գոյառուած ընտրական յանձնախումբին կողմէ: Յանձնախումբը կը հսկէր ընտրութեան գործընթացին, կը ստուգէր ընտրացանկերը եւ ապա կատարեց հաշուարկը:*

*Տեղին է նշել, որ կազմուած էր համախոհական ցանկ մը՝ կիպրահայ կեանքէն ներս գործող գլխաւոր երեք միաւորներուն (Հ.Յ.Դ., Ս.Դ. Հնչակեան Կուսակցութիւն եւ Հ.Բ.Ը.Մ.) համաձայնութեամբ եւ հաւանութեամբ, նաեւ Կիպրոսի Թեմի կաթողիկոսական փոխանորդ Գերշ. Վարուժան Արք. Հերկելեանի օրհնութեամբ:*

*Նոր Թեմական Ժողովի անդամ ընտրուեցաւ Ս.Դ.Հ.Կ. Կիպրոսի Վարիչ Մարմնի ատենապետ ընկ. Աւետիս Փոչօղլեան:*

*Թեմական Ժողովը կիպրահայ ազգային-եկեղեցական կեանքին գերագոյն մարմինն է, որ կը հետեւի եւ կը տնօրինէ գաղութահայ կեանքը իր տարբեր երեսներով: Այդ ժողովն է, որ կը նշանակէ Ազգային Իշխանութեան Վարչական Ժողովը, որ գործադիր մարմինն է կիպրահայ ազգային-եկեղեցական կեանքին:*

*Յիշեցնենք, որ նախորդ պաշտօնաւարտ Թեմական Ժողովը ընտրուած էր 2007 Մայիս 27-ին, որուն անդամ ընտրուած էր ընկ. Յակոբ Տիգրանեան:*

# ԵՐԵՒԱՆ - ՎԱՆ ԱՌԱՋԻՆ ԹՌԻՉՔԸ ԿԸ ՆԱԽԱՏԵՍՈՒԻ ԱՊՐԻԼԻ 3-ԻՆ

*Հայաստանի աւիացիոն իշխանութիւնները օրերս պաշտօնական թոյլատուութիւն են տուել Երեւան-Վան թռիչքներ իրականացնելու համար: Նման թռիչք իրականացնելու խնդրանքով ՀՀ կառավարութեանն առընթեր Քաղաքացիական աւիացիայի գլխաւոր վարչութեանը դիմել էր «Նարեկաւանք Տուր» ընկերութիւնը: Ընկերութեան տնօրէն Աշոտ Սողոմոնեանը «Ազատութիւն» ռատիոկայանին տեղեկացրեց, որ նախքան Հայաստանի իշխանութիւններին դիմելը իրենց թուրք գործընկերները նման թռիչքներ իրականացնելու թոյլտուութիւն են ստացել Թուրքիայի իշխանութիւններից:*

*Նման թռիչք ստեղծելու հիմնական նպատակը դէպի Արեւմտեան Հայաստան հայ զբօսաշրջիկների տեղափոխումը աւելի մատչելի դարձնելն է, սակայն յետագայում «Նարեկաւանք Տուրի» տնօրէնի խօսքով, իրենք յոյս ունեն, որ հոսք կը լինի նաեւ դէպի Հայաստան:*

*Այս ուղղութեամբ առաջին թռիչքը հաւանաբար տեղի կ'ունենայ Ապրիլի 3-ին: Այն կը տեւէ 40 վայրկեան:*

1

# «ՄԵՆՔ ՈՒՆԻՆՔ ՊԱՊ ՄԸ»՝ ՖՐԱՆՍԻՍ Ա.

*բարձրացաւ տեղական ժամանակացոյցով երեկոյեան 7-ին, ընդամէնը քուէարկութեան 5-րդ հանգրուանի աւարտին: Կարտինալ Ժան Լուի Տորան յայտարարեց նոր Պապի անունը, նախ արտասանելով՝ «մենք ունինք Պապ մը» հռչակաւոր եզրը: Ֆրանսիս Ա. դարձաւ պատմութեան առաջին ոչ եւրոպացի Պապը: Ան ծնած է Պուէնոս Այրէս, 1936 Դեկտեմբեր 17-ին: Իր Աստուածաբանական ուսումը ստացած է Սան Միկէլի Աստուածաբանական կեդրոնին մէջ:*

*Ֆրանսիս Ա. 2005-էն 2011 ստանձնած էր Արժանթինի եպիսկոպոսներու համագումարի նախագահի պաշտօնը:*

*Ֆրանսիս Պապի ձեռնադրութիւնը կը կայանայ Մարտ 19-ին:*

*Պապը երէկ հանդիսապետեց իր առաջին պատարագը, Սիստինեան եկեղեցւոյ մէջ, ներկայութեամբ կարտինալներուն: Ան ապա անակնկալ այցելութեամբ անտեսեց ապահովական նկատառումները եւ ուղղուեցաւ Հռոմի եկեղեցի, առանձին աղօթելու համար:*

*Բոլոր լրատուամիջոցները մեծարեցին նոր Պապի համեստութիւնը եւ աղքատներու հանդէպ անոր սէրը:*

*Թրքական լրատուամիջոցները լայնօրէն անդրադարձան Հռոմի նորընտիր Պապի՝ Հայոց Ցեղասպանութեան մասին կատարած յայտարարութիւններուն, որոնց մէջ Պապը Անգարային կոչ ուղղած էր ճանչնալու Ցեղասպանութեան փաստը:*

*Իսկ Հայաստանի, Վրաստանի, Ռուսիոյ եւ Արեւելեան Եւրոպայի Կաթողիկէ եկեղեցիներու առաջնորդ Ռաֆայէլ Արք. Մինասեան դիտել տուաւ, որ նոր Պապը միշտ աչքի ինկած է իր հայասիրութեամբ: «Հռոմի նոր Պապի ընտրութեամբ աւելի կ'ամրապնդուին յարաբերութիւնները հայ եկեղեցւոյ հետ», ըսաւ առաջնորդ Սրբազանը:*

# «ՖՈՐՊՍ»-Ի ՏԱՐԵԿԱՆ ՑՈՒՑԱԿԻՆ ՀԱՄԱՁԱՅՆ ՍԱՄՈՒԷԼ ԿԱՐԱՊԵՏԵԱՆ ԱՇԽԱՐՀԻ ԱՄԵՆԷՆ ՀԱՐՈՒՍՏ ՀԱՅՆ Է



Գործարար Սամուէլ Կարապետեան:

*Ամերիկեան «Ֆորպս» պարբերականը (Forbes) հրապարակեց աշխարհի միլիարատէրերու տարեկան իր ցուցակը, որուն մէջ տեղ գտած են նաեւ հայեր:*

*Ռուսաստանի քաղաքացի, գործարար Սամուէլ Կարապետեան իր 3.8 միլիար տոլարի կարողութեամբ Forbes-ի ցուցակին վրայ կը գրաւէ 353-րդ տեղը: Կարապետեանի մասին գրուած է, որ ան անշարժ գոյքով զբաղուող «Տաշիր Կրուփ»-ի ղեկավարն է, որուն կը պատկանի 24 առեւտուրի կեդրոն, 7 գրասենեակային շէնք եւ 7 հիւրանոց, ծնած է Հայաստան եւ 1990-ականներուն տեղափոխուած է Ռուսաստան:*

*Հայազգի միլիարատէր, «Լինսի» հիմնադրամի ղեկավար 95-ամեայ Քըրք Քրքորեան 3.3 միլիարով Forbes-ի ցուցակին վրայ 412-րդն է:*

*Ցուցակին վրայ է նաեւ Արժանթինահայ Էտուարտօ Էոնեկեան, որ 1.8 միլիար տոլար կարողութեամբ աշխարհի 831-րդ ամենէն հարուստ մարդն է: Ան Եւրոպայի եւ Լատինական Ամերիկայի մէջ 49 օդանաւակայաններու տէր է, Արժանթինի փոստային ծառայութիւնը կը պատկանի իրեն եւ հազարաւոր հեկտարներու վրայ կ'արտադրէ գինի եւ ձիթապտուղ:*

# ԵՐԵՔ ԵՒՐՈՊԱԿԱՆ ՕԴԱՅԻՆ ԸՆԿԵՐԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐ ԿԸ ԴԱԴՐԵՑՆԵՆ ՀԱՅԱՍՏԱՆ ԹՌԻՉՔՆԵՐԸ

Օդային սպասարկութեան հարցի կապակցութեամբ այսօր անախորժ լուր մը կայ Հայաստանի համար։ Եւրոպայի մէջ երեք օդանաւային ընկերութիւններ որոշեցին դադրեցնել դէպի Հայաստան իրենց թռիչքները։

Լուրը հրապարակուեցաւ Հայաստանի Ճամբորդական Ընկերակցութիւններու Միութենէն։ Եւրոպական յիշեալ ընկերութիւններն են Անգլիական Պրիթիշ Էյրուէյզը, Լոթլեհական Օդային Սպասարկութիւնը եւ Լաթվիոյ Էյր Պալթիքը։

Հայաստանի շահագրգիռ մարմինները մտահոգ են այս երեք ընկերակցութիւն- 6

## ԳԱՀԻՐԷ

## ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

### Մայր Աթոռ Ս. Էջմիածնի Պատուիրակութիւնը Մասնակցեցաւ Եթովպիոյ Նորընտիր Պատրիարքի Գահակալութեան Արարողութեան

Կիրակի, 3 Մարտ 2013-ին, Ատիս Ապապայի Ս. Երրորդութիւն Եկեղեցւոյ մէջ տեղի ունեցաւ Եթովպիոյ Ուղղափառ Եկեղեցւոյ նորընտիր պետ Նորին Սրբութիւն Ապունա Մատաթիա Ա. (Մաթիաս) Պատրիարքի գահակալութիւնը:

Արարողութեան կը մասնակցէին Եթովպիոյ Եկեղեցւոյ բոլոր եպիսկոպոսները, որոնք հանդիսաւոր կերպով նորընտիր Պատրիարքին յանձնեցին Պատրիարքական գաւազանը, թագը եւ զգեստները:

Գահակալութեան հանդիսաւոր արարողութեան ի շարս այլ Եկեղեցիներու ներկայացուցիչներուն, մասնակցեցաւ նաեւ Հնդիկ Մալապար Եկեղեցւոյ Պատրիարքը, Եթովպիոյ պետական անձնաւորութիւններ, Եթովպիոյ մէջ գործող դեսպաններ, ինչպէս նաեւ հաւատացեալներու հոծ բազմութիւն մը:

Սոյն արարողութեան, Ամենայն Հայոց Կաթողիկոսի՝ Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Բ. Հայրապետի տնօրինութեամբ Մայր Աթոռ Ս. Էջմիածինը կը ներկայացնէին Իրաքի Հայոց Թեմի Առաջնորդ Գերշ. Տ. Աւագ Արք. Ասատուրեանը եւ Եգիպտոսի Թեմի Առաջնորդ Գերշ. Տ. Աշոտ Եպս. Մնացականեանը: Վերոնշեալ արարողութեան ներկայ էին նաեւ Գերշ. Տ. Կորիւն Արք. Պապեանը եւ Գերշ. Տ. Նարեկ Արք. Ալեմէզեանը որպէս ներկայացուցիչներ Մեծի Տանն Կիլիկիոյ Կաթողիկոսութեան:

Որպէս քոյր եկեղեցի, Հայաստանեայց Առաքելական Եկեղեցւոյ պատուիրակութիւնը աղօթքով մասնակցեցաւ գահակալութեան արարողութեան:

Յաւարտ Ս. Պատարագի Եկեղեցւոյ բակին մէջ տեղի ունեցաւ հանդիսութիւն: Սոյն միջոցառումին Գերշ. Տ. Աւագ Արք. Ասատուրեանը ընթերցեց Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Բ. Կաթողիկոսի շնորհաւորական ուղերձը՝ յղուած Նորին Սրբութիւն Մատաթիա Ա.-ին, Եթովպիոյ Ուղղափառ Եկեղեցւոյ Պատրիարք ընտրուելու առթիւ: Շնորհաւորագիրի մէջ մասնաւորապէս յիշուած է.

«Վստահ ենք, որ Ձերդ Սրբութեան գահակալութեան օրոք մեր եկեղեցիների պատմական բարեկամութիւնը, որում նաեւ կարեւոր դերակատարութիւն ունի Եթովպիոյ հիւրընկալ երկրում ապրող փոքրաթիւ, բայց պատմական հայ համայնքը, կը շարունակի զօրանալ եւ գործակցութեան նոր արդիւնքներ արձանագրել՝ ի խնդիր միջ-եկեղեցական եւ միջ-կրօնական երկխօսութեան, աշխարհում խաղաղութեան եւ կայունութեան հաստատման»:

Յաջորդ օրը Հայ Եկեղեցւոյ Պատուիրակութեան անդամները հանդիպում ունեցան Մատաթիա Ա. Պատրիարքին հետ: Զրոյցի ընթացքին մտքերու փոխանակում տեղի ունեցաւ միջ-եկեղեցական յարաբերութիւններու սերտացման կարեւորութեան մասին:

**ԴԻՒԱՆ**

**ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**

## ՀԱՅԱՍՏԱՆ

# ԱԳՆ-Ի ՇԷՆՔԻ ԱՃՈՒՐԴԸ ՉԿԱՅԱՑԱՒ ԱՅՆ ԿԸ ՎԱՃԱՌՈՒԻ «ՏԱՆԳՕ»-ԻՆ



Հայաստանի արտաքին գործոց նախարարութեան շէնքը Հանրապետութեան հրապարակին վրայ:

*Հայաստանի արտգործնախարարութեան շէնքի Մարտ 5-ին նշանակուած աճուրդը չկայացաւ, գնորդի բացակայութեան պատճառով:*

*Հաշուի առնելով այդ հանգամանքը, որոշուեց շէնքը վաճառել «Տանգօ» ընկերութեանը, որի հետ նախնական պայմանագիր էր կնքուել:*

*Նախնական պայմանագրով «Տանգօ» ընկերութիւնը, որը, ըստ շրջանառուող տեղեկութիւնների, պատկանում է արժենտինահայ մեծահարուստ Էդուարդօ Էռնեկեանին, կառավարութեան թիւ 2 մասնաշէնքի համար պէտք է վճարի 51 միլիոն 270 հազար 840 տոլարին համարժէք դրամ:*

*Անցած տարեվերջին Հայաստանի կառավարութիւնը որոշում էր ընդունել, հաշուի առնելով հասարակական դժգոհութիւնը, արտգործնախարարութեան շէնքը վաճառել ոչ թէ ուղղակի վաճառքի ձեւով, այլ՝ աճուրդով:*

# ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ԽՈՀԵՐ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

## ՄՈՒՏՔ

Յետայսու *Ջահակիր* պիտի հիւրընկալէ կայուն սիւնակ մը «Այլընտրանքային խոհեր» վերտառութեամբ: Ճիշդն ըսած ըլլալու համար՝ ոչ այնքան կայուն սիւնակ մը: Անիկա կայունութիւններու կողմնակիցը պիտի չըլլայ, երբեմն պիտի ըմբոստանայ անոնց դէմ:

Ինչո՞ւ սիւնակ մը: Կամ ինչո՞ւ գրել ընդհանրապէս: Այս հարցումին պատասխանը ունին հիմնահոսանքային (mainstream) այն գրողները՝ որոնք ինքնակոչ հռչակումով մը իրենց ուսերուն վերցուցած են իրենցմէ անդին գտնուող հասարակութեան սրբագրութիւնը եւ դաստիարակութիւնը: Անոնք կը գրեն «որպէսզի ընթերցողներու լայն խաւերը ծանօթանան այսինչ բանին հետ», «որպէսզի ժողովուրդը զարգանայ», «որպէսզի ժողովուրդը բան մը սորվի», «որպէսզի ժողովուրդը արթննայ», «որպէսզի հայ ժողովուրդը ծանօթանայ իր պատմութեան հետ», «որպէսզի ժողովուրդի մէջ սէր տարածուի լեզուի, հայրենիքի, Սերժ Սարգսեանի նկատմամբ», եւլն., եւլն.: Այս խաւի գրողները կը ստեղծեն գրող-հասարակութիւն, գիտցող-չգիտցող երկուութիւնները, երկուութեան առաջին կողմին վրայ («գրող», «գիտցող») դնելով ամբողջ ուժն ու առաւելութիւնը, այսինքն՝ իրենք իրենց չուրջ ստեղծելով ուժի կեդրոն մը:

Այս բարեպաշտ գրողները կը գրեն ու անվերջ կը սորվեցնեն, իսկ անտեղեակ ժողովուրդը կը կարդայ ու անվերջ կը սորվի, բայց կը սորվի միայն այն չափով՝ որ գրողներուն առիթ տայ չարունակել սորվեցնելու պատգամը: Ի՞նչ պիտի ըլլար այս տեսակ գրողներուն ճակատագիրը եթէ յանկարծ ժողովուրդը վերջացուցած ըլլար իր տնային պարտականութիւնները եւ ամէն բան սորված ըլլար...:

«Այլընտրանքային խոհեր»-ը դիմադրութիւն մըն է այս ուժային յարաբերութեան: Իր ցանկութիւնն է գրել մտածելու համար՝ մտածել գրելու համար, գրել ընթերցելու (ոչ ընթերցուելու) համար՝ ընթերցել գրելու համար, գրել խօսելու համար՝ խօսիլ գրելու համար, ուր գրելու, մտածելու, ընթերցելու, խօսելու միջեւ սահմաններ չկան:

Նիւթերը պիտի չըլլան մասնագիտական՝ փրոֆեսիոնել, բառ մը զոր միշտ կը խուսափիմ գործածելէ: Ըստ թուղթէ վկայականներուս, ես դաշնակահար եմ ու երաժշտագէտ: Հետեւաբար, բազմիցս առաջարկած են ինծի չզբաղուիլ ուրիշ գործերով, չխառնուիլ ուրիշ «մասնագիտութիւններու» գործերուն մէջ: Եկէք մտածենք: Պատմաբանին գործն է գրել ԺԹ դարու պոլսահայութեան պատմութիւնը: Երաժշտագէտին գործն է գրել ԺԹ դարու պոլսահայ երաժշտահան Տիգրան Չուհաճեանի մասին: Բայց չէ՞ որ Չուհաճեանի իւրաքանչիւր գործի ստեղծագործումն ու կատարումը անխախտելիօրէն կապուած էին պոլսահայութեան եւ Օսմանեան Կայսրութեան պատմութեան հետ, պատմութիւն բառի ոչ տարեգրային կամ թուականային իմաստով: Առանց այս պատմութեան կարելի չէ, օրինակ, բացատրել Չուհաճեանի անցումը օփերայէն օփերէթի, իտալերէն լիպրեթթոյէն (*Արշակ Բ* օփերա) թուրքերէնի (*Արիֆ*, *Քէօսէ Քէհեա* եւ *Լէպլէպիճի Հոր-հոր աղա* օփերէթները): Չուհաճեանն ու Պոլիսը հանդէս կու գան իբրեւ մէկ երեւոյթի մը ներքին երեսակները: Այսինքն, այս պարագային, պատմութիւնն ու երաժշտութիւնը անկարելի է անջատել իրարմէ:

Ուրիշ օրինակ մը: «Մենք ենք, մեր սարերը» հայկական հրաշալի ֆիլմին այս խորագիրը ժողովուրդին մէջ արդարօրէն ստացած է առածային իմաստ: Մենք ենք, հայերս ենք, եւ ոչ այլ ոք քան հայերս, կանք ու կը մնանք յաւիտեանս: Հիանալի: Ոչ մէկ առարկութիւն: Բայց տեսնենք թէ ինչպէս կրնանք լուծել որոշ ոչ-հայկական հարցեր: «Արամ Խաչատրեան հայ մեծագոյն երաժշտահանն է», կամ «ամենահռչակաւոր ազգային երաժշտահանն է»: Ինչու չէ: Բայց իր Դաշնակի Քոնչերթոյի երկրորդ մասին գլխաւոր նիւթը վրացական ժողովրդական եղանակ մըն է, Քլարինէթի, Ջութակի եւ Դաշնակի Եռանուագի ֆինալը ունի ուզպեքական մեղեդի, յօրինած է բազմաթիւ երգեր ռուսական մասսայական երգերու ուղեգիծով, եւլն.: Ինչպէ՞ս բացատրել «հայ ազգային»-ը՝ շրջապատուած վրացական-ուզպեքական-ռուսական եղանակներով:

Երաժշտագէտը՝ որուն համար ազգայինը մեկնաբանութեան առարկայ չէ, բացատրութեան համար պիտի դիմէ արտաքին լուծումներու, առաջ բերելով ժողովուրդներու բարեկամութեան կամ Խաչատրեանի լայնախոհութեան հարցերը: Ազգայինը եւ անոր բացատրութիւնը երաժշտագէտին «մասնագիտութիւն»-ը չէ: Այժմ քիչ մը փիլիսոփայութիւն: Խաչատրեանի եւ նմաններուն հարցը իր մեկնաբանութեան առաջին քայլը կրնայ սկսիլ՝ երբ փորձ կատարուի «ազգային»-ը չդարձնել էթնիքականութեան կեդրոն եւ կատարել Այլին (Other) կազմալուծումը (de-othering): Երբ ասիկա կը կատարուի, հայկականը, վրացականը եւ միւսները կը դադրին մրցակցական ըլլալէ՝ առաջ բերելով ներթափանցումներու (եւ ոչ ազդեցութիւններու, ուր ենթադրեալ ուժեղը պիտի խուժէ ենթադրեալ տկարին մէջ) եւ առնչութիւններու (եւ ոչ համեմատութիւններու, որոնք անպայմանօրէն պիտի ուղղուած ըլլան մէկուն նախընտրութեան միւսին հաշուին) հնարաւորութիւնը: Երաժշտութիւն եւ փիլիսոփայութիւն կը դառնան միասնականութիւն:

Այս իմաստով, մասնագիտութիւնը ոչ թէ կ'ընդլայնի ուրիշ մասնագիտութեան մը ներառումով, այլ ան պարզապէս կ'ազատէ իր սահմանները վկայականներու պարտադրանք-հրամաններէն:

Գրութիւններս դէմ են հիմնահոսանքային միահեծանութեան: Ընդունիլ հիմնահոսանքը առանց առարկութեան, այս է արդի աշխարհի պահանջքը մարդկութենէն: Լրատուութեան միջոցները, կուսակցութիւնները, աքատեմիք եւ ուսումնական հիմնարկները պէտք ունին ընկալողական զանգուածի մը, որ ընդունի այն ինչ որ տրուի իրեն: Այլընտրանքներ, կարծէք, գոյութիւն չունին եւ չեն կրնար գոյութիւն ունենալ:

Ահաւասիկ երկու օրինակ.

1. «Տնտեսութեան զարգացման լաւագոյն ու միակ միջոցը դրամատիրութիւնն (capitalism) է», կ'ըսէ հիմնահոսանքը, բայց դիտաւորեալ կերպով չի նշեր դրամատիրութեան արտադրած ողբերգութիւնները: Այսպէս, դրամատիրութեան արտայայտութեան պայծառ նմոյշ համարուող Ամերիկայի մէջ, 2007 թուականին բնակչութեան ամենահարուստ 1%-ը ունէր երկրի ընդհանուր հարստութեան 34.6%-ը, բնակչութեան յաջորդ 19%-ը ունէր հարստութեան 50.5%-ը, այսինքն Ամերիկայի վերնախաւի 20%-ը ունէր երկրի հարստութեան 85%-ը, իսկ բնակչութեան 80%-ը ունէր ընդամէնը 15%-ը: 2007-ին սկսած այսպէս կոչուած տնտեսական ճգնաժամէն ետք, բնակչութեան 1%-ին հարստութիւնը աւելցաւ 37.1%-ի, եւ Ամերիկայի վերնախաւի 20%-ին հարստութիւնը եղաւ 87.7%: Այս համեմատութիւնները տարբեր չափանիշերով կրկնուեցան աշխարհի ուրիշ դրամատիրական երկիրներու մէջ, առաջ բերելով աննախադէպ աղքատութիւն եւ մարդկային տառապանք: Բայց աղքատութեան մասին կը լռէ հիմնահոսանքը: Դրամատիրական այլընտրանքի մասին պէտք չէ խօսիլ, թէեւ այսօր, աշխարհի տարբեր տեղեր մեծ յաջողութեամբ կը գործեն այդ այլընտրանքները, ինչպէս Մեքսիքոյի հարաւային կողմը գտնուող Չիափաս մարզը, որուն բնիկ ժողովուրդը (ցամաքամասի դարաւոր բնակիչները, նախքան ճերմակ ցեղին գալթումը) Զափաթիսթա զինուած ուժերուն շնորհիւ 1994-ին իրենց հսկայ տարածութիւնը վերածած են da facto ինքնավար մարզի մը, եւ այդ թուականէն սկսեալ մինչեւ այսօր կը վարեն անարշխիթական խիստ կազմակերպուած տնտեսութիւն մը կապուած բարիքներու (հողագործական արտադրութիւն) եւ պաշտօններու (ուսուցիչ, թաղային վերահսկիչ, բանակ) համընդհանուր եւ համահաւասար բաշխման հետ: Տնտեսական այլընտրանքի ուրիշ ցուցանիշ մըն է Իսպանական Պասքի Մոնտրակոն (Mondragón) քաղաքը, որուն ամբողջ տնտեսութիւնը հիմնուած է աշխատաւորական համագործակցութեան (worker's cooperative) սկզբունքի եւ հաւասարաբաշխ դրամատիրութեան վրայ, ուր ամէն անձ (ըլլայ աշխատաւոր թէ տնօրէն) հաւասար բաժին ունի յաւելեալ (surplus) մուտքէն: Ասոնց, եւ նման այլ փորձերու մասին, պէտք է լռէ հիմնահոսանքը:

2. Հիմնահոսանքն ամենուրեք կը խօսի կուսակցութիւններու, նախարարներու, նախագահներու մասին, որոնք բազմակարող կամ ➪ 5

# ԵԳԻՊՏՈՍ, ՀԱՅՈՒԹԻՒՆ, ՆՈՐ-ԳԱՂՈՒԹԱՏԻՐՈՒԹԻՒՆ ԵՒ ԱՆԺԵԼԱ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆԻ ՅՕԴՈՒԱԾԸ

Յետգաղութատիրութիւնը (postcolonialism) նախկին գաղութատէրերուն կողմէ սահմանուած կացութիւնն է՝ իրենց նախապէս գաղութատիրած երկիրներուն նկատմամբ: Յետգաղութատիրական գաղափարաբանութեան հաստատագրումով, արեւմուտքը կ'ուզէ փաստել իր նախկին գաղութներուն, թէ այլեւս անոնք ազատ ու անկախ ազգ պետութիւններ (nation state) են՝ ընդունակ տնօրինելու իրենց սեփական ճակատագիրը:

Արեւմուտքը յետգաղութատիրութիւնը ընդունեց իբրեւ դպրոցուղղութիւն, զայն կապելով յետարդիական (postmodern) ենթադրեալ ազատագրութեան հետ եւ դիտելով իբրեւ խզում արդիականութիւն-գաղութատիրութեան (modernism-colonialism) հետ: Արդարեւ, յետարդիականութիւնն ուղղակի գեղարուեստականացումն է նէօլիպերալիզմին եւ անոր նոր-գաղութատիրական (neo-colonialist) ծարաւին, չըսելու համար, որ գաղութատիրութիւնը (եւ ոչ թէ նոր-գաղութատիրութիւնը) տակաւին մինչեւ այսօր սարսափելիօրէն կը գործէ, օրինակ, Պաղեստինի մէջ՝ շնորհիւ Իսրայէլի անվերջանալիօրէն նուաճողական քաղաքականութեան:

Նոր-գաղութատիրութիւնը իմփերիալիզմի նոր փուլ մըն է, ուր երկիրի մը ֆիզիքական գրաւումը այլեւս աւելորդ ծանրաբեռնուածութիւն մը դարձած է զաւթիչին համար: Գրաւումը տեղի կ'ունենայ այլազան ձեւերով, մանաւանդ դրամի ուժով թափանցելով գոյութիւն ունեցող տեղական հիմնարկներուն եւ իշխող վերնախաւերուն մէջ, կատարելապէս հսկելով անոնց գործունէութեան վրայ:

Ես ինքս քանի մը տարի առաջ Աղեքսանդրիոյ մէջ աշխատեցայ մշակութային կոչուած տեղական պետական հիմնարկի մը մէջ, ուր տեսայ թէ ինչպէս նոր-գաղութատիրական միջամտութիւնը կը գործէ իր քօղարկուած, բայց ոչ այնքան թաքուն, միջոցներով: Օտար ներդրումներ, Միջազգային Պանք (World Bank), ՄԱԿ, արաբական երկիրներու քարիւղի նախարարներ, գիւղատնտեսական պիոթեքնիք ընկերութիւններ (ինչպէս՝ վատահռչակ Monsanto), դեսպանատուներու պատկանող դպրոցներու աշակերտներ եւ տնօրէններ՝ յատկապէս գերմանականը, եւլն. եւլն., բոլորն ալ համագումարներով եւ նուագահանդէսներով մշտապէս ներկայ են այնտեղ՝ յանուն մշակոյթի: Օտար կազմակերպութիւններ, յատկապէս զարմանալի գործունէութեամբ եւ անսահման պիւտճէով շուէտական հաստատութիւն մը եւ Սուզան Մուպարաքի ստեղծած բազմամիլիոն դրամագլուխով ընկերութիւն մը, մնայուն գրասենեակներ ունին/ունէին այնտեղ: Կապեր բազմազգ ընկերութիւններու հետ, ինչպէս նուագահանդէս super-market-ներու ցանցի արքայ Քարֆուրի մէջ՝ որ յանուն կարող դասակարգի սպառումին (consumption), զբաղուած է մանր առեւտրականներու կլանումով: Յիշեալ հիմնարկը բարոյական խոչընդոտ չունի առնչուիլ ամենայարձակողական արեւելապաշտներէն մէկուն հետ՝ Պերնարտ Լէուիս (հայերը քաջ գիտեն իր խեղկատակութիւնները հայկական ցեղասպանութեան մասին), որ ամուր կապեր ունի ամերիկեան նորպահպանողականներուն (neo-conservatives), սիոնական շարժումին եւ թուրքական իշխանութիւններուն հետ, եւ որուն զաւակը բարձր դիրք կը գրաւէ սիոնական հռչակաւոր AIPAC լոպպիսթական կազմակերպութեան մէջ: Վերջապէս, Աղեքսանդրիոյ գերհարուստ գործարար-գործարարուհիներ բարձր ու հրամայող պաշտօններ գրաւած են այնտեղ: Անձամբ ինծի քանիցս մօտեցան այդ հիմնարկին մէջ հրամայական ձայն ունեցող հաստատութիւններ ու հարուստ անհատներ՝ գրաւիչ առաջարկներով: Հեռացայ աշխատանքէս, որոշելով երբեք չվերադառնալ այնտեղ:

Այստեղ յարմար առիթը չէ խօսիլ այս նոր-գաղութատիրութիւնը դիմադրող եգիպտական ժողովրդամէտ ընդարձակ մտաւորականութեան (ի հակադրութիւն իրենց մասնագիտութիւնը աւելի ու աւելի «նեղցնելով» զբաղուած աքատեմիքներու որոշ զանգուածին) եւ ժողովուրդէն բխած խաւերուն մասին: Բաւարար է նշել 2011 Սեպտեմբերի ինքնաբուխ եւ անարշխիթական ժողովրդային գրոհը Գահիրէի Իսրայէլի դեսպանատունը՝ խորհրդանիշը իմփերիալիսթական հին ու նոր գաղութատիրութիւններուն:

Պաշտօնական եգիպտահայութիւնը՝ որ իր գաղութային վիճակին մէջ կ'ապրի ուժեղ ազգայնական դրսեւորումներով, եգիպտական միջավայրին մէջ դժուարութիւն չունի հայկական ինքնութիւնը ներկայացնել իբրեւ գործող ուժային կեդրոններու ենթակայ, կազմակերպել նուագահանդէս՝ որ իր կարեւորութիւնը ստանայ Սուզան Մուպարաքի հովանաւորութենէն, հրատարակել ալպոմ՝ որուն վճռական իմաստ մը աւելցնէ մշակոյթի նախարար Ֆարուք Հոսնիի նախաբանը, Աղեքսանդրիոյ Մատենադարանին մէջ ցուցադրել հայկական միջնադարեան ձեռագիրներու պատճէններ (իբրեւ բացակայ բնօրինակներու գերիրական գոյութիւններ)՝ որոնք իրենց արժէքը ստանան Մատենադարանի ինքնասահմանեալ միջազգային կոչումէն, ելոյթ ունենալ եգիպտական նէօլիպերալ տնտեսութեան մենատէրերէն մէկուն սեփական հեռատեսիլի կայանէն՝ օգտուելով տիրող շուկայական անունէն, բոլորն ալ անհատներ ու հիմնարկներ՝ որոնք դիմադրական միջավայր մը ստեղծած են եգիպտական յիշեալ մտաւորական լայն շերտերու մէջ:

➪ 4

## ԵԳԻՊՏՈՍ, ՀԱՅՈՒԹԻՒՆ, ՆՈՐ-ԳԱՂՈՒԹԱՏԻՐՈՒԹԻՒՆ ...

3

Արդարեւ, Հայկական ինքնութիւնը Եգիպտոսի մէջ նոր շերտեր կրնայ ընդունիլ երբ քննական մօտեցումով վերաբերի ուժային կեդրոններուն նկատմամբ: Անժելա Յարութիւնեանի ստորեւ վերահրատարակուած յօդուածը կարելի է ընկալել այս տեսանկիւնէն:

Յուլիս 2012-ին, ոչ առաջին անգամ ըլլալով այցելելով Եգիպտոս, Անժելա Յարութիւնեան կը մասնակցի գերմանական dOCUMENTA (13) կազմակերպութեան Աղեքսանդրիոյ ձեռնարկներուն, ուր կը տեսնէ «Երրորդ աշխարհին» վրայ իշխելու գերմանացիներուն միտումը: Իր մտորում-մտահոգութիւնները, արուեստաբանական ու փիլիսոփայական լայն վերլուծութեամբ կը հրատարակէ Երեւանի *Արտերիա* ամսագիրին մէջ:

Յօդուածը դիմադրութիւն մըն է Եգիպտոսի մէջ թափանցած նոր-գաղութատիրական արտայայտութեան: Բայց Յարութիւնեան կը գրէ նաեւ դէպքի (բեմ, քարացում, անշարժութիւն) եւ իրադարձութեան (մարդոց եւ գիտելիքի հաղորդակցութիւն) մասին, անխուսափելիօրէն կը նշէ ժամանակակից արուեստի կարեւոր դերակատարներ հանդիսացող՝ ձեռնարկին մասնակցող համադրողներուն (curator) անուններն ու միտքերը, ինչպէս նաեւ կ'արծարծէ միտք չարժող բազում հարցեր:

Յօդուածը փորձառութեան վրայ հիմնուած մեկնաբանութիւն մըն է, ի տարբերութիւն հիմնահոսանքային «քննադատութեան» բնորոշ լաւ-վատ կողմնորոշում-յայտարարութիւններուն՝ որոնց բառային շտեմարանի կարեւոր մասը կը կազմեն ածականները:

Մեկնաբանութիւնը իրադարձութիւն է, քննադատութիւնը՝ դէպք, դէպքէն իրադարձութեան անցումը կը խանգարէ գործող ուժերու եւ իշխանական յարաբերութիւններու մենաշնորհները:

Քանի մը խօսք Յարութիւնեանի մասին: Ան արուեստաբան ու արուեստի համադրող (curator) մըն է: Ընթացաւարտ է Երեւանի Պետական Համալսարանի Արուեստի Պատմութեան եւ Պրեմէնի Միջազգային Համալսարանի Մարդագիտութեան (Humanities) բաժիններուն: Տոքթորականը ստացած է Մանչեսթըր Համալսարանէն: 2009-2010-ին եղած է Արուեստի Պատմութեան եւ Արուեստի Ծրագիրի Տնօրինութիւն (Art Program Director) նիւթերու այցելու փրոֆեսոր Գահիրէի Ամերիկեան Համալսարանին մէջ: 2010-էն կը դասաւանդէ Պէյրութի Ամերիկեան Համալսարանին մէջ: Կը հանդիսանայ Երեւանի Արուեստի Կուրատորների Ամառային Միջազգային Սեմինարներու համակազմակերպիչ: Անդամ է Արուեստի Քննադատներու Միջազգային Ընկերութեան (AICA): Գրած, խմբագրած ու համա-խմբագրած է հայերէն եւ անգլերէն բազմաթիւ յօդուածներ եւ ուսումնասիրութիւններ: Համադրած է (curated) ժամանակակից հայկական արուեստի ցուցահանդէսներ, ինչպէս նաեւ իբրեւ բանախօս ու համադրող մասնակցած է սեմինարներու, աշխատաժողովներու (workshop) եւ դասախօսութիւններու զանազան միջազգային աքատեմիք եւ գեղարուեստական հիմնարկներու մէջ:

Իր հետաքրքրութեան ոլորտն է ընկերվարական (socialist) եւ յետ-ընկերվարական արուեստն ու մշակոյթը, մարմինի խնդիրներն իբրեւ պատկերացում-ներկայացում, հաղորդամիջոցներու (media) արուեստը եւ արուեստի պատմագրութիւնը, գեղագիտութեան եւ քաղաքականութեան ներյարաբերութիւնները:

Ահաւասիկ յօդուածը (անկիւնաւոր չակերտներու մէջ աւելցուցած եմ քանի մը ոչ-հայկական անձնանուններու լատինատառ բնօրինակները):

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

## ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԱՐՈՒԵՍՏԻ ՍՑԻԼԼԱՅԻ ՈՒ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՔԱՐԻԲԴԱՅԻ ՄԻՋԵՒ. ԴՈԿՈՒՄԵՆՏԱ 13-Ի ԿԱՀԻՐԷԻ ՍԵՄԻՆԱՐՆԵՐ

**ԱՆԺԵԼԱ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ**

Թերեւս իրադարձութիւնը տարբեր ցանկութիւնների ու պրոյեկտումների ճիրաններից ազատագրելու միակ ուղին հենց պայմանների փոփոխութեան պահանջն է:

Դոկումենտան, սկսած 1972թ. անցկացւում է հինգ տարին մէկ անգամ, Գերմանիայի Քասսել քաղաքում, տեւում հարիւր օր եւ ժամանակակից արուեստի ամենամեծ իրադարձութիւններից է: Այն հիմնադրուել է 1955թ., յետպատերազմեան Գերմանիայի վերականգնման համատեքստում: Սկսած Օկուի Էնվեզորի՝ 2002թ. Դոկումենտայից, ցուցահանդէսը ներառում է Քասսէլից դուրս, աշխարհագրական այլ հորիզոնականներում գործող հարթակներ: Այս անգամ զուգահեռ սեմինարներ էին անցկացւում Աֆղանստանի Քաբուլ, Կանադայի Բանֆ եւ Եգիպտոսի Ալեքսանդրիա քաղաքներում:

Դոկումենտա 13-ի կուրատոր Կարոլին Քրիստոֆ-Բակարգիեւը Եգիպտոսի Ալեքսանդրիա քաղաքում յուլիսի 2-ից 8-ը տեղի ունեցող Կահիրէի սեմինարների ժամանակ աներկբայօրէն յայտարարեց. «Առանց Ալեքսանդրիայի Քասսէլը հրեշաւոր է: Առանց Քաբուլի Քասսէլը հրեշաւոր է: Առանց Քաբուլի ու Ալեքսանդրիայի Քասսէլն անտանելի է ու անպարկեշտ»: Առանց երկմտանքի ու անկասկած բարի մտադրութիւններով արտաբերուած այս խօսքերը, իրենց նոր-գաղութային ներիմաստներով հանդերձ, այնուամենայնիւ բիւրեղացնում են ժամանակակից արուեստի համաշխարհայնացման համատեքստում «կենտրոնում» ծաւալուող մեգա-իրադարձութեան յարաբերութիւնն արուեստի արժէքի արտադրութեան «ծայրամասերի» հետ: Դոկումենտայի կենտրոնը՝ Քասսէլը, որպէս ժամանակակից արուեստի աշխարհում ծաւալուող ամենամոնումենտալ իրադարձութիւնը, որի պատմութիւնն իր հերթին անքակտ թելերով կապուած է յետպատերազմեան Գերմանիայի վերականգնման քաղաքականութեան ու գաղափարաբանութեան հետ, ժողովրդավարացման իր մղումի մէջ կարիք ունի աշխարհաքաղաքական ու արուեստային ծայրամասերի հետ յարաբերութիւնների: Սրանք միաժամանակ երկու գործառոյթ են իրականացնում. Քասսէլի կենտրոնականութիւնը լեգիտիմացնելով ու այն «տանելի» դարձնելով հանդերձ, նաեւ ապահովում են հաւասար հարթակների պատրանք:

Միգուցէ եւ Ալեքսանդրիայում տեղի ունեցող սեմինարները Դոկումենտայի թիմի համար Քասսէլը «տանելի» էին դարձնում, սակայն այս հանգամանքը ոչ մի կերպ չէր օգնում, որ Եգիպտոսի իրականութիւնը տեղացի մասնակիցների համար դառնար տանելի: Եթէ 2011-ին Կահիրէում բնակուող կուրատոր՝ Սառա Ռիֆկիի ու Քրիստոֆ-Բակարգիեւի նախնական յղացմամբ սեմինարները զբաղեցնելու էին վերջինիս առաջարկած «պաշարուած», «յուսադրուած», «բեմի վրայ» եւ «նահանջելով» հիմնաբառերի «յուսադրուած» բեմերը (հարթակներից ամէն մէկը համապատասխանում էր այս հիմնաբառերից որեւէ մէկին: Եթէ Քասսէլը բեմն էր, ապա Քաբուլը պաշարուած էր, իսկ Բանֆը նահանջի տարածութիւնն էր), ապա 2012թ. ի վերջոյ որպէս յղացք ընդունուեց «քունը»: Չնայած Սառա Ռիֆկին ու սեմինարների յղացքի համահեղինակ Ջուս Մարտինսէն առաջարկում էին քունն ու երազն ընկալել որպէս քաղաքական արարք, այնուամենայնիւ, նախնական յղացքի վերամտածումն ինքնին չէր կարող չընկալուել որպէս, եթէ ոչ քաղաքական, ապա գոնէ դիւանագիտական արարք: Ծաւալուող իրադարձութիւնների ինտենսիվութեան յորձանուտում (հենց այդ օրերին տեղի ունեցաւ նախագահ հռչակուած Մուհամէդ Մորսիի երդման արարողութիւնը սահմանադրական դատարանի առջեւ), որն այլեւս զուրկ էր յետ-մուբարաքեան յաղթանակի էֆորիայի հետքերից, քնելու առաջարկը նոյնիսկ եթէ քաղաքական չէր, չէր կարող չընկալուել որպէս հրաժարումի ու ձեռնունայնութեան հետ համակերպուելու կոչ: Շրջադարձը սոսկ յղացումի մակարդակում չէր, այլ նաեւ նշանային ու տարածագրական. Կահիրէի քաղաքական ու քաղաքային երբեմն անմարդկային խառնաշփոթին գերադասել էին Ալեքսանդրիան, որի ծովափնեայ արեւմտահայեաց քամին սասանում էր քաղաքական հոսանքների՝ միեւնոյն տեղում երկար մնալու յակուածութիւնը:

Սեմինարները կառուցուածքային առումով ընդօրինակել էին երաժշտութեան լեզուն. մասնակիցները դասակարգուած էին ըստ «բանալի-նոտաների», «գործիքների», «նուագակցողների», իսկ հանդիսատեսին փոխարինել էր «երգչախումբը»: Սեմինարները փակ էին, բոլոր բաղադրիչներն ունէին իրենց յստակ յատկացուած դերը. բանալի-նոտաները հանդէս եկան լայնածաւալ դասախօսութիւններով, գործիքները ներկայացրեցին կէս-ժամանոց միջամտութիւններ, իսկ «նուագակցողներին», ովքեր MASS-Alexandria արուեստի հաստատութեան ուսանողներն էին, վերապահուած էր բանալի-նոտաներին ներկայացնելու ու հիւրերի կեցութիւնը համակարգելու դերը: Իւրաքանչիւր օրուան յատկացուած էր բանաստեղծական մի տող, որ յաւելադրուելով միւսներին, կազմում էր վեցտող. «Առաջին կամ երկրորդ գիշերը... մօտ քսան մարմին վերադարձաւ... նրանք յայտնուեցին երազում... որպէս անյայտ վայրի հերոսներ, մի դրուագ՝ պատմուածքի մէջ... նրանք երեւացին՝ թակարդուած պատկերի կամ պատմութեան մէջ... նոկտիւրն. փախուստի միակ ուղին արթուն մնալն էր»:

Առաջին նոտան խփեց ռուսաստանեան «Ձթօ դելաց?» խմբի անդամ, փիլիսոփայ Ալեքսէյ Պենզինը, ում «Քնելով քաղաքականապէս» ելոյթը, քնի արտադրական հնարաւորութիւնների պատմական հարուստ ակնարկ լինելով հանդերձ, այնուամենայնիւ քնելու առաւելութիւնների քաղաքական ու տնտեսական համոզիչ փաստարկ չներկայացրեց: Քանի որ առաւօտեան նախատեսուած նախերգանքների մեծ մասն այդպէս էլ չկայացաւ «երգչախմբի» անդամների՝ իսկապէս քնելու, քան թէ «երգելու» աւելի մեծ ցանկութեան պատճառով, մնում էր աշխատանքային օրերը սկսել բարձր նոտայով: Յաջորդ օրուայ հիմնական տօնը հոգեվերլուծական էր՝ դելիոզ-գվատտարական [Deleuze-Guattari] աֆէկտներով հարուստ: Արգենտինացի հոգեվերլուծաբան Սուէլնի Ռոյնիկն առաջարկում էր վերանուաճել աֆէկտների տիրոյթը եւ դեկարտեան [Decartes] ապամարմնականացած գիտելիքը վերադարձնել երազող ու պատկերներ ստեղծող մարմնին: 1970-ականների բրազիլացի կոնցեպտուալիստ Լիժիա Քլարկի *Մոբիուսի գօտի* [**Lygia Clark:** ***Möbius strip***] աշխատանքը դիտարկելով որպէս ոչ գծային կապերի ու յարաբերութիւնների այլաբանութիւն, Ռոյնիկի առաջարկը յաջորդող օրերին կիրառուեց որպէս ցանկացած դէպքի քննութեան չափանիշ, դժգոհներին ու անհամաձայններին թողնելով միայն յուսալ, որ հեգէլեան Միներվայի բուն միայն մայրամուտին չէ, որ կը ճախրի: Ռոյնիկի փոքր ինչ ռոմանտիկ ու մի քիչ էլ էզոթերիկ գեղումները մեծամասամբ հիացմունքով լի «երգչախմբի» առաջ ժամանակաւորապէս ընդհատուեցին արուեստագէտ Հասան Խանի այն անգամ բառիս բուն իմաստով երաժշտական միջամտութեամբ: Խանը ներկայացնում էր 1950-ականների եգիպտական ժանրային երաժշտութիւն, որի *Գիշերն ինձ հարցրեց* (Սա'ալնի էլ Լէյլ) վերտառութիւնը կարծես համապատասխանում էր սեմինարների յղացքի տօնին: Կատարումը կառուցուածքով յենւում էր կրկնութիւնների ու դրանց միջնորմներում նշմարելի տարբերութիւնների վրայ: Կատարման ընթացքում անհամբեր եւ ուղղակի կապեր փնտրող Դոկումենտայի թիմի ներկայացուցիչները սկսեցին անդադար յօրանջել, մինչեւ որ Օթոլիտ խմբի անդամ Անջալիկա Սագարը տեղից չբացականչեց, թէ անընդհատ կրկնուող 60-ականների եգիպտական ժանրային երաժշտութիւնը սենտիմենտալ է, հայրիշխանական ու վիրաւորում է լոնդոնաբնակ կնոջ ֆեմինիստական զգացումները: Խանի կատարողական միջամտութիւնն իրականում նպատակ ունէր մշակելու երաժշտութեան ստրուկտուրալիստական մի տեսութիւն, որը հնարաւոր կը լինէր թարգմանել սոցիալական իրականութիւնը հասկանալու մի բանաձեւի: Սակայն «երգչախմբի» անհամբերութիւնը ստիպեց Խանին նախատեսուածից վաղ բացել խաղաքարտերը եւ յայտարարել, որ տեղի իրականութեան վրայ Սուէլնիի հոգեվերլուծական գործիքները կիրառելի չեն: Տեղի իւրայատկութիւնը հնարաւոր չէ վերլուծել ճնշման մեկնաբանողական ու համընդհանուր թուացող գործիքներով, այլ բռնութեան տեսաբանական անկեան տակ, իսկ արգենտինացի հոգեվերլուծաբանի «վեհ-արարքը» (sublime-action) որպէս «իմացող մարմինը» ազատագրելու դեղատոմս, տասնեակ տարիներ է, ինչ կիրառւում է ռազմական բռնապետութեան կողմից որպէս մանիպուլացման գործիք: Թերեւս դելիոզականներին [Deleuze] միայն Ֆուկոյականները [Foucault] կարող են արժանի պատասխան տալ:

Առաւել համոզիչ պատասխան էր կուրատոր Բասսամ էլ-Բարոնիի քաղաքականութեան ու էսթետիկայի տեսութիւնը, որն առաջարկում էր ներկան հասկանալու գաղափարաբանական քննադատութիւնից տարբեր մեխանիզմներ: Էլ-Բարոնիի համար առանցքային էր «կրթարկման» (edification) հասկացութիւնը, որ շատ աւելի հիմնարար ու խորքային է, քան գաղափարաբանութիւնը: Աւելին, որպէս յղացք ձեւաւորուելով Կանտի, Հերդէրի եւ Շիլլէրի էսթետիկայում, «կրթարկումը» գաղափարաբանութեան նիւթն է, ինչպէս ասենք նկարի նիւթը ներկն է ու կտաւը, նրա կորիզն ու սուբստանցը: Այն կառուցուածքային իրավիճակ է, որն ընկած է մարդու՝ երկու ոտքի վրայ կանգնելու ու բարոյականութեան ծագման հիմքում: Էլ-Բարոնիի հիմնական հարցադրումն այն էր, թէ արդեօք հնարաւոր է «կրթարկմանը» այլընտրանքային գոյութեան ձեւ մշակել: Ալեքսանդրիացի կուրատորի դասախօսութիւնը, որ երեք շարքերից էր բաղկացած, կառուցուածքային առումով արձագանքում էր տողերիս հեղինակի առաւել վաղ բեմադրած ելոյթին, որ տեղի ունեցաւ դարասկզբի յոյն նոյնասեռական գրող Կոստանդին Կավաֆիի տուն-թանգարանում: Վայրը ծանր էր ու մելամաղձոտ, իսկ խոնաւ տապը ակամայից գոլորշիացնում էր կատարմանս բանաստեղծականութիւնը: Երեք հատուածից բաղկացած ելոյթս պատկերների տեղագրական ճամփորդութիւն էր. Կարսի ու Գիւմրիի

6

# ՄԱՀԱՑԱՒ ՆԿԱՐԻՉ ՅԱԿՈԲ ՅԱԿՈԲԵԱՆ

89 տարեկան հասակին Երեւանի մէջ մահացաւ Հայաստանի Հանրապետութեան ժողովրդական նկարիչ Յակոբ Յակոբեան:

ՀՀ ժողովրդական նկարիչ, պետական մրցանակի դափնեկիր, ՀԽՍՀ Գերագոյն Խորհուրդի պատգամաւոր (1967-1971) Յակոբ Յակոբեան 2001-ին ստացած է Երեւանի պատուաւոր քաղաքացիի կոչում:

1923 Թուականին Աղեքսանդրիա (Եգիպտոս) ծնած նկարչի մասին Հայաստանի մէջ առաջին անգամ տեղեկացած էին միայն 1960-ին, երբ ան Հայաստանի պետական պատկերասրահին նկար նուիրած էր, որուն մասին անդրադարձած էր մամուլը:

1962-ին Յակոբեան ընտանիքով հայրենադարձած էր Հայաստան:

Նկարիչը իր մասնագիտական կրթութիւնը ստացած է Գահիրէի գեղարուեստի եւ Փարիզի «Կրան Շոմիէ» ակադեմիաներէն ներս: Յակոբեանի յայտնի գործերէն են՝ «Կինը խոհանոցին մէջ», «Դերձակը», «Սխտորներ», «Վիշտ» եւ այլ յայտնի աշխատանքներ:

Նշանաւոր նկարչի մահուան առթիւ Յակոբեաններու ընտանիքին ցաւակցական հեռագիր յղած է նախագահ Սերժ Սարգսեան:



«Յակոբ Յակոբեանի վախճանը մեծ կորուստ է հայ կերպարուեստի եւ մեր ողջ մշակութային ու հասարակական դաշտի համար: Նա եղաւ բացառիկ արուեստագէտ եւ անբասիր քաղաքացի՝ մարմնաւորելով հայրենիք վերադարձող հայի խակական օրինակը: Նա եկաւ Հայաստան՝ որպէս արդէն ձեւաւորուած՝ անշփոթելի ձեռագիր ունեցող նկարիչ: Նա եկաւ իր եւ մեզ համար բացայայտելու մի նոր՝ յակոբեանական Հայաստան եւ իր մշտական ներկայութիւնն ապահովեց հայ կերպարուեստի պատմութեան մէջ: Խորին ցաւակցութիւն եմ յայտնում ականաւոր արուեստագէտի ընտանիքին, մերձաւորներին եւ նրա արուեստի բազմահազար երկրպագուներին», -ասուած է նախագահի ցաւակցական հեռագրում:

ԷՋՄԻԱԾԻՆ

## ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

### Վարդապետական թեզի պաշտպանութիւն Մայր Աթոռ Սուրբ Էջմիածնում

Մարտի 11-ին Մայր Աթոռ Սուրբ Էջմիածնում տեղի ունեցաւ վարդապետական թեզերի բանաւոր պաշտպանութիւն:



Մասնաւոր վարդապետութեան աստիճանի համար թեզ էին ներկայացրել Մայր Աթոռ Սուրբ Էջմիածնի միաբաններ Տ. Գաբրիէլ աբեղայ Սարգսեանը («Տէրունական աղօթքի հայ միջնադարեան մեկնութիւնները»), Տ. Տարօն աբեղայ Ղուլիկեանը («Ախթալայի եւ Քոբայրի վանքերը (Պատմա-եկեղեցական եւ դաւանական պատկանելութեան քննութիւն)»), Տ. Շահէ աբեղայ Անանեանը («Իմաստութիւն եւ Աստուածաշունչ. Իմաստութեան կերպարն ըստ Առակաց Ա-Թ-ի»), Տ. Վարդան աբեղայ Նաւասարդեանը («Քրիստոնէական կրթութեան եւ արժէքների դերը երրորդ Հանրապետութեան տարիներին») եւ Տ. Զաքարիա աբեղայ Բաղումեանը («Անապակ բաժակի խնդիրը Հայոց Եկեղեցում»):

Յանձնաժողովը, որի կազմում էին Մայր Աթոռ Ս. Էջմիածնի Վանական խորհրդի նախագահ եւ Հրատարակչական բաժնի տնօրէն Տ. Նաթան արքեպիսկոպոս Յովհաննիսեանն իբրեւ նախագահ, Շիրակի թեմի առաջնորդ Տ. Միքայէլ եպիսկոպոս Աջապահեանը, ԵՊՀ Աստուածաբանութեան ֆակուլտետի դեկան, Երեւանի Ս. Գրիգոր Լուսաւորիչ մայր եկեղեցու հոգեւոր տեսուչ Տ. Անուշաւան եպիսկոպոս Ժամկոչեանը, Արագածոտնի թեմի առաջնորդ Տ. Մկրտիչ եպիսկոպոս Պռօշեանը եւ Մայր Աթոռի Կրթական հաստատութիւնների վերատեսուչ Տ. Գեւորգ եպիսկոպոս Սարոյեանը, քննելով ներկայացուած թեզերը, արտօնել էին բանաւոր պաշտպանութեան:

Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Բ Ծայրագոյն Պատրիարք եւ Ամենայն Հայոց Կաթողիկոսի օրհնութեամբ առաջիկային հոգեշնորհ Հայր Գաբրիէլը, Հայր Տարօնը, Հայր Շահէն, Հայր Վարդանն ու Հայր Զաքարիան Օշականի Ս. Մեսրոպ Մաշտոց եկեղեցում տվչութեան յատուկ արարողութեամբ կը ստանան մասնաւոր վարդապետութեան աստիճան:

ՄԻԱՑ. ՆԱՀԱՆԳՆԵՐ

## ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԻՒՆԸ ԴԱՍԱԳԻՐՔԵՐՈՒՆ ՄԷՋ

Ամերիկեան Փենսիլվանիա նահանգի դպրոցներուն մէջ Հայոց Ցեղասպանութեան նիւթեր ներառելու օրինագիծը ներկայացուեցաւ նահանգի ներկայացուցիչներու պալատին: Օրինագիծը ներկայացուց դեմոկրատական Պրէնտոն Պոյլը:

«Պատմութեան կրկնութենէն խուսափելու համար կարեւոր է, որ մեր երիտասարդները սորվին ինչ է Ցեղասպանութիւնը: Արդէն 5 նահանգ ընդունած է դպրոցներուն մէջ նման դասաւանդումներ կազմակերպելու գաղափարը», ըսաւ Պոյլ:

Նմանատիպ օրինագիծ ուղղարկուած է նաեւ նահանգի ծերակոյտին, ժողովրդավարական ներկայացուցիչ Անթոնի Ուիլիամզի նախաձեռնութեամբ:

## ԱՆԻԻ ՍՈՒՐԲ ՓՐԿԻՉ ԵԿԵՂԵՑՈՒ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՈՒՄԸ ԿԸ ՇԱՐՈՒՆԱԿՈՒԻ



*Կայծակի հարուածի հետեւանքով երկու կէսի բաժանուած Անիի Սուրբ Փրկիչ եկեղեցու վերակառուցման աշխատանքները շարունակւում են, գրում է Թուրքական «Սապահ»-ը:*

*Կարս նահանգի Մշակոյթի եւ զբօսաշրջութեան վարչութեան պետ Հաքան Դողանայը նշել է, որ եկեղեցին պատմավայրի 21 կանգուն շինութիւններից մէկն է:*

6

## ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ԽՈՀԵՐ

3

անկարող ճիգերով կը ղեկավարեն ժողովուրդը: Մենք՝ ժողովուրդս, միշտ կը ներկայանանք իբրեւ ենթականեր: Այն բոլոր ժողովրդական շարժումները՝ որոնք ուղղուած են դիմադրելու դրամատէրերու տիրականութիւնը, քաղաքական գործիչներու կաշառակերութիւնը եւ աշխատաւորական շերտերու շահագործումը, կը ներկայացուին ու կը դատապարտուին իբրեւ կանոնազանցութիւն, յաճախ ազատատենչ աքթիւիսթներուն ճակատագիրը ըլլալով բանտարկութիւնը: Հիմնահոսանքը կը պաշտպանէ վերնախաւին: Այլընտրանքային քաղաքականութիւն մը՝ հիմնուած բուն ժողովուրդի շարժումին վրայ, անբաղձալի է: Ուշադրութիւն: Էական տարբերութիւն կայ ամբոխավարութեան եւ ժողովրդականութեան միջեւ, թէեւ երկուքն ալ կը բովանդակեն միեւնոյն գործող անձերը՝ ժողովուրդը: Ամբոխավարութեան պարագային ժողովուրդը կը շարժի կամ կը մտածէ ըստ արտաքին, օտարացած մղումի, մեծ մասամբ ղեկավար անձերու բորբոքումով եւ հրահրումով, անձեր՝ որոնք ժողովուրդին կը ներկայացնեն հարցերուն միայն մէկ երեսը: Ժողովրդականութեան պարագային ժողովուրդը կը շարժի ի՛ր ներքին մղումով, ի՛ր անձնական համոզումով, ի՛ր ներսէն բխած գաղափարներով, եւ յաճախ ուղղուած կ'ըլլայ ղեկավարութեան դէմ: Առաջինի արտայայտութիւններէն մէկն է ներկայացուցչական ժողովրդավարութիւնը (representative democracy), ուր, օրինակ, Պարաք Օպամա պէտք է համոզէ հասարակութեան թէ ինք է լաւագոյն ղեկավարը, թէ ինք է ընդունակ հասարակութեան համար/փոխարէն որոշումներ ընդունիլ ու հրամաններ արձակել, թէ ինք է ժողովուրդի բարօրութեան օրրանը: Մինչդեռ ժողովրդականութեան արտայայտչաձեւն է մասնակցողական ժողովրդավարութիւնը (participatory democracy)՝ 1960-ականներուն մեծ թափով սկիզբ առած Նոր Ձախի (New Left) գլխաւոր գաղափարներէն մէկը, ուր ժողովուրդն ինք է իրական որոշում կայացնողը: Մասնակցողական ժողովրդավարութիւնը 1980-ականներէն սկսեալ կ'ունենայ իր շօշափելի դրսեւորումները սկսելով Պրազիլի Փորթօ Ալէկրէ (Porto Alegre) քաղաքէն, մինչեւ նորագոյն ժամանակներու Գրաւում Շարժումը (Occupy Movement): Վերջինէն քիչ մը առաջ, Եգիպտոսի 25 Յունուար 2011-ի յեղափոխութեան երիտասարդական նախապատրաստական գործընթացը ընթացաւ մասնակցողական ժողովրդավարութեան սկզբունքով իսկ բուն յեղափոխական շրջանը (25 Յունուար-11 Փետրուար 2011) հանդիսացաւ անոր գագաթնակէտը: 12 Փետրուար 2011-էն սկսեալ, Մուպարաքի հաւատարիմ աշակերտ Ահմէտ Շաֆիք եւ բանակի նախկին ղեկավարները կործանեցին մասնակցողական ժողովրդավարութիւնը, գործընթաց մը որ այսօր կը շարունակեն Մուսլիմ Եղբայրները: Ժողովրդային մասնակցութիւնը՝ ամենօրեայ ու ազդեցիկ, հակասական է ուժային կեդրոններու շահերուն:

Գրութիւններուս մէջ պիտի չըլլամ յարմարող մը (conformist), պիտի չըլլամ խմբային չափանիշերու կրկնողը, պիտի չըլլամ անվիճելի իրողութիւններու անվիճելի ներկայացուցիչը: Պիտի չձգտիմ վերնախաւին կարեկցութեան, այլ անպայմանօրէն պիտի ըլլամ հակա-վերնախաւային, հերքելով հանդերձ յարմարող ձախի մը սովորականութիւնները:

Պիտի չըլլամ այն հազարաւոր քննադատներէն մէկը՝ որ ինքն իրեն կը համարէ աւելի մասնագէտ եւ ինքզինքին պարտականութիւն կու տայ ուղղել ու չտկել ուրիշին եւ դասեր տալ հասարակութեան: Բնական հունի մէջ ապրող հասարակութեան չատ աւելի բան կայ սորվելիք քան փորձառութենէն օտարացած մտաւորականնէն:

Պիտի չըլլամ այն բազմահազար քննադատ-գովաբանողներէն մէկը, որ երգելով ուրիշին բարեմասնութիւնները փափաքած պիտի ըլլայ այդ ուրիշը ենթակայ դարձնել իրեն:

Գրութիւններս դէմ են գաղափարական իշխանութեան եւ մրցակցական տրամաբանութիւն-տրամադրութեան:

Միայն ժողովուրդի ներառութեամբ կարելի է հասնիլ կարեկցութիւն-համերաշխութեան (solidarity), միայն գիտելիքի համընդհանուր նմանօրինակութիւններու չեչտադրութեամբ կարելի է ստեղծել համաձայնութիւն, միայն այդ նմանօրինակութիւններու ընդմէջէն դիտուող գիտելիքային տարբերակումներու (եւ ոչ երբեք գիտելիքային խզումներու, բացառապաշտութեան, օտարացումներու եւ վանողականութեան) միջոցով կարելի է ըմբոշխնել կեանքի գեղեցկութիւնները, միայն բարիքներու հակա-մրցակցային բաշխումով կարելի է բառարանէն ջնջել դրամատիրութեան այնքան սիրելի բառը՝ «աղքատութիւնը»:

Հիմնահոսանք/այլընտրանքի մասին կարելի է անվերջ խօսիլ:

Յօդուածներս այլընտրանքային են, խուսափելով «այլընտրանք» բառի եզրաբանական սահմանափակումէն: Անոնք պիտի հետեւին ոչ մէկ գաղափարական դպրոցի: Սրբագրեմ: Անոնք պիտի հետեւին անարչիզմի դպրոցին՝ իր ամենէն աւելի հակադպրոցային արտայայտութեամբ, դպրոց մը առանց վերադիր օրէնքներու, առանց պարտադրանքներու, առանց նախապայմաններու, դպրոց մը առանց դպրոցի:

Այս պատճառով ալ սիւնակը անուանեցի «Այլընտրանքային խոհեր», ներշնչուելով աշխոյժ հանրային գործիչ եւ մտաւորական Դաւիթ (Տէյվիտ) Պարսամեանի *Այլընտրանքային ռատիօ* (Alternative Radio) արդէն քաջայայտնի ամերիկեան ռատիոհաղորդման անուանումէն:

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),


Tel.: (202)24530327, Fax: (202)24522282
E-mail: tchahagir@journalist.com


Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1700 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 28 ՄԱՐՏ 2013 | ՀԱՏԸ ՉԵՌՔԷ 75 Ե. Դհկ. | عدد رقم ١٧٠٠ الخميس ٢٨ مارس ٢٠١٣


## ՊԱՊԸ ՔԱՋԱՏԵՂԵԱԿ Է ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ



Սերժ Սարգսեան կը շնորհաւորէ Հռոմի նորընտիր Պապ Ֆրանչեսքոսին:

Վատիկանի մէջ Մարտ 19-ին տեղի ունեցաւ նորընտիր Ֆրանչեսքոս Պապի գահակալութեան արարողութիւնը, ներկայութեամբ աւելի քան 180 պետութիւններու ղեկավարներուն եւ ներկայացուցիչներուն: Պաշտօնական արարողութեան առթիւ, Վատիկանի իշխանութիւնները բարձրացուցին մասնակից պատուիրակութիւններու երկիրներու դրօշները, մինչ հարիւր հազարաւոր հաւատացեալներ հեռուէն հետեւեցան գահակալութեան արարողութեան ընթացքին:

Իւրաքանչիւր երկրի ղեկավար ապա մօտեցաւ Պապին եւ փոխանցեց իր ողջոյնն ու մաղթանքները: Ֆրանչեսքոս Պապ մէկ առ մէկ զրուցեց բարձրաստիճան հիւրերուն հետ, նաեւ շրջագայեցաւ հաւատացեալներու բազմութեան մէջ, բարեւելով շատ շատերուն: Պապին ողջունեց նաեւ Հայաստանի Հանրապետութեան նախագահ Սերժ Սարգսեանը:

Ան շնորհաւորեց Պապին ընտրութիւնը եւ նշեց, որ աշխարհի մէջ քրիստոնէութիւնը որպէս պետական կրօնք ճանչցած առաջին ժողովուրդին համար, առանձնայատուկ խորհուրդ կը պարունակէ Պապի ընտրութիւնը: Նախագահը նկատեց, որ սրբազան քահանայապետը հայ ժողովուրդի բարեկամն է եւ քաջատեղեակ կը մնայ մեր մշակոյթին ու պատմութեան, ինչ որ ապացուցած է Արժանթինի մէջ իր գործունէութեան ընթացքին:

Պապին ողջունեցին նաեւ Ամենայն Հայոց Գարեգին Բ. Կաթողիկոսն ու Տանն Կիլիկիոյ Կաթողիկէ Հայոց Ներսէս Պետրոս ԺԹ. Պատրիարք Կաթողիկոսը, Մեծի Տանն Կիլիկիոյ կաթողիկոսութիւնը եւ Արամ Ա. Կաթողիկոսը ներկայացնող պատուիրակութիւնը:

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹԵԱՆ ՆԱԽԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ ՀԵՐՔԵԼ Է ԱՏՐՊԷՅՃԱՆԱԿԱՆ ԿՈՂՄԻ ՄԵՂԱԴՐԱՆՔՆԵՐԸ

Հայաստանի պաշտպանութեան նախարարութիւնը հերքել է ատրպէյճանական լրատուամիջոցների տեղեկութիւնները իբր տեղի ունեցած փոխհրաձգութեան մասին:

«Տեղեկութիւնը չի համապատասխանում իրականութեանը: Դա սուտ է: Հայկական կողմը հաւատարիմ է հրադադարի ռեժիմի պահպանմանը»,- NEWS.am-ի թղթակցի հետ զրոյցում յայտարարել է Հայաստանի պաշտպանութեան նախարարի մամուլի քարտուղար Արծրուն Յովհաննիսեանը:

Նշենք, որ ատրպէյճանական APA գործակալութիւնը տեղեկութիւն էր տարածել, իբր փոխհրաձգութիւն է եղել եւ երկու կողմից էլ զինծառայողներ են զոհուել: Մասնաւորապէս, հաղորդւում էր, թէ զոհուել է ժամկէտային զինծառայող Մեհման Սադիգովը:

Տուեալները, սակայն, դեռ չի հաստատել Ատրպէյճանի պաշտպանութեան նախարարութիւնը: Ատրպէյճանցի զինծառայողի մահուան վայրը եւս չի նշւում: Այդ ամէնը հիմք է տալիս կարծելու, որ ատրպէյճանական կողմը հերթական անգամ փոխհրաձգութեանն է փորձում վերագրել դժբախտ պատահարի կամ ոչ կանոնադրական յարաբերութիւնների պատճառով զինուորի մահուան դէպքը:

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՆԱԽԱԳԱՀ ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԻ ՊԱՏԱՍԽԱՆԸ «ԺԱՌԱՆԳՈՒԹԻՒՆ» ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ ՂԵԿԱՎԱՐ ՐԱՖՖԻ ՅՈՎՀԱՆՆԻՍԵԱՆԻ ՆԱՄԱԿԻՆ

Յարգելի Պարոն Յովհաննիսեան,

Շնորհակալ եմ մեր հանդիպման ժամանակ արուած իմ առաջարկութիւնը վերջապէս ընդունելու եւ Ձեր մտքերը թղթին յանձնելու ու փոխանցելու համար: Որքան էլ ինձ հասցէագրուած գրաւոր նիւթը հեռու է պետութեան եւ պետական իշխանութեան ձեւաւորման վերաբերեալ պատշաճ պատկերացումներից եւ ուղղակիօրէն հակասում է գործող սահմանադրական կարգաւորումներին, այն, այդուհանդերձ, կարող է օգնել արդիւնաւէտ երկխօսութիւն սկսելու համար: Ինձ ուրախացնում է, որ Դուք նաեւ ուժեղ ընդդիմութեանը յարիր լուրջ վերահսկողական գործառոյթների ստանձնման պատրաստակամութիւն, եւ այդ հարցում մեր կարծիքները կարծես բաւականաչափ մօտ են: Ես վստահ եմ, որ եթէ մենք սկսենք միասին նպատակադրուած աշխատել, հիմնուելով պատկերացումների ընդհանրութիւնների վրայ, հաստատապէս արդիւնքի կը հասնենք:

Իմ յորդորն է Ձեզ դադարեցրէք խնդրում եմ հացադուլը, մէկ-երկու օր կազդուրուէք եւ մենք մասին, թուղթ ու գրիչով, հանգիստ, առանց շուերի սկսենք աշխատել, լուրջ աշխատել անգամ հիմք ընդունելով հենց Ձեր կողմից առաջարկուած, այս պահին թէկուզ եւ շատ հում, շարադրանքը:

Յարգանքով
**ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆ**

## ՐԱՖՖԻ ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ ԱՌԱՋԱՐԿՆԵՐ ԿԸ ՆԵՐԿԱՅԱՑՆԷ ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԻՆ

Նախագահութեան թեկնածու Րաֆֆի Յովհաննէսեան Ազատութեան հրապարակին վրայ հրաւիրած հանրահաւաքին յայտարարած է, թէ կը պահանջէ նախագահական արտակարգ նոր ընտրութիւններ կազմակերպել միաժամանակ աւելցնելով, որ Սերժ Սարգսեանին այլ կարելիութիւն մը եւս կ'ընձեռէ:

«Ես բաց եմ խօսում՝ գողացուած, հակահայկական, հակասահմանադրական ընտրութիւններով հանդերձ, եթէ Դուք ուզում էք շարունակել որպէս դէ ֆակտօ նախագահ՝ չունենալով ժողովրդի վստահութեան քուէն, նաեւ այդ հնարաւորութիւնը պիտի տամ Ձեզ»,- ըսած էր, Ժառանգութեան առաջնորդը՝ նշելով, որ նախագահական նոր ընտրութիւններ չկազմակերպելու պարագային կ'առաջարկէ այս տարուան ընթացքին կազմակերպել խորհրդարանական արտակարգ ընտրութիւններ նաեւ այն պայմանաւ, որ նախապէս գործադրուին իր շարք մը այլ պահանջները, մասնաւորապէս՝ փոփոխութիւններ Ընտրական օրէնսգիրքին մէջ:

«Վերացնել մեծամասնական ընտրակարգը՝ թողնելով բացառապէս համամասնականը, թոյլատրել ընտրած քաղաքացիների ցուցակների հրապարակումը, վերականգնել քաղաքական-կուսակցական սկզբունքը Կենտրոնական ընտրական եւ ընտրատարածքային յանձնաժողովների ձեւաւորման համար, քուէարկութիւն ապահովել այլ երկրում բնակուող ՀՀ քաղաքացիներին կամ էլ նուազագոյնը ընտրացուցակներից նրանց հանում»,- բացատրած է ան:

Բացի այդ, ընդդիմադիր ղեկավարը կը պահանջէ մինչեւ արտակարգ խորհրդարանական ընտրութիւններու կազմակերպումը առնուազն հինգ մարզպետներու հեռացումը իրենց աշխատանքէն, այդ պաշտօններուն նշանակելով իր ներկայացուցած անձերը: Ինք կ'ուզէ «բոլոր ընտրակեղծարարներին՝ առանց բացառութեան, այդ թւում մարզպետերին, քաղաքապետերին, կուսակցական պատասխանատուներին, այլ պաշտօնեաներին ենթարկել քրէական պատասխանատուութեան»: Ան կը պահանջէ նաեւ պատասխանատու պաշտօններ գլխաւոր դատախազութեան մէջ, հարկային եւ մաքսային, ազգային ապահովութեան ծառայութիւններուն, ինչպէս նաեւ Արտաքին գործոց եւ Կրթութեան ու գիտութեան նախարարութիւններուն մէջ,

⇨ 4

## «ՀԱՅԿԱԿԱՆ ԲԱՆԱԿԸ ԱՒԵԼԻ ՄԱՐՏՈՒՆԱԿ Է, ՔԱՆ ԱՏՐՊԷՅՃԱՆԱԿԱՆԸ»

Ռազմավարական հետազօտութիւններու միջազգային ինստիտուտը (The International Institute for Strategic Studies, IISS, կեդրոնակայանը՝ Լոնտոն) հրապարակած է «Ռազմական հաւասարակշռութիւն» խորագրով ամէնամեայ զեկոյցը, ուր անդրադարձ կայ նաեւ Հայաստանի եւ Ատրպէյճանի զինուած ուժերու ներուժին ու հնարաւորութիւններուն:

Զեկոյցին մէջ կը նշուի, որ հարաւ-կովկասեան երկու երկիրներն ալ իւրաքանչիւր տարի զգալի ֆինանսական միջոցներ կը յատկացնեն ռազմական ոլորտին: «Եթէ Հայաստանի մէջ այդ նպատակներով (ռազմական ոլորտը ֆինանսաւորելու) տարեկան մօտ 400 մլն. տոլար կը ծախսուի (2012թ-ին՝ 394 միլիոն), ապա Ատրպէյճանի մէջ անհամեմատ աւելի շատ. միայն 2012ին Պաքուի ռազմական ծախսերը գնահատուած են 1 միլիառ 770 միլիոն տոլար»,- ըսուած է փաստաթուղթին մէջ:

Կը նշուի, որ Պաքուն 2012-ին, 2011-ի համեմատութեամբ, ռազմական ոլորտի յատկացումներու ծաւալը աւելցուցած է 90 միլիոն տոլարով:

«Ընդհանուր առմամբ, Ատրպէյճանի ռազմական ծախսերը կը կազմեն երկրի ՀՆԱ-ի (Համախառն ներքին արդիւնք) մօտ 2,5 տոկոսը, իսկ Հայաստանի ռազմական ծախսերը՝ ՀՆԱ-ի մօտ 4 տոկոսը»,- կ'ընդգծեն զեկոյցին հեղինակները:

Բրիտանացի փորձագէտները գնահատած են նաեւ Հայաստանի եւ Ատրպէյճանի բանակներու մարտունակութեան աստիճանը ու պարզած, որ Հայաստանի ԶՈՒ-ն (Զինուած Ուժերը) աւելի մարտունակ է:

«Հայաստանի զինուած ուժերը բաւականին հմուտ են եւ յստակ կը պատկերացնեն իրենց առջեւ դրուած նպատակներն ու առաջադրանքները: Անոր զուգահեռ, Հայաստանի զինուած ուժերուն մէջ երթալով կ'աճի պայմանագրային հիմունքներով ծառայութեան անցնող զինուորականներուն թիւը, թէեւ կը պահպանուի նաեւ պար-

⇨ 2

# «ՀԱՅԱՍՏԱՆԸ ԵՒ ՔԱՂԱՔԱԿՐԹՈՒԹԻՒՆՆԵՐԻ ԵՐԿԽՕՍՈՒԹԻՒՆԸ» ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԳԻՏԱԺՈՂՈՎ ԳԱՀԻՐԷԻ ՄԷՋ

Գահիրէի համալսարանում տեղի ունեցաւ ՀՀ դեսպանութեան եւ Գահիրէի համալսարանի բանասիրութեան ֆակուլտետի Հայագիտական Ուսումնասիրութիւնների Կեդրոնի կազմակերպած 5-րդ հերթական գիտաժողովը՝ «Հայաստանը եւ քաղաքակրթութիւնների երկխօսութիւնը, հայ գրատպութեան 500 ամեակ» խորագրով:



Միջոցառման բացման ժամանակ ողջոյնի խօսքով ելոյթ ունեցաւ Եգիպտոսում ՀՀ դեսպան Արմէն Մելքոնեանը: Խօսելով քաղաքակրթութիւնների երկխօսութեան մասին դեսպան Մելքոնեանը նշեց, որ այն կոչուած է անկախ ազգային, կրօնական կամ այլ տարբերութիւնների ժողովուրդների միջեւ հանդուրժողականութեան եւ փոխըմբռնման մթնոլորտի ստեղծմանը: Միաժամանակ նա դատապարտեց ժողովուրդների խաղաղ համակեցութեան սկզբունքների ոտնահարումը եւ փոխարէնը անհանդուրժողականութեան, ատելութեան եւ ռասիզմի տարածումը՝ օրինակ բերելով Հայաստանի որոշ հարեւանների վարքագիծը: Դեսպանը չեշտեց, որ 21-րդ դարում դրանք չեն կարող տեղ ունենալ քաղաքակիրթ հասարակութիւնների միջավայրում:

Այնուհետեւ զեկոյցներով հանդէս եկան գիտնականներ ինչպէս Հայաստանից, այնպէս էլ՝ Եգիպտոսից եւ եգիպտահայ համայնքից: Հայաստանից մասնաւորապէս ելոյթ ունեցան ՀՀ ԳԱԱ արեւելագիտութեան ինստիտուտի տնօրէն Ռուբէն Սաֆրաստեանը, ՀՀ ԳԱԱ արեւելագիտութեան ինստիտուտի գիտական քարտուղար Ռոբերտ Ղազարեանը եւ ՀՀ ԳԱԱ պատմութեան ինստիտուտի փոխտնօրէն Կարէն Խաչատրեանը: Ընդհանուր առմամբ ներկայացուեց մօտ քսան զեկուցում, որոնք հիմնականում վերաբերում էին տարբեր ժամանակաշրջաններում եւ երկրներում հայերի ունեցած նշանակալից ներդրմանը համաշխարհային քաղաքակրթութեան զարգացման մէջ:

Ներկայ էին եգիպտահայ համայնքի կարկառուն ներկայացուցիչներ, օտարերկրեայ դիւանագէտներ, Գահիրէի եւ եգիպտական այլ համալսարանների պրոֆեսորներ, գիտնականներ, լրագրողներ եւ բազմաթիւ ուսանողներ:

Գիտաժողովի ընթացքում պատասխանելով եգիպտացի ուսանողուհիներից մէկի՝ այսպէս կոչուած Խոջալուի ջարդերի շուրջ հնչեցրած հարցին՝ ՀՀ Դեսպան Արմէն Մելքոնեանը մանրամասն անդրադարձ կատարեց Ատրպէյճանի կողմից իրականացուող հայատեաց քաղաքականութեանը եւ պետական մակարդակի հասնող զեղծարարութեանը, որի ցայտուն օրինակն է Խոջալուի դէպքերի աղաւաղումը եւ քարոզչական նպատակներով շահարկումը: Նա ներկայացրեց Խոջալուի մասին իրողութիւնը եւ միաժամանակ յիշեցրեց սումգայիթեան ջարդերի 25-րդ տարելիցի մասին, նշեց այդ ոճրագործութեան հեղինակների առ այսօր անպատիժ մնալու հանգամանքը, խօսեց նաեւ Պաքուում եւ Ատրպէյճանի այլ քաղաքներում հայերի նկատմամբ իրականացուած կոտորածների, քնած հայ սպային կացնահարած ոճրագործ Սաֆարովի եւ ատրպէյճանական ղեկավար շրջանակների կողմից վերջինիս հերոսացնելու մասին՝ չմոռանալով յիշատակել նաեւ Ատրպէյճանի կողմից հայկական մշակութային ժառանգութիւնը ոչնչացնելու փաստերը:

Գիտաժողովի շրջանակներում համագործակցութեան յուշագիր ստորագրուեց Գահիրէի Այն Շամս համալսարանի պատմութեան ֆակուլտետի եւ ՀՀ ԳԱԱ արեւելագիտութեան եւ պատմութեան ինստիտուտների միջեւ:

ԳԱՀԻՐԷ

ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

## ԵՐԿՈՒ ՀԱՅ ՏԱՂԱՆԴՆԵՐՈՒՆ ՅԱՂԹԱՆԱԿԸ ԳԱՀԻՐԷԻ ԲԵՄԻՆ ՎՐԱՅ

Եգիպտոսի խոշորագոյն շինարարական կազմակերպութիւններէն EMAAR MASR-ի կողմէ կազմակերպուած **Up Town Stars** դպրոցական տաղանդներու առաջին մրցոյթին, որուն մէջ ընդգրկուած էին Գահիրէի բազմաթիւ դպրոցներ, իր մասնակցութիւնը բերաւ նաեւ Գահիրէի Ազգային Առաջնորդարանի Գալուստեան-Նուպարեան Ազգ. Վարժարանը: Տաղանդներու այս մրցոյթին մասնակիցներու թիւը կը գերազանցէր քանի մը հարիւրը:

Հպարտութեամբ կը տեղեկացնենք թէ մրցոյթի եզրափակիչ փուլին աւելի քան երեսուն բազմատեսակ ելոյթներէ ետք (երգ, նուագ, յօրինում, պար, մարզական պար եւայլն) լաւագոյն առաջին երկու տեղերը խլեցին մեր համայնքի երկու տաղանդաւոր անդամներ՝ Ալեքսի Փափազեան Lycée Français-էն (Ա. մրցանակ) եւ Ռուբէն Սաատ Գալուստեան-Նուպարեան Ազգային Վարժարանէն (Բ. մրցանակ):



Քանի մը հանգրուանով ընթացած մրցոյթի աւարտական փուլին, որ տեղի ունեցաւ 16 Փետրուար 2013-ին, ժիւրիի անդամներն էին արուեստագէտներ Պուշրա, Հուսէյն ալ Իմամ եւ Մեկտի Սապէր: Եզրափակիչ մրցոյթին Ալեքսի Փափազեան ներկայացաւ "Love Story for 200 Days" իր հետաքրքրական յօրինումով, որ անձամբ փայլուն կերպով կատարեց դաշնակի վրայ: Իսկ Ռուբէն Սաատ մասնակցեցաւ որպէս հասուն մեներգիչ՝ հրաշալի կերպով կատարելով Առնօ Բաբաջանեանի «Թագուհի Գեղեցկութեան» հայերէն երգը: Հաղորդավարի մրցանակակիրներուն անուններուն յայտարարութեամբ, համընդհանուր ոգեւորութեան մէջ բեմ հրաւիրուեցան յաղթական երկու հայորդիները՝ իրենց գլուխներէն վեր պահած հայկական եռագոյնը:

Տպաւորիչ բազմաթիւ ելոյթ ունեցողներուն մէջ որքան առանձնայատուկ եւ որքան յատկանշական պէտք է եղած ըլլային Ալեքսիին եւ Ռուբէնին ելոյթները, որ ժիւրիի անդամներուն չխանգարեց անգամ կատարումներուն իրենց համար անծանօթ ըլլալը (Ալեքսիին պարագային որպէս ինքնուրոյն յօրինում՝ այսինքն անծանօթ նիւթ, իսկ Ռուբէնի պարագային իրենց չհասկցած լեզուով հնչող, անծանօթ երգ): Սա կը խօսի երեք բանի մասին. նախ ժիւրիի բարձր արհեստավարժութեան եւ անաչառութեան, երկրորդ՝ կատարումներուն որակապէս ընդհանուրէն բացայայտ առաւելութեան եւ երրորդ՝ ներկայացուող երաժշտութեան բարձր արժանիքներուն մասին:

Երկու շնորհալի պատանիները տարիներ շարունակ մաս կազմած են ՀԲԸՄ-ի «Ծիածան» մանկական երգչախումբին: Իսկ Ռուբէն Սաատ նաեւ, որպէս Հայ Եկեղեցւոյ դպիր առ այսօր կը ծառայէ Ս. Գր. Լուսաւորիչ Առաջնորդանիստ եկեղեցւոյ մէջ: Ան մաս կը կազմէ նաեւ Գահիրէի Ազգային Առաջնորդարանի «Արաքս» երգչախումբին՝ նաեւ որպէս մեներգիչ: Երեւանի մէջ 2012 թուականին «Մենակատար» անուանակարգով մասնակցած է «Իմ Հայաստան» Համահայկական Առաջին Փառատօնին՝ արժանավայել կերպով ներկայացնելով մեր համայնքը հայաստանեան բեմէն: Ռուբէն Սաատ արդէն տաս տարի է, որ իր երգչային շնորհը կը կատարելագործէ երգ-երաժշտութեան ուսուցիչներ ունենալով Գոհար Ղազէլեան եւ Միհրան Ղազէլեան:

Կը գնահատենք իրենց ասպարէզներուն մէջ հեռանկար ունեցող պատանիներուն տաղանդը եւ սրտանց կը շնորհաւորենք Ալեքսին եւ Ռուբէնը, իրենց ընտանիքները, մեր համայնքն ու դպրոցը այս հպարտալի յաղթանակներուն առթիւ:

**ԴԻՒԱՆ**
**ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**

## «ՀԱՅԿԱԿԱՆ ԲԱՆԱԿԸ ԱՒԵԼԻ ՄԱՐՏՈՒՆԱԿ Է, ՔԱՆ ԱՏՐՊԷՅՃԱՆԱԿԱՆԸ»

1

*տաղիր զօրակոչը»,- կը նշուի փաստաթուղթին մէջ:*

*Փորձագէտները անդրադարձած են նաեւ հայկական բանակին մէջ իրականացուող բարեփոխումներուն: Զեկոյցին համաձայն, Հայաստանի ԶՈՒ-ի մէջ բարեփոխումները հիմնականին մէջ ուղղուած են պայմանագրային զինծառայողներու թիւի աւելացման ու աւելի որակեալ սպառազինութեան ձեռք բերման:*

*«Չնայած, որ Հայաստան լուրջ միջոցներ կը յատկացնէ իր զինանոցին մէջ առկայ սպառազինութիւնը արդիականացնելու ու նորացնելու համար, այդուհանդերձ, Հայաստանի ԶՈՒ-ն տակաւին շատ հեռու է նորագոյն տեխնիկայով յագեցուած ըլլալ: Այդ՝ մասնաւորապէս պայմանաւորուած է փտարութեան դրսեւորումներով եւ Հայաստանի պաշտպանութեան նախարարութեան մէջ ֆինանսները ոչ արդիւնաւէտ ղեկավարելով», կը նշուի զեկոյցին մէջ:*

*IISS-ն, անդրադառնալով հայկական ու ատրպէյճանական զինուած ուժերու շփման գիծին վրայ առկայ իրավիճակին, կը նշէ, որ 2012ին առնուազն երկու անգամ (ամրան ու գարնան) հակամարտութեան գօտիին մէջ իրադրութիւնը խիստ լարուած է, ինչ որ, սակայն, «չէ յանգեցուցած տարածաշրջանին մէջ ռազմական գործողութիւններու վերսկսման»:*

*Ատրպէյճանին վերաբերող հատուածին մէջ IISS-ի փորձագէտները կը նշեն, որ չնայած, որ Ատրպէյճանի ռազմական պիւտճէն մի քանի անգամով կը գերազանցէ Հայաստանի ռազմական ծախսերը, այդուհանդերձ, այդ հանգամանքը ատրպէյճանական բանակը աւելի մարտունակ չի դարձներ:*

*«Նաւթի վաճառքէն ստացուած շահոյթին շնորհիւ Ատրպէյճանը կրցած է զգալի քանակութեամբ սպառազինութիւն ձեռք բերել, սակայն Ատրպէյճանի զինուած ուժերը օդային տարածքին մէջ չեն կրնար հասնիլ միանշանակ առաւելութեան: Նոյն նաւթը Ատրպէյճանին հնարաւորութիւն տուած է գնել SS-300 տեսակի նորագոյն համակարգեր (զենիթահրթիռային), սակայն, տակաւին յստակ չէ, թէ այդ մարտունակութեան բարձրացման տեսանկիւնէն ինչ կու տայ Պաքուին»- կը նշուի փաստաթուղթին մէջ:*

## ՀԱՅԿԱԿԱՆ ՆՈՐ ԴԵՍՊԱՆԱՏՈՒՆԵՐ

*Հայաստան նոր դեսպանատուներ պիտի ունենայ երեք երկիրներու մէջ:*

*Կառավարութեան որոշումով, հայկական ներկայացուցչութիւններ պիտի բացուին Շուէտի, Մեքսիքայի եւ Ինտոնեզիոյ մէջ:*

*Հայաստան ներկայիս դեսպանատուն չունի Կեդրոնական Ամերիկայի մէջ, իսկ Հարաւային Ամերիկայի մէջ ունի ընդամէնը երկու դեսպանատուն՝ Արժանթինի եւ Պրազիլի մէջ:*

*Նշենք, որ Ինտոնեզիան մահմետական մեծագոյն երկիրն է, նաեւ մեծ հեղինակութիւն կը վայելէ իսլամական աշխարհին մէջ:*

*Իսկ Շուէտը Սքանտինաւեան միակ երկիրն է, որուն խորհրդարանը ճանչցած է Հայոց Ցեղասպանութեան փաստը:*



## Ճարլ Ազնաւուրի Երազն Է Թուրքիա Այցելել, Բայց Անկէ Առաջ Պէտք Է Որ Սահմանները Բացուին

## «ԹՈՒՐՔԻՈՅ ՎԱՐՉԱՊԵՏԸ ԸՍԱԾ Է ՈՐ Կ'ԱՏԷ ՀԱՅԵՐՆ ՈՒ ՀԵԼԼԷՆՆԵՐԸ»

*Այսօր թրքական քանի մը լրատու աղբիւրներ կ'անդրադառնան ականաւոր երգիչ, ներկայիս Հայաստանի Զուիցերիոյ դեսպան Ճարլ Ազնաւուրի կողմէ Զուիցերիոյ Հեռատեսիլէն կատարուած հարցազրոյցի մը, որուն մէջ Ազնաւուր կ'ըսէ որ անհամբերութեամբ կը սպասէ որ Հայաստանի հետ սահմանները բացուին որպէսզի իր մէկ երազը իրականացնէ, այցելէ Թուրքիա:*

*Միւս կողմէ սակայն, լրագրողի մէկ հարցումին պատասխանելով, Ազնաւուր ըսաւ որ Թուրքիոյ վարչապետ մը ըսած է որ ատելութիւն կը զգայ Հայերուն ու Հելլէններուն հանդէպ:*

*Ազնաւուր որպէս պատուոյ հիւր հրաւիրուած էր Զուիցերիոյ Ֆրիպուրկ քաղաքին մէջ կազմակերպուած միջազգային շարժանկարի փառատօնին, այս առթիւ հարցազրոյց մը ունեցաւ Զուիցերիոյ Էր-Թէ-Էս հեռատեսիլի կայանին հետ, եւ յայտնեց թէ պէտք է բացուի Թուրքիոյ ու Հայաստանի սահմանը:*

*Լրագրողը յիշեցուց Ազնաւուրի կողմէ արտասանուած գեղեցիկ հետեւեալ խօսքը.*

*«Մէկ կողմէ պէտք է որ Հայոց դէմ գործուած ցեղասպանութիւնը չմոռցուի, մէկ կողմէ ալ պէտք է որ ատելութիւն չզգացուի թուրք ժողովուրդին նկատմամբ»:*  4

## «ՏԱՍԸ ՀԱՅ ԱԿԱՆԱՒՈՐ ԹԱԳՈՒՀԻՆԵՐ»

*Հայ ընթերցողին պիտի ներկայացուի յայտնի Հայ թագուհիներու մասին պատմող գիրք մը:*

*Պատմաբան, Երեւանի Պետական Համալսարանի փրոֆեսոր Արտակ Մովսիսեան նշեց, որ «Տասը Հայ Ականաւոր Թագուհիներ» գիրքը պատրաստ է տպագրութեան: Անիկա կը ներառէ Հայոց աշխարհի տասը ականաւոր թագուհիներու կեանքը, որոնք ներկայացուած են ժամանակագրական սկզբունքով: Հեղինակին խօսքով, ընտրուած են իրենց գործունէութեամբ առանձնացած, իւրաքանչիւր թագաւորութեան կարեւորագոյն թագուհիները՝ Զարուհի Երուանդունի, Երատօ Արտաշէսեան, Փառանձեմ Արշակունի, Խոսրովանոյշ Բագրատունի, Գաթրամիտէ Բ. Բագրատունի, Շահանդուխտ Բ., Զապէլ, Գեռան, Գաթրամիտէ Ա., Մարկարիթա, որ Լեւոնի հետ գերութեան տարուեցաւ: Գիրքին կցուած է յաւելուած մը, որուն մէջ տեղ գտած են հայոց պատմութեան յայտնի 60 թագուհիներ:*  4

ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ԽՈՀԵՐ

# ԱՂՔԱՏՈՒԹԻՒՆ (Ա)

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

*«2012-ին, աշխարհի առաջին 100 միլիարտատէրերը իրենց հարստութիւնը աւելցուցին 240 միլիար ամերիկեան տոլարով՝ բաւարար չորս անգամ վերացնելու աշխարհի աղքատութիւնը»*

ՕՔՍՖԱՄ(1)

«Այլընտրանքային խոհեր»-ուն առաջին նիւթը պարտաւոր դատեցի ընտրել մարդկութեան ամենաողբերգական արտադրութիւններէն մէկը՝ աղքատութիւնը: Այսօր գոյութիւն ունին մեծ պատմողականութիւններ (grand narratives) ազգայինի, կրօնքի, գործարարութեան (business) մասին, բայց դիտաւորեալ ճնշուած է աղքատութեան գաղափարը, չկայ աղքատութիւնը ջնջելու գաղափարախօսութիւն-պատմողականութիւն:

\- - - - - - - - -

«Բայց անոնք որ հարստանալ կ'ուզեն, կ'իյնան փորձութեան ու որոգայթի՝ եւ շատ յիմարական ու վնասակար ցանկութիւններու մէջ, որոնք սատակումի ու կորստեան մէջ կ'ընկղմեն մարդիկը: Ինչու որ ամէն չարութիւններուն արմատը արծաթասիրութիւնն է:»(2)

Եթէ այս խօսքը արտասանած ըլլար ժամանակակից մարքսիթ մը՝ պիտի մեկուսացուէր իբրեւ ձախի մը սովորականութիւններէն մէկը: Բայց ասիկա գրած է Պօղոս Առաքեալ, Ա դարու կէսերուն, նախքան քրիստոնէութեան իշխանական հիմնարկացումը (institutionalization):

Պօղոս Առաքեալի խօսքերը նոյն հնչեղութեամբ կը յարմարին ժամանակակից վիճակին: Ինչպէս Նոամ Չոմսքի դիտել կու տայ, այսօրուայ տնտեսութիւնը «ֆինանսական քազինօ մըն է, փոխանակ ըլլալու արտադրիչ տնտեսութիւն: Վնասուող մարդիկը ոչ թէ հարուստներն ու զօրեղներն են, այլ 99 տոկոսը:»(3)

Արծաթասիրութիւնն ու ֆինանսական քազինօն կ'արտադրեն նոյն երեւոյթը՝ աղքատութիւնը: Զոհը՝ աղքատն է:

Ի սկզբանէ աղքատութիւն չկար: Կար բնական արհաւիրքներու (ջրհեղեղ, երաշտ, եւլն.) պատճառով յառաջացած սով: Աղքատութիւնը ծագեցաւ երբ սկսաւ մարդու շահագործումը մարդու կողմէ: Իսկ շահագործումը սկսաւ երբ շուրջ 5000 տարի առաջ կազմուեցաւ դասակարգային հասարակարգը:

«Դասակարգային հասարակարգերը աշխարհի զանազան վայրերու մէջ սկսան յառաջանալ շուրջ 5000 տարի առաջ», կը գրէ Քրիս Հարման: «Դարեր շարունակ գործող համայնքային (communal) արտադրութիւնը ինկաւ իշխող փոքրամասնութիւններու հսկողութեան տակ, որ անոնց ապահովեց եւ տրամադրեց աւելի ու աւելի շքեղ եւ հանգստաւէտ ապրելակերպ: Սկիզբը անոնք կը հակուէին հասարակութեան մնացած մասը շահագործել հաւաքականօրէն, ինչպէս քուրմերը կամ պալատականները, փոխանակ մասնաւոր սեփականութեան: Այս հիմքին վրայ զարգացան այնպիսի այլազան քաղաքակրթութիւններ ինչպիսիք են՝ Նեղոսի Հովիտը, հին Իրաքը, հիւսիսային Չինաստանը, Հնդկական Հովիտը, միջին Ամերիկան, Անդեան լեռները, Կրետէն, Եթովպիան եւ արեւմտեան Ափրիկէն:»(4)

Շահագործումը եւ անկէ ծագած աղքատութիւնը մինչեւ ԺԸ դար կ'ենթարկուին փոփոխութիւններու: Դրամատիրութեան արմատացման հետ, ԺԹ դարուն, շահագործում-աղքատութիւնը կը թեւակոխէ նոր, շատ աւելի վայրագ ու ծայրահեղ շրջան մը: Տարբերութիւններէն մէկը այն է, որ նախադրամատիրութեան շրջաններու շահագործուողը տարբեր ձեւերով տէրն էր արտադրամիջոցներուն, իսկ դրամատիրութեան ժամանակ ան արմատապէս կտրուեցաւ ու անջատուեցաւ անոնցմէ, որուն պատճառով իր կախուածութիւնը շահագործողէն դարձաւ հարիւր տոկոս: Ասոր եւ այլ էական տարբերութիւններու մասին շատ գրուած է: Այս կարճ գրութեանս մէջ կ'ուզէի դիտել երկու տարբերութիւն՝ քիչ մը տարբեր անկիւններէ, մէկը՝ հասարակական, միւսը՝ բառային:

Նախ՝ հասարակականը:

Իբրեւ նախադրամատիրական շրջանի հիմնահոսանքային գաղափարախօսութիւն, հին ու նոր կտակարանները եւ եկեղեցամերձ մտաւորականութիւնը յաճախ արծարծած են աղքատութեան հարցը:

«Երանի՛ անոր՝ որ աղքատին հոգ կը տանի. նեղութեան օրը Տէրը պիտի փրկէ զանիկա», կը կարդանք Սաղմոսի մէջ (5):

Մատթէոս Աւետարանիչ կը գրէ. «Ըսաւ անոր Յիսուս. Թէ որ կ'ուզես կատարեալ ըլլալ, գնա ունեցածդ ծախէ՛, եւ տո՛ւր աղքատներուն, ու երկինքը գանձ պիտի ունենաս, եւ եկո՛ւր իմ ետեւէս:»(6)

Փաւստոս Բիւզանդ կ'ուզէ գովել Ներսէս Կաթողիկոսին՝ վեր հանելով անոր նախակաթողիկոսական շրջանի բարեսրտութիւնը. «Եւ զաղքատս եւ զտառապեալս այսպէս սիրէր եւ ակն ածէր 'ի վերայ նոցա, զի զիւր ինչ զհանդերձս եւ զկերակուր հասարակէր ընդ նոսա:»(7)

Բայց աղքատութիւնը միայն արդի ըմբռնումով անօթի մարդը չէր, այլ իշխանաւորութեան (կաթողիկոսութիւն, նախարարութիւն, թագաւորութիւն) հոգատարութիւնը վայելող ժողովրդական շերտերը: Փաւստոս Բիւզանդ Արշակ Բ. թագաւորի մասին կը գրէր. «Եւ սկիզբն գործակալութեանն հազարապետութեանն աշխարհատեսն խնամակալութեանն, աշխարհաշէն աշխարհատած դեհկանութեան, շինականաշէն ազգն Գնունեաց՝ հազարապետն ամենայն երկրին:»(8) Աղքատ բառը չկայ այստեղ, բայց շինականութիւնը կը մտնէր քրիստոնէութեան աղքատութեան շրջանակին մէջ:

Բազմաշերտ էր քրիստոնէութեան վերաբերմունքը աղքատութեան նկատմամբ թէ՛ աւետարանի զանազան մասերուն մէջ եւ թէ՛ եկեղեցիի փոփոխական կիրառականութեան առումով: Աղքատին օգնութիւնը միջոց մըն էր անձին փրկութեան համար, թէ անձի փրկութեան գաղափարը դրդապատճառ մըն էր աղքատի օգնութեան համար, թէ աղքատախնամութեան գաղափարը եկեղեցական վերնախաւին ժողովրդականութիւնը պահպանելու առիթ մըն էր, ինչպէս նաեւ ուրիշ մեկնաբանութիւններ քննարկումի առարկայ են: Բայց մէկ բան որոշակիօրէն կայուն էր՝ թէ աղքատութիւնը կը կազմէր քրիստոնէական գաղափարախօսութեան բաղկացուցիչ մասը: Աղքատը կար, այնտեղ էր, իրական էր:

Աղքատութեան ըմբռնումին մէջ արմատական փոփոխութիւն մտաւ դրամատիրութեան վերջնական ներխուժումին շնորհիւ: Այլեւս աղքատը չկայ, այնտեղ չէ, իրական չէ, անիկա դրամատէրի երեւակայութեան պատկերն է:

Քաջ յայտնի է տիպար դրամատէր Հենրի Ֆորտի խօսքերը. «Ինչո՞ւ համար երբ ամէն անգամ որ պէտք ունենամ զոյգ մը ձեռքերու, անոնք կու գան ուղեղի հետ կցուած»:

Դիմացինին՝ աղքատին, չտեսնելու համար, ի միջի այլոց, անհրաժեշտ էր յարմարցնել հասարակական յարաբերութիւնները: Այս առիթով Ճոն Ռիզ կը գրէ. «Բարձր միջին դասակարգերու աստիճանէն վեր գտնուող շատերը այսօր աշխատաւոր դասակարգէն անձի մը հետ կը շփուին միայն իբրեւ աշխատատեղի մէջ գործող ենթակայ մը՝ իբրեւ վաճառքի օգնական (sales assistant) կամ իբրեւ իրենց տան մէջ աշխատանքի ընդունուած մէկը: Անոնք կը շարժին օդափոխուած (air-conditioned) եւ ընկերային առումով վերահսկուած մէկ միջավայրէն դէպի միւսը: Աշխատաւոր դասակարգին մասին իրենց ունեցած գիտելիքը տկար է եւ անոնք հետզհետէ հասարակութեան մնացած մասը կը տեսնեն իբրեւ սպառնացող ամբոխ: Աշխատաւորներուն խնդիրները՝ աղքատութիւն, գործազրկութիւն, վատ ապաստարան, վատառողջութիւն, թերի կրթութիւն, բոլորն ալ աշխատաւորներու յանցանքը կը համարեն:»(9)

Անվերջանալի քանակութեամբ գիրքեր, յօդուածներ, գրութիւններ ու հեռատեսիլի խօսակցութիւններ աղքատութեան կու տան կցորդուած վիճակ:

Օրինակ, Միջազգային Պանքը համոզուած է՝ որ աշխարհի որոշ վայրեր աղքատութիւնը պատճառ կը հանդիսանայ հնութիւններու աւերումին եւ այս հարցին կը նուիրէ հատոր մը, ուր կը մտածէ ինչպէս աղքատութիւնը նուազեցնել *այդ* տարածութիւններուն մէջ: Նախաբանին մէջ գրուած է. «Այս գիրքը կ'ուսումնասիրէ գերընակչութեան եւ աղքատութեան ազդեցութիւնը պատմական քաղաքներու եւ սրբազան վայրերու վրայ:»(10) Այսինքն, աղքատութեան վատ պատկերը արգելք է հնութեան բարի պատկերին: Պէտք չունի «վատ» բառը գործածել, կը բաւէ աղքատութիւնը կցորդել ուրիշ առարկայի մը, պայմանով որ այս վերջինը ունենայ բարի, առաքինի ու սիրելի իմաստ:

Ռոթարի Ակումբը՝ մեծահարուստներու այս ցանցը, որ զբաղուած է կարիքաւորներու հոգատարութեամբ, աղքատութեան մասին իր դիտարկումը կը հիմնէ այն սկզբունքին վրայ՝ թէ «որեւէ տեղի մը աղքատութիւնը վտանգ կը ներկայացնէ ուրիշ տեղի մը բարեկեցութեան:»(11) Աղքատութիւնը արդէն դարձած է վտանգ, եւ ան ալ ոչ թէ աղքատներուն համար՝ այլ բարեկեցիկներուն:

Նոյն իմաստը կը կրէ սենաթոր Պարաք Օպամայի 2007-ին արտասանած խօսքը՝ թէ «աղքատութիւնը հիւանդութիւն մըն է՝ որ ամբողջ համայնքը կը վարակէ գործազրկութեան եւ բռնութեան ձեւով»:

Օրինակները անհամար են:

Անխուսափելի է նաեւ հարցին միւս կողմը, այսինքն աղքատին կարծիքը ինքն իր մասին: Բացի աղքատին լռեցնելէ եւ արտայայտուելու իրաւունքէն զրկելէ, կարեւոր է նաեւ որ աղքատը համոզուի իր անկարողութեան մասին եւ իր աղքատութիւնը վերագրէ միայն իր տգիտութեան:

Հետաքրքրական է Յովհաննէս Թումանեանի *Գիքորը*: Գիքորի ընտանիքը գիւղացի է: Հայրը՝ Համբօն, զաւակին կը տանի քաղաք՝ Թիֆլիս, աշխատելու մեծահարուստ բազազ Արտէմի մօտ, «որ մարդ դառնայ. լեզու սովորի, գրել-կարդալ սովորի, նստել-վերկենալ սովորի, մարդ ճանաչի, որ աշխարքումն ինձ նման խեղճ ու զուրկ չմնայ»: Իր կողմէն բազազ Արտէմ համոզուած է, որ Գիքոր «խսկի բան չգիտի»:

Բազազ Արտէմի խոհանոցին մէջ տեղի կ'ունենայ Համբոյի եւ Գիքորի երկխօսութիւնը.

«- Ապի, սրանք բուխարի չունե՞ն:

\- Չէ՛, սրանցը փէչն ա, ա՛յ էն ա փէչը...

\- Կալ էլ չունե՞ն:

\- Սրանք քաղաքացի են, գեղացի հօ չեն, որ կալ կալսեն:

\- Բա ո՞րտեղից են հաց ուտում:

\- Փողով առնում են ուտում: Հացն էլ են փողով առնում, եղն էլ, կաթն էլ, մածոնն էլ, փէտն էլ, ջուրն էլ...

\- Վա՜...

\- Բա՜, սրան Թիֆլիզ կ'ասեն: Դու հալա ղոչաղ կաց, դեռ  4

ՃԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

### Ցարլ Ազնաւուրի Երազն Է Թուրքիա Այցելել, Բայց ...

*Այս յիշեցումին պատասխանելով Ազնաւուր ըսաւ որ իրեն համար ցեղասպանութիւն բառը մասնաւոր կարեւորութիւն մը չի ներկայացներ, իր փափաքն է տեսնել որ Թուրքիա ճանչնայ պատմական պատահարները եւ բանայ Հայաստանի հետ սահմանը: Ազնաւուր ծիծաղաշարժ նկատեց այսօրուան կացութիւնը, քանի որ հակառակ որ սահմանները գոց են, անհագին փախստականութիւն կը կատարուի երկու երկիրներու միջեւ, նաեւ բազմաթիւ Հայաստանցիներ իրենց արձակուրդը կ'անցընեն Թուրքիոյ մէջ: «Ես մեծ հօրս տան վրայ աչք չունիմ, արդէն այդ տունն ալ չեմ ճանչնար, չեմ գիտեր», ըսաւ Ազնաւուր: Եւ երբ լրագրողը յիշեցուց որ «Հայաստան» անունը ցնցիչ ազդեցութիւն կը գործէ Թուրքերու մօտ, Ազնաւուր պատասխանեց որ միայն Հայերը չէ, Հելլէններն ալ նոյն անսիրելիութեան մէջ են, թէ Թուրքիոյ վարչապետը օր մը ըսաւ որ կ'ատէ Հայերն ու Հելլէնները: Վարչապետ մը այսպիսի խօսքեր պէտք չէ ընէ, ըսաւ Ազնաւուր:*

### ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ԽՈՀԵՐ
### ԱՂՔԱՏՈՒԹԻՒՆ (Ա)

չատ բան կ'իմանաս:»

Թումանեանի պատմուածքի այս հատուածը անկարելիութիւն մըն էր նախադրամատիրական շրջանին համար եւ կը բացայայտէ արդի շրջանի բախումնային վիճակը: Այստեղ ունինք գիւղացիին զգացած ստորադասութիւնը քաղաքին նկատմամբ, դրամով հաց գնելը աւելի զարգացած աստիճան մըն է քան ինքնաբաւ հացի արտադրութիւնը: Իսկ մեծահարուստը վստահ է որ աղքատ Գիքոր «բան չգիտի», եւ ինչպէս ցոյց կու տայ պատմուածքի շարունակութիւնը, Գիքոր այդպէս «անգէտ» ալ պէտք է մնայ:

Դրամատիրութեան համար կարեւոր է որ աղքատը, գիւղացին, աշխատաւորը համոզուած ըլլան որ իրենք ստորադաս են, ստորադաս են *իրենց* անգիտութեան պատճառով եւ հետեւաբար միշտ կարօտին կարողին, հարուստին: Այսպէս, դրամատէրը ապահովված կ'ըլլայ իր կեցութիւնը, իր ենթականերէն կը քաղէ այն առաւելագոյնը որ կը ծառայէ իր չահոյթի կուտակումներուն համար, եւ վերջապէս անոնց մէջ կը սպաննէ ըմբոստութեան ոգին: Ինչպէ՛ս կրնայ համոզուած ստորադասեալը ըմբոստանալ գեղեցկութեան եւ առաքինութեան ետեւը ապաստանած հարուստին դէմ:

Էական տարբերութիւն երկու հիմնահոսանքներու՝ նախադրամատիրական շրջանի քրիստոնէութեան եւ բուն դրամատիրութեան միջեւ: Առաջինին համար աղքատը ունէր բազում առաւելութիւններ՝ իրեն կը պատկանէր դրախտը, երկրորդին համար աղքատը դժոխային գոյութիւն մըն է, առաջինին համար աղքատութիւնը աստուածային նախախնամութեան արդիւնքն էր, երկրորդին համար՝ աղքատը *ինքն* է յանցաւոր իր ճակատագիրին համար, առաջինին համար աղքատութիւնը կը մտնէր իր գաղափարախօսութեան մէջ, երկրորդին համար աղքատութիւնը գաղափարային պարտադիր բացակայութիւն մըն է: Այլ կերպ վարուելով, դրամատիրական աշխարհի անցեալ տարուայ հարիւր միլիարտատէրերուն քսակը պիտի չաւելնար 240 միլիար յաւելեալ տոլարներով՝ աւելցնելով արդէն տառապող աղքատներուն թէ՛ քանակը եւ թէ՛ որակը:

Յաջորդ թիւով՝ բառային տարբերութիւններուն մասին:

(1) *The Cost of Inequality: How Wealth and Income Extremes Hurt Us All*, Oxfam Media Briefing, 18 Յունուար 2013

(2) *Նոր Կտակարան*, «Առաջին Թուղթ Պօղոսի Առաքելոյն առ Տիմոթէոս», Գլուխ Զ, 9-10

(3) 'Interview: 'The Rich and Powerful Don't Get Hurt' - Noam Chomsky on Occupy', *thejournal.ie*, 20 Մայիս 2012, http://www.thejournal.ie

(4) Chris Harman: 'The Rise of Capitalism', *International Socialism*, 29 Նոյեմբեր 2004, http://www.isj.org.uk/index.php4?id=21&issue=102

(5) *Հին Կտակարան*, «Սաղմոս» Գլուխ ԽԱ, 1

(6) *Նոր Կտակարան*, «Աւետարան ըստ Մատթէոսի», Գլուխ ԺԹ, 21

(7) Փաւստոս Բիւզանդ, *Հայոց պատմութիւն*, բնագիրը Ք. Պատկանեանի, Երեւանի Համալսարանի Հրատարակչութիւն, 1987, էջ 110

(8) Անդ, էջ 106

(9) John Rees: 'Socialism in the 21st Century', *International Socialism*, 4 Հոկտեմբեր 2004, http://www.isj.org.uk/index.php4?id=3&issue=100

(10) Ismail Serageldin, Ephim Shluger, Joan Martin-Brown (editors): *Historical Cities and Sacred Sites: Cultural Roots for Urban Futures*, The World Bank, 2000, էջ xi

(11) 2010 Manual of Procedure: *A Reference Manual for Rotary Leaders*, էջ 109

### «ՃԱՀԱԿԻՐ»ԻՆ

Ողբ. Անուշ Պալեանի մահուան եւ քառասունքին առթիւ կը նուիրեն.-

| | |
|---|---|
| Տէր եւ Տիկին Վահէ Վարժապետեան | 500 |
| Տիկին Սեդա Յովակիմեան | 100 |

### ՅԱՅՏԱՐԱՐԹԻՒՆ

Ս. Պօղոս-Պետրոս Եկեղեցւոյ պատուարժան Հոգաբարձութիւնը, ներկայիս կու գայ յայտարարելու մեր բարեպաշտ ժողովուրդեան, թէ Մեծ Պահոց եւ Ս. Զատկի առթիւ Եկեղեցւոյ Հոգաբարձութեան անդամները սկսած են 2013 տարուան ԻՒՂԱԳԻՆԻ նուիրահաւաքութիւնը:

Վստահ ենք, թէ իւրաքանչիւր ազգային իր նուիրական պարտականութիւնը պիտի կատարէ սրտաբուխ կերպով:

**Ս. ՊՕՂՈՍ-ՊԵՏՐՈՍ ԵԿԵՂԵՑԻՈՅ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ**

### «ՏԱՍԸ ՀԱՅ ԱԿՆԱՒՈՐ ԹԱԳՈՒՀԻՆԵՐ»

*Հեղինակին այլ՝ «Տասը Հայ Ականաւոր Արքաներ» գիրքին մէջ ներկայացուած արքաները ընտրուած են տարբեր դարաշրջաններէ: Ընտրուած են այն գործիչները, որոնք իրենց բնորոշ գիծերով առանձնացած են ոչ միայն ժամանակակիցներէն, այլեւ զգալի հետք ձգած մեր ամբողջ պատմութեան մէջ: Գրքոյկը շարադրուած է գիտահանրամատչելի լեզուով:*

*Որպէսզի ընթերցողը դիւրութեամբ կարենայ մանրամասնութիւններ գտնել ներկայացուած ականաւոր արքաներու մասին, իւրաքանչիւր ակնարկէ ետք նշուած են հիմնական աղբիւրներն ու ուսումնասիրութիւնները:*

### ՐԱՖՖԻ ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ ԱՌԱՋԱՐԿՆԵՐ ԿԸ ՆԵՐԿԱՅԱՑՆԷ ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԻՆ

*Վերստուգիչ պալատին, Արդարադատութեան խորհուրդին եւ Կաշառակերութեան դէմ պայքարի յանձնաժողովին մէջ եւս:*

*Ր. Յովհաննէսեան աւելցուցած է նաեւ, որ այս պայմանագիրը մասնատելի չէ, նաեւ պէտք է կրէ երկու կողմերու ստորագրութիւնը: Իսկ հոն նշուած դրոյթները անբեկանելի են մինչեւ արտակարգ խորհրդարանական ընտրութիւններու աւարտը:*

*Պահանջները ընթերցելէ ետք ան նամակը դրած է պահարանի մէջ, ստորագրած է, ուղարկելու համար Սերժ Սարգսեանին, ու ըսած, որ այս իր «վերջին առաջարկն է եւ նուազագոյն չեմը»:*

### ԳԱՀԻՐԷ

ԿԻՐԱԿԻ, 31 Մարտ 2013

**ՏՕՆ Է**

**Ս. ՅԱՐՈՒԹԵԱՆ ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ (ԶԱՏԻԿ)**

Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ Պատարագը պիտի մատուցանէ՝

ԳԵՐՇ. Տ. ԱՇՈՏ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՄՆԱՑԱԿԱՆԵԱՆ

ԲԱՐԵԽՆԱՄ ԱՌԱՋՆՈՐԴ ԵԳԻՊՏՈՍԻ ՀԱՅՈՑ ԹԵՄԻ

Եւ յընթացս Ս. Պատարագի պիտի ընթերցէ Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Բ Ամենայն Հայոց Կաթողիկոսի Ս. Յարութեան պատգամը:

| | |
|---|---|
| Սկիզբ առաւօտեան ժամերգութեան | ժամը 8:30-ին |
| Սկիզբ Ս. Պատարագի | ժամը 10:00-ին |

Ե.Գ.Ս. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ

### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

ԱՒԱԳ ՇԱԲԱԹ, 30 Մարտ 2013

**Ճրագալոյց**

**Յարութեան Տեառն Մերոյ Յիսուսի Քրիստոսի**

Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ պիտի մատուցուի հանդիսաւոր Ս. Պատարագ

| | |
|---|---|
| Սկիզբ առաւօտեան Ժամերգութեան | ժամը 8:30-ին |
| Սկիզբ Երեկոյեան Ժամերգութեան | ժամը 4:30-ին |
| Ընթերցում Մարգարէական գիրքերու | ժամը 5:00-ին |
| Սկիզբ Ս. Պատարագի | ժամը 6:00-ին |

Ե.Գ.Ս. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ

### ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

### ԸՆՏՐԱԿԱՆ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Ընտրական իրաւունք ունեցող Աղեքսանդրիոյ եւ անոր պատկանող վայրերուն մէջ բնակող մեր ազգայիններուն ուշադրութեան կը յանձնենք հետեւեալ կէտերը:

1.- Աղեքսանդրիոյ Թեմական մասնակի ընտրութիւնը – 12 հոգի – տեղի պիտի ունենայ Կիրակի, 7 Ապրիլ 2013-ին: Քուէարկութիւնը պիտի սկսի առաւօտեան ժամը 9:00-ին եւ վերջանայ երեկոյեան ժամը 5-ին:

2.- Ընտրող ազգայինները իրենց քուէները կրնան տալ ընտրելու իրաւունք ունեցող եւ 30 տարին լրացուցած ազգայիններու միայն:

3.- Պիտի ընտրուին միայն 12 անձեր, որոնց անունները եւ մականունները պէտք է գրուած ըլլան քուէաթուղթին վրայ ու անպայման ներփակուած Առաջնորդարանի կնիքով փոքր պահարանին մէջ եւ գոցուած:

4.- Ընտրութեան օրը ամէն ազգային պարտի ի ձեռին ունենալ իր ինքնութեան թուղթը (ԲՆԱԳԻՐԸ - «պըժաքա գաումիա»), որպէսզի զայն ներկայացնելէ վերջ ստանայ իր թիւը եւ ընտրական քարտը, ապա քուէարկէ:

5.- Ինքնութեան քարտի լուսատիպ պատճէններով ներկայացողները պիտի չկարենան մուտք գործել Առաջնորդարանի բակէն ներս, ուստի պիտի կորսնցնեն ընտրելու իրենց իրաւունքը:

6.- Պահանջուած ընտրելիներուն (12) թիւէն աւելի անուններ պարունակող քուէաթուղթէն կը ջնջուին աւելորդ անունները եւ պահանջուած թիւին աղնչութեամբ վաւերական կը նկատուի քուէաթուղթը կարգի (Կազմ. կանոնագիր Յօդ. 17): Իսկ մէկէ աւելի լրացուած քուէաթուղթ պարունակող պահարանները ամբողջութեամբ նաեւ ստորագրուած քուէաթուղթերը չեղեալ կը համարուին եւ կը ջնջուին:

7.- Ընտրութեան օրը, ընտրող ազգայինը, ընտրական տոմարին մէջ իր ստորագրութիւնը դնելէ վերջ պիտի մտնէ փոքրիկ առանձնասենեակը, ուր ինք, բացարձակ առանձնութեան մէջ, պիտի գտնէ կնքուած պահարան եւ պարապ քուէաթուղթ, ազատօրէն տալու համար իր քուէն:

**ԴԻՒԱՆ ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.
TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1701 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 11 ԱՊՐԻԼ 2013 ՀԱՏԸ ՉԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٧٠١ الخميس ١١ أبريل ٢٠١٣


ՀԱՅԱՍՏԱՆ

## ՄԷԿ ԱԶԳ, ՄԷԿ ՄՇԱԿՈՅԹ... ԵՐԿՈՒ ԵՐԴՈՒՄ

*Հայաստանի Հանրապետութեան նախագահ Սերժ Սարգսեան մեկնարկեց իր պաշտօնավարման երկրորդ ժամանակահատուածը: Կարէն Տեմիրճեանի անուան մարզահամերգային համալիրին մէջ տեղի ունեցաւ Ազգային Ժողովի արտակարգ նիստ, որուն ներկայ գտնուեցան 92 պատգամաւորներ եւ երկու հազար հրաւիրեալներ: Սահմանադրական երդումը ներկայացնելէ ետք Սարգսեան արտասանեց իր ուղերձը: Խօսելով ղարաբաղեան հակամարտութեան մասին Սարգսեան հաստատեց, որ այդ պիտի մնայ առաջնահերթութիւն՝ մինչեւ վերջնական լուծում: «Մենք կը բարձրացնենք մեր անվտանգութեան մակարդակը: Մենք պատերազմ չենք ցանկանար, սակայն միաժամանակ պատրաստ ենք դիմագրաւելու իւրաքանչիւր մարտահրաւէրի: Մեր հակառակորդի պայմանները մերժած ենք եւ երբեք չենք ընդունիր: Մենք այլ իրականութիւն կը կերտենք՝ տնտեսական վերելք, օրէնքի գերակայութիւն, ժողովրդավարութեան ամրապնդում», ըսաւ Սարգսեան:*

*Նախագահին հաւաստիացմամբ, պատասխանատուութեան զգացումը երբեք իրմէ չէ հեռացած, վերջին 5 տարիներուն ընթացքին: «Յառաջիկայ 5 տարիներուն մեր պետութեան ու ժողովուրդի առաջնահերթ խնդիրը կը համարեմ տնտեսական յառաջընթացը, արտագաղթի, գործազրկութեան եւ աղքատութեան խնդիրներու լուծումը: Երկրորդ առաջնահերթութիւնը՝ իրաւունքի գերակայութեան ապահովումն է: Երրորդ առաջնահերթութիւնը՝ ժողովրդավարութեան խորացումն է», ըսաւ նախագահ Սարգսեան:*

*Ներկաներուն իր ուղերձը փոխանցեց նաեւ Ամենայն Հայոց Գարեգին Բ. Կաթողիկոսը: Անոր խօսքով, նախագահական նոր շրջան կը սկսի, որոշ պահանջքներով եւ ակնկալիքներով: «Կենսական նշանակութիւն ունեցող եւ վճիռներու կարօտ բազում խնդիրներ ու հարցեր կան, որոնք կը պահանջեն իշխանութիւններու եւ ժողովուրդի հետեւողական ջանքերը», ըսաւ Վեհափառ Հայրապետը:*

*Կարէն Տեմիրճեանի անուան դահլիճին մէջ տեղի ունեցած միջոցառումէն ետք, նախագահ Սարգսեան ուղղուեցաւ Եռաբլուր պանթէոն, ուր յարգանքի տուրք մատուցեց զոհուած ազատամարտիկներու յիշատակին:*

*Սարգսեանի նախագահական պալատ ժամանումով մեկնարկեց զինուորական շքերթ, որուն իրենց մասնակցութիւնը բերին Վազգէն Սարգսեանի անուան սպայական հիմնարկի սպաները, ազգային անվտանգութեան ծառայութեան սահմանապահ ուժերը, ոստիկանութեան ջոկատները եւ զինուորական յատուկ նուագախումբը: Սահմանադրութեան համաձայն, իր հրաժարականը ներկայացուց Հայաստանի կառավարութիւնը:*

*«Մենք ունեցանք յաջողութիւններ, նաեւ դժուարութիւններ եւ սխալներ: Մեր պետութիւնը պիտի զարգանայ եւ մենք պիտի ունենանք վերելքներ», յայտարարեց հրաժարեալ վարչապետը:*

*Սարգսեան ընդունեց կառավարութեան հրաժարականը եւ վստահութիւն յայտնեց, որ նախարարները՝ նոր կառավարութեան համար ստեղծած են աշխատանքային յարմար մթնոլորտ:*

*«Դուք համոզուած պէտք է ըլլաք, որ շատեր դժգոհ են ոչ թէ ձեզմէ, այլ համատարած խնդիրներէն», ըսաւ Սարգսեան:*

### ԸՆԴԴԻՄՈՒԹԵԱՆ ԲՈՂՈՔԻ ՄԻՋՈՑԱՌՈՒՄՆԵՐ

*Հայաստանի նախագահի երդմնակալութեան միջոցառումներուն զուգահեռ տեղի ունեցան ընդդիմութեան բողոքի ցոյցեր, որոնք յատկանշուեցան սահմանափակ բախումներով: Ժառանգութիւն կուսակցութեան առաջնորդ Րաֆֆի Յովհաննիսեան իր հետեւորդներուն կոչ ուղղեց ուղղուիլ Ծիծեռնակաբերդ, անցնելով Բաղրամեան պողոտայէն, ուր կը* ➯ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## «ԱՐՄԱՒԻԱ»-Ի ՍՆԱՆԿԱՑՈՒՄԸ ԼՈՒՐՋ ՎՏԱՆԳ՝ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՆՎՏԱՆԳՈՒԹԵԱՆ

*Հայաստանի քաղաքացիական օդային փոխադրամիջոցներու գլխաւոր վարչութեան նախկին պետ Շահէն Պետրոսեան «Ազատութիւն» ռատիոկայանի հետ իր ունեցած զրոյցի ընթացքին յայտնեց, որ եթէ յանկարծ այնպիսի իրավիճակ ստեղծուի, որ արտասահմանեան ընկերութիւնները որոշեն չուերթներ չկատարել դէպի Հայաստան, ապա երկիրը կը յայտնուի օդային շրջափակման մէջ, քանի որ «Արմաւիա»-էն բացի թռիչքներ իրականացնելու հնարաւորութիւն ունեցող այլ օդանաւային ընկերութիւններ չկան:*

*«Մենք այնպիսի իրավիճակում ենք, որ եթէ յանկարծ ինչ որ պատահար լինի Հայաստանում, կամ պատերազմ, ոչ ոք չուերթներ չի իրականացնի մեր երկիր: Ամենացաւալին այստեղ այն է, որ կառավարութիւնը այստեղ «մեխ իգլուխ» է, ոչ մի բան է կառավարութիւնը, որ այսպիսի մի հզօր ոլորտ է «վարի» գնացել, մի հատ ծպտուն արձագանք չկայ, դա է ամենասարսափելին, որ թքած ունեն», - ըսած է Պետրոսեան:*

*«Արմաւիա» օդանաւային ընկերութիւնը մօտ մէկ շաբաթ առաջ յայտարարեց, որ Ապրիլի 1-էն սկսեալ պիտի դադրեցնէ թռիչքները եւ սկսած է սնանկացման գործընթացը: Որպէս պատճառ կը նշուի, որ ընկերութեան սեփականատէրը շուրջ 3 տարի այլ պիզնէսներէն ներդրումներ կը կատարէր ընկերութեան ձեռքբերումները պահպանելու համար, սակայն ներկայիս այնպիսի իրավիճակ ստեղծուած է, որ այսպէս շարունակելը անհնար է:*

*Շահէն Պետրոսեանի համաձայն՝ անկախացումէն յետոյ այս արդէն երկրորդ դէպքն է, երբ երկրի ազգային օդանաւային ընկերութիւնը սնանկ կը յայտարարուի:*

*Առաջին դէպքը «Հայկական Աւիաուղիներ» ընկերութիւնը ժամանակին միտումնաւոր կերպով սնանկացուեցաւ: Պատմութիւնը կը կրկնուի: Միակ տարբերութիւնը այն է, որ այս պարագային պարզ չեն սնանկացման պատճառները:*

*Ապրիլ 3-ին «Արմաւիա»-ի սնանկացման հարցին անդրադարձած է նաեւ Երեւանի «Զուարթնոց» օդակայանը տնօրինող «Արմենիա միջազգային օդանաւակայաններ» ընկերութիւնը: Ճամբորդներու կէսէն աւելին կ'օգտագործէին «Արմաւիա»-ն: Հիմա ընկերութեան չուերթները դադրեցնելէ յետոյ լուրջ կորուստներ կը կրէ նաեւ «Զուարթնոց» օդանաւակայանը: Ընկերութիւնը յայտնած է, որ հիմա սկսած է աշխատիլ արտասահմանեան ընկերութիւններու հետ՝ չուերթները աւելցնելու հարցով:*

*«Արմենիա միջազգային օդանաւակայաններ» ընկերութենէն «Ազատութիւն» ռատիոկայանին փոխանցած են, որ ներկայ դրութեամբ «Արմաւիա»-ի պարտքը կը կազմէ մօտ 5 միլիոն տոլար:*

---

## «ԿՌՈՒՆԿ ԷՅՐ» ՊԻՏԻ ՓՈՐՁԷ ՓՈԽԱՐԻՆԵԼ ԱՐՄԱՒԻԱՅԻՆ

*Արմաւիայի սնանկացումէն ետք, հայկական «Կռունկ էյր» օդանաւային ընկերութիւնը պիտի փորձէ վերակենդանացնել հայկական օդային թռիչքները:*

*«Կռունկ էյր»ի ընդհանուր տնօրէն Վլատիմիր Պօղոսեան յայտարարեց թէ Ապրիլ ամսուան ընթացքին երեւան պիտի ժամանէ առաջին A-340 օդանաւը, որմէ ետք պիտի ժամանեն երկու A-320 տիպի օդանաւեր: Պօղոսեանի նախատեսութեամբ, կարճ ժամանակամիջոցի մէջ օդանաւերուն թիւը պիտի բարձրանայ 8-ի:*

*«Կռունկ էյր» արդէն առաջարկութիւն կատարած է Արմաւիայի անձնակազմին՝ աշխատանքի անցնիլ իր մօտ: «Մենք պիտի փորձենք փրկել մարդոց, որոնք Արմաւիան նետած է փողոց». ըսաւ Պօղոսեան: «Կռունկ էյր» ընկերութիւնը արձանագրուած է երեք տարի առաջ: Ընկերութեան մէջ մասնաբաժին ունի նաեւ պետութիւնը:*

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԲՆԱԿԻՉՆԵՐՈՒՆ 40 ՏՈԿՈՍԸ Կ'ՈՒԶԷ ԸՆԴՄԻՇՏ ԼՔԵԼ ԵՐԿԻՐԸ

*«Կելլոփ Ուըրլտ» հարցախոյզին մասնակցած յետխորհրդային երկիրներու բնակիչներէն հայրենիքը ընդմիշտ լքելու փափաք յայտնողներու մեծագոյն թիւը արձանագրուած է Հայաստանի մէջ: «Կելլոփ Ուըրլտ» միջազգային կեդրոնին մէջ «ԱՊՀ երկիրներու սահմանները լքելու ցանկութիւն» հարցախոյզը կատարուած է 2010-2012-ին յետխորհրդային 12 երկիրներու մէջ: Հարցումները ուղղուած են հարցագրոյցի ճամբով, որուն մասնակցած է 41 հազար անձ՝ 15 տարեկանէն սկսեալ:*

*Այդպիսով, Հայաստանը ընդմիշտ լքելու փափաք յայտնած է հարցախոյզին մասնակիցներուն 40 տոկոսը: Յաջորդ դիրքին վրայ է Մոլտովիան՝ 32 տոկոս: Երրորդ դիրքը կը գրաւէ Ուքրանիան 21 տոկոս, չորրորդ՝ Պելոռուսը 17 տոկոս, իսկ հինգերորդը Ղրղըզստանն է 16 տոկոս: Հայրենիքէն հեռանալու նուազագոյն փափաք ունեցողները Իւզպեքիստանի՝ 5 տոկոս, Թուրքմէնիստանի՝ 6 տոկոս, Տաճիկիստանի 11 տոկոս եւ Ղազախստանի՝ 13 տոկոս, բնակիչներն են:*

*Միջին հաշուով հարցախոյզին մասնակցած յետխորհրդային պետութիւններուն մէջ ապրողներէն 15 առ հարիւրը կ'ուզէ արտագաղթել:*

*Մասնակցածներու 52 տոկոսը որպէս հիմնական պատճառ նշած է կենսամակարդակը բարելաւելու փափաքը: Պատասխանողներուն 13 տոկոսը նշած է, որ պատրաստ է լքելու հայրենիքը՝ իր զաւակներուն ապագային համար, իսկ 10 տոկոսը՝ աշխատանքի բացակայութեան կամ աշխատանքի ընդունուելու խնդիրներուն պատճառով:*

*Հայրենիքը լքելու այլ պատճառներու շարքին նըշուած է նաեւ ընկերային ապահովուածութեան ցած մակարդակը (պատասխանողներուն 4 տոկոսը), հարազատներուն մօտ ըլլալու փափաքը կամ միտումը ապրելու այնպիսի երկիրի մը մէջ, ուր մարդու իրաւունքները պաշտպանուած են (3 տոկոս):*

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՆԱԼՊԱՆՏԵԱՆ ՄՏԱՀՈԳ՝ ՍՈՒՐԻՈՅ ՀԱՐՑՈՎ

*Հայաստանի արտաքին գործոց նախարար Էտուարտ Նալպանտեան երէկ ընդունեց Սուրիոյ նախագահ Պաշշար Ասատի յատուկ բանագնաց Ատնան Մահմուտին: Վերջինս ներկայացուց Սուրիոյ հակամարտութեան զարգացումներուն եւ զինեալ բախումներուն կապակցութեամբ կառավարութեան տեսակէտը, նաեւ նշում կատարելով արիւնահեղութիւնը դադարեցնելու ուղղութեամբ կատարուած աշխատանքին:*

*Նալպանտեան խոր մտահոգութիւն յայտնեց Սուրիոյ մէջ շարունակուող ճգնաժամին եւ փաթթարացող մարդասիրական իրավիճակին կապակցութեամբ՝ ընդգծելով, որ կացութենէն լրջօրէն կը տուժեն երկրի քաղաքացիները, ներառեալ՝ սուրիահայերը: Նալպանտեան վստահութիւն յայտնեց, որ տագնապի լուծման միակ միջոցը՝ երկխօսութիւնն է:*

## ԸՍՏ ՄԱՄԷՏԵԱՐՈՎԻ՝
## ԹՈՒՐՔԻՈՅ, ԱՏՐՊԷՅՃԱՆԻ ԵՒ ՎՐԱՍՏԱՆԻ ԳՈՐԾԱԿՑՈՒԹԻՒՆԸ ՈՒՂԵՐՁ Է ՀԱՅԱՍՏԱՆԻՆ

*Մարտ 28-ին, Պաթումի մէջ տեղի ունեցած է Թուրքիոյ, Ատրպէյճանի եւ Վրաստանի Արտաքին գործոց նախարարներուն հանդիպումը:*

*Ատրպէյճանական Trend Գործակալութեան տեղեկատուութեան համաձայն, Ատրպէյճանի Արտաքին գործոց նախարար Էլմար Մամէտեարով այդ առթիւ տուած հարցազրոյցին մէջ ըսած է, թէ վերոնշեալ երեք երկիրներու գործակցութիւնը՝ Հայաստանին յղուած ուղերձ մըն է:*

*«Թուրքիա, Վրաստան եւ Ատրպէյճան բոլոր ուղղութիւններով գործակցութեան հարթակ մը ստեղծած են եւ կ'ապահովեն տարածաշրջանի զարգացումը, ինչ որ ուղերձ է մեր հարեւան Հայաստանին», ըսած է ան՝ աւարտելով սովորական յանկերգով, թէ «Հայաստան պէտք է ազատագրէ գրաւած տարածքները»:*

## ՄԱՄԼՈՅ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

Հովանաւորութեամբ Մեծի Տանն Կիլիկիոյ ՆՍՕՏՏ Արամ Ա. կաթողիկոսին եւ կազմակերպութեամբ Հայոց Ցեղասպանութեան 100-ամեակի Լիբանանի կեդրոնական մարմինին, միջին-արեւելեան երկիրներու 100-ամեակի յանձնախումբերու ներկայացուցիչներու միօրեայ խորհրդաժողովը տեղի ունեցաւ Շաբաթ, 6 Ապրիլ 2013-ին, Անթիլիասի մայրավանքի «Կիլիկիա» սրահին մէջ:

**Խորհրդաժողովը՝**

Ա.-Քննարկեց իւրաքանչիւր երկրի մէջ Ցեղասպանութեան ճանաչման, դատապարտման եւ պահանջատիրութեան ուղղութեամբ տարուող աշխատանքները:

Բ.-Ծանօթացաւ Հայոց Ցեղասպանութեան 100-ամեակի միջոցառումները համակարգող պետական յանձնաժողովի աշխատանքներուն եւ յառաջիկայ ծրագիրներուն:

Գ.-Օրակարգի յատուկ կէտով քննարկեց Ցեղասպանութեան հաստուցման եւ իրաւունքներու վերականգնման իրաւական թղթածրարի պատրաստութեան համար համապատասխան ուղիներով առաջնորդուելու հնարաւորութիւնները:

Դ.-100-ամեակի տարուան նախապատրաստական աշխատանքներու ներկայացման շրջագիծին մէջ, քննեց իւրաքանչիւր շրջանին մէջ նախատեսուած ծրագիրները եւ շեշտեց անոնցմէ ոմանց իրականացումը յանձնախումբերուն միջեւ համադրելու անհրաժեշտութիւնը:

**Խորհրդաժողովը առաջադրեց.**

Ա.-100-ամեակի յանձնախումբերու նախաձեռնութեամբ պարբերական խորհրդաժողովներ կազմակերպել գաղութներու մէջ գործող հոգեւոր կեդրոններու, հասարակական կազմակերպութիւններու եւ Հայաստանի Հանրապետութեան դիւանագիտական ներկայացուցչութիւններու հետ՝ աշխատանքներուն համագաղութային տարողութիւնը իբրեւ աշխատանքի ուղղութիւն պահելու համար:

Բ.-Շարունակել նախաձեռնել պահանջատիրական պայքարի բոլոր դրսեւորումները, հայ ժողովուրդի պատմական բոլո՛ր իրաւունքներուն վերականգնման համար:

Գ.-Նկատի ունենալով միջին-արեւելեան երկիրներու գաղութներուն պատմական եւ ռազմավարական կարեւորութիւնը, պայքարիլ տարածաշրջանին մէջ Թուրքիոյ ժխտողականութեան դէմ՝ տարբեր ճակատներու վրայ:

Դ.-Հետամուտ ըլլալ եւ սատարել Հայոց Ցեղասպանութեան հետեւանքներու վերացման, հատուցման եւ հայ ժողովուրդի պահանջատիրութեան իրաւական թղթածրարի պատրաստութեան եւ ամբողջական արդարութեան վերականգնման բոլոր աշխատանքներուն:

**Միջինարեւելեան Երկիրներու Հայոց Ցեղասպանութեան 100-ամեակի Յանձնախումբերու Ներկայացուցիչներու Խորհրդաժողով**

Անթիլիաս, 6 Ապրիլ, 2013

## «ԼԵՌՆԱՅԻՆ ՂԱՐԲԱՂԸ ՀԱՅԿԱԿԱՆ ՀՈՂ Է»

*ԵԱՀԿի Մինսքի խմբակի համանախագահները Արցախէն վերադարձան Ատրպէյճան: Անոնք սահմանային շփման գիծը հատեցին ոտքով, դիտարկելէ ետք սահմանային Աղտամ-Պարտա գօտին:*

*Ատրպէյճանցի վիպագիր Աքրամ Այլիսլիի զգայացունց յայտարարութիւններէն ետք, Պաքուի մէջ նոր աղմուկ բարձրացուց փիլմասպարէզի աշխատակից Ռուստամ Իպրահիմբեկովը:*

*Ան, ռուսական լրատուամիջոցի մը տրուած հարցազրոյցի մէջ հանդէս եկած է «Լեռնային Ղարաբաղը հայկական հող է» յայտարարութեամբ, մեծ զայրոյթ յառաջացնելով ատրպէյճանական շրջանակներէն ներս:*

↳ 4

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ ԿԸ ԿԱՌՈՒՑՈՒԻ ՉԻՆԱՐԷՆԻ ԴՊՐՈՑ

*Մարտ 29-ին, Երեւանի մէջ, Արտաքին գործոց փոխնախարար Սերկէյ Մանասարեան եւ Հայաստանի մէջ Չինաստանի դեսպան Թիան Ջանչուն ստորագրած են երկու երկիրներու կառավարութիւններու միջեւ թէքնիք եւ տնտեսական գործակցութեան մասին համաձայնագիր: Այդ ծիրէն ներս, կը սկսի նաեւ Հայաստանի մէջ չինարէնի տարածաշրջանային չափանիշով դպրոցի մը կառուցման աշխատանքները:*

*Չինաստան 1999էն ի վեր Հայաստանին կը տրամադրէ տնտեսական եւ թէքնիք օգնութիւն: Իրագործուած են զանազան ծրագիրներ, գլխաւորաբար՝ գիւղատնտեսութեան, առողջապահութեան եւ փոխադրութեան բնագաւառներուն մէջ:*

## «ԳԱՐՖՈՒՐ» ԿԸ ԳՆԷ՞ «ԵՐԵՒԱՆ ՍԻԹԻ» ԽԱՆՈՒԹՆԵՐՈՒ ՑԱՆՑԸ

*Ըստ հայաստանեան «Ժամանակ» օրաթերթին՝ իշխանութիւնները որոշած են բանակցիլ Սամվէլ Ալեքսանեանի հետ՝ վերջինիս «Երեւան Սիթի» խանութներու ցանցը ֆրանսական «Գարֆուր» ընկերութեան վաճառելու հարցին շուրջ:*

*Եթէ իսկապէս այս գործարքը կայանայ, ան կ'ըլլայ զգայացունց քայլ եւ տնտեսական քաղաքականութեան յստակ փոփոխութիւն՝ իշխանութիւններուն կողմէ: Եթէ իշխանութիւնները իսկապէս կը փափաքին, որ «Գարֆուր» գնէ Ս. Ալեքսանեանի*

↳ 4

ԳԱՀԻՐԷ

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Այսու կը ծանուցանենք, թէ Հայաստանի Հանրապետութեան Սփիւռքի Նախարարութիւնը կ'իրականացնէ «Սփիւռքի երիտասարդութեան ճանաչողական այցելութիւններ դէպի Հայաստան» ծրագիրը: Սոյն ծրագիրը կը կոչուի «Արի Տուն» հայրենաճանաչութեան ծրագիր, որ յաջողութեամբ կ'իրականացուի 2009-էն ի վեր, որուն իր մասնակցութիւնը կը բերէ նաեւ Եգիպտոսի Հայոց Թեմը:

«Արի տուն» սոյն ծրագրի շրջանակներուն մէջ ՀՀ Սփիւռքի նախարարութեան միջոցներով պիտի ապահովուին երիտասարդներու դիմաւորումը եւ ճանապարհումը, իրականացուին միջոցառումներու լայն ծրագիր, որուն ընթացքին պիտի կազմակերպուին Սփիւռքի եւ Հայաստանցի երիտասարդ հասակակիցներու «աքթիւ» շփումներ, հայրենակցական կապերու ստեղծում, ծանօթացում ՀՀ պատմամշակութային յուշարձաններուն, Հայոց Պատմութեան, պիտի ըլլան շրջայցեր Հայաստանի տեսարժան վայրեր, համերգներու, թատերական ներկայացումներու, ցուցահանդէսներու, փառատօներու դիտումներ եւայլն: Պիտի իրականացուին նաեւ ուսուցողական ծրագրեր՝ Հայոց լեզու, գրականութիւն, հայ ժողովուրդի եւ հայ եկեղեցւոյ պատմութիւն, մասնակցութիւն երգի, պարի, գեղարուեստի խմբակներուն, ինչպէս նաեւ կազմակերպուին հանդիպումներ ՀՀ պետական պաշտօնեաներու հետ:

**Առ այդ, այս տարի «Արի տուն» ծրագրին մասնակցելու համար Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ Ազգային վարժարաններէ զատուած 9 աշակերտներ Հայաստան պիտի մեկնին 14-27 Յուլիս 2013 շրջանին:**

Սոյն խումբին հետ Հայաստան մեկնիլ փափաքողները կրնան դիմել Գահիրէի Ազգային Առաջնորդարան մինչեւ 1 Մայիս 2013 թուականը:

Մասնակցիլ փափաքողները պարտին.

-ըլլալ 13-20 տարեկան

-ապահովել դէպի Հայաստան երթուդարձի ճանապարհածախսը:

Կը տեղեկացնենք նաեւ թէ Հայաստանի մէջ կեցութիւնը ապահովուած է հայ ընտանիքներու մէջ, որոնց ընտրութիւնը եւ ապահովութիւնը յանձն առած է Սփիւռքի Նախարարութիւնը:

Յաւելեալ մանրամասնութիւններ կրնաք գտնել նաեւ www.aritun.mindiaspora.am եւ www.aritun.am կայքէջէն:

**ԴԻՒԱՆ**

**ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**

## ՄԷԿ ԱԶԳ, ՄԷԿ ՄՇԱԿՈՅԹ... ԵՐԿՈՒ ԵՐԴՈՒՄ

1 ↳

*գտնուի նախագահական պալատը:*

*Ոստիկանութիւնը նշեալ պողոտան փակեց, նախագահական պալատին մէջ կազմակերպուած պաշտօնական ընթրիքին առթիւ: Յովհաննիսեան իր հետեւորդներուն հետ այլընտրաքային ճամբաներով ուղղուեցաւ Ցեղասպանութեան յուշահամալիր, մինչ Բաղրամեանի մուտքին հաւաքուած այլ ընդդիմադիրներու եւ ոստիկանութեան միջեւ տեղի ունեցաւ հրմշտուք: Վիրաւորուեցաւ եւ ոստիկանութեան կեդրոն փոխադրուեցաւ նախկին պատգամաւոր Արմէն Մարտիրոսեանը: Ան աւելի ուշ, այլ ձերբակալեալներու հետ ազատ արձակուեցաւ: Գիշերուան ուշ ժամերուն, ոստիկանութիւնը 15 վայրկեան տուաւ ցուցարարներուն՝ ցրուելու Բաղրամեանի մուտքէն, զգուշացնելով, որ բախումները անխուսափելի են:*

*Այնուհետեւ, ցուցարարներու մեծամասնութիւնը վերադարձաւ Ազատութեան հրապարակ, Ռաֆֆի Յովհաննիսեան ոստիկանապետ Վլատիմիր Գասպարեանի հետ Ծիծեռնակաբերդէն վերադարձաւ, Բաղրամեան պողոտան վերաբացուեցաւ երթեւեկի առջեւ, իսկ ոստիկանութեան հետ բանակցութիւնները շարունակուեցան: Յովհաննիսեան բազմիցս յայտարարեց, որ կը մերժէ բախումները եւ արիւնահեղութիւնը, սակայն ցուցարարներու մէկ հատուածը չէր ենթարկուիր ժառանգութեան առաջնորդի յորդորներուն: Ժառանգութեան առաջնորդը գիշերուան ժամը 11-ին բարի գիշեր մաղթեց հետեւորդներուն եւ խոստացաւ նոր հաւաք կազմակերպել՝ Ապրիլ 12-ին:*

*Նախապէս, կէսօրուան ժամերուն Ազատութեան հրապարակին վրայ տեղի ունեցաւ կեդրոնական հաւաք, մասնակցութեամբ Երեւանի եւ մարզերու բնակիչներուն: Ռաֆֆի Յովհաննիսեան կարդաց «Նոր Հայաստանի սահմանադրական երդումը», որուն մէջ ըսաւ. «Ես, Հայաստանի քաղաքացիս այսօր կը լուծարեմ իմ կապերս ներկայ անօրինական իշխանութեան հետ, կը յայտարարեմ, որ չեմ ճանչնար այսօրուայ ղեկավարներուն, չեմ հնազանդիր սուտ օրէնքներուն ու օրէնքներուն ու անօրէն հրամաններուն, չեմ վախնար ու պիտի չնահանջեմ»:*

**ԳԱՀԻՐԷ**

ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

# ԱՐԱՄ ԽԱՉԱՏՐԵԱՆԻ 110-ԱՄԵԱԿԻՆ ՆՈՒԻՐՈՒԱԾ ԵՐԵԿՈՅԹ

Այս տարի ազգովին, Հայրենիքէն ներս թէ դուրս, աշխարհի երաժշտական ու երաժշտասէր հասարակութեան հետ, երգահանդէսներով, նուագահանդէսներով, թատերապարային կամ այլ ձեռնարկներով արժանապատիւ հպարտութեամբ կը տօնախմբենք հանճարեղ երգահան Արամ Խաչատրեանին ծննդեան 110-ամեակը:

Արամ Խաչատրեան իր արուեստին մէջ հնչեցուց գեղարուեստական ի՛ր խօսքը, հիմնեց ի՛ր ստեղծագործական ոճը եւ հաստատեց ի՛ր երաժշտական լեզուն: Արամ Խաչատրեանին արուեստը իր հմայքին տակ առաւ թէ՛ հայը եւ թէ՛ օտարը, թէ՛ դրկիցը եւ թէ՛ միւս կիսագունտին մարդը, թէ՛ սրտակիցը եւ թէ՛ չկամը, քանի որ ան գտած էր դէպի մարդուն սիրտը տանող ամենակարճ եւ ամենավստահելի ուղին: Ան խօսեցաւ երաժշտութեան լեզուով եւ խօսեցաւ այնպէս, որ անդիմադրելիօրէն հասկնալի էր բոլորին, քանի որ այդ լեզուն միաժամանակ թէ՛ ազգային էր եւ թէ՛ միջազգային, թէ՛ աւանդական եւ թէ՛ նորարարական, թէ՛ քնարական եւ թէ՛ հերոսական, թէ՛ մտերիմ եւ թէ՛ իշխանափառ: Ուստի ոչինչ կը մնար այլեւս աշխարհին քան խոստովանիլ խաչատրեանական արուեստին անկասելի յաղթանակը: Մեծ երաժիշտը, խօսելով ամբողջ մարդկութեան հասկնալի լեզուով՝ երաժշտարուեստի լեզուով, ոչ միայն դարձաւ աշխարհի ամենայայտնի հայը, այլեւ մեր ազգային երաժշտութիւնը հասանելի, հասկնալի ու սիրելի դարձուց աշխարհին՝ իր երաժշտութեամբ հարստացնելով հայրենի եւ համաշխարհային երաժշտութեան գանձարանը:

Եգիպտահայ համայնքը ի մի բերելով կատարողական իր բոլոր ուժերը, տօնական բացառիկ համերգով մը եկաւ իր խոնարհումը բերել մեծ երաժիշտի յիշատակին: Արդարեւ, Շաբաթ, 16 Մարտ 2013-ին Հելիոպոլսոյ «Պըլըքտանեան» հանդիսասրահին մէջ, հովանաւորութեամբ Թեմիս բարեխնամ Առաջնորդ Գերշ. Տ. Աշոտ Եպիսկոպոս Մնացականեանի, կազմակերպութեամբ Գահիրէի Ազգային Իշխանութեան եւ նախաձեռնութեամբ «ԱՐԱՔՍ» երգչախումբի, տեղի ունեցաւ մեծ երգահան Արամ Խաչատրեանի ծննդեան 110-ամեակին նուիրուած յոբելենական բացառիկ համերգ: Ելոյթ ունեցաւ Գահիրէի Ազգային Առաջնորդարանի «ԱՐԱՔՍ» երգչախումբը՝ ղեկավարութեամբ խմբավար-երաժշտագէտ Միհրան Ղազելեանի, մասնակցութեամբ երաժշտագէտ-դաշնակահար Հայկ Աւագեանի, հարուածայիններ Ռուբէն եւ Վարդան Թերզիպաշեաններու, մեներգիչներ Գոհար Ղազելեանի, Սիլվա Թերզիպաշեանի, Արա Քէօհնէլեանի եւ Ռուբէն Սաատի, «Սարդարապատ» պարախումբի (պարուսոյց՝ Գարօլին Մագլումեան) եւ «Զանգեզուր» պարախումբի՝ (պարուսոյց՝ Սիւզան Յակոբեան-Գարգուր):

Գլխաւորութեամբ Առաջնորդ Սրբազան Հօր, համերգին ներկայ էին Գահիրէի Հոգեւոր Հովիւ Արժ. Տ. Յակոբ Քհնյ. Յակոբեան, Հայաստանի Հանրապետութեան արտակարգ եւ լիազօր դեսպան նորին գերազանցութիւն Դոկտ. Արմէն Մելքոնեան եւ դեսպանատան անձնակազմը, Գահիրէի Պատկառելի Թեմական Ժողովի Ատենապետ Տիար Նուպար Սիմոնեան, Պատուարժան Քաղաքական Ժողովի ատենապետ Տիար Օննիկ Պըլըքտանեան, Ազգային Իշխանութեան անդամներ եւ արուեստասէր հասարակութիւն մը:

Մեծարանքի այս համերգին համար պատրաստուած էր աննախադէպ ճոխ, բազմազան եւ կատարողական նորութիւններով լեցուն յայտագիր մը, որ կը պարունակէր խաչատրեանական 10 խմբերգ, 4 մեներգ, 1 եռերգ, 5 պար, հեղինակը ներկայացնող վաւերագրական կարճ շարժանկար մը, ինչպէս նաեւ բանախօսութիւն:

Տօնական հանդիսութիւնը սկսաւ Արփի Խաչերեանի բացման խօսքի ընթերցումով: Ապա տօնականօրէն յարդարուած բեմը (բեմայարդար Գարօլին Արսլանեան) տրամադրուեցաւ «ԱՐԱՔՍ» երգչախումբին, որն իր ելոյթը սկսաւ՝ կատարելով Խաչատրեանի *Դիմակահանդէսի* հանրայայտ *Վալսին* խմբերգային փոխադրութիւնը: Ամբողջ երեկոյի ընթացքին դաշնակի վրայ



կ'ընկերակցէր երաժշտագէտ-դաշնակահար Հայկ Աւագեան: Վալսին յաջորդեցին *Գարուն-Երեւան* եւ *Երջանկութեան Գորգը* երգերու խմբերգային փոխադրումները: Մեներգերով հանդէս եկան Արա Քէօհնէլեան *Պէպոյի երգով* եւ Սիլվա Թերզիպաշեան *Երգ Աղջկայ Մասին* երգով: Այնուհետեւ երգչախումբը կատարեց *Հայաստան* խմբերգը եւ հուսկ՝ *Ջօն Յնծութեան* փառաբանական խոշորածաւալ ստեղծագործութիւնը՝ գրուած մեծծօ սոփրանոյի, երգչախումբի, նուագախումբի, լարայիններու եւ տաւղահարներու համոյթի համար, որ երգչախումբին կողմէ կատարուեցաւ դաշնամուրի նուագակցութեամբ, իսկ մենակատարի բաժինը ստանձնած էր արհեստավարժ մենեգչուհի Գոհար Ղազելեան:

Այնուհետեւ ցուցադրուեցաւ *Արամ Խաչատրեանի Դարը* փաստագրական փոքրիկ տեսանիւթը, որմէ ետք բեմը տրամադրուեցաւ *Յուսաբեր* եւ *Կոկանեան* ակումբներու պարախումբերուն: «Սարդարապատ»ի մենապարուհի Թանիա Քիւրքճեան կատարեց *Հարսին Պարը*, իսկ «Զանգեզուրի» տղաներու խումբի *Լեզկինքա*-ն եզրափակեց համերգի առաջին բաժինը:

Համերգի երկրորդ բաժինին «Զանգեզուր» եւ «Սարդարապատ» պարախումբերը յաջորդաբար կատարեցին *Լեռնցիներու Պարը* եւ *Վարդագոյն Աղջիկներու Պարը*, որմէ յետոյ խօսք առաւ երաժշտագէտ-դաշնակահար Հայկ Աւագեան: Բանախօսը, ուշագրաւ բնորոշումներով եւ իւրայատուկ դիտանկիւնէ, ներկայացուց երաժշտական աշխարհին մէջ Խաչատրեանին ու անոր ստեղծագործութեան տեղը, դերը ու ընկալման առանձնայատկութիւնները՝ դիտուած յետ-աքատէմիք գիտելիքի ազատագրուած ակնոցով:

Այնուհետեւ կրկին բեմ բարձրացաւ «ԱՐԱՔՍ» երգչախումբը եւ կատարեց *Զանգեզուրեան քայլերգը*՝ «Զանգեզուր» պարախումբի պարակցութեամբ, իսկ Ռուբէն Սաատ կատարեց *Կենաց երգը:* Ապա հնչեցին Խաչտրեանական երեք վալսեր, *Գարնանային Պարահանդէս* եւ *Բարեկամութեան Վալս*՝ երգչախմբային փոխադրութեամբ եւ *Մանկանց Լուսէ Երազը* որպէս եռերգ՝ Անայիս Սալէհի, Գոհար Վարդանեանի եւ Վարդուհի Արթինեանի կատարմամբ:

Համերգին վերջին երկու աշխոյժ երգերը նոյնպէս երգչախմբային փոխադրումներ էին՝ *Մենք Այսօր Ուրախ Ենք* եւ *Քեզ Բիւր Օրհնանք:*

Այս համերգին հնչած երգերէն եւ խմբերգերէն կարեւոր մէկ մասը այս ձեւով կը կատարուէին առաջին անգամ ոչ միայն եգիպտահայ բեմէն, այլ՝ առհասարակ: Երգչախումբի կողմէ հնչած խաչատրեանական 10 կատարումներէն ութն այս համերգին առաջին անգամ ըլլալով հնչեցին որպէս խմբերգ: Երեք երգ թարգմանուած էին ռուսերէնէ, որոնցմէ երկուքը յատուկ այս երեկոյթի համար, իսկ եւս չորս երգ ստացած էին բանաստեղծական նոր խօսք, որոնցմէ երեքը յատուկ այս երեկոյթին համար: Տեղին է նշել, որ յոբելենական այս համերգին համար նախատեսուած խմբերգային բոլոր փոխադրումները, թարգմանութիւնները եւ բանաստեղծական նոր խօսքերը պատրաստուած էին խմբավար Միհրան Ղազելեանի կողմէ: Այսպիսով, համերգային երգացանկին գերակշիռ մասը կազմող խմբերգայնացուած եւ հայացուած երգերուն առաջին կատարման պատասխանատուութիւնը դրուած է այս գործին մէջ արդէն նշանակալի փորձառութիւն ունեցող «ԱՐԱՔՍ» երգչախումբի ուսերուն, իսկ առաջին ունկնդրման իրաւունքը՝ մեր խստապահանջ ու բարձրաճաշակ եգիպտահայ հանդիսատեսին:

4

ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ԽՈՀԵՐ

# ԱՂՔԱՏՈՒԹԻՒՆ (Բ)

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Անցեալ թիւը ակնարկ մըն էր աղքատութեան հասարակական ընկալումին վրայ ըստ երկու ժամանակաշրջաններու հիմնահոսանքային ըմբռնումներուն՝ նախադրամատիրական շրջանի քրիստոնէութեան (նկատի ունիմ Հին եւ Նոր Կտակարանները եւ հայկական միջնադարը) եւ արդի դրամատիրութեան:

Այս երկուքը, բնականաբար, պիտի դրսեւորէին բառային ու բառակապակցական տարբեր գործածութիւններ, որպէսզի խնդրոյ առարկայ բառը՝ «աղքատ», առաջին պարագային ունենար կեդրոնական ու դրական իմաստ, երկրորդ պարագային դառնար լուսանցքային ու բացասական:

Քրիստոնէական շրջանին տարածուած էր «աղքատ» բառը կապել «իմաստուն» բառին հետ: «Աղէկ է աղքատ ու իմաստուն տղան, քան թէ ծեր ու անմիտ թագաւորը՝ որ ալ չգիտեր խրատուիլ», կը գրէր Հին Կտակարանը(1): Կամ՝ «Մէկ պզտիկ քաղաք մը՝ ու մէջն ալ քիչ մարդ կար. եւ անոր վրայ մէկ մեծ թագաւոր մը եկաւ, ու զանիկա պաշարեց, եւ անոր դէմ մեծ պատնէշներ շինեց: Ու անոր մէջը մէկ աղքատ իմաստուն մը գտնուեցաւ. եւ անիկա իր իմաստութեամբը քաղաքը ազատեց:»(2)

Վարդան Այգեկցի (ԺԲ-ԺԳ դարեր) իր *Կտակ գանձի մասին* առակին մէջ կը գրէր. «Մի իմաստուն եւ աղքատ մարդ ունէր ծոյլ որդիներ»: Վերջապէս յայտնի է Ֆրիկի (ԺԳ դար) երկտողը. «Աղքատ իմաստուն լաւ է / Քան հազար անգէտ գանձաւոր»: Օրինակները բազմաթիւ են: «Իմաստուն» բառը «աղքատ»-ին տուած էր յատուկ ուղղուածութիւն մը, աւելցուցած դրական իմաստ մը:

ԺԹ դարէն սկսեալ «աղքատ-իմաստուն»-ին փոխարինեց «աղքատ-տգէտ»-ը: «Նեսոն աղքատ է... Նեսոն տգէտ է...», կը գրէ Թումանեան *Իմ ընկեր Նեսոն* պատմուածքին մէջ: «[Ս]ոված, տգէտ, աղքատ, յուսահատ ամբոխին, որի անունը ժողովուրդ է», 1909-ին Ա. Աթանասեան *Մշակի* մէջ կը նկարգէ ժամանակի հայութիւնը(3): ԺԸ դարու հայկական իրականութիւնը «աղքատ ու տգէտ» էր, դիտել կու տայ Լէօ 1902-ին(4):

Աղքատն ու տգէտը նաեւ միջին եւ միջինէն բարձր դասակարգերու առօրեայ խօսակցութեան սովորականութիւններէն մէկը դարձած են: Ըսէք ոեւէ մէկուն՝ թէ այսինչ տեղը աղքատութիւն կայ, անմիջապէս պիտի ճշդէ՝ աղքատութիւն եւ տգիտութիւն (արաբերէն՝ Ալֆաքր ուալ ճահլ):

Այս բառակապակցութեան շնորհիւ տեղի կ'ունենայ շարժում-գործողութիւն մը տգիտութենէն դէպի աղքատութիւնը: Տգիտութիւնն է աղքատութեան պատճառը, հետեւաբար աղքատութիւնը չի կրնար ըլլալ իմաստուն (քրիստոնէութիւնը չարաչար սխալած էր) եւ չի կրնար դառնալ գաղափարախօսութեան մը կեդրոնը: Աղքատութիւնը դառնալով տգիտութեան ենթական (ինչպէս նաեւ ուրիշ շատ բառային հնարանքներու ենթական՝ աղքատութիւն եւ անգրագիտութիւն, աղքատութիւն եւ ոճրագործութիւն, եւլն.), ան կը ճնշուի բառակապակցութիւններու երկրորդ բառին կողմէ եւ միաժամանակ երկրորդի բացասականութիւնը կ'անցնի իրեն: Աղքատութիւնը կը դառնայ անտեսանելի, իսկ տեսանելիութեան անհրաժեշտութեան պարագային՝ բացասական, ոչ թէ բացասականութիւն մը որ կարօտ է դիմադրութեան, այլ բացասականութիւն մը որ արժանի է մեկուսացման:

Կարճ ժամանակի ընթացքին կարողանալով շուրջ 25 դար շարունակուող «աղքատ-իմաստուն»-ը փոխարինել «աղքատ-տգէտ»-ով, դրամատիրութիւնը, միաժամանակ, պէտք ունեցաւ ամրապնդել նոր բառեր՝ մասնաւորապէս «հարուստ»-ը կամ «գործարարութիւն»-ը (business): Ամենասովորական միջոցներէն մէկն է անսահմանօրէն կրկնել այդ բառերը, կրկնել այնքան՝ որ ընկալողը ներքնականացնէ (interiorize) զանոնք:

Ռոթարի Ակումբը մեծահարուստներու ընկերային միջավայր մըն է, որոնց ինքնայայտարարած նպատակն է բազմացնել անդամներուն դրամական եկամուտը՝ իրենց միջեւ գործարարութիւնը «զարգացնելով», եւ այս եկամուտէն մաս մը տրամադրել աղքատներուն եւ կարօտեալներուն: Կը թաքցուի անխուսափելին. դրամատիրութեան մէջ չկայ այնքան դրամ՝ որ բոլորը դառնան հարուստ, բայց կայ այնքան դրամ՝ որ բոլորը տիրանան հաւասար դրամի: Մէկուն հարստութիւնը պիտի նշանակէ ուրիշին աղքատութիւնը: Մէկուն գերբնական հարստութիւնը պիտի նշանակէ ուրիշներու աղքատութիւնը: Այս է դրամատիրութեան թէեւ կմախքային՝ բայց կորիզային պատկերը:

Բայց ասիկա մէկ կողմ: Աւելի ազդեցիկ է բառային գործածութիւնը:

Իրենց 326 էջանոց անգլերէն ընթացակարգին մէջ՝ որուն ողնասիւնը ենթադրուած է ըլլալ աղքատութիւնը, ռոթարիաններ «աղքատութիւն» (poverty) բառը կը յիշեն ընդամէնը երեք անգամ, երկու անգամ կրկնելով՝ որ Ռոթարիի պատգամներէն մէկն է «աղքատութեան թեթեւացումը»(5) եւ մէկ անգամ նշելով՝ թէ «որեւէ տեղի մը աղքատութիւնը վտանգ կը ներկայացնէ ուրիշ տեղի մը բարեկեցութեան»(6): Միւս կողմէն, «գործարարութիւն» (business) բառը բուն գրութեան մէջ հանդէս կու գայ 130 անգամ, իսկ Ցուցակին (Index) մէջ՝ 10 անգամ: «Գործարարութիւն» բառին ընդգրկումը Ցուցակին մէջ իրեն կու տայ թեմաթիք կարեւորութիւն: Իսկ անոր կրկնութիւնը 140 անգամ կը ստեղծէ պատմողականութիւն (narrative) մը գործարարութեան շուրջ՝ կը շեշտէ անոր կարեւորութիւնը,

4




## ԱՐԱՄ ԽԱՉԱՏՐԵԱՆԻ 110-ԱՄԵԱԿԻՆ ՆՈՒԻՐՈՒԱԾ ԵՐԵԿՈՅԹ

3

Յոբելենական այս համերգին առիթով պատրաստուած էր նաեւ 80 էջնոց նկարազարդ գեղատիպ գրքոյկ-յայտագիր մը, որուն տպագրութիւնը սիրայօժար յանձն առած էին Նուպար եւ Հրաչ Սիմոնեան եղբայրները: Գրքոյկին առաջին բաժինը կը պարունակէր օրուան յայտագիրն ու կատարուելիք երգերուն բառերը, ապա մեծանուն երգահանին կենսագրականը, եւ այնուհետեւ *Դիմանկար Եւ Ինքնադիմանկար* բաժնով ներկայացուած էին նշանաւոր մարդոց կարծիք- գնահատականները Խաչատրեանին մասին եւ իր` Խաչատրեանին կարեւոր արտայայտութիւններէն քաղուածքներ` բոլորն ալ «պեղուած» աւելի քան կէս դարու ընթացքին հրատարակուած գրականութենէն:

Արամ Խաչատրեանի յոբելենական այս համերգին մտայղացումը ունէր լուծելիք կարեւորագոյն երեք խնդիր.

ա. Հնարաւորինս համակողմանի ներկայացնել մեծ երգահանին երաժշտութիւնն ու անձը:

բ. Ընդգրկել համայնքային կատարողական հնարաւորինս շատ ուժեր:

գ. Կատարողական եւ ներկայացման այլազան ձեւերով գոհացընել հանդիսատեսի հնարաւորինս լայն խաւեր ու այլազան ճաշակներ:

Ծիշդ այս երեք խնդիրները իրականացնելուն կը ծառայէին վերը նշուած բոլոր համերգային նախատեսումներն ու գործադրումները, եւ որոնք թէ՛ նպատակային էին, թէ՛ մատչելի, հետեւաբար լիովին արդարացուած:

Ամբողջ աշխարհի վրայ, հայկական եւ ոչ հայկական նախաձեռնութեամբ կազմակերպուած Արամ Խաչատրեանի ծննդեան 110-ամեակին նուիրուած համերգներու փառատօնային շարքին մէջ, մեր համայնքի ուժերով կազմակերպուած յոբելենական այս բացառիկ տօնակատարութիւնը նշանակալի իրագործում մըն էր թէ՛ մեր համայնքին մշակութային եւ թէ՛ «ԱՐԱՔՍ» երգչախումբին համերգային կեանքէն ներս: Համերգը արձանագրեց աննախադէպ յաջողութիւն՝ հանդիսատեսի կողմէ ընդունուելով բացառիկ խանդավառութեամբ, եւ գնահատանքի մեծածաւալ յօդուածով մը յատուկ կերպով լուսաբանուեցաւ տեղական AL AHRAM WEEKLY-ի (21-27 Մարտ 2013) էջերէն:

ԴԻՒԱՆ ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

<u>ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ԽՈՀԵՐ</u>

## ԱՂՔԱՏՈՒԹԻՒՆ (Բ)

3

աղդեցութիւնը եւ անհրաժեշտութիւնը:

Ռոթարիի այս հրատարակութիւնը բացառութիւն մը չէ, այլ պարզ նմոյշ մը: Այս օրինակը ամէն տեղ է: Հայկական մամուլը եւ հաղորդակցական միջոցները լեցուն են հայ գործարարներու «յաջողութիւններով», պաշտօնական եւ ոչ-պաշտօնական մարմիններ զբաղուած են մեծահարուստներու կուրծքերը շքանշաններ տեղադրելով, ինչպէս նաեւ կառուցելով հին մեծահարուստներու յուշարձաններ, մեծահարուստներ՝ որոնք իրենց դրամական կուտակումներու (կուտակումներու՝ եւ ոչ երբեք հիմնական դրամագլուխի) փոքրագոյն տոկոս մը (փոքրագոյն տոկոս մը՝ եւ ոչ երբեք տուեալ փուլի կուտակումին ամբողջականութիւնը) «նուիրած» են այսինչ նպատակին՝ ճշգրտօրէն հաշուարկուած տոկոս մը, որ բաւարար է փայլեցնել իրենց անունը, մեծահարուստներ՝ որոնք իրենց հարստութիւնը կազմած են մարդկային աշխատանքի շահագործումի (մարքսեան իմաստով) կամ միջավայրի աղտոտումի հաշուին: Հասարակութիւնը այլեւս պէտք չունի աղքատներու իմաստութեան: Դրամատէրն է իմաստունը:

Գործարարութեան պատմողականութիւնը ամէն տեղ է ներկայ դրամատիրական աշխարհին մէջ: Մէյ մը որ ստեղծուեցաւ հարստութեան պատմողականութիւն՝ փայլուն, գեղեցիկ, բացարձակ եւ անառարկելի, աղքատութիւնը դարձաւ աներեւոյթ: Մէյ մը որ աղքատութիւնը դարձաւ աներեւոյթ, հարստութիւնը դարձաւ աւելի ու աւելի համարձակ իր ինքնահաստատման մէջ: Աւելցաւ փոքրամասնութեան հարստութիւնը: Բայց աւելցա՞ւ արդեօք անոնց հոգեկան ներդաշնակութիւնը: «Հարուստը քուն չունի, փողն է համարում»(7): Չկայ աւելի փորձառու պատասխան քան աշուղ Ջիւանիի այս խօսքը...:

1.-Հին Կտակարան, Գիրք Ժողովողի, Գլուխ Դ, 13
2.-Հին Կտակարան, Գիրք Ժողովողի, Գլուխ Թ, 14-15
3.-Ա. Աթանասեան, «Զորրորդ հոսանք», *Մշակ*, թիւ 106, 1909
4.-Լէօ, *Հայկական տպագրութիւն*, Թիֆլիս, 1902, էջ 173
5.-2010 Manual of Procedure: *A Reference Manual for Rotary Leaders*, էջ 71 եւ 289
6.-Անդ, էջ 109
7.-Ջիւանի, «Զունենալը», *Ջիւանու քնարը*, Հայպետհրատ, 1959, էջ 313

## <u>ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ</u>

Ս. Պօղոս-Պետրոս Եկեղեցւոյ պատուարժան Հոգաբարձութիւնը, ներկայիս կու գայ յայտարարելու մեր բարեպաշտ ժողովրդեան, թէ Մեծ Պահոց եւ Ս. Զատկի առթիւ Եկեղեցւոյ Հոգաբարձութեան անդամները սկսած են 2013 տարուան ԻՒՂԱԳԻՆԻ նուիրահաւաքութիւնը:

Վստահ ենք, թէ իւրաքանչիւր ազգային իր նուիրական պարտականութիւնը պիտի կատարէ սրտաբուխ կերպով:

Ս. ՊՕՂՈՍ-ՊԵՏՐՈՍ ԵԿԵՂԵՑՒՈՅ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

### <u>ԵԿԵՂԵՑՒՈՅ ՊԱՅԾԱՌՈՒԹԵԱՆ</u>

Ողբ. Արսէն Էմիրզեանի մահուան առթիւ կը նուիրեն՝

| | |
|---|---|
| Տէր եւ Տիկին Պերճ Թէրզեան | 100 |
| Տէր եւ Տիկին Օննիկ Պըլըքտանեան | 100 |

## «ԳԱՐՖՈՒՐ» ԿԸ ԳՆԷ՞ «ԵՐԵՒԱՆ ՍԻԹԻ» ԽԱՆՈՒԹՆԵՐՈՒ ՑԱՆՑԸ

2

*խանութներու հսկայական ցանցը եւ մէկ անգամէն այդպիսի լայն տարողութեամբ մուտք գործէ Հայաստանեան շուկայ, ատիկա կը նշանակէ, որ անոնք վերջապէս որոշած են ներածման եւ վաճառքի շուկան ապաքական կամք արտայայտել, կը գրէ թերթը:*

## «ԼԵՌՆԱՅԻՆ ՂԱՐԲԱՂԸ ՀԱՅԿԱԿԱՆ ՀՈՂ Է»

2

*«Ես վստահ եմ, որ հայ ժողովուրդը մեր թշնամին չէ: Անոնք եւս ատրպէյճանցիներու նման տեղի ունեցածին զոհն են: Պատերազմը` երկու ժողովուրդներու եւ մարդկութեան դէմ յանցագործութիւն է: 21-րդ դարուն անթոյլատրելի է պատերազմի ճամբով լուծումներ որոնելը:*

*Կը հաւատամ, որ ատրպէյճանցիները կրնան հաշտութեամբ ապրիլ հայերուն հետ: Հայերուն նկատմամբ ատելութիւն սերմանելը լուրջ սխալ է», ըսաւ Իպրահիմբեկով:*



## ՏԽՐՈՒՆԻ

Տիար Ալէն Էմիրզեան, Տէր եւ Տիկին Սամի եւ Անահիտ Կուպրան եւ զաւակունք (Աւստրալիա), Տէր եւ Տիկին Սարգիս Էմիրզեան եւ զաւակունք (Աւստրալիա), Տէր եւ Տիկին Հաննա եւ Ալիս Մուչաքքա եւ զաւակունք (Աւստրալիա), Տիար Թոնի Էմիրզեան (Աւստրալիա), Տիար Արմէն Էմիրզեան (Աւստրալիա), Տիար Աւետիս Մովսէսեան, Տիկին Անի Մովսէսեան եւ զաւակը՝ Ալեքս, ինչպէս նաեւ Մովսէսեան եւ Կիւլեան ընտանիքները ցաւով կը ծանուցանեն իրենց հօր, եղբօր, հօրաքրոջ եւ ազգականին Ողբ.՝

### ԱՐՍԷՆ ԷՄԻՐԶԵԱՆԻ

դառնակսկիծ մահը, որ տեղի ունեցաւ Կիրակի, 24 Մարտ 2013-ին, հիւանդանոցի մէջ (Օրլանտօ, ԱՄՆ), յետ կարճատեւ հիւանդութեան:

Յուղարկաւորութեան տխուր արարողութիւնը կատարուեցաւ 2 Ապրիլ 2013-ին, ժամը 12-ին, Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ ապա հանգուցեալին մարմինը փոխադրուեցաւ Հելիոպոլսոյ Ամենայն Սրբոց գերեզմանատունը եւ թաղուեցաւ իր ընտանեկան դամբարանին մէջ:

*Այս տխուր առթիւ խմբագրութիւնս իր խորազգաց ցաւակցութիւնները կը յայտնէ հանգուցեալին զաւակին՝ Տիար Ալէն Էմիրզեանին եւ եղբայրներուն ու քոյրերուն ինչպէս նաեւ Տիար Աւետիս Մովսէսեանին եւ սգակիր բոլոր պարագաներուն:*

## ՄԱՀ ԵՒ ՅՈՒՂԱՐԿԱՒՈՐՈՒԹԻՒՆ ԳԱՀԻՐԷԻ ԿԱԼՈՒԱԾՈՑ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԵԱՆ ԱՏԵՆԱՊԵՏ ՏԻԱՐ ԱՐՍԷՆ ԷՄԻՐԶԵԱՆԻ

Գահիրէի Ազգային Առաջնորդարանը ցաւով տեղեկացաւ համայնքիս անդամներէն Արսէն Էմիրզեանի անժամանակ մահուան մասին: Ան տասնամեակներէ ի վեր նուիրեալ իր ծառայութիւնը բերած է՝ երկար տարիներ անդամակցելով եւ ստանձնելով Կալուածոց Հոգաբարձութեան ատենապետի պաշտօնը, ինչպէս նաեւ եղած է Նուպարեան Ազգային Վարժարանի Հոգաբարձութեան ատենապետ:



Հանգուցեալին թաղման եկեղեցական կարգը տեղի ունեցաւ 2 Ապրիլ 2013-ին, կէսօրուայ ժամը 12-ին, Գահիրէի Ս. Գրիգոր Լուսաւորիչ Եկեղեցւոյ մէջ, հանդիսապետութեամբ Թեմիս Բարեխնամ Առաջնորդ Գերշ. Տ. Աշոտ Եպս. Մնացականեանի եւ մասնակցութեամբ հոգեւոր դասի: Հանգուցեալին յիշատակը յարգելով վերջին հրաժեշտի եկած էին Ազգային Իշխանութեան անդամներ, հայ եւ օտար գործընկերներ եւ գաղութիս անդամներ:

Արարողութենէն վերջ Առաջնորդ Սրբազան Հայրը դամբանական իր խօսքին մէջ վեր հանեց բազմավաստակ ատենապետին ազգային-հայրենասիրական ոգին եւ ծառայասիրութիւնը, յատկապէս շեշտելով. «Արսէն Էմիրզեան ազնիւ անձ մըն էր, որուն համար ազգային եւ համայնքային ընդհանրական շահերը վեր էին ամէն այլ նկատումներէ, ինչպէս նաեւ անոր ունեցած կարեւոր դերը Գահիրէի Ազգային Առաջնորդարանէն ներս կալուածական հարցերու հետապնդումին եւ ծառացած խնդիրներու բարւոք լուծումին: Անոր յիշատակը մեր միտքերուն եւ սրտերուն մէջ պիտի մնայ որպէս բարի եւ նուիրեալ մարդ, որ իր ընտանեկան եւ անձնական կեանքը միախառնած էր ազգային կեանքին ու գործին եւ երկարամեայ իր ազգօգուտ գործունէութեամբ վայելած ամէնուն յարգանքն ու սէրը:»

Ապա, Սրբազան Հայրը իր եւ յանուն Հայ Կաթողիկէ համայնքի Առաջնորդ՝ Հայր Գրիգոր Օգոստինոս Եպիսկոպոս Գուսանի, Ազգային Իշխանութեան եւ յարակից հոգաբարձութիւններու եւ Առաջնորդարանի պաշտօնէութեան ցաւակցութիւնները փոխանցեց հանգուցեալի ընտանիքի անդամներուն, սգակիր պարագաներուն եւ ներկաներուն (Սրբազան Հօր խօսքը արաբերէնով ընթերցեց Տիար Շանթ Կապէյեան):

Այնուհետեւ Ամենայն Սրբոց գերեզմանատան մէջ կատարուեցաւ թաղման կարգը եւ մարմինը ամփոփուեցաւ ընտանեկան դամբարանին մէջ:

Խունկ եւ յարգանք հանգուցեալի յիշատակին:

ԴԻՒԱՆ
ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1702 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 25 ԱՊՐԻԼ 2013

ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ.

عدد رقم ١٧٠٢ الخميس ٢٥ أبريل ٢٠١٣


ԽՄԲԱԳՐԱԿԱՆ

## ՎԵՐԱՆՈՐՈԳ ՈՒԽՏԻ ՃԱՆԱՊԱՐՀՈՎ

Այսօր համազգային ուխտի վերանորոգման օրն է:

Իւրաքանչիւր հայորդիի խորհրդածութեան, մտասեւեռումին եւ խոկումներուն առանցքը կ՚ըլլայ Մեծ Եղեռնը: Հայոց ժամանակակից պատմութեան անկիւնադարձը նշանաւորող 1915-ի ցեղասպանութիւնը իր տարողութեամբ, հետեւանքներով եւ ազդեցութեամբ ամէն հայորդիի, հայ ընտանիքի թէ տոհմի վրայ խարանած է անջնջելի սպի մը: Ահասարսուռ մրմուռը չէ ապաքինած եւ չի կրնար ապաքինիլ սերունդներու յիշողութեան թէ կեանքին մէջ:

Համահայկական այս ուխտին վերանորոգումը այն պահն է, երբ կանգնելով անցեալի դառն յիշատակներուն ընդառաջ, միաժամանակ մեր հայեացքները կ՚ուղղենք ապագային. ուստի՝ միայն երէկը ողբալու, վայվայելու եւ սգալու համար չէ Ապրիլ 24-ը, այլ՝ նո՛ր ուժականութեամբ, թափո՛վ եւ լարումո՛վ շարունակելու մեր պայքարի երթն ու ազգային տենչերու իրագործման փշալի ճանապարհը: Այո, խունկ կը վառենք եւ աղօթք կը մրմնջենք, բայց աւելի՛ն եւ հաստա՛տապէս կ՚երդնունք ըլլալ հաւատարիմ նահատակներու յիշատակին, յանձնառու՝ մեր ազգային պատուախնդրութեան եւ վճռորոշ՝ մեր լինելութեան կամքին:

98
ՅԻՇԵՆՔ
ՅԻՇԵՑՆԵՆՔ
ՊԱՀԱՆՋԵՆՔ

Այսօրուան վերանորոգ ուխտին ճանապարհը, որ կ՚ուղղուի հայկական ցեղասպանութեան 100-ամեակ, խարսխուած է երեք կռուաններու վրայ.

1.- Անչափելի կորուստին ճիշդ գնահատում.- Թող չկարծուի, թէ Մեծ Եղեռնի ոգեկոչումը մէկ ու կէս միլիոն մարդկային զոհերուն յիշատակին է սոսկ, որոնք բարբարոսաբար սրախողխող եղան թրքական սուրսայր եաթաղանին արիւնռուշտ հարուածներուն տակ. այլ ան շատ աւելի տարողունակ եւ ընդգրկուն ահաւորութիւն կ՚ընդգրկէ իր մէջ: Գիտական եւ գերարդիական ամենաճշգրիտ միջոցներն անգամ անկարելիութեան կը մատնուին Մեծ Եղեռնի ստոյգ արժեւորման դիմաց: Հողային կորուստը, մշակութային արժէքներու անհետացումը, ազգային-կրթական-վանապատկան կառոյցներուն իւրացումը, ձեռագրերու եւ սրբապատկերներու առքն ու ապուռը, ազգի մը հանճարեղ ու տաղանդաշատ սերուցքին անճիտումը, նիւթական ժառանգութեան ալան-թալանը. իսկ այն դեռատի աղջնակները կամ թարմատի պատանիները, որոնք բռնի քրտացան եւ թրքացան Արեւմտեան Հայաստանի մէջ եւ կամ Սուրիոյ վաչկատուն ցեղախումբերուն կողմէ արաբացան եւ իսլամացան. այս սոսկավիթխար կորուստին ճշգրիտ չափն ու կշիռը ո՞վքեր եւ ե՞րբ պիտի կատարեն արդեօք. կամ՝ միթէ՞ հնարաւոր է կատարել նման գնահատում:

Ուստի, այսօրուան վերանորոգ ուխտին առաջին կռուանը մեր կորուստը ըմբռնելու, արժեւորելու, գիտակցելու եւ մարդկութեան ներկայացնելու մէջ կը կայանայ:

2.- Ազգային ինքնութեան պահպանում.- Կ՚ուխտենք մնալ կառչած մեր ազգային դիմագիծին, աւանդոյթներուն եւ արժէքներուն: Ուծացման, ձուլման եւ համայնակուլ այլասերման այս դժնի օրերուն, ամէն սայթաքում եւ խոտորում ազգային ինքնութենէ, ցեղասպանութեան շարունակում կը նշանակէ: Ցաւ ի սիրտ, հայրենազուրկ մեր կարգավիճակը նպաստաւոր հող ու մթնոլորտ կը ստեղծէ այն անփառունակ նահանջին, որ կ՚արձանագրուի մեր ազգային կառոյցներէն թէ հաւաքականութենէն ներս. նոյնիսկ, ամէն ընտանիքի եւ հայ անհատին մէջ՝ երբ կը հեռանանք մայրենի լեզուէն, հայ եկեղեցիէն, հայ մշակոյթէն. երբեմն՝ կ՚օտարանանք կամովին եւ կը դաւենք մեր նախնեաց կտակին: Մեծ Եղեռնը կը շարունակուի սպիտակ ջարդով. Թալաաթներու երազը իրականութիւն կը դառնայ մեր պարտուողական կեցուածքով, իսկ ազգայինը մեր մէջ կը սպաննուի յանցաւոր անտարբերութեամբ:

↳ 2

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԻ ՀՐԱՄԱՆԱԳՐՈՎ ՎԱՐՉԱՊԵՏ ՎԵՐԱՆՇԱՆԱԿՈՒԱԾ Է ՏԻԳՐԱՆ ՍԱՐԳՍԵԱՆ

*Նախագահ Սերժ Սարգսեանի Ապրիլ 19-ին ստորագրած հրամանագրով՝ Տիգրան Սարգսեան Հայաստանի վարչապետ վերանշանակուած է:*

*Հանրապետութեան նախագահը Ազգային Ժողովին մէջ ներկայացուած խմբակցութիւններուն հետ խորհրդակցութիւններու հիման վրայ վարչապետ նշանակած է երեսփոխաններու մեծամասնութեան վստահութիւնը վայելող անձը: Սերժ Սարգսեան խորհրդակցութիւն ունեցած է «Հանրապետական» (ՀՀԿ), «Բարգաւաճ Հայաստան», «Օրինաց Երկիր» եւ «Հայ Յեղափոխական Դաշնակցութիւն» խմբակցութիւններու ղեկավարներուն հետ:*

*Տիգրան Սարգսեան Հայաստանի 13րդ վարչապետն է: Ան այդ պաշտօնին առաջին անգամ նշանակուած էր 2008 Ապրիլ 9-ին:*

*Իրենց պաշտօններուն վերանշանակուած են նաեւ Արտաքին գործոց նախարար Էդուարդ Նալբանդեանը եւ Պաշտպանութեան նախարար՝ Սէյրան Օհանեանը:*

## ՀԱԿ ԵՒ ԺԱՌԱՆԳՈՒԹԻՒՆ ՄԵՐԺԱԾ ԵՆ ՄԱՍՆԱԿՑԻԼ

*«ՀԱԿ» եւ «Ժառանգութիւն» խմբակցութիւնները մերժած են մասնակցիլ Սերժ Սարգսեանի հետ վերոնշեալ խորհրդակցութիւններուն:*

*Այս մասին արտայայտուելով՝ ՀԱԿ խմբակցութեան քարտուղար Արամ Մանուկեան, ըսած է. "Ոչ լեգիտիմ* (ոչ-օրինակարգ) *իշխանութեան նշանակած վարչապետի հարցի քննարկմանը գնանք, որ ի՞նչ անենք":*

## ՕՃԱԼԱՆԷՆ ՆԱՄԱԿ՝ ԹՐՔԱՀԱՅՈՒԹԵԱՆ

*Քիւրտիստանի Աշխատաւորական Կուսակցութեան բանտարկուած ղեկավար Ապտուլլա Օճալան հանդէս եկաւ յատուկ ուղերձով, ուղղուած՝ հայ եւ ասորի ժողովուրդներուն: «Այսուհետեւ անընդունելի կ'ըլլայ որեւէ նախաձեռնութիւն, որ նպատակ կը հետապնդէ ոտնահարել հայ եւ ասորի ժողովուրդներու իրաւունքներն ու ազատութիւնները: Առանց անոնց, ժողովրդավարութիւն կարելի չէ հաստատել», ըսած է Օճալան, ըստ քիւրտ առաջնորդին այցելած քիւրտ պատգամաւորներու:*

*Այլ գիծի վրայ, հաղորդուեցաւ, որ Թուրքիոյ ծայրայեղական Ազգայնական Շարժում կուսակցութեան պատգամաւոր Ահմատ Տուրան Պուլուտ անվայելուչ յայտարարութիւն կատարած է հայերուն դէմ: Անդրադառնալով քիւրտերու հետ խաղաղութիւն հաստատող «իմաստուններու» յանձնախումբին մէջ հայ լրագրողի ներառման որոշումին, պատգամաւորը ըսած է. «Հայուն խելքը պէտք չէ: Հայը Թուրք ազգին համար ի՞նչ կրնայ մտածել: Մինչեւ երէկ պետութեան դէմ հանդէս եկողներուն, Թուրք ազգէն վրէժ առնելու ցանկութիւն ունեցողներուն իմաստուն մարդ դարձուցած են»:*

## ԱՄԵՐԻԿԵԱՆ ՔՆՆԱԴԱՏՈՒԹԻՒՆԵՐ՝ ԵՐԵՒԱՆԻՆ ԵՒ ԱՆԳԱՐԱՅԻՆ

*Մարդու իրաւունքներու ոլորտին մէջ, Միացեալ Նահանգներու պետական քարտուղարութիւնը հրապարակեց իր 2012 թուականի զեկոյցը, որուն մէջ քննադատած է Հայաստանի կառավարութիւնը, սեփական կառավարութիւնը փոխելու իրաւունքի սահմանափակման, փտածութեան եւ կառավարութեան գործուն էութեան թափանցիկութեան բացակայութեան, դատական իշխանութեան անկախութեան սահմանափակ ըլլալուն կապակցութեամբ:*

*Ուաշինկթըն նաեւ քննադատութիւններ վերապահած էր Թուրքիոյ իշխանութիւններուն: Անգարայի մարդու իրաւունքներու վարքագիծին տրամադրուած էին 48 էջեր: Մասնաւորապէս անդրադարձ կատարուած էր էրկենէքոնի եւ քրտական համայնքներու միութեան դէմ դատական գործընթացներուն: Պետական քարտուղարութիւնը քննադատելի համարած է այն, որ Թուրքիոյ վարչապետը կրնայ դատական գործ յարուցել ոեւէ անձի դէմ:*

ՄԻԱՑ. ՆԱՀԱՆԳՆԵՐ

## ՍՊԻՏԱԿ ՏՈՒՆԸ ԿՐՃԱՏԱԾ Է ՀԱՅԱՍՏԱՆԻՆ ՏՐՈՒՈՂ ՕԺԱՆԴԱԿՈՒԹԻՒՆԸ

*Միացեալ Նահանգներու Սպիտակ Տունը հրապարակեց 2014-ի Պիւտճէի նախագիծը, որուն մէջ Հայաստանին տրուող տնտեսական օգնութիւնը կրճատուած է 38 տոկոսով:*

*Եթէ այդ առաջարկը հաստատուի Գոնկրէսին կողմէ, Հայաստանին տրուող օգնութիւնը կը դառնայ ամենափոքրը՝ 1988 թուականի երկրաշարժէն ի վեր:*

*Նախագահ Պարաք Օպամայի վարչակազմը Հայաստանի տնտեսական աջակցութեան համար այժմ կ'առաջարկէ յատկացնել 24 միլիոն 719 հազար տոլար, նախորդ տարուայ հաստատուած 40 միլիոն տոլարի փոխարէն: Հայկական հարցերով Գոնկրէսական յանձնաժողովը խնդրած էր 50 միլիոն տոլար:*

*Սպիտակ Տան առաջարկը կը պահպանէ հաւասարակշռութիւնը Հայաստանին եւ Ատրպէյճանին տրուող ռազմական օժանդակութեան գծով, իւրաքանչիւրին յատկացնելով 600 հազար տոլար ռազմական կրթութեան ծրագիրներուն եւ 2.7 միլիոն տոլար որպէս օտարերկրեայ ռազմական օգնութիւն:*

↳ 4

## ԱՄԵՐԻԿԵԱՆ ՕԴԱՆԱՒԱՅԻՆ ԳԱՆԳԱՏՆԵՐ

*Երեւանի մօտ Միացեալ Նահանգներու դեսպան Ճոն Հէֆըրն անդրադարձաւ Հայաստանի զբօսաշրջային ոլորտին եւ Արմաւիա օդանաւային ընկերութեան սնանկացումին հետեւանքով ստեղծուած իրավիճակին: «Եթէ Միացեալ Նահանգներէն ժամանող զբօսաշրջիկը Վիէննայի մէջ պէտք է 15 ժամ սպասէ իր թռիչքին, եթէ երկու գիշեր պէտք է մնայ օդակայանին մէջ, ապա ընդհանրապէս Հայաստան պիտի չգայ:*

*Զբօսաշրջային ոլորտի գիները բարձր են, իսկ ծառայութիւնները կարելի չէ հրաշալի որակել», ըսաւ ամերիկացի դեսպանը: Ան շեշտեց, որ մեծ բարեփոխումներ անհրաժեշտ են, օդանաւային փոխադրութեան ոլորտին մէջ:*

↳ 4

ԹՈՒՐՔԻԱ

# «ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԻՒՆԸ ՃԱՆՉՆԱԼԸ ՄԵԶԻ ՊԻՏԻ ՕԳՆԷ ՈՐՊԷՍԶԻ ՄԵՐ ԳԼՈՒԽԸ ԲԱՐՁՐ ՊԱՀԵՆՔ»

*«Սէտոն-Լայն» համացանցի լրատու գործակալութեան էջերուն վրայ Տողան Թարքանի ստորագրութեամբ հրատարակուեցաւ յօդուած մը ուր հեղինակը դիտել կու տայ որ «Ցեղասպանութիւնը ճանչնալը մեզի կ'օգնէ որպէսզի աւելի բարձր պահենք մեր գլուխը»:*

*Յօդուածագիրը այն կարծիքը կը յայտնէ որ, սա օրերուն երբ կարեւոր քայլեր կ'առնուին Քրտական հարցի լուծման ի նպաստ, պէտք է քայլեր առնել նաեւ ճանչնալու համար Հայկական ցեղասպանութիւնը: 24 Ապրիլ 2013 թուականը այսպիսի արշաւի մը սկզբնակէտը կրնայ ըլլալ, Թուրք ժողովուրդը Հայ ժողովուրդէն ներողութիւն պիտի խնդրէ եւ անկէ վերջ աւելի բարձր պիտի կարենայ բռնել իր գլուխը: Ցեղասպանութիւնը ճանչնալը, սուտի վրայ հիմնուած անցեալի մը հետ երես առ երես գալը մեզ չի պզտիկցներ, ընդհակառակը կը մեծցնէ, կ'ապահովէ որ այս երկրին մէջ ապրող մարդիկը աւելի բարձր կարենան բռնել իրենց գլուխը: Ասիկա կը նպաստէ նաեւ Թուրքիոյ ժողովրդավարութեան ու Քրտական հարցի եւս լուծման:*

*Յօդուածագիրը կը յիշեցնէ թէ Թուրքիոյ Հանրապետութիւնը քանի մը կարեւոր պատմական դէպքերու վրայ հիմնուեցաւ: Ասոնցմէ մէկն է Քիւրտերու ինքնութիւնը անհետացնելու, Քիւրտերը ձուլելու քաղաքականութիւնը: Կայ նաեւ միւս փոքրամասնութիւններու գոյութիւնը ջնջելու քաղաքականութեան գործադրութիւնը: 1915ի Հայկական ցեղասպանութիւնը գրեթէ ամբողջովին ոչնչացուց այս հողերուն ամէնէն հին ժողովուրդներէն մէկը: 1915-24 թուականներուն այս հողերուն հին բնակիչներէն ուրիշ ժողովուրդ մըն ալ, յոյները, մէկ կողմէ ջարդուեցան, մէկ կողմէ ալ այս հողերէն վտարուեցան: Այս գործընթացը շարունակուեցաւ մինչեւ մօտաւոր շրջաններ: Հայերու ու Յոյներուն կողքին ուրիշ բազմաթիւ ոչ-իսլամ ժողովուրդներ ալ նոյն ճակատագրին ենթարկուեցան: Թուրքիոյ Հանրապետութեան նոր իշխող դասակարգերը կազմուեցան Հայերու ու Յոյներու հարստութիւններուն վրայ նստելով: Այսինքն Թուրքիոյ իշխող տարրերը եւ Քիւրտ հողատէր աղաները ձեւաւորուեցան սպանդներու ու աքսորներու շնորհիւ: Յօդուածագիրը կը յիշեցնէ թէ երկու տարի վերջ 1915-ի Հայկական ցեղասպանութեան հարիւրերորդ տարեդարձը պիտի ըլլայ: Աշխարհի վրայ բազմաթիւ երկիրներ այս ցեղասպանութիւնը ճանչցած են, միայն Թուրքիան է որ կը մերժէ ճանչնալ ու հազարումէկ պատրուակներ յառաջ կը քշէ: Այս օրերուն, երբ կարեւոր քայլեր կ'առնուին Քրտական հարցի ի նպաստ, պէտք է քայլեր առնուին նաեւ Հայկական ցեղասպանութիւնը ճանչնալու համար: Այս կերպով է այս երկրին մարդիկը պիտի կարենան աւելի բարձր պահել իրենց գլուխը:*

*«Այս բոլորը կը գրեմ 24 Ապրիլ թուականով եւ Զատկուան օրով սպաննուած գինուոր Սեւակի սպանութեան դատավճիռը կարդալով: Սեւակ զոհ գնաց ցեղապաշտ ոճրի մը եւ անոր ոճրագործը երեք տարի վերջ ազատ պիտի արձակուի: Մենք պիտի չմոռնանք ու պիտի չմոռցընենք ոչ Հրանդը, ոչ ալ Սեւակը», կ'եզրակացնէ յօդուածագիրը:*

*(ՄԱՐՄԱՐԱ)*

ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

## ՎԱՐԴԱՊԵՏԱԿԱՆ ԹԵԶԵՐՈՒ ՊԱՇՏՊԱՆՈՒԹԻՒՆ ՄԱՅՐ ԱԹՈՌ ՍՈՒՐԲ ԷՋՄԻԱԾՆԻ ՄԷՋ

18 Փետրուար 2013-ին Մայր Աթոռ Սուրբ Էջմիածնի մէջ տեղի ունեցաւ վարդապետական թէզերու նախապաշտպանութիւն, որուն մասնակցեցաւ նաեւ Սուտանի Հոգեւոր Հովիւ Հոգեշնորհ Տ. Գաբրիէլ Աբեղայ Սարգսեանը՝ ներկայացնելով «Տէրունական Աղօթքի Հայ Միջնադարեան Մեկնութիւնները» թեմայով իր թէզը:

Յետ քննութեան, հինգ եպիսկոպոսներէ բաղկացած յանձնախումբի արտօնութեամբ, 11 Մարտ 2013-ին, Հայր Սուրբը բերանացի պաշտպանութեամբ յաջողութեամբ ներկայացուց իր թէզը: Այնուհետեւ, Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Բ. Ամենայն Հայոց Վեհափառ Հայրապետի տնօրինութեամբ եւ օրհնութեամբ 15 Մարտ 2013-ին Օշականի Ս. Մեսրոպ Մաշտոց Եկեղեցւոյ մէջ Հայր Սուրբը ստացաւ մասնաւոր վարդապետական աստիճան եւ գաւազան կրելու իրաւունք՝ ձեռամբ Գերաշնորհ Տ. Գէորգ Եպիսկոպոս Սարոյեանի:

Վեհափառ Հայրապետի օրհնութիւնը եւ լանջախաչը ստանալէ ետք Հայր Սուրբը վերադարձաւ իր ծառայութեան:

Կը շնորհաւորենք Հոգեշնորհ Տ. Գաբրիէլ Վարդապետ Սարգսեանը վարդապետական աստիճան ստանալուն առիթով եւ կը մաղթենք արդիւնաւէտ ծառայութիւն:

ԴԻՒԱՆ
ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

## ԹՈՒՐՔԵՐԸ ՊԷՏՔ Է ՈԳԵԿՈՉԵՆ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԵԱՆ ՅԻՇԱՏԱԿԸ

*Թուրքիոյ ժողովրդական երգիչ Նիհաթ Տողան յայտարարեց, որ Ապրիլ 24-ին պիտի մասնակցի Պոլսոյ Թաքսիմ հրապարակին վրայ տեղի ունենալիք Հայոց Ցեղասպանութեան զոհերու յիշատակին նուիրուած միջոցառումին: «Բռնութիւնը բռնութիւն է: Եթէ քաջութիւն ունենանք, պէտք է խաւարը հասցնենք լուսաւորումի: Բոլորը յանուն մարդկութեան պէտք է այնտեղ ըլլան», ըսաւ Տողան:*

*Անոր յայտարարութիւնները բարկացուցած են թուրք հասարակութեան մէկ հատուածին: Նոյն առումով, ուքրանացի երգչուհի, հասարակական գործիչ Իրինա Սքազինա յայտարարեց, որ Ցեղասպանութեան փաստի ճանաչումը մեծ նշանակութիւն ունի ոչ միայն հայ ժողովուրդի, այլեւ ամբողջ աշխարհի համար, որպէսզի նման դէպքերէ խուսափինք: «20-րդ դարու առաջին ցեղասպանութիւնը կազմակերպուած եւ իրականացուած է երիտ-թուրքերու կառավարութեան կողմէ», ըսաւ Սքազինա:*

ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ԽՈՀԵՐ

## ԳԻՏԵԼԻՔԻ ՓՈԽԱՆՑՈՒՄ... ԿԵՂԾ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐ (Ա)

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Գիտելիքի փոխանցում ըսելով նկատի չունիմ միայն դպրոցական-համալսարանական համակարգը, որ ուղղակիօրէն ստեղծուած է այդ նպատակին համար: Այլեւ այն բոլոր բեմային ու բեմանման ձեռնարկութիւնները (դասախօսութիւն, համագումար, ցուցահանդէս, նուագահանդէս) եւ լրատուական միջոցները (լրագիր, հեռատեսիլ, ձայնասփիւռ), ուր արտօնեալ կողմը գտնուողները իրենց պաշտօնն ու պատգամը կը սեպեն միւս կողմը գտնուողներուն «հարստացնել» գիտելիքներով: Սահմանագիծերով բաժնուած երկուութիւն (duality) մը կը դառնայ անխուսափելի:

Երկուութեան ուժային կողմը կը գտնուին խօսելու իրաւունք ունեցողները՝ գրողները, լրագրողները, հաղորդավարերը, նկարիչները, երաժիշտները, ազգային ու կրօնական քարոզիչները, եւլն. (կրկնութենէ խուսափելու համար այս խումբը պիտի անուանեմ «Ա»): Երկուութեան միւս կողմը կը գտնուի ուժն իր վրայ ստացող այն ամբոխը՝ որուն պաշտօնն է լռել, լսել ու ծափահարել Ա-ին եւ որուն, ըստ պահանջի, Ա-ը կ'անուանէ հասարակութիւն, ժողովուրդ, հասարակ ժողովուրդ կամ երիտասարդութիւն (պիտի անուանեմ «Բ»): Այս բաժանումը կայ ու իրական է, ուրիշ հարց թէ իւրաքանչիւր խումբի ներկայացուցչական կազմը պայմանական է ու դիպուածային, քանի որ տուեալ պահուն Ա դիրքը գրաւող մը ուրիշ պահու մը պիտի յայտնուի Բ-ի շարքերը:

Գիտելիքի կացութեան առումով, զանազան փոխադարձաբար շրջագայող կայուն ըմբռնումներ կ'իշխեն հիմնահոսանքային մտածողութեան վրայ, որոնցմէ կ'ուզէի առանձնացնել երեք հատ (խօսքը կը վերաբերի համընդհանուր (հայկական եւ ոչ-հայկական) արդի համակարգին, նոյնիսկ եթէ ստորեւ բերած օրինակներս ընտրած եմ հայկական իրականութենէն).

1.-Ընդունուած չափանիշներուն մէջ կը մտնէ Ա-ին մշտական դժգոհութիւնը Բ-էն: «Բ-ի մօտ հայերէն լեզուն կը նահանջէ», «Բ-ը հայերէն լեզուին չի տիրապետեր», «Բ-ը անտարբեր է հայերէն լեզուին նկատմամբ», «Բ-ը գիրք չի կարդար», «Բ-ը մշակութային ձեռնարկներ չի յաճախեր», եւ եթէ յաճախէ՝ ան «չի գնահատեր բեմին վրայ կատարուածին արժէքը» (որմէ պէտք է հասկնալ՝ որ Բ-ը չի գնահատեր Ա-ին, այսինքն՝ գանգատողին, արժէքը), «Բ-էն շատեր իրենց զաւակները հայկական դպրոց չեն ղրկեր», եւլն., եւլն.:

Քննադատողի մը համար խիստ յարմարաւէտ է քննադատել իր *անձէն* անդին գտնուող ընդհանրութիւններ: Զես լսեր (կամ հազուագիւտ կը լսես), օրինակ, կուսակցական մը հանրութեամբ յայտարարէ՝ թէ իր կուսակցութեան կամ ակումբին անդամները հայերէն լեզուին չեն տիրապետեր, քանի որ անոնք քննադատողի անձէն անդին գտնուող երեւոյթ մը չեն, այլ կը կազմեն իր «ես»-ին (*իր* «ես»-ին եւ ո՛չ *հանրային* «ես»-ին) բաղկացուցիչը: Արդարեւ, այս անդամները նոյն վերոյիշեալ Բ-ն են, փոխուած է միայն անուանումը՝ «ժողովուրդ»-ի փոխարէն «անդամ»:

Յարմարաւէտութեան պատճառները կարելի է փնտռել հետեւեալ երկու կէտերուն մէջ.

ա.-Քննադատուողը (Բ-ը) անորոշ տեղ մը գտնուող ամբոխ մըն է, որ նոյնիսկ պիտի չնկատէ որ կը քննադատուի, հետեւաբար պիտի չդիմէ հակազդեցութեան: Նոյնիսկ եթէ նկատէ, խօսելու իրաւունքը, կամ այն միջոցները որոնք կրնան տեղ հասցնել խօսքը (հեռատեսիլ, մամուլ, գիրք, բեմ) «գրաւուած» պիտի գտնէ ընտրեալներուն (Ա-ին) կողմէ:

բ.-Միաժամանակ, Ա-ի անդամը հաճելիօրէն ընդունելի պիտի դառնայ Ա-ի միւս անդամներուն, որոնք զայն պիտի ներկայացնեն իբրեւ հասարակութեան հարցերով մտահոգուած անձնազոհ, նուիրեալ, հայրենասէր, մշակութասէր, բանիմաց անձնաւորութիւն:

2.-Նախորդ կէտը ելակէտ պատճառաբանելով, Ա-ը իր պարտականութիւնը կը նկատէ զարգացնել Բ-ին: Ձեւերը սահմանափակ են՝ դպրոց-համալսարանը ըլլալով անոնցմէ գլխաւորը, բայց ոչ միակը: Ամէնուրեք համագումարներ ու դասախօսութիւններ, ուր կը ներկայացուին Ա-ին կողմէ ընտրուած նիւթեր, դէմքեր ու դէպքեր: Դպրոցական կրկնակի դաստիարակութիւն՝ վերապատրաստելով արդէն պատրաստուած եւ նոյն Ա-ին կողմէ նախապէս նշանակուած ուսուցիչներ, այնպիսի վերապատրաստիչներու կողմէ՝ որոնք հասած են անվերապատրաստելիութեան մակարդակին: Այս բոլորը թուանշանային-քանակային առաւելութիւն կու տայ Ա-ին, որ ուրախ է թուագրելու իր կատարածները: Կայ նաեւ հեռատեսիլը, որ ինքն իր կողմէ որոշած է բարձրացնել Բ-ի գիտելիքային մակարդակը՝ ուղղելով, սրբագրելով, դաստիարակելով զայն, այնքան լաւ կրթուած հաղորդավարերու եւ խօսակիցներու կողմէ՝ որոնք պէտք ունին ո՛չ սրբագրութեան եւ ո՛չ ալ դաստիարակութեան:

3.-Քանի որ Բ-ի գիտելիքային մակարդակը անբաւարար է, Ա-ը կը դժգոհի՝ որ ստիպուած է Բ-ին ներկայացնել այն ինչ որ մատչելի է անոր (Բ-ին): Ասոր փայլուն նմոյշն է հեռատեսիլը՝ Ա-ին սեփականութիւնը հանդիսացող այդ հզօր իշխանութիւնը: Յաճախ այնտեղ ելոյթ ունեցողները կը յայտարարեն՝ թէ իրենց խօսքը պիտի ըլլայ պարզ, որպէսզի հասկնալի ըլլայ հասարակ ժողովուրդին: Նոյն բանը կը կրկնեն դասախօսները, քարոզիչները, քաղաքագէտները, տնտեսագէտները, նկարիչները,

☞ 4

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Աղեքսանդրիոյ Ազգային Իշխանութիւնը կը տեղեկացնէ, թէ «Էմրոս եւ Րաֆֆի Բիւզանդ Մուրատեան» հիմնադրամի տասնըմեկերորդ տարուան եկամուտը Ե.Ո. 9360 (ինը հազար երեք հարիւր վաթսուն միայն) ըստ հիմնադրամին պայմաններուն հաւասարապէս պիտի բաժնուի Աղեքսանդրիոյ Ազգային Առաջնորդարանին կողմէ հետեւեալ հաստատութիւններուն.

| | |
|---|---|
| Ա- Ս. Պօղոս-Պետրոս Հայ Առաքել. Եկեղեցիին | 1872.00 |
| Բ- Հայ Աւետարանական Եկեղեցիին | 1872.00 |
| Գ- Պօղոսեան Ազգային Վարժարանին | 1872.00 |
| Դ- Աղեքսանդրիոյ Հայ Բարեսիրաց Մարմնին | 1872.00 |
| Ե- Գահիրէի Այծեմնիկ Հանգստեան Տան | 1872.00 |

**ՏԵՂԵԿԱՏՈՒ ԴԻՒԱՆ ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**

## «ԱՅՍՊԷՍ ԵՆՔ ՄԵՆՔ» ՔԻՉ ԵՆՔ ԲԱՅՑ ՀԱՅ ԵՆՔ

2

էին Հայաստանի դրօշակը, երգչուհին ձեռքը ուղղելով հայ պատանիներուն երգած է հանրածանօթ իր երգերէն մէկը. «Ահա այսպէս եմ ես, այսպէս ենք մենք»:

Նկատի առնելով որ ԳՆԱՎ-ը առաջին անգամ ըլլալով կը մասնակցէր այսպիսի մրցոյթի մը, ստորեւ կը ներկայացնենք տնօրէնութեան եւ որոշ աշակերտներու կարծիքները:

ԳՆԱՎ-ի Տնօրէն Պրն. Սիմոն Ջամքէրթէնեան.

*«Տնօրէնութիւնը շատ հպարտ է որ ե՛ւ դպրոցի անունը, ե՛ւ հայու անունը բարձր պահուեցաւ: Շնորհակալութիւն բոլոր պատասխանատուներուն, որոնք ճիգ չխնայեցին նպատակին հասնելու համար»:*

ԳՆԱՎ-ի Ընդհանուր Վերահսկիչ Դոկտ. Բրոֆ. Սիլվա Մարթայեան.

*«Այս միջոցառումը առիթ տուաւ որ երիտասարդութեանս օրերը յիշեմ: Պիտի քաջալերեմ որ Վարժարանը նոր գաղափարներով մասնակցի յաջորդ հանդէսներուն եւ կը խոստանամ ամէն ամէն ձեւով օգտակար ըլլալ աշակերտութեան»:*

Պարախումբի մասնակից Գ. Պատրաստականի աշակերտուհի՝ Լորիկ Տրդատեան.

*«Շատ ուրախ եմ որ մասնակցեցանք: Հակառակ որ չգրաւեցինք առաջատար տեղերէն մէկը, բայց պիտի յիշեմ որ այսպիսի լաւ օր մը անցուցինք:*

*Շատ յուզուեցայ, երբ Ալեքսին եւ Ռուբէնը իրարու հետ Հայաստանի դրօշակը բռնեցին բեմին վրայ ամէնուն առջեւ»:*

Պարախումբի մասնակցողներէն՝ Գ. Պատրաստականի աշակերտուհի՝ Գոհար Վարդանեան.

*«Շատ գեղեցիկ, ուրախ ու հաճոյքներով լեցուն օր մը անցուցինք: Շատ յուզուեցայ, երբ բեմին վրայ միայն հայերս մնացինք, եւ Ռուբէնն ու Ալեքսին հայկական դրօշակը դէպի երկինք պարզեցին»:*

Ի վերջոյ շնորհաւորանքի ջերմ խօսքեր կրնանք ըսել՝ մասնակիցներուն եւ յատկապէս Ալեքսին ու Ռուբէնին, իրենց ընտանիքներուն, ԳՆԱՎ-ին եւ համայնքին՝ այս պանծալի արդիւնքներուն համար:

**ԳԱԼՈՒՍՏԵԱՆ-ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ**

ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ԽՈՀԵՐ

## ԳԻՏԵԼԻՔԻ ՓՈԽԱՆՑՈՒՄ... ԿԵՂԾ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐ (Ա)

3

երաժիշտները, ասմունքողները, որոնք կը ձգտին ժողովուրդին ներկայանալ «հասկնալի» լեզուով եւ ներկայացնել «հասկնալի» գործեր՝ «անհասկնալի»-ն ըլլալով միայն իրենց սեփականութիւնը:

Այս երեք կէտերը պատճառա-հետեւանքային յաջորդականութիւն չունին, թէեւ, ըստ խօսքի պահանջին, երբեմն Ա-ը այդպէս կ'ուզէ տրամաբանել:

Բոլոր պարագաներուն, գիտելիք մը կայ որ պիտի շարժի ուժային կողմէն (Ա) դէպի ոչ-ուժայինը (Բ)՝ առաջինին որոշումով եւ կարգադրութեամբ: Այս յարաբերութեան աչքառու կողմերէն մէկն այն է՝ որ ան անվերջանալիօրէն պիտի յարատեւէ. Բ-ը համոզուած պիտի մնայ գիտելիքային ընկալման իր ընդունակութիւն-պարտականութեան վրայ, իսկ Ա-ը պիտի տատանուի Բ-ի գիտելիքային մակարդակը *բարձրացնելու* եւ մատչելիութեան պատրուակով ի'ր (Ա-ին) գիտելիքային մակարդակը դիտաւորեալ *իջեցնելու* բախումնային կացութիւններուն միջեւ:

Ասոնք կարելի է անուանել «կեղծ յարաբերութիւններ» (false relations)՝ սխալ եւ ոչ կեղծաւորի իմաստով:

Յաջորդիւ՝ գիտելիքի խնդիրը այս յարաբերութեան մէջ:

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

Իրենց շատ սիրելի եւ անմոռանալի ամուսնոյն, հօր եւ քեռայրին՝ Ողբ. Յովսէփ Կիւմիւշեանի դառնակսկիծ մահուան 5-րդ տարելիցին տխուր առթիւ ու անոր անթառամ յիշատակին, Տիկին Լիւսի Կիւմիւշեան, Տէր եւ Տիկին Կամալ եւ Սոնիա (Կիւմիւշեան) Եուսէֆ, Տէր եւ Տիկին Յակոբ Գարամըքեան (ԱՄՆ) կը նուիրեն.

| | |
|---|---|
| Ս. Պօղոս-Պետրոս Եկեղեցւոյ Պայծառութեան | 100 |
| «Տիգրան Երկաթ» Հայ Մշակութային Միութեան | 100 |
| Յառաջդիմասէր Մշակութային Ընկերակցութեան | 100 |
| ՀՄԸՄ - ՆՈՒՊԱՐ-ին (Աղեքսանդրիա) | 100 |
| «Ջահակիր»ին | 100 |

*(Բոլոր նուիրատուութիւնները ստանալ Աղեքսանդրիոյ Ազգային Առաջնորդարանէն)*

Իրենց ննջեցեալներուն հոգւոյն ի հանգիստ Գէորգ եւ Մարի Սէքսէնեաններ կը նուիրեն՝

| | |
|---|---|
| «Արեւ»ին | 100 |
| «Յուսաբեր»ին | 100 |
| «Ջահակիր»ին | 100 |

## ՅԱՅՏԱՐԱՐԹԻՒՆ

Ս. Պօղոս-Պետրոս Եկեղեցւոյ պատուարժան Հոգաբարձութիւնը, ներկայիս կու գայ յայտարարելու մեր բարեպաշտ ժողովրդեան, թէ Մեծ Պահոց եւ Ս. Զատկի առթիւ Եկեղեցւոյ Հոգաբարձութեան անդամները սկսած են 2013 տարուան ԻՒՂԱԳԻՆԻ նուիրահաւաքութիւնը:

Վստահ ենք, թէ իւրաքանչիւր ազգային իր նուիրական պարտականութիւնը պիտի կատարէ սրտաբուխ կերպով:

**Ս. ՊՕՂՈՍ-ՊԵՏՐՈՍ ԵԿԵՂԵՑԻՈՅ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ**

## ՍՊԻՏԱԿ ՏՈՒՆԸ ԿՐՃԱՏԱԾ Է ՀԱՅԱՍՏԱՆԻՆ ՏՐՈՒՈՂ ՕԺԱՆԴԱԿՈՒԹԻՒՆԸ

1

*2014 թուականին Հայաստանի համար առաջարկուող ընդհանուր օգնութիւնը, որ կը ներառէ աջակցութիւն տնտեսական, ռազմական, իրաւական եւ առողջապահական ոլորտները, 14 տոկոսով պակաս է այն գումարէն, որ Օպաման առաջարկած էր յատկացնել 2013-ին:*

## ԱՄԵՐԻԿԵԱՆ ՕԴԱՆԱՒԱՅԻՆ ԳԱՆԳԱՏՆԵՐ

1

*Իր կարգին, Հայաստանի տնտեսութեան փոխ նախարար Արա Պետրոսեան կոչ ուղղեց գրօսաշրջային գինները փաթեթով դիտարկել: Անոր խօսքով, Հայաստանի մէջ հիւրանոցներու գինները 10-15 առ հարիւրով աւելի նուազ են, քան նոյն կարգի հիւրանոցներու գինները՝ Վրաստանի մէջ:*

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Հինգշաբթի, 9 Մայիս 2013

ՏՕՆ Է

**ՀԱՄԲԱՐՁՄԱՆ ՔՐԻՍՏՈՍԻ**

Եւ

Յիշատակ Փոխադրութեան Հայրապետական Աթոռոյն Հայոց ի Սսոյ ի Ս. Էջմիածին, յամի տեառն 1441

Այս առթիւ նոյն օրը Ս. եւ Անմահ Պատարագ պիտի մատուցուի Ս. Գրիգոր Լուսաւորիչ մայր եկեղեցւոյ մէջ:

**Յաւարտ Ս. Պատարագի պիտի կատարուի մաղթանք, վասն Մայր Աթոռ Ս. Էջմիածնի պայծառութեան եւ անսասանութեան:**

Սկիզբ Ս. Պատարագի առաւօտեան ժամը 10:00-ին

Երթ ու դարձը դիւրացնելու համար հաստատուած է հանրաշարժի սպասարկութիւն:

Սալահ Էլտին Հրապարակ (ծաղկավաճառին առջեւէն) ժամը 8:45-ին

Այծեմնիկ Հանգստեան Տան շէնքին առջեւէն ժամը 9:00-ին

**Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Կիրակի, 19 Մայիս 2013

**ՀՈԳԵԳԱԼՈՒՍՏ**

**(ՊԵՆՏԵԿՈՍՏԷ, ՅԻՍՈՒՆ ՕՐԵՐ ԵՏՔ Ս. ԶԱՏԿԷՆ):**

Սկիզբ Ս. Պատարագի առաւօտեան ժամը 10:00-ին

Երթ ու դարձը դիւրացնելու համար հաստատուած է հանրաշարժի սպասարկութիւն:

Սալահ Էլտին Հրապարակ (ծաղկավաճառին առջեւէն) ժամը 8:45-ին

Այծեմնիկ Հանգստեան Տան շէնքին առջեւէն ժամը 9:00-ին

**Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Աղեքսանդրիոյ Հայ Բարեսիրաց Մարմնի Հոգաբարձութիւնը իր խորհին շնորհակալութիւնները կը յայտնէ, կիրակի 24 Մարտ 2013 Ծաղկազարդի տօնին առթիւ, JUNGLE ճաշասրահին մէջ կազմակերպած տարեկան ճաշկերոյթին առթիւ,

-Եգիպտահայոց Թեմի Բարեխնամ Առաջնորդ Գերշ. Տ. Աշոտ Սրբ. Եպսկ. Մնացականեանին որ իր բարձր հովանաւորութիւնը շնորհեց.

- Տէր եւ Տիկին Միսաք Լէյլէկեանի որ սիրով ընդունեցին օրուան նախագահութիւնը.

Տիար Այգ Գալայճեանի որ սիրայօժարօրէն տրամադրեց Sound System սարքաւորումները:

Ինչպէս նաեւ այն բոլոր ազնիւ ազգայիններուն որոնք ընդառաջեցին մեր հրաւէրին եւ ներկայ գտնուեցան ճաշկերոյթին եւ իրենց նուիրատուութիւններով քաջալեր հանդիսացան ճաշկերոյթին յաջողութեան:

**ՀԱՅ ԲԱՐԵՍԻՐԱՑ ՄԱՐՄՆԻ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ**

## ՄԵՐՃԱՆԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՄԱՆԿԱՊԱՐՏԷԶ

ԳՐԱՒՈՒԱԾ ԹՈՒԱԿԱՆ

Ամավերջի Հանդէս

**Ուրբաթ, 24 Մայիս 2013**

*Կը խնդրուի նկատի ունենալ ու չխաչաձեւել*

ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1703 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 16 ՄԱՅԻՍ 2013

ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ.

عدد رقم ١٧٠٣ الخميس ١٦ مايو ٢٠١٣


## ՀԱՅԱՍՏԱՆ ԿԸ ՂԵԿԱՎԱՐԷ ԵՒՐՈՊԱՅԻ ԽՈՐՀՈՒՐԴԸ

Հայաստանի արտաքին գործոց նախարար Էտուարտ Նալպանտեան երէկ մեկնարկեց իր Սթրասպուրկ այցելութիւնը, ուր ան կը ստանձնէ Հայաստանի նախագահութիւնը՝ Եւրոպայի Խորհուրդին: Այսօր տեղի կ'ունենայ խորհուրդի անդամ երկիրներու արտաքին գործոց նախարարներու 123-րդ հանդիպումը, որուն ընթացքին Հայաստան կը ստանձնէ նախագահութիւնը, մինչեւ Նոյեմբեր 13: Իր նախագահութեան ամիսներուն, Հայաստան խոստացած է աշխատիլ ցեղապաշտութեան դէմ պայքարի, միջմշակութային երկխօսութեան, եւրոպական արժէքներու ամրապնդման, մարդու իրաւունքներու եւ օրէնքի գերակայութեան, ժողովրդավարութեան հաստատման ու Եւրոպայի խորհուրդի դերակատարութեան բարձրացման ուղղութեամբ: Մայիս 30-ին Երեւանի մէջ կը կայանայ խորհուրդի խորհրդարանական վեհաժողովի ներկայացուցիչներու հանդիպումը:

Նախքան իր Սթրասպուրկ ժամանումը, Հայաստանի արտաքին գործոց նախարարը այցելեց Ֆրանսայի ծերակոյտ, ուր հանդիպում ունեցաւ արտաքին յարաբերութիւններու եւ պաշտպանութեան յանձնաժողովի նախագահ Ժան Լուի Գարէրի հետ:

Արծարծուեցան հայ-ֆրանսական բարեկամական յարաբերութիւններու ամրապնդման ուղղութեամբ ձեռնարկուելիք քայլերը եւ անոնց մէջ խորհրդարաններու դերակատարութիւնը: Քննարկուեցան շրջանային ու միջազգային հարցեր, ներառեալ՝ Հարաւային Կովկասի խնդիրները: Նալպանտեանի հետ իրենց հանդիպումի ընթացքին, ֆրանսական տարբեր կուսակցութիւններու անդամները խոստացան շարունակել ջանքերը՝ յարաբերութիւններու ամրապնդման ուղղութեամբ: Նախարարը ծաւալուն ելոյթով հանդէս եկաւ միջազգային յարաբերութիւններու ֆրանսական հիմնարկին մէջ, ուր ներկայացուց Հայաստանի արտաքին քաղաքականութեան գերակայութիւնները, Եւրոպայի հետ յարաբերութիւնները եւ տարածաշրջանի խնդիրները:

## ԱՆԳԱՐԱՅԻ ԱՌԱՋԱՐԿԸ ՓԱՐԻԶԻՆ ԱԹՈՄԱԿԱՅԱՆ՝ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԵԱՆ ԴԻՄԱՑ

Անգարան յոյս ունի, որ ներգրաւուելով թրքական երկրորդ աթոմակայանի շինարարութեան աշխատանքներուն մէջ, Ֆրանսան կը վերանայի իր մօտեցումները Հայոց ցեղասպանութեան հարցով:

Մայիս 6-ին լրագրողներու հետ զրոյցի ընթացքին նման բացայայտ ակնարկ կատարած է Թուրքիոյ տնտեսութեան նախարար Թաներ Եըլտըզ:

«Մենք յոյս ունինք, որ առեւտրային կապերու բարելաւման ֆոնին, Փարիզ աւելի հաւասարակշռուած դիրք կը գրաւեցնէ Հայերու ցեղասպանութեան շուրջ պնդումներու հարցով», - ըսած է Եըլտըզ:

Թուրք նախարարի այս յայտարարութիւնը հնչած են թրքական կառավարութեան եւ ճափոնա-ֆրանսական ընկերութիւններու խումբի մը միջեւ ստորագրուած համաձայնագիրէն մի քանի օր ետք: Ըստ համաձայնագիրի, ճափոնական Mitsubishi եւ Itochu ընկերութիւնները, ինչպէս նաեւ ֆրանսիական GDF Suez-ը 22 միլիար տոլարի ընդհանուր արժողութեամբ շինարարութիւն պիտի իրականացնեն Սեւ Ծովի ափին գտնուող Սինոպ քաղաքին մօտ:

Ուշագրաւ է, որ տակաւին անցեալ տարի Անգարա հրաժարած էր ֆրանսական ընկերութիւններուն ներգրաւել աթոմակայանի շինարարութեան մրցոյթին: Այդ քայլը ներկայացուած էր որպէս յստակ պատժամիջոց՝ կիրառուած ի պատասխան Հայոց ցեղասպանութեան ժխտումը քրէականացնող ֆրանսական յայտնի օրինագծին:

Թուրքիոյ իշխանութիւնները այսօր չեն թաքցներ, որ նախկին նախագահ Սարքոզիի օրօք ի յայտ եկած այս բարդութիւնները կարելի եղաւ յաղթահարել միայն Ֆրանսայի նոր նախագահ Ֆրանսուա Օլանտի Էլիզէի պալատ մուտք գործելէն յետոյ:

4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԶՕՐԱԿՑՈՒԹԻՒՆ ԱՐՑԱԽԻ ԺՈՂՈՎՈՒՐԴԻ ՅԱՆԿՈՒԹԵԱՆ



Ղարաբաղեան հարցին մէջ հայկական կողմի դիրքորոշումը կը մնայ անփոփոխ: Այդ մասին յայտարարեց Հայաստանի Հանրապետութեան նախագահ Սերժ Սարգսեան, Պելառուսիոյ նախագահ Ալեքսանտըր Լուքաշէնքօն ընդունած պահուն: «Վերստին կ'ընդգծեմ, որ Արցախի ժողովուրդը կը ցանկանայ հնարաւորութիւն ունենալ՝ խաղաղ ապրելու իր հայրենիքին մէջ: Անոնք հաւասար հնարաւորութիւններ կ'ուզեն ունենալ այլ ժողովուրդներու հետ, որոնք ապահոված են անկախութեան միջազգային ճանաչումը: Մենք պատրաստ ենք հիմնախնդիրի խաղաղ կարգաւորումին», ըսաւ Հայաստանի նախագահը: Երկու երկիրներու ղեկավարները անդրադարձան երկկողմանի բարձր մակարդակի յարաբերութիւններուն եւ համագործակցութեան հնարաւորութիւններուն:

«Մենք պատրաստ ենք ձեր կողքին կանգնիլ, ծրագիրներու իրականացման հարցով: Յարաբերութիւններու խորացման համար կան բարենպաստ պայմաններ», ըսաւ Լուքաշէնքօ, որուն մասնաւորապէս հետաքրքրեց հիւլէական ելեկտրակայանի հայկական փորձը: Սարգսեան բարձր գնահատեց երկկողմանի համագործակցութեան մակարդակը, տարբեր ոլորտներէ ներս: Նախագահները քննարկեցին մշակութային, մարդասիրական եւ այլ ոլորտներէ ներս թեմաներ, ստորագրելով շարք մը համաձայնութիւններ: Մասնաւոր անդրադարձ կատարուած է Հաւաքական Անվտանգութեան Պայմանագրի Կազմակերպութեան գործունէութեան: Նշենք, որ Լուքաշէնքօ կ'այցելէ նաեւ Ծիծեռնակաբերդ:

## ԱՄԵՐԻԿԱՅԻ ԴԵՍՊԱՆԸ ՀԱՅ-ԹՐՔԱԿԱՆ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ ՁԱԽՈՂՄԱՆ ՀԱՄԱՐ ՄԵՂԱԴՐԵՑ ԹՐՔԱԿԱՆ ԿՈՂՄԸ

Հայաստանի մօտ ԱՄՆ դեսպան՝ Ճոն Հէֆըրն

Մայիս 13-ին, «Սինոփսիս Արմենիա» ընկերութենէն ներս ուսանողներու հետ հանդիպման ընթացքին, Հայաստանի մօտ Միացեալ Նահանգներու դեսպան Ճոն Հէֆըրն անդրադարձած է շարք մը հարցերու, որոնց կարգին նաեւ՝ հայ-թրքական արձանագրութիւններուն, որու ձախողումին համար ԱՄՆ-ի դեսպանը մեղադրած է թրքական կողմը: «Հայաստան 3-4 տարիէ ամէն ինչ կ'ընէ եւ մենք կը մտածենք, որ այս մեծ յաջողութիւն էր Հայաստանի համար:

Երկու նախագահները խիզախութիւն ցուցաբերեցին ստորագրութիւններու հարցով, բայց Թուրքիոյ կողմէ ան չվաւերացուեցաւ:

Անոնք կը փորձեն այդ հարցը կապել Ղարաբաղի հետ»,- ըսած է դեսպանը յիշեցնելով, որ հայ-թրքական արձանագրութիւններու հարցով որեւէ նախապայման պէտք չէ ըլլայ, սակայն Թուրքիան մտափոխուած է եւ սկսած է Ղարաբաղի հարցը կապել անոր հետ:

«Հայաստան շատ լաւ դրսեւորեց ինքզինք: Այս երեք տարիներու ընթացքին ձեռքը երկարած էր, բայց թուրքերը քայլ չարին»,- ընդգծած է Ճոն Հէֆըրն:

Խօսելով Ամերիկայի կողմէ Ցեղասպանութեան ճանաչման հարցի մասին, դեսպանը ըսած է որ, Հայաստան բարդ երկիր է, քանի որ 1915 թուականի իրադարձութիւնները խնդիրներ

4

ՄԻԱՑ. ՆԱՀԱՆԳՆԵՐ

## ՀԱԿԱՀԱՅ ՆՈՐ ԴՐՍԵՒՈՐՈՒՄ

Միացեալ Նահանգներու նախագահ Պարաք Օպամայի վարչակազմը Գերագոյն դատարանին յորդորեց չքննել 9-րդ շրջանային վերաքննիչ դատարանի 2012 թուականի որոշումի բողոքարկման հայցը, որ կը վերաբերի Հայոց Ցեղասպանութեան փոխհատուցումներուն:

Վերաքննիչ դատարանի որոշումով չեղեալ յայտարարուած էր Գալիֆորնիա նահանգի վաւերացուցած օրէնքը՝ Ցեղասպանութեան զոհերու իրաւայաջորդներու եւ վերապրողներու՝ ապահովագրական փոխհատուցում ստանալու համար հայցերու վաղեմութեան ժամկէտի երկարացումին կապակցութեամբ: 27 էջանոց զեկոյցին մէջ, Միացեալ Նահանգներու ընդհանուր դատախազը կը պնդէ, որ Գալիֆորնիոյ օրէնքը դատարաններուն սխալմամբ թոյլ կու տայ «վճիռներ կայացնել՝ հիմնուելով քաղաքական վիճելի հարցերու վրայ, որոնք տեղի ունեցած են գրեթէ մէկ դար առաջ»:

Զեկոյցին մէջ նաեւ կը նշուի, որ գործադիր մարմնի մէկ հատուածը ընդդիմադիր դիրքորոշում ունի Հայոց Ցեղասպանութեան հարցին շուրջ, սակայն չի յիշուիր, որ Ուաշինկթոն տարբեր առիթներով ճանչցած է Ցեղասպանութեան փաստը:

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆԱԽԱԳԱՀԱԿԱՆ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԱՐԴԱՐ ԷԻՆ

ԵԱՀԿի ժողովրդավարական հաստատութիւններու եւ մարդու իրաւունքներու գրասենեակի դիտորդական առաքելութիւնը, Հայաստանի նախագահական ընտրութեան մասին իր վերջնական զեկոյցին մէջ վերահաստատեց, որ ընտրութիւնները անցած են կազմակերպուած մթնոլորտի մէջ, մարդու հիմնարար իրաւունքները յարգելով: Զեկոյցը մասնաւորապէս կ'ընդգծէ, որ նախագահի թեկնածուները յաջողած են ազատ քարոզարշաւ իրականացնել:

Տեղեկագիրը սակայն պետական մարմիններէն կը պահանջէ խուսափիլ վարչական ներուժի օգտագործումէն, նաեւ կոչ կ'ուղղէ օրէնսդրական փոփոխութիւններ իրականացնել:

ԹՈՒՐՔԻԱ

# ԹՈՒՐՔԻՈՅ ԳԵՐԱԳՈՅՆ ԴԱՏԱՐԱՆԻ ՀԱՄԱՁԱՅՆ՝ ՀՐԱՆԴ ՏԻՆՔԻՆ ՍՊԱՆՆԱԾ Է ԶԻՆՈՒԱԾ ՅԱՆՑԱԳՈՐԾՆԵՐՈՒ ԽՈՒՄԲԸ

*Մայիս 15-ին Թուրքիոյ գերագոյն դատարանը բեկանած է Պոլսոյ Հայկական «Ակօս» թերթի խմբագրապետ Հրանդ Տինքի սպանութեան գործով ստորին ատեանի կայացուցած դատավճիռները այն մասով, ըստ որու՝ ամբաստանեալները կապ չեն ունեցած յանցագործ կազմակերպութեան հետ:*

«Ակօս» թերթի սպանուած խմբագրապետ Հրանդ Տինք

*«Հիւրրիյէթ» թերթի հաղորդած տեղեկութիւններուն համաձայն, Գերագոյն Ատեանի վճիռին մէջ ըսուած է, որ սպանութիւնը կատարուած է կազմակերպուած եւ զինուած յանցագործ խումբի մը կողմէ:*

*Միաժամանակ, Գերագոյն Դատարանը հաստատած է այդ գործով մեղադրուողներու նկատմամբ ստորին ատեանին կողմէ սահմանուած պատժամիջոցները:*

*Թրքական թերթը կը յայտնէ, որ Տինքի սպանութեան գործով դատապարտեալները վերստին պիտի կանգնին Իսթանպուլի այն դատարանի առջեւ, որ արձակած էր սկզբնական դատավճիռները:*

*2007-ի Յունուարին Հրանդ Տինքին «Ակօս»-ի խմբագրատան մօտ սպաննած Թուրք ազգայնական Օգիւն Սամասթ, որ ոճիրի պահուն տակաւին 18 տարեկան չէր, 2011 Թուականի Յուլիսին դատապարտուած էր 22 տարի 10 ամսուայ բանտարկութեան:*

*Սպանութիւնը պատուիրելու համար մեղադրուող Եասին Հայալ դատապարտուած էր ցմահ, իսկ Սամասթին սպանութեան դրդելու համար մեղադրուող Էրհան Թունջել՝ 10.5 տարուայ բանտարկութեան:*

ԱՐՑԱԽ

# ՊԵՏՈՒԹԻՒՆ-ԵԿԵՂԵՑԻ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐ

*Լեռնային Ղարաբաղի Հանրապետութեան նախագահ Բակօ Սահակեան Ստեփանակերտի մէջ հանդիպում ունեցաւ Մեծի Տանն Կիլիկիոյ Հիւսիսային Ամերիկայի Արեւմտեան Թեմի առաջնորդ Մուշեղ Արք. Մարտիրոսեանին, Թեհրանի Թեմի առաջնորդ Սեպուհ Արք. Սարգսեանին, Նոր Ջուղայի Թեմի առաջնորդ Բաբգէն Եպս. Չարեանին ինչպէս նաեւ սփիւռքէն ժամանած խումբ մը բարերարներու հետ: Հանդիպումին ներկայ գտնուեցաւ նաեւ Արցախի Թեմի առաջնորդ Պարգեւ Արք. Մարտիրոսեանը:*

*Քննարկուեցան պետութիւն-եկեղեցի կապերուն, Լեռնային Ղարաբաղի ընկերատնտեսական իրավիճակին եւ տարածաշրջանային գործընթացներուն վերաբերող հարցեր: Սահակեան կարեւորեց Հայ Առաքելական եկեղեցւոյ դերը Սփիւռքի հայապահպանութեան գործին մէջ, նշելով որ եկեղեցին մեծ ներդրում ունի հայրենիքի հետ կապերու ամրապնդման ու ընդլայնման մէջ: Երկու կողմերը կարեւորեցին Հայրենիք-Սփիւռք միասնութեան հիմքերը:*

# ՀԱՅ ԱԶԳԱՅԻՆ ԵՐԱԺՇՏՈՒԹԵԱՆ ԼԱՒԱԳՈՅՆ ՆՄՈՅՇՆԵՐԸ ՀԱՍԱՆԵԼԻ ՊԻՏԻ ԸԼԼԱՆ ՄԷԿ ԿԱՅՔԻ ՄԷՋ

*Հայ ազգային երաժշտութեան լաւագոյն նմոյշները այսուհետեւ հասանելի պիտի ըլլան հայալեզու* **namusic.net** *կայքին մէջ: Կայքին համահիմնադիր Սերկէյ Ումրոյեան նշեց, որ հայ ազգային երաժշտական կայքը իր մէջ կը պարունակէ բացառիկ ձայնագրութիւններ, յօդուածներ, հարցազրոյցներ ու տեսանիւթեր: «Կայքը ստեղծուած է հայկական երաժշտական մշակոյթը փրոփականտելու նպատակով: Կայքին մէջ տեղ կը գտնեն նաեւ ժամանակակից երաժշտահանական արուեստի նմոյշներ», ըսաւ Ումրոյեան:*

*Ան տեղեկացուց, որ կայքին մէջ որեւէ ժանրային սահմանափակում պիտի չըլլայ: «Շուրջ երկու տարի մենք ընկերային տարբեր ցանցերու մէջ ունէինք նման էջեր եւ որոշում կայացուցինք ստեղծել մէկ ամբողջական կայք», ըսաւ համահիմնադիրը: Անոր խօսքով, այսօր ի տարբերութիւն փոփ երաժշտութեան, ազգային երաժշտութեան համար համեմատաբար աւելի քիչ փրոփականտ կ'ըլլայ, մինչդեռ այն պէտք է հասանելի ըլլայ հասարակութեան լայն շրջանակներուն:* 3

# ՏՊԱԳԻՐ ԱՌԱՋԻՆ ՀԱՅԱԼԵԶՈՒ ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉԸ ԿԸ ՊԱՏԿԱՆԻ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻՆ



*Մաշտոցի անուան Մատենադարանի հնատիպ գիրքերու հարուստ հաւաքածոն համալրուած է տպագիր առաջին հայալեզու Աստուածաշունչի եզակի օրինակով:*

*Ոսկան Երեւանցիի բացառիկ արժէք ներկայացնող Աստուածաշունչը տպագրուած է 1666 Թուականին՝ Ամսթերտամի մէջ: Տպագրութեան այս շքեղ օրինակը տարիներ շարունակ եղած է արտասահմանեան մասնաւոր հաւաքածոյի մը մէկ մասը:*

*Պատմամշակութային մեծ արժէք ունեցող այս հատորը բացառիկ հետաքրքրութիւն կը ներկայացնէ. Ոսկան Երեւանցին զայն նուիրած է հայ տպագրութեան ակունքներուն մէջ կանգնած Յակոբ Ջուղայեցի կաթողիկոսին: Աստուածաշունչ մատեանի այս օրինակը 1668-էն ունի արծաթեայ ընտիր կազմ, որ հայկական արուեստի եւ պատկերագրութեան եզակի նմոյշ մըն է:*

*Հայկական արծաթագործութեան նշանաւոր կեդրոններէն մէկը հանդիսացող Էրզրումի դպրոցի վարպետ ոսկերիչներէն մէկուն ձեռքով պատրաստուած կազմը արուեստի հրաշալի գործ է՝ փորագրութեան եւ դաջուածքի հմուտ մշակմամբ:*

*Կազմի երեսին պատկերուած է Աւետման տեսարանը, իսկ դարձերեսին՝ Համբարձման տեսարանն է: Գիրքին բացուող հատուածին մէջ պատկերուած են չորս աւետարանիչները՝ իրենց խորհրդանիշերով:*

# ՄԱՄԻԿՈՆԵԱՆ ՏՈՀՄԻ ՀԱՅ ԱՐՔԱՅԱԴՈՒՍՏՐԸ ԻՐ ԳԻՐՔԵՐԸ ՊԻՏԻ ՍՏՈՐԱԳՐԷ ՆԻՒ ԵՈՐՔԻ ՄԷՋ



*Միացեալ Նահանգներու Նիւ Եորքի նահանգի Լարչմոնտ քաղաքին մէջ գտնուող «The Voracious Reader» գրախանութին մէջ հանդիսաւոր երեկոյ պիտի կազմակերպուի հայկական Թագաւորական ընտանիքին մասնակցութեամբ:*

*Նշող աղբիւրին համաձայն, Նորին Մեծութիւն արքայադուստր Սոֆի Օտուրն - Մամիկոնեան, հայկական գահի ժառանգորդուհին, որ նաեւ* 4

ՀԱՅԱՍՏԱՆ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԵԱՆ ՆՈՐ ԿԱԶՄԸ

*Հայաստանի նախագահ Սերժ Սարգսեանը հրամանագրեր ստորագրեց կառավարութեան նոր կազմը նշանակելու մասին:*

*Շատ չնչին փոփոխութեամբ նախկին կառավարութեան անդամները վերանշանակուեցան իրենց պաշտօններուն վրայ:*

- Արամ Յարութիւնեան – Բնապահպանութեան նախարար
- Արմէն Մովսիսեան – Էներգետիկայի եւ բնական պաշարների նախարար
- Արմէն Աշոտեան- Կրթութեան եւ գիտութեան նախարար
- Յասմիկ Պօղոսեան- Մշակոյթի նախարար
- Հրանոյշ Յակոբեան- Սփիւռքի նախարար
- Արտեմ Ասատրեան-Աշխատանքի եւ սոցիալական հարցերի նախարար
- Դերենիկ Դումանեան-Առողջապահութեան նախարար
- Վահրամ Աւանէսեան-Էկոնոմիկայի նախարար
- Հրայր Թովմասեան-Արդարադատութեան նախարար
- Սամուէլ Թադեւոսեան- Քաղաքաշինութեան նախարար
- Սերգոյ Կարապետեան-Գիւղատնտեսութեան նախարար
- Արմէն Երիցեան- Արտակարգ իրավիճակների նախարար
- Գագիկ Բեգլարեան-Տրանսպորտի եւ կապի նախարար
- Արմէն Գէորգեան-Տարածքային կառավարման նախարար, մէկ այլ հրամանագրով նաեւ՝ փոխվարչապետ

*Սերժ Սարգսեան Եուրի Վարդանեանին ազատած է նախագահի խորհրդականի պաշտօնէն եւ նշանակած Սպորտի եւ երիտասարդութեան հարցերու նախարար, Դաւիթ Սարգսեանին ազատելով Կառավարութեան աշխատակազմի ղեկավարի պաշտօնէն նշանակած է Ֆինանսներու նախարար, իսկ Ֆինանսներու նախարարի պաշտօնակատար Վաչէ Գաբրիէլեան նշանակուած է Կառավարութեան աշխատակազմի ղեկավար:*

*Նախապէս Սերժ Սարգսեանը Պաշտպանութեան նախարարի պաշտօնին վերանշանակած էր Սէյրան Օհանեանին, իսկ Արտաքին գործերու նախարարի պաշտօնին՝ Էդուարդ Նալբանդեանը:*

ԱՐՄԱՆ ՆԱՒԱՍԱՐԴԵԱՆ-.

# «ՍԻՐԻԱՀԱՅԵՐԻՆ ՄԱՍՍԱՅԱԲԱՐ ՊԷՏՔ Է ՏԵՂԱՀԱՆԵԼ»



Նախկին դեսպան Արման Նաւասարդեան

*Սիրիայի նախագահ Պաշար ալ Ասադի գնալուց յետոյ, եթէ իշխանութեան գլուխ գան ծայրայեղ իսլամիստները, շատ հնարաւոր է «Բարդուղիմեոսեան գիշեր»-ը կրկնուի: Լրագրողների հետ հանդիպմանը նշեց Լիբանանում նախկին արտակարգ եւ լիազօր դեսպան Արման Նաւասարդեանը:*

*Ըստ նրա, սիրիահայերի համար կայ երկու ճանապարհ՝ օգտագործել պետական մակարդակով դիւանագիտական խողովակներով բանակցութիւններն ուժերի հետ, որոնք առանցքային ու դերակատար են. «Հենց թէկուզ նոյն ծայրայեղականների հետ, մանաւանդ հայերը միակ փոքրամասնութիւնն են, որոնք ունեն պետականութիւն: Եթէ երաշխիքներ ձեռք չբերուեն, գոնէ հասկանան, որ այս համայնքի ետեւում պետականութիւն կայ կանգնած: Դա կարող են լինեն կուլիսային բանակցութիւններ»:*

*Միւս տարբերակի համար, Արման Նաւասարդեանի խօսքերով, իրեն նոյնիսկ քննադատել են. «Ես կարծում եմ, որ պէտք է պատրաստ լինել հայերին մասսայաբար տեղահանելու այնտեղից: Ասում են՝ բա ուր գնան, ես ասում եմ՝ թէկուզ Անտարկտիդա, միայն թէ գնան, եթէ խօսքը գնում է մարդու ֆիզիկական ապահովութեանը. եթէ յետոյ կոտորուենք, կը նստենք, լաց կը լինենք, որ 1915թ. կրկնուեց»:*

*Ինչ վերաբերում է հայկական դիւանագիտութեանը, ապա, նրա կարծիքով, այն պէտք է լինի ագրեսիայի հասնող ակտիւ. «Անցնող տարիները ցոյց տուեցին, որ պասիւ դիւանագիտութիւնը գոնէ ԼՂՀ հարցում բերեց իր վատ հետեւանքները»:*

*Պարոն Նաւասարդեանը համաձայն չէ ՀՀ ԱԳ նախարար Էդուարդ Նալբանդեանի այն կարծիքի հետ, որ ստանձնելով ԵԽ նախագահների կոմիտէի նախագահութիւնը, պէտք է ձեռնպահ մնալ ԼՂՀ հարցի քննարկումներից այդ ամպիոնից, քանի որ կայ ԵԱՀԿ Մինսկի խմբի ձեւաչափ:*

*«Դիւանագիտութիւնն այնպիսի հնարաւորութիւններ ունի, որ պէտք է օգտագործել բոլոր հնարաւոր առիթներն ու միջոցները, նոյնիսկ անթոյլատրելի, որպէսզի աշխարհին հասցնենք մեր ասելիքը: Ի դէպ, ԼՂՀ հարցը Ատրպէյճանը բարձրացնում է անգամ այնպիսի երկրներում, որոնք ընդհանրապէս քարտէզից էլ գաղափար չունեն»,- ասաց նա:*

ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ԽՈՀԵՐ

# ԳԻՏԵԼԻՔԻ ՓՈԽԱՆՑՈՒՄ... ԿԵՂԾ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐ (Բ)

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Անցեալ Թիւով կ'անդրադառնայի արդի հիմնահոսանքային կարծրատիպերէն մէկուն մասին՝ Ա-էն (վերնախաւ) դէպի Բ (ժողովուրդ) փոխանցուող գիտելիքի մասին, ուր Ա-ը գիտելիքի կրողն է եւ իր կողմը կը գտնուի ուժային առաւելութիւնը, իսկ Բ-ը կը ներկայանայ իբրեւ գիտելիքի ընկալող: Կը նշէի նաեւ թէ այս երկուութիւնը կայուն չէ՝ թէեւ անիկա կայ ու իրական է, բայց անոր բաղկացուցիչները կը գտնուին փոխադարձ շարժումի մէջ: Երկուութենէն կը բխին երեք ոչ-անպայմանօրէն կապուած յարաբերութիւններ, բայց որոնք անպայմանօրէն պէտք է մնան անփոփոխ. ա.-Ա-ի մշտական ղժգոհութիւնը Բ-ի կրած գիտելիքի անբաւարար մակարդակէն. բ.-Ա-ի ինքզինքին տուած պարտականութիւնը զարգացնելու Բ-ի գիտելիքը. գ.-նկատի ունենալով Բ-ի գիտելիքային անբաւարար մակարդակը՝ Ա-ին միտումը Բ-ին ներկայացնելու վերջինին մատչելի գիտելիք: Այս յարաբերութիւնները անուանեցի «կեղծ յարաբերութիւններ»:

Այս Թիւով պիտի առարկեմ՝ թէ Ա-էն Բ ուժային յարաբերութեամբ փոխանցուած գիտելիքը կը մնայ օտարացած (alienated) երկու կողմերուն համար:

Նախ, ի՞նչ բան է ուժ/իշխանութիւնը: Այս երեւոյթի բացատրութեան համար ժամանակակից միտքը անմիջապէս կը դիմէ ֆրանսացի Միշէլ Ֆուքոյին (Michel Foucault)՝ որ պատմա-փիլիսոփայական (եթէ անհրաժեշտ է բնագաւառներու նշումը) հարիւրաւոր էջեր յատկացուցած է այս հարցին եւ մասնաւորապէս ուժ/գիտելիք (ֆրանսերէն՝ pouvoir/savoir, անգլերէն՝ power/knowledge) յարաբերութիւն-ներթափանցումներուն:

Ֆուքօ. «[Ի]ւրաքանչիւր մարդկային յարաբերութիւն որոշ չափով ուժի յարաբերութիւն մըն է: Մենք կը շարժինք սթրաթեժիք անվերջ յարաբերութիւններու աշխարհի մը մէջ: Իւրաքանչիւր ուժային յարաբերութիւն ինքն իր մէջ վատ բան մը չէ, բայց անիկա իրողութիւն մըն է որ միշտ ներգրաւուած է վտանգով:»(1)

Ճշգրիտ այս պարագային, Ֆուքօ կ'անդրադառնայ քաղաքացիական հասարակութեան եւ պետութեան յարաբերութեան մասին, ձգտելով մեղմել անոնց միջեւ գոյութիւն ունեցող հակաճառութիւնը: Բայց ասիկա, ինչպէս յատուկ է Ֆուքոյին, լոկ յետնախորք մըն է բուն նիւթին՝ ուժային յարաբերութեան, կրկին արծարծումին:

Ընդունելով բառա-կառուցուածքային մօտեցում մը, այս պարբերութիւնը պիտի փորձեմ մղել դէպի մեզի հետաքրքրող Ա-Բ յարաբերութիւնը:

Ուժը՝ իբրեւ այդպէս իրողութիւն, «վատ չէ», կ'ըսէ Ֆուքօ: Բայց ինչո՞ւ ուղղակիօրէն չըսել՝ «լաւ է»: Հաւանաբար, որովհետեւ հաստատականը համազօր է ճշմարտութեան, եւ ճշմարտութիւնը՝ անհանդուրժողականութեան: Միւս կողմէն, որքա՞ն ընդունակ է ժխտական էական բայը («չէ») ժխտել «վատ»-ը: Որոշ չափով՝ ընդունակ է, եւ սկզբունքօրէն (քերականօրէն) ան կոչուած է այս պաշտօնը կատարելու: Բայց բուն բառը՝ «վատ», կը հնչէ, ան լսողութեան ու յիշողութեան մէջ է: Անոր ընդունումը («վատ է») կամ հերքումը («վատ չէ») կու գայ երկրորդային կարգով:

Ֆուքոյի «վատ չէ»-ն ոչ միայն իմաստային արտահանումարտացոլում մը կրնայ ունենալ, այլ նաեւ իր ետեւը կրնայ պահած ըլլալ պատմական մը, քանի որ անիմաստ էր հերքել «վատութիւն»-ը եթէ այդ վատութիւնը կամ վատութեան գաղափարը նախօրօք (պատմականօրէն) գոյութիւն ունեցած չըլլար: Այս առումով, բառ-կառուցուածքայնութեան կ'աւելնայ պատմականութիւն մը:

Ֆուքօ կ'անցնի առաջ: Ան կ'աւելցնէ՝ թէ թէեւ ուժը վատ բան մը չէ, բայց անիկա վտանգ կը ներգրաւէ: Ուրեմն, այս պարագային, ուժը կրնայ վատ դառնալ, առանց որ Ֆուքօ ուղղակիօրէն ընդունի՝ թէ ան «վատ է»: Դարձեալ խուսափողականութիւն մը ուղղահայեաց իմաստներէ:

Կարելի է ամփոփել, որ յիշեալ պարբերութեան մէջ ուժը կը միտի ըլլալ «վատ», նախ՝ *վատ* չըլլալուն համար, ապա՝ *վատ* ըլլալու գաղափարն իր մէջ պատմականօրէն բովանդակած ըլլալուն համար, եւ վերջապէս՝ *վատ*ի հնարաւորութիւնը ներգրաւած ըլլալուն համար: Որով հանգստաւէտ կեցուածքով մը կրնամ վերադառնալ նիւթիս՝ Ա-Բ-ի ուժային յարաբերութեան, եւ «վատացնել» Ա-ին կողմը գտնուող ուժը:

Բայց Ֆուքոյի նոյն գրութեան մէջ կը գտնուի կրկնուող բառ մը՝ որ դէպի հակառակ ուղղութիւն կրնայ մղել իմաստը: Այդ բառը նոյն ինքը «ուժ»-ն է: Անոր գոյութիւնը եւ կրկնութիւնը կ'արտադրէ ու կը հաստատէ ուժը, անկախ անոր տրուած որակաւորումէն:

Բառա-կառուցուածքային, կամ ընդհանրապէս կառուցուածքային, այս մօտեցումը ունի իր դժուարութիւնները: Ալէն Պատիու նշած է ապաենթակայականացման (desubjectivization) միտումը կառուցուածքապաշտերուն (structuralist) մօտ(2), այսինքն՝ ներյատուկ իմաստներու անտեսումը ուսումնասիրուող առարկային մէջ:

Մեկնաբանական մօտեցումով մը, Ֆուքոյի դրոյթը կրնայ տարբեր երանգ ստանալ: Ֆուքոյական ուժի մեկնաբանական համառօտագրութիւններէն մէկը կու տայ *Փիլիսոփայութեան Սթանֆորտ Հանրագիտարանը*, ըստ որուն Ֆուքոյի նպատակակէտն այն է՝ որ «առ նուազն մարդու ուսումնասիրութեան համար, ուժի նպատակները եւ գիտելիքի նպատակները չեն կրնար բաժնուիլ իրարմէ՝ գիտնալով կ'իշխենք եւ իշխելով կը գիտնանք»(3):

Նոյն գաղափարի ուրիշ ամփոփումի մէջ, Տանահէր, Շիրաթօ եւ Ուէպ կը գրեն. «Ֆուքօ ուժը կ'ընկալէ ոչ թէ իբրեւ բան մը որ կարելի է սեփականացնել կամ ձեռք ձգել, այլ իբրեւ համատարած եւ ընդմիշտ փոխուող հոսք մը: Այս հոսքի շարժումին կերպը մեծապէս կախուած է թէ ինչպէս զանազան խումբեր, հիմնարկներ եւ տրամասացութիւններ (discourses) կը բանակցին, կը յարաբերին եւ կը մրցին իրարու հետ»(4):

Ինչպէս կ'երեւի այս երկու ընդհանրացումներէն, Ֆուքօ բաւարարօրէն ձեռնպահ դիրք մը պահած է ուժին հանդէպ: Այս կէտը պիտի օրինականացնէ գիտելիքի վերը յիշուած Ա-Բ շարժումը իր դասակարգային յարաբերութեամբ: Թէեւ պիտի օրինականացնէ որոշ վերապահումներով, բայց միեւնոյնն է, պիտի օրինականացնէ՝ առանց դիմադրութեան: «Բայց Ֆուքոյի հիմնական թերութիւններէն մէկն այն է, որ ընդհանրապէս կը ձախողի տալ բարոյական հաշուեկշիռի նման բան մը ուժի մասին», կը գրէ Քրիսթոֆըր Պաթլըր եւ կ'աւելցնէ. «Ան «պայքար»-ը կը նախընտրէ հպատակութենէն, առանց յստակօրէն պատճառը ըսելու: Իրեն համար «ուժ»-ը կը թուի ըլլալ տեսակ մը ելեկտրականութիւն՝ անխուսափելի ուղեկից մը ողջ մարդկային գործունէութեան, նման ձգողականութեան: Թէեւ իր միտքը կ'ենթադրէ ձախակողմեայ, աւելի ստոյգ՝ մարքսիսթական, վերլուծութիւն մը, ան կը խուսափի որեւէ ակնառու քաղաքական մեկնաբանութիւններէ եւ բարոյական տեսութիւններէ: Հետեւաբար, թէեւ կը մնայ իբրեւ «դասական» դիմադրող մը, ան խորհուրդ տալէ զատ բան մը չ'ըներ, ընդամէնը առաջարկելով, ինչպէս Լիոթար (Lyotard), փոքրածաւալ ու տեղական բարեփոխութիւններ»(5):

Նիւթիս կապակցութեամբ ինչո՞ւ դիմադրութիւնը ընտրանք մը ըլլալէ կը վերածուի անխուսափելիութեան:

Ա-ը որոշած է ունենալ *իր* ժամանակը եւ *իր* տարածութիւնը: Ան կ'որոշէ երբ եւ ուր կազմել գիտելիքը: Ան կ'որոշէ *ինչպէս* կազմել գիտելիքը: Ֆրանսական IRCAM կաճառը կ'որոշէ որոնք կրնան սահմանուիլ իբրեւ արդիական (modernist) երաժշտահաններ (Boulez, Stockhausen, Manoury, եւլն.)՝ բացառելով յետարդիականները (postmodernists), աւանդապահերը (traditionalists) եւ բոլոր անոնք որոնք չեն հետեւիր բարձր-արդիականութեան (high-modernist) կանոններուն: *The New Groves Dictionary* երաժշտական բառարան-հանրագիտարանը կ'որոշէ ով իրաւունք ունի երաժիշտ կոչուելու: Լորիս Ճգնաւորեան՝ իբրեւ Հայաստանի Ֆիլհարմոնիք Նուագախումբի նախկին գլխաւոր նուագավար, 11 տարի որոշած է հազուագիւտ կատարել հայ ժամանակակից երաժշտահաններու գործերը, հակառակ անոնց առատութեան: Ամերիկեան նկարչական վաճառք-ցուցահանդէսները եւ զարմանալի աճուրդները կ'որոշեն նկարներու արժեգինները, հետեւաբար՝ անոնց գեղարուեստական արժէքները: Հոլլիուտ կ'որոշէ ամերիկեան շարժանկարներուն ուղղուածութիւնը: *The New York Times* 2002-2003-ին կ'որոշէ՝ թէ Իրաք ունի զանգուածային բնաջնջման զէնքեր: *The New York Times* կ'որոշէ արաբ ծանօթ անհատականութիւններու դիմագիծերը՝ վայրագօրէն հարուածելով արեւմտեան հիմնահոսանքային գիտելիքի կայունութիւնը խռոված Էտուարտ Սայիտին եւ հրաշալիօրէն գովաբանելով Միջազգային Պանքի (դրամատիրութեան արտադրիչը հանդիսացող այդ վտանգաւոր հիմնարկին) երկարամեայ փոխ տնօրէն եւ ապա Սուզան Մուպարաքի անձնական շահերուն համար հիմնուած Աղեքսանդրիոյ հիմնարկի մը տնօրէնին: Սերժ Սարգսեան՝ յանձինս Նժդեհին, կ'որոշէ ով պէտք է դառնայ պատմական հերոսի պետական տիպարը: Այս բոլոր գիտելիքները՝ կանխամտածուած եւ ծրագրուած, «գիտելիք» դառնալու համար պէտք է փոխանցուին Բ-ին: Փոխանցման տեղն ու ժամանակը կ'որոշէ Ա-ը: Ա-ը անխուսափելիօրէն պէտք ունի Բ-ին: Բայց Բ-ի ժամանակն ու տարածութիւնը տարբեր են Ա-էն: Բ-ը ունի *իր* ժամանակն ու *իր* տարածութիւնը, զորս ստիպողաբար կամ վերադիր համոզումով պէտք է համաձայնեցնէ Ա-ին: Քանի որ ժամանակա-տարածութիւնները տարբեր են կամ արհեստականօրէն համաձայնեցուած, գիտելիքը պէտք է ճեղքէ բացուածք մը, պարապութիւն մը: Միջոցը՝ Ֆուքոյական ուժային յարաբերութիւնն է: Արդարեւ, այսպէս փոխանցուած գիտելիքը չի կրնար չտկել ժամանակա-տարածային տարբերութիւնները, չի կրնար Բ-ին մասնակից դարձնել գիտելիքի կերտման: Ուժային յարաբերութեամբ հասած գիտելիքը կը մնայ օտարացած:

Խօսիմ առօրեայ կեանքի օրինակներով: Դպրոցականն ու համալսարանականը ամէն օր, ամէն ժամ կը ստանայ գիտելիքներու անվերջանալի շարաններ: Գիտելիքի բազմութիւն կայ դպրոցական-համալսարանական առօրեային մէջ: Հակառակ ասոր, դաս սորվելու յատուկ հաւաքներէն դուրս, աշակերտ-ուսանողները չեն խօսիր իրենց ստացած գիտելիքին մասին, այլ կը նախընտրեն

➩ 4

ԻՍՐԱՅԷԼ

## ՔՆԵՍԵԹԸ ՔՆՆԱՐԿԱԾ Է ՀԱՅՈՑ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԵԱՆ ՃԱՆԱՉՄԱՆ ՀԱՐՑԸ

*«Արմենփրես» կը հաղորդէ, որ Երեքշաբթի, 23 Ապրիլին Իսրայէլի Քնեսեթի լիագումար նիստի ընթացքին քննարկուած է Հայոց ցեղասպանութեան ճանաչման հարցը: Նիստին կը մասնակցէին Իսրայէլի Հայ դատի յանձնախումբի անդամներ:*

*Քննարկումի աւարտին, լիագումար նիստը որոշած է քննարկումը շարունակել խորհրդարանական յանձնախումբերէն մէկուն մէջ, որ հաւանաբար պիտի ըլլայ կրթական կամ մշակութային հարցերու յանձնախումբը: Իսրայէլի Հայ դատի յանձնախումբի ներկայացուցիչ Ժորժեթ Աւագեան տեղեկացուցած է, որ Քնեսեթի լիագումար նիստին մասնակցած հայկական պատուիրակութիւնը բաղկացած էր 15 անդամներէ, ներառեալ՝ Երուսաղէմի Հայոց պատրիարքարանի ներկայացուցիչ Արիս Արք. Շիրվանեան:*

*Քննարկման ընթացքին Մերեց կուսակցութեան անդամ երեսփոխան Զահաւա Քալոն յայտարարած է, որ Իսրայէլ պէտք է հետեւի Հայոց ցեղասպանութիւնը ճանչցած 27 այլ երկիրներու օրինակին՝ աւելցնելով, թէ Թուրքիոյ հետ յարաբերութիւնները բարելաւելու նպատակով նոր սկսած բանակցութիւնները ո՛չ մէկ ձեւով պէտք է արգելք հանդիսանան ցեղասպանութեան ճանաչման:*

*Իսրայէլի իշխող դաշինքէն երեսփոխան Ռուվէն Ռիվլին իր կարգին շեշտած է, որ Թուրքիա կը շարունակէ մնալ Իսրայէլի դաշնակիցը, սակայն այդ իրողութիւնը ո՛չ մէկ ձեւով պէտք է արդարացնէ այլ ժողովուրդի մը դժբախտութիւններուն անտեսումը: «Իբրեւ ուրացման արհաւիրքէն տուժած ժողովուրդ մը՝ ինծի համար անբացատրելի կը մնայ Հայոց ցեղասպանութեան անտեսումը», ըսած է ան:*

## ՀԱՅ ԱԶԳԱՅԻՆ ԵՐԱԺՇՏՈՒԹԵԱՆ ԼԱՒԱԳՈՅՆ...

2 

*Կայքի շնորհահանդէսէն յետոյ ներկայացուեցաւ համերգային փոքրիկ ծրագիր, հնչեց Կոմիտասի «Անտունի»ն, ինչպէս նաեւ այլ ստեղծագործութիւններ: Յառաջիկային, հիմնադիրները կը նախատեսեն ունենալ նաեւ namusic.net կայքի անգլերէն եւ ռուսերէն տարբերակները:*

# ՋԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ



ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ԽՈՀԵՐ

## ԳԻՏԵԼԻՔԻ ՓՈԽԱՆՑՈՒՄ... ԿԵՂԾ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐ (Բ)

3

պատմել իրենց կեանքի փորձառութեան հետ կապուած դէպքերու եւ դէմքերու մասին: Ուսուցիչները եւս, դասապահերէն դուրս, «ժամանակ չունին» գիտելիքի մասին խօսելու, այլ զբաղուած կ'ըլլան իրենց կրած գիտելիքի փոխանցման համակարգը եւ ձեւը որոշելով: Համակարգը աւելի կարեւոր է քան անոր մէջ պահուող գիտելիքը:

Աքատեմիք-հիմնարկային նուագախումբերու եւ երգչախումբերու անդամները *իրենց* (կամ հիմնարկային պարտականութեան տակ) արտադրած գիտելիքին մասին չէ որ կը սիրեն վիճաբանիլ իրարու հետ, այլ մեծ մասամբ իրենց կենցաղային վիճակի մասին՝ դրամ, ընտանիք, ընկերներ:

Նկարչական «բարձր» ցուցահանդէսի դիտորդը, «լուրջ» թատերգութեան հանդիսատեսը, դասական երաժշտութեան ունկնդիրը ներկայացումէն ետք տրամադրուած կ'ըլլայ բեմին վրայ գտնուողին (Ա-ին) լաւ-վատ գնահատականներ տալու, փոխանակ մեկնաբանելու եւ շրջանառութեան մէջ դնելու ներկայացուած գիտելիքը: Ասիկա նաեւ Ա-ին ցանկութիւնն է՝ ստանալ ուղղակի գնահատական (բնականաբար՝ լաւ): Հիմնահոսանքին կառչած արուեստագէտը կ'ախորժի իր ելոյթին մասին գրուած լրագրա-քննադատութենէն, հոգ չէ թէ վերջինս լեցուած ըլլայ գնահատական ածականներով: Այսինքն, նոյն գիտելիք արտադրողին համար առաջնային կը դառնայ *իրեն*՝ իբրեւ անշարժ առարկայի, ներկայացումը մամուլին մէջ, քան իր իսկ գիտելիքի շրջանառութիւնը:

Գիտելիքը մնացած է օտարացած վիճակի մէջ: Մնացած է օտարացած՝ նոյն ինքը Ա-ին համար: Հեղինակային իրաւունքի անվերջ ուժեղացող օրէնքները, դրուած ու մշակուած Ա-ի մէկ խումբին կողմէ՝ պաշտպանելու Ա-ի ուրիշ խումբ մը, կ'արտացոլեն Ա-ին սարսափը իր հնարած գիտելիքի կորուստին նկատմամբ: Միայն անձէն անդին գտնուող առարկաները կարելի է կորսնցնել:

Հետեւաբար, ֆուքոյական ուժի դիմադրութիւնը կը դառնայ առաջնային:

Բոլորովին տարբեր պատկեր կը ներկայացնեն բանաւոր մշակոյթները: Ֆոլքլորը, օրինակ, չի սահմանազատեր գիտելիքը փորձառութենէն: Բանաւոր դիւցազներգութիւնները (հնդկական *Ռամայանան*, անգլիական *Boewulf*-ը, հայկական *Սասունցի Դաւիթը*, արաբական *Անթարը*) կը պատմեն ապրուած փորձառութիւններու մասին եւ տարբերակային փոփոխութիւններով կը փոխանցուին սերունդէ սերունդ՝ այնքան ժամանակ որ հաւաքական յիշողութիւնը պէտք կը զգայ յիշել զանոնք: Բանաւոր մշակոյթին մէջ չկայ Ա եւ Բ, եւ եթէ նոյնիսկ կը գտնուի Ա մը (օրինակ, Սայեաթ-Նովան՝ իր բնական միջավայրին մէջ), անոր եւ Բ-ի ժամանակն ու տարածութիւնը նոյնն են: Գիտելիքը կը կրէ բոլորին փորձառութիւնը: Ան օտարացած չէ: Ան փոխանցման կարիք չունի, քանի որ բնական ու անընդհատ շրջանառութեան մէջ է: Ան ամէն տեղ է: Ան տարածուելու համար պէտք չունի ուժային յարաբերութեան:

Հարց կը ծագի: Գոյութիւն չունի՞ արդեօք բանաւորին համապատասխանը արդի գրաւոր գիտելիքին մէջ, որ ունենայ բանաւորին բնայատկութիւնը եւ շրջանցէ աքատեմիք կարծրութիւնը: Անշուշտ գոյութիւն ունի: Ասիկա այն գիտելիքն է՝ զոր նախորդ յօդուածի մը մէջ անուանած եմ «յետ-աքատեմիք»: Ասոր մասին՝ յաջորդ թիւով:


1.-Michel Foucault: *Politics, Philosophy, Culture*, Routledge, 1990, էջ 168

2.-Alain Badiou: *Theory of the Subject*, continuum, 2009, էջ 225

3.-'Michel Foucault', *Stanford Encyclopedia of Philosophy*, http://plato.stanford.edu/entries/foucault/

4.-Geoff Danaher, Tony Schirato and Jen Webb: *Understanding Foucault*, Allen & Unwin, 2000, էջ 80

5.-Christopher Butler: *Postmodernism: A Very Short Introduction*, Oxford University Press, 2006, էջ 48-49


## ՄԱՄԻԿՈՆԵԱՆ ՏՈՀՄԻ ՀԱՅ ԱՐՔԱՅԱԴՈՒՍՏՐԸ...

2

*ֆրանսական «պեսթսելըրնե-ը»ու հեղինակ է, իր «Թարա Տունկան» գիրքերու շարքին օրինակները պիտի ստորագրէ Լարշմոնտի գրախանութին մէջ:*

*Օտուրն-Մամիկոնեանի կենսագրութեան մէջ կը նշուի, որ անոր ընտանիքը Ռուսաստան փախած է 200 տարի առաջ՝ հայրենիքի մէջ հետապնդումներէն խուսափելու համար, սակայն 1917-ին արտաքսուած են Ֆրանսա:*

*Աղբիւրը կը նշէ, որ «1990-ին Հայաստանի կառավարութիւնը Սոֆի Օտուրն-Մամիկոնեանէն խնդրած է վերադառնալ Հայաստան իբրեւ թագուհի, սակայն ան հրաժարած է՝ չփափաքելով երկիրը ծանրաբեռնել թագաւորական ընտանիքի համար ծախսերով»:*

## ԱՄԵՐԻԿԱՅԻ ԴԵՍՊԱՆԸ ՀԱՅ-ԹՐՔԱԿԱՆ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ ՁԱԽՈՂՄԱՆ ՀԱՄԱՐ ՄԵՂԱԴՐԵՑ ԹՐՔԱԿԱՆ ԿՈՂՄԸ

1

*յառաջացուցած են: Ինք ուղղակի կ'ենթարկուի ԱՄՆ-ի նախագահին, բայց նաեւ իր խողովակներով կը փորձէ ճնշում գործադրել ԱՄՆ-ի նախագահի վրայ՝ 1915 թուականի իրադարձութիւններու ընդունման համար:*

*Անդրադառնալով Հայաստանի զարգացման ուղղութիւններուն, Հէֆըրն բսած է. «Յաջողութեան հասնելու համար Հայաստան պէտք է ունենայ տարբեր տարբերակներ եւ պէտք չէ կախուած ըլլայ մէկ տարբերակէ, հետեւաբար մենք կը քաջալերենք, որ Հայաստան նայի դէպի Արեւմուտք, այլ հնարաւորութիւններ գտնէ այնտեղ: Մենք բնականաբար չենք փորձեր փոխարինել Ռուսաստանին եւ Ռուսաստանի գործառոյթներուն այստեղ»:*

*Ինչ կը վերաբերի Հայաստանի գործարար միջավայրին, դեսպան Ճոն Հէֆըրն բսած է, որ այն պէտք է բարելաւուի, որպէսզի միջազգային ներդրումներու ծաւալներն աճին:*

## ԱՆԳԱՐԱՅԻ ԱՌԱՋԱՐԿԸ ՓԱՐԻԶԻՆ ԱԹՈՄԱԿԱՅԱՆ՝ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԵԱՆ ԴԻՄԱՑ

1

*«Ցաւոք սրտի, Նիքոլա Սարքոզիի օրօք մեզի չյաջողեցաւ հաշտեցման ուղղուած քայլեր ձեռնարկել: Անցած շաբաթ ստորագրուած համաձայնագիրը քայլ էր այդ ուղղութեամբ: Չեմ կարծեր, որ մենք Ֆրանսայէն պէտք է շուտափոյթ, յստակ քայլեր ակնկալենք, այնուհանդերձ, այսօր առաւել քան երբեք ուժանիւթը լուրջ դերակատարութիւն ունի քաղաքական հարցերու մէջ», - յայտարարած է նախարար Երլտըզ: Ան, միաժամանակ յոյս ունի որ ֆրանսական իշխանութիւնները կը հասկնան, թէ որքան կարեւոր է կոտրել Թուրքիոյ հետ յարաբերութիւններու մէջ գոյութիւն ունեցող սառոյցը:*

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly


P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com


Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1704 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 30 ՄԱՅԻՍ 2013 | ՀԱՏԸ ՉԵՌՔԷ 75 Ե. Դիկ. | عدد رقم ١٧٠٤ الخميس ٣٠ مايو ٢٠١٣


**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ՆԱԽԱԳԱՀ ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԸ ՄԱՍՆԱԿՑԵՑԱՒ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՕՐՈՒԱՆ ՆՈՒԻՐՈՒԱԾ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԵԱՆԸ



*Նախագահ Սերժ Սարգսեանն Մայիս 28-ին այցելել է Սարդարապատի հերոսամարտի յուշահամալիր, մասնակցել Հանրապետութեան օրուան նուիրուած տօնակատարութեանը եւ իր շնորհաւորական խօսքը յղել Հանրապետութեան տօնի առթիւ:*

*Սարդարապատում տօնի կապակցութեամբ տեղի է ունեցել զօրահանդէս, Պատուոյ պահակախումբը հանդէս է եկել ցուցադրական ելոյթով, որից յետոյ Նախագահը ծաղկեպսակ է դրել Սարդարապատի ճակատամարտի հերոսների յիշատակը յաւերժացնող յուշակոթողին:*

*Նախագահ Սերժ Սարգսեանի շնորհաւորական ուղերձը Հանրապետութեան տօնի առթիւ.-*

«Վեհափա՛ռ Տէր,

Պարոնա՛յք գեներալներ, սպաներ, զինուորներ,

Սիրելի՛ քոյրեր ու եղբայրներ,

Ջերմօրէն շնորհաւորում եմ ձեզ Հանրապետութեան տօնի կապակցութեամբ:

95 տարի առաջ Ղարաքիլիսայում, Բաշ-Ապարանում եւ մանաւանդ այստեղ Սարդարապատում մենք ճակատագրական քննութիւն էինք յանձնում: Յանձնում էինք ազգովին՝ մեծով ու փոքրով, հոգեւորականով ու զինուորականով, դաշնակցականով ու կոմունիստով, պաշտօնեայով ու շինականով: Բոլորո՛վ: Պատմական Հայաստանի գոնէ մի փոքր մասի գոյութեան համար կռւում էր հայրենաբնակ հայութեան վերջին հատուածը: Այստեղ մենք դիմագրաւեցինք եւ յետ շպրտեցինք թշնամուն, որի ռասիզմի եւ հակահայ ծրագրերի մասին աշխարհում ոչ ոք այլեւս չունէր ո՛չ պատրանքներ եւ ո՛չ էլ կասկածներ: Այստեղ Արեւելեան Հայաստանի հայութիւնը փրկուեց վերահաս աղէտից: Օսմանեան Թուրքիայում սկիզբ առած Մեծ Եղեռնը, որ հետեւողականօրէն շարունակւում էր ու տարածւում, կասեցուեց այստեղ շնորհիւ մեր միասնական ոգու:

Եթէ շատ ազգերի համար անկախութեան հռչակումը քաղաքական ակտ էր եւ նոյնիսկ հանդիսաւոր արարողութիւն, ապա մեզ համար այն ծանր երկունք էր: Մենք նոյնիսկ չգիտէինք, որ մայիսեան հերոսամարտերից մէկ-երկու օր անց անկախութիւն ենք հռչակելու: Հայաստանի պետականութիւնը մենք կերտում էինք ուղղակի կռուի դաշտում՝ մեծագոյն զոհողութիւնների ու կորուստների գնով: Արեամբ ու հաւատով, իրար թիկունք պահելով ու առաջ նայելով: Միասին:

1918 թուականի Մայիսի 28-ը արձանագրումն է մեր ֆիզիկական փրկութեան եւ քաղաքական վերածննդի: Արձանագրումն է մեր ժողովրդի արիութեան ու բազկի ուժի, ինչը յետագայում փառահեղօրէն դրսեւորուեց նաեւ Մեծ հայրենականի ճակատներում ու Արցախեան գոյամարտում: Եւ այսօր այստեղ՝ Սարդարապատում կանգնած հայ զինուորի խրոխտ քայլերթն ու յաղթական ոգին լաւագոյն ապացոյցն են այն բանի, որ մենք գիտենք լինելու ու յաղթելու բանաձեւը:

Սիրելի՛ հայրենակիցներ,

Ինչո՞ւ ենք մենք այստեղ յուշարձան կանգնեցրել եւ ինչո՞ւ ենք պարբերաբար գալիս այստեղ: Սեւակն ասում էր. «Սերունդնե՛ր, դուք ձեզ ճանաչէք Սարդարապատից»: Մենք

➭ 4

## ՄԻՆՍՔԻ ՀԱՄԱՆԱԽԱԳԱՀՆԵՐԸ ԵՐԵՒԱՆԻ ՄԷՋ



*Ուրբաթ, Մայիս 24-ին, Հայաստանի Հանրապետութեան նախագահ Սերժ Սարգսեան ընդունեց ԵԱՀԿի Մինսքի խմբակի համանախագահները:*

*Ռուս, ֆրանսացի եւ ամերիկացի համանախագահներ Իկոր Փոփովի, Ժագ Ֆորի եւ Իան Քէլլիի հետ Սարգսեան քննարկեց ղարաբաղեան հակամարտութեան նորագոյն զարգացումները եւ բանակցութիւններու ընթացքը, ներկայութեամբ Հայաստանի արտաքին գործոց նախարար Էտուարտ Նալպանտեանին եւ ԵԱՀԿի գործող նախագահի անձնական ներկայացուցիչ Անճէյ Գեսփըրչիքին: Զրուցակիցները քննարկեցին հակամարտութեան բանակցային գործընթացի յետագայ քայլերուն վերաբերող հարցեր:*

*Երեք համանախագահները նախապէս տեսակցած էին Հայաստանի արտաքին գործոց նախարարին հետ: Քննարկուեցան խաղաղ կարգաւորման գործընթացը յառաջ մղելու հնարաւոր ուղիները: Համանախագահները ներկայացուցին Պաքուի մէջ ունեցած հանդիպումներու տպաւորութիւնները եւ արդիւնքները: Նալպանտեան համանախագահներու ուշադրութիւնը հրաւիրեց բանակցային գործընթացի էութիւնն ու բնոյթը խեղաթիւրող ատրպէյճանական կողմի շարունակական յայտարարութիւններուն վրայ, որոնք չեն նպաստեր խաղաղ գործընթացի աշխուժացման աշխատանքներուն:*

## ԻՇԽԱՆ ՉԱՐԼԶ Կ'ԱՅՑԵԼԷ ՀԱՅԱՍՏԱՆ



*Աջէն՝ ՀՀ նախագահ՝ Սերժ Սարգսեան, Տիկին Ռիթա Սարգսեան, Իշխան Չարլզ եւ Ամենայն Հայոց Վեհափառ՝ Գարեգին Բ. :*

*Հայաստանի Հանրապետութեան նախագահ Սերժ Սարգսեան նախագահական պալատին մէջ ընդունեց Մեծն Բրիտանիոյ արքայազն Չարլզին, որ Երեւան կը գտնուի մասնակցելու համար «Երեւան, իմ սէր» բարեգործական հիմնադրամի կազմակերպած ձեռնարկներուն:*

*Սարգսեան ողջունեց իշխանին Հայաստան այցելութիւնը, որ հնարաւորութիւն կը ստեղծէ ծանօթանալու Հայաստանին, հայ ժողովուրդին ու մեր պատմամշակութային ժառանգութեան: Սարգսեան հաստատեց, որ հայ-բրիտանական յարաբերութիւնները երկար դարերու պատմութիւն ունին եւ հայ ժողովուրդը ջերմօրէն կը վերաբերի բրիտանացի ժողովուրդին ու արքայական ընտանիքին:*

*Իշխան Չարլզ շնորհակալութիւն յայտնեց նախագահ Սարգսեանին, ջերմ ընդունելութեան համար եւ գնահատեց Հայաստանի ծրագիրները, կրթութեան եւ երիտասարդութեան զարգացման ոլորտներուն մէջ: Քննարկուեցան հայ-բրիտանական բարձր մակարդ ակի քաղաքական երկխօսութեան առնչուած թեմաները, երկկողմանի յարաբերութիւնները եւ համագործակցութիւնը զարգացնելու միջոցները:*

**ԹՈՒՐՔԻԱ**

## ՀՐԱՆԴ ՏԻՆՔԻ ԴԱՏԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ ԿԸ ՎԵՐՍԿՍԻ



*Պոլսոյ Ակօս թերթին նախկին խմբագրապետ Հրանդ Տինքի սպանութեան թղթածրարը դարձեալ փոխանցուեցաւ դատարանին: Թուրքիոյ վճռաբեկ ատեանը վերջերս հրապարակեց որոշում մը, որուն հիման վրայ բեկանեց ծանր յանցագործութիւններու Պոլսոյ 14-րդ դատարանի հրապարակած դատավճիռը՝ Տինքի սպանութեան հարցով:*

*Յառաջիկայ օրերուն, պիտի նշանակուի դատավարութեան նոր թուական:*

*Վճռաբեկ ատեանը մասնաւորապէս տապալած է վճիռի ա՛յն հատուածը, ուր կը բացառուի զինուած ահաբեկչական կազմակերպութեան մը մասնակցութիւնը՝ Տինքի սպանութեան գործողութեան:*

## ՊԷՅՐՈՒԹ-ԵՐԵՒԱՆ ՕԴԱՆԱՒԱՅԻՆ ԳԻԾ




*Middle East օդանաւային ընկերութիւնը որոշեց օդանաւային նոր գիծ բանալ Պէյրութի եւ Երեւանի միջեւ, ապահովելու համար ուղեւորներու փոխադրութեան նոր եւ դիւրին հնարաւորութիւն:*

*Թռիչքները սկզբունքով կը մեկնարկեն յառաջիկայ Յուլիս 5-ին, շաբաթական երկու ուղեւորութեան դրութեամբ: Այս կարգավիճակը գործունեայ պիտի ըլլայ մինչեւ Հոկտեմբեր:*

*Օդանաւային թռիչքներու սկսման հարցով ընկերութիւնը բանակցութիւններ վարեց հայկական պատկան կողմերուն հետ:*

*Յիշեցնենք, որ Արմաւիա օդանաւային ընկերութեան սնանկացումէն ետք ուղեւորները կորսնցուցած էին Պէյրութ-Երեւան օդանաւային ուղղակի կապը:*

ԳԱՀԻՐԷ

## ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

Կիրակի, 5 Մայիս 2013-ին, Եգիպտահայոց Թեմի Առաջնորդ Գերշ. Տ. Աշոտ Եպիսկոպոսի որպէս ներկայացուցիչ, Հոգեշնորհ Տ. Գաբրիէլ Վարդապետ Սարգսեանը այցելած է Ղպտի Ուղղափառ Եկեղեցւոյ նորընտիր գահակալ Նորին Սրբութիւն Թաւատրոս Բ. Պատրիարքին, Սրբազան Հօր եւ համայնքի անունով շնորհաւորած է Քրիստոսի Հրաշափառ Յարութեան տօնին առիթով:



Հանդիպումը անցած է ջերմ մթնոլորտի մէջ եւ Թաւատրոս Բ. Պատրիարքը կարեւորած է քոյր Եկեղեցիներու յարաբերութիւններու ջերմացումը:

Հանդիպման ներկայ եղած է նաեւ Հայ Կաթողիկէ համայնքի Առաջնորդ Գրիգոր Օգոստինոս Եպիսկոպոս Գուսան:

Վերջաւորութեան ընկալեալ սովորութեան համաձայն Հայր Սուրբը մասնակցած է սիրոյ ճաշկերոյթին:

Նախորդ օրը, 4 Մայիս 2013-ի երեկոյեան Բարեշնորհ Րաֆֆի Սարկաւագ Պօղոսեան, Գերաշնորհ Տ. Աշոտ Սրբազան Հօր օրհնութեամբ այցելած է Տահէրի Միքայէլ Հրեշտակապետաց Եկեղեցի եւ Ս. Պատարագի ընթացքին շնորհաւորած է Ս. Յարութեան տօնը եւ ապա մեկնած Գահիրէի Կեդրոնի Եկեղեցի, ուր Պատարագիչն էր Կեդրոնի Առաջնորդ Ռուֆայիլ Եպիսկոպոսը, Սրբազան Հօր անունով շնորհաւորած է Ռուֆայիլ Եպիսկոպոսին: Քարոզի աւարտին պատարագիչ Եպիսկոպոսը յատուկ բարեմաղթանքներ յայտնած է Եգիպտահայոց Թեմի Առաջնորդ Գերշ. Տ. Աշոտ Սրբազանին՝ Րաֆֆի Սարկաւագին միջոցով:

Ս. Պատարագը աւարտուած է գիշերուայ ժամը 1:30-ին:

**ԴԻՒԱՆ**

**ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**

## ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ԴՐԱՄԱՏՈՒՆԸ 30 ՄԻԼԻՈՆ ՏՈԼԱՐ ՎԱՐԿ ՊԻՏԻ ՅԱՏԿԱՑՆԷ ՀԱՅԱՍՏԱՆԻՆ




*Համաշխարհային դրամատան գործադիր տնօրէններու խորհուրդը Մայիս 23-ին, հաստատած է Ոռոգման համակարգերու արդիականացման ծրագրի ներքոյ 30 միլիոն տոլար վարկի յատկացումը Հայաստանին: Այս ծրագիրը պիտի օժանդակէ Հայաստանի կառավարութեան շարունակական աշխատանքներուն, որոնք ուղղուած են չորս թիրախային ոռոգման համակարգերու միջոցով արդիւնաւէտ, ոչ ծախսատար եւ կայուն ոռոգում ապահովելուն՝ սպառելով աւելի քիչ ուժանիւթ եւ ջուրը սպառողներուն ժամանակին հասցնելով: Բացի այդ, ծրագիրը պիտի օգնէ որոշում կայացնողներուն ու շահագրգիռ կողմերուն՝ ապահովելու ոլորտի վերաբերեալ յուսալի տուեալներով ու տեղեկատուութեամբ:*

*Հիմնական ներդրման նպատակը շահագործման ծախսերու կրճատումն է՝ ջրհանով (pump) ոռոգման չորս համակարգեր ինքնահոս համակարգերու վերածելու ճանապարհով: Ոռոգման համակարգերու արդիականացման առաջարկուող ծրագիրով պիտի փինանսաւորուին ինքնահոս ոռոգման համակարգերու ձեւաւորման աշխատանքներ Մեղրիի, Գեղարդալիճի, Բաղրամեան-Նորակերտի եւ Քաղցրաշէնի մէջ: Ընտրուած 13 ջրհանային ոռոգման համակարգերու հետ կապուած պիտի վերականգնուին շուրջ 52 քմ. երկարութեամբ ջրանցքներ, որպէսզի նուազեցուին ջրհաններով մղուած բարձր ինքնարժէք ունեցող ոռոգման ջուրերու կորուստները: Այս ջրանցքներուն ուղղուած ներդրումներու շնորհիւ հնարաւոր պիտի ըլլայ ապահովել ջրհաններով մղուած բարձր ինքնարժէք ունեցող 20 միլիոն խորանարդ մեթր ջուրի խնայողութիւն: Ասիկա հնարաւոր պիտի դառնայ հիմնականօրէն ջուրի կորուստներու նուազեցման միջոցով: Հաշուարկները ցոյց կու տան, որ իւրաքանչիւր 100 մեթր ջրագիծի համար կատարուած փոփոխութիւններու արդիւնքով երկվայրկեանը 1.2 լիթր ջուրի խնայողութիւն պիտի ապահովուի:*

*Ծրագիրի ընդհանուր փինանսաւորումը կը կազմէ 37.5 միլիոն տոլար, որմէ 7.5 միլոն տոլարը կը յատկացնէ ՀՀ կառավարութիւնը: Վերակառուցման եւ զարգացման միջազգային դրամատան այս նպատակային ներդրումային վարկը ունի 30 տարի մարման ժամկէտ եւ 5 տարուան արտօնեալ ժամանակաշրջան:*

*Հայաստանին, որ կ'անդամակցի Համաշխարհային դրամատանն 1992-էն եւ Միջազգային զարգացման ընկերակցութեան 1993-էն, տրամադրուած է շուրջ 1.734.600 միլիոն տոլար:*

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՏՕՆԻ ԱՌԻԹՈՎ ՆԱԽԱԳԱՀԻ ՆՍՏԱՎԱՅՐՈՒՄ ՏԵՂԻ Է ՈՒՆԵՑԵԼ ՊԱՐԳԵՒԱՏՐՄԱՆ ԱՐԱՐՈՂՈՒԹԻՒՆ

*Նախագահ Սերժ Սարգսեանի հրամանագրերով, Հանրապետութեան տօնի առթիւ ՀՀ շքանշանով եւ մետալներով են պարգեւատրուել, Մխիթար Գոշի մետալով՝ Հալէպում Հայաստանի Հանրապետութեան գլխաւոր հիւպատոս Կարէն Լեւոնի ԳՐԻԳՈՐԵԱՆԸ, Սիրիայի Արաբական Հանրապետութիւնում Հայաստանի Հանրապետութեան արտակարգ եւ լիազօր դեսպան Արշակ Պօղոսի ՓՈԼԱՏԵԱՆԸ:*

## ԵՐԵՒԱՆ - ԹԵԼ ԱՒԻՒ ԱՌԱՋԻՆ ԹՌԻՉՔԸ 5 ՅՈՒՆԻՍԻՆ



*Իսրայէլեան «Արկիա» օդանաւային ընկերութեան Թել Աւիւ-Երեւան-Թել Աւիւ առաջին թռիչքը տեղի պիտի ունենայ 5 Յունիսին:*

*24 Մայիսին լրագրողներուն հետ ունեցած հանդիպումին ընթացքին այս տեղեկութիւնը փոխանցած է «Արմենիա» միջազգային օդանաւակայաններու գլխաւոր կառավարիչ Մարչելօ Վենդեն:*

*Ան դիտել տուած է, որ թռիչքը կրնայ նոր խթան հանդիսանալ Հայաստանի եւ Իսրայէլի յարաբերութիւններուն՝ աւելցնելով, որ ամէն տարի 6 միլիոն իսրայէլցիներ արձակուրդի կ'երթան, եւ Հայաստանը կրնայ լաւագոյն հանգստի վայրը դառնալ անոնց համար:*

*Վենդեն յայտնած է, որ թռիչքի հաստատման գծով որոշում տալէ առաջ համգամանօրէն ուսումնասիրուած է շուկան, եւ ուսումնասիրութիւնները ցոյց տուած*

4

## ՍԵՒԱՆ ՆՇԱՆԵԱՆ ԲԱՆՏԱՐԿՈՒԹԵԱՆ ԿԸ ԴԱՏԱՊԱՐՏՈՒԻ՝ ՄՈՒՀԱՄԷՏ ՄԱՐԳԱՐԷԻՆ ՎԱՐԿԱԲԵԿԵԼՈՒ ՅԱՆՑԱՆՔՈՎ

*Պոլսահայ լրագրող Սեւան Նշանեան 13.5 ամսուան բանտարկութեան դատապարտուած է՝ Մուհամմատ մարգարէն վարկաբեկելու յանցանքով. այս մասին կը տեղեկացնէ «Ակօս» թերթը: Նշանեան փրկագին վճարելու առիթ պիտի չունենայ:*

*Աւելի կանուխ, նոյն մեղադրանքով թրքական հետապնդում մը սկսած էր յայտնի թուրք դաշնակահար Ֆազըլ Սայի նկատմամբ, սակայն ան կրցած էր խուսափիլ բանտարկութենէն՝ փրկագին վճարելով:*

ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

## ՊՕՂՈՍԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

### ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆ

### 2012-2013 Տարեշրջանի

Ուրախութեամբ կը տեղեկացնենք Յարգոյ հասարակութեան եւ ազնիւ ծնողներուն որ վարժարանի 2012-2013 ուսումնական տարեշրջանի Բարձրագոյն Նախակրթարանի (Ատատիյա) պետական քննութեանց արդիւնքները եղած են հարիւր առ հարիւր յաջողութեամբ:

| | |
|---|---|
| Արմէն Կիրիտլեան | 95.3 % |
| Նաթալի Թօփալեան | 94.0 % |
| Տիգրան Պահարեան | 89.5 % |

Հոգաբարձութիւնն ու Տնօրէնութիւնը կը շնորհաւորեն յարգելի ծնողները եւ յաջողած աշակերտները մաղթելով նորանոր յաջողութիւններ:

***ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ***

** Այս առիթով Խմբագրութիւնս կը շնորհաւորէ յաջողած աշակերտները եւ կը գնահատէ Տնօրէնութեան եւ ուսուցչական կազմին յարատեւ ջանքերը:*

## ՇՆՈՐՀԱՒՈՐԱԳԻՐ



Հոգեշնորհ Տ. Գաբրիէլ Վրդ. Սարգսեան
Հոգեւոր Հովիւ Սուտանի
Գահիրէ

Հոգեշնորհ Հայր Սուրբ,

Սրտի անհուն հրճուանքով կը շնորհաւորեմ Ձեզ, վարդապետական աստիճան եւ գաւազան կրելու իրաւունք արժանանալու ուրախ առթիւ:

Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Բ. Ամենայն Հայոց Վեհափառ Հայրապետի տնօրինութեամբ եւ օրհնութեամբ, Ուրբաթ 15 Մարտ 2013-ին Օշականի Ս. Մեսրոպ Մաշտոց եկեղեցւոյ մէջ, ձեռամբ Գերշ. Տ. Գէորգ Եպս. Սարոյեանի ստացաք վարդապետական աստիճան, գաւազան կրելու իրաւունք եւ Վեհափառ Հայրապետի կողմէ նուիրուած լանջախաչ:

Այս ուրախ առթիւ Ձեզի կրկին կը շնորհաւորեմ եւ կը մաղթեմ ամենայն բարիք Ձեր եկեղեցանուէր Աստուածահաճոյ առաքելութեան մէջ, ի փառս Հայաստանեայց Առաքելական Սուրբ եկեղեցիին:

Մատչիմք ի համբոյր Սուրբ Աջոյդ
Ս. խորանին համեստ սպասարկող՝
Բարեշնորհ Նազարէթ Ա. Սարկաւագ Գարթալեան

*Աղեքսանդրիա, 2 Մայիս 2013*

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԱՅՍ ՏԱՐԻ ՇՐՋԱՆԱՒԱՐՏՆԵՐՈՒ ԹԻՒԸ ՏԱՍԸ ՀԱԶԱՐՈՎ ՆՈՒԱԶԱԾ Է ԱՆՑԵԱԼ ՏԱՐՈՒԸՆԷ



ԵՐԵՒԱՆ.- *Ուրբաթ, Մայիս 24-ին Հայաստանի ամբողջ տարածքին հնչեց դպրոցական այս տարեշրջանի վերջին զանգը: Փակուեցաւ կրթական տարին: Այս տարի երեսուն հազար շրջանաւարտ վկայուեցաւ Հայաստանի **1400** կրթական օճախներէն: Անցեալ տարի շրջանաւարտներուն թիւը քառասուն հազար էր:*

*Շրջանաւարտներուն համար տօն էր. տօնական հագուստներով, փուչիկներով ու ծաղիկներով, խումբ-խումբ շրջանաւարտները կը շրջէին քաղաքը քալելով կամ ինքնաշարժով:*

*Աւանդաբար՝ «Վերջին զանգ» կոչուող այս օրը կը սկսի դպրոցական միջոցառումներով, կը շարունակուի զբօսանքով եւ եկեղեցիի մէջ մոմավառութեամբ, իսկ երեկոյեան՝ խնճոյքով, երգով ու պարով:*

*Հայաստանի մէջ այսպէս հրաժեշտ կու տան դպրոցին եւ կ'ողջունեն կեանքի նոր փուլը:*

### ՏՈՄԱՐԱԳԻՏԱԿԱՆ

# 2013 Ս. ԶԱՏԻԿ ՄԱՐՏ 31, ՆՈՐ ՏՈՄԱՐ ՄԱՅԻՍ 5, ՀԻՆ ՏՈՄԱՐ

**Տարբերութիւնը**

Ներկայ 2013 տարւոյն Ս. Զատկի Հրաշափառ տօնը կատարուեցաւ երկու անգամ՝ հինգ շաբաթներու տարբերութեամբ՝ Նոր Տոմարով Մարտ 31-ի Կիրակին, եւ Հին Տոմարով Մայիս 5-ի Կիրակին: Հարց կը տրուի շատերու կողմէ ինչո՞ւ այս տարբերութիւնը, եւ թէ Հայ Եկեղեցին ո՞ր մէկուն կը հետեւի, մանաւանդ երբ Հայ հաւատացեալներ Ս. Յարութեան տօնը Մարտ 31-ին կատարելէ ետք, Երուսաղէմ ուխտի կ'երթան եւ կրկին անգամ կը տօնեն զայն հինգ շաբաթներ ետք: Շաբաթներու տարբերութիւնը յարաբերական է եւ երբեմն մէկ կամ երկու եւ նոյնիսկ ճիշդ նոյն կիրակի օր կը հանդիպին երկուքը: Շփոթեցուցիչ երեւոյթ մը կը թուի ըլլալ: Պատասխանը բոլորս գիտենք՝ Նոր եւ Հին Տոմարներու տարբերութիւնն է: Սակայն ի՞նչ է այս «շփոթութեան» պատմականը:

Սկիզբէն ըսած ըլլանք, որ Հայ Եկեղեցին Հին Տոմարով կը վարէր եկեղեցական տօները, գլխաւորութեամբ Սուրբ Զատիկին, մինչեւ 1923 թուականը երբ Ամենայն Հայոց Գէորգ Ե. Սուրէնեանց Կաթողիկոսը իր 1923 Նոյեմբեր 9 թուակիր Կոնդակով Գրիգորեան կամ Նոր Տոմարի գործածութիւնը հաստատեց Հայ եկեղեցիներէն ներս ու այդպէս ալ մնաց Տօնացոյցին մէջ, բացի Երուսաղէմի Պատրիարքութենէն եւ անոր ենթակայ եկեղեցիներէն, որոնք Հին (Յուլեան) Տոմարով միշտ կը վարեն Ս. Զատիկի եւ անոր յարակից եկեղեցական տօները տեղական սուրբ տեղեաց իրաւատիրական հանգամանքներու բերումով:

**Երկու Տոմարները**

Հին Տոմարը քրիստոնէական կամ եկեղեցական ոչ մէկ առնչութիւն ունի քանի որ ան կուգայ նոյնիսկ Քրիստոսի թուականէն առաջ: Զուտ գիտական հիմունքով երկրագունդին արեւուն շուրջ դառնալու հաշիւներուն հետ կապուած դրութիւն մը ըլլալով, Ք.Ա. 46 թուին Յուլիոս Կեսար զայն հաստատեց: Հին Տոմարէն Նոր Տոմարի անցքը ծնունդ առաւ 16-րդ դարու վերջին քառորդին, երբ Հին Յուլեան Տոմարին գիտական անճշդութիւնները հաստատուելով Նոր Գրիգորեան Տոմարի դրութիւնը պատրաստուեցաւ այս անգամ Ս.Զատկի կանոնական թուականի մտահոգութեամբ, Հռոմի Գրիգոր 13-րդ Պապի (1573-1583) 1582 թուականի հրամանով, որ իսկոյն գործադրուեցաւ Գրիգորեան Տոմար անունով, որուն Հայ Եկեղեցին հետեւեցաւ 1923 թուի վերոյիշեալ Հայրապետական Կոնդակի հրահանգով:

Արեւմտեան եկեղեցիներ հետզհետէ հետեւեցան Նոր կարգադրութեան եւ հինը դադրեցուցին գործածութենէ: 18-րդ դարուն Անկլիքան Եկեղեցին եւս յարեցաւ Նոր Տոմարին:

**Պարզաբանում Երկու Տոմարներուն Միջեւ**

Հին Տոմարը տարին 365 եւ մէկ քառորդ օր կը հաշուէր, որ սակայն ճշգրիտ հաշիւ մը չէր ներկայացներ 16-րդ դարու գիտնականներուն առջեւ, որովհետեւ կատարեալ տարին նշուած օրերէն 11 եւ կէս վայրկեան պակաս էր, որ 900 տարիներու ընթացքին 1582 թուականին 10 օրերու տարբերութիւն մը յառաջացուցած էր: Այդ սխալը ուղղելու համար գիտնականներ նոյն տարւոյն Հոկտեմբերին 10 օրերու ոստում մը կատարեցին Հոկտեմբեր 5-ը Հոկտեմբեր 15 հաշուելով: Այս էր Նոր Տոմարին կատարած փոփոխութիւնը որուն հետեւանքով տարին 365 օր պիտի հաշուէր, եւ չորս տարին անգամ մը Նահանջ Տարի պիտի ըլլար յաւելեալ օրով մը՝ Փետրուար 29-ին:

Հին Տոմարին հետեւողները այդ սրբագրութիւնը չընդունեցին եւ ետ կեցան Նոր Տոմարէն, 1700 թուականին 11 օր ետ մնալով, 1800-ին 12 օր, եւ 1900-ին 13 օր: Այս պատճառով երկու տոմարներու համեմատութիւնը առայժմ 13 օրերով կը հեռանան իրարմէ:

**Սուրբ Զատկի Թուականը**

Երկու տոմարներու տարբերութիւնը առաջին առիթով չխանգարեց Զատկի թուականին հաստատ դրութիւնը, որ կանոնական դարձած էր Նիկիոյ Ա. Տիեզերական Ժողովին կողմէ, որուն համաձայն Ս. Զատիկը պէտք էր կատարել «գարնան գիշերահաւասարէն վերջ եկող լուսնի լրումին յաջորդող կիրակի օրը»: Որքան ատեն որ Նիկիական սոյն որոշումը գիտականօրէն յարգուած եւ կիրարկուած էր երկու դրութեանց պարագային, տոմարագիտական գետնի վրայ խանգարում չկար եւ երկուքն ալ նոյն սկզբունքին վրայ հիմնած կ'ըլլային երկու տոմարներու տարբերութիւնը: Այս էր պատճառը որ Հին Տոմարը երկար ատեն, մինչեւ Նոր Տոմարին հաստատուիլը, գործադրելի մնաց եկեղեցական կանոնին մէջ, եւ տակաւին կը մնայ Երուսաղէմի մէջ:

**Արեւմտեան եւ Ուղղափառ Եկեղեցիներու Դիրքը**

Լատին եւ Արեւմտեան Եկեղեցիներ կանուխէն որդեգրեցին Նոր Տոմարը, եւ երբ կարգը եկաւ Արեւելեան Ուղղափառ Եկեղեցիներուն, քաղաքական նկատումներ անթոյլատու եղան փոփոխութեան՝ յատկապէս Յոյն եւ Ռուս եկեղեցիներու պարագային: Ցարական Ռուսիան արեւմտեան եկեղեցիներու ազդեցութիւնը նախատեսելով կ'արգիլէր Ռուս Ուղղափառ Եկեղեցին Նոր Տոմարին յարելու: Նոյնպէս Հայ Եկեղեցին նոյն

4

### ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ԽՈՀԵՐ

# ԳԻՏԵԼԻՔԻ ՓՈԽԱՆՑՈՒՄ... ԿԵՂԾ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐ (Գ)

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Անցեալ սիւնակը կը վերջացնէի ակնարկելով «յետ-աքատեմիք» գիտելիքի մասին, իբրեւ աքատեմին շրջանցող եւ բանաւորին հետ կամրջուող գիտելիք: Բայց նախքան այս կէտին անդրադառնալը, հարց մը եւս կրնայ յաւելեալ բացատրութիւն մտցնել: Նկատի ունիմ վերջին տասնամեակները գիտելիքի սպառողական շուկայ ներխուժած «գիտա-հանրամատչելի» կոչուած ուղղութիւնը, որուն յայտարարուած նպատակն է «գիտական»-ը դարձնել «հանրամատչելի» (ինչո՞ւ չմտածել նաեւ «հանրամատչելի»-ն դարձընել «գիտական»...): Ասիկա արդիւնքն է «բարձր» գիտելիքի շրջանառութեան ձախողութեան կամ անոր նեղ շրջանառութեան:

Իւրաքանչիւր «նեղ մասնագիտութիւն» կամ «մասնագիտականացուած» գիտելիք կարծէք յառաջացած ըլլայ որպէսզի անհաղորդ մնայ ուրիշ մասնագիտութեան գիտելիքին: Ցանկութիւն մը, հաճոյք մը, կիրք մը կայ չհասկնալու ուրիշին՝ Այլին: *Չհասկնալու* փափաքը կրնայ փոխուիլ *չհասկցուելու* խորշանքին: Եւ հատման այս կէտին կրնայ ծնիլ մատչելիութեան կամ մատչելի դառնալու գաղափարը:

Ես, ստորագրեալս, թուղթէ վկայականի բերումով երաժշտագէտ եմ, հետեւաբար պարտաւոր եմ գրել «երաժշտագիտական» լեզուով, քանի որ «բնագիտութեան» լեզուն պէտք չէ հասկնամ: Իբրեւ «մասնագէտ» երաժշտագէտ, հետեւեալ գրութիւնը պէտք է հասկնալի ըլլայ միայն *ինծի* նմաններուն (նախորդ թիւերուն մէջ անուանուած Ա-ին), անհասկնալի մնալով թէ՛ «հասարակ» կոչուած ընթերցողին (Բ-ին) եւ թէ՛ *ուրիշ* մասնագէտին, որ այս պարագային կը միանայ Բ խմբաւորումին.

«Կոմիտասը մաժոր եռահնչիւնը մեկնաբանում է ոչ միայն որպէս հիպոիոնական-միքսոլիդիական լադային համակարգի կենտրոն, այլեւ որպէս մի բարդ տոնիկական համահնչիւն, կենտրոնացուած կայունութիւն, որը համախմբում է, ըստ բաղկացուցիչ տոների մեղեդային լադային ֆունկցիաների, հիմնական տոնի շուրջը հիմնական հիպոիոնական-միքսոլիդիական լադը, տերցիային տոնի շուրջը՝ վերին մեդիանտային ոլորտի հիպոփռիւգիական-լոկրիական լադը, կվինտային տոնի շուրջը՝ վերին դոմինանտային ոլորտի հիպոդորիական-էոլական լադը» («Կոմիտասի խմբերգերում բազմաձայնութեան կազմաւորման որոշ սկզբունքների մասին», *Կոմիտասական*, Հայկական ՍՍՀ ԳԱ Հրատարակչութիւն, Երեւան 1981, էջ 182):

Աւելցնեմ, որ յօդուածն ամբողջութեամբ գրուած է նմանատիպ թեքնիքական կրճատուածութեամբ, առանց մեկնաբանական բացատրութեան:

Ինչպէ՞ս կարելի է այս նոյն գիտելիքը դարձընել հանրամատչելի: Գրելով, օրինակ, որ Կոմիտաս Վարդապետի երաժշտութիւնը ինքնուրոյն է եւ բխած է հայ երաժշտութեան առանձնայատկութիւններէն: Գրելով, որ Կոմիտասի երաժըշտութիւնը հարազատ է հայ ժողովուրդի հոգիին: Արդարեւ, ասոնցմէ ոչ մէկը կը բացատրէ վերոյիշեալ պարբերութիւնը: Մաժորը, հիպոիոնականը, միքսոլիդիականը անվերածելի են «հանրամատչելի»-ի: Ի դէպ, չկայ մեքանիզմ մը, որ կարողանայ գիտականը դարձնել հանրամատչելի:

Չկա՞յ արդեօք գիտելիք մը, որ հերքէ Ա-ի եւ Բ-ի սահմանները եւ մատչելի ըլլայ բոլորին՝ առանց փոխզիջումներու գիտականի եւ հանրամատչելիի միջեւ: Անշուշտ կայ: Ասիկա այն գիտելիքն է՝ զոր կոչեցի «յետ-աքատեմիք»: Անուանումը, բնականաբար, խիստ պայմանական է: Ասիկա այն գիտելիքն է՝ որ ունի շարժելու կարողութիւն, որ թեքնիքական եզրաբանութեան ուղղահայեաց իշխանութեան փոխարէն կը դիմէ յիշողութեան կենդանացման, կը ստեղծէ իրադարձութիւն, կը մղէ մտածել լայն ժամանակներու մէջ, կը յաջողի տարածուիլ, դառնալ հանրային սեփականութիւն: Այսպէս ըլլալու համար, գիտելիքը չի կրնար շրջանկուած մնալ մէկ նեղ (կամ լայն) մասնագիտութեան մէջ, այլ մէկ կողմէն՝ պիտի շարժի մէկ ճիւղէն միւսը, մէկ կարգականոնէն (discipline) միւսը, միւս կողմէն՝ նոյնիսկ «մէկ» մասնագիտութեան պարագային, պիտի հիմնուի հերմենիւթիքս (hermeneutics) մեկնաբանութեան վրայ, որ ինքնին կը վերացնէ այդ «մէկ»-ը:

Առաւել յիշուող գիտելիքները բխած են այդ կարգավիճակներէն: Քարլ Մարքսի *Դրամագլուխը* (Das Kapital) կը տարուբերի փիլիսոփայութեան եւ տնտեսագիտութեան միջեւ, Միշէլ Ֆուքոյի *Սեռականութեան պատմութիւնը* (Histoire de la sexualité)՝ պատմութեան եւ փիլիսոփայութեան, Մարք Նշանեանի *Աղէտի գրողները* (Writers of Disaster)՝ գրականագիտութեան, բանասիրութեան եւ հոգեբանութեան, եւ այս բոլորն ալ հրաշալի գրականութեան հետ:

Լէօի *Հայոց պատմութիւնը* կը փորձէ իմաստ տալ դէպքերուն եւ թուականներուն (ի տարբերութիւն արդի շրջանի հայոց եւ սփիւռքահայութեան անթիւ «առարկայական» պատմութիւններուն, ուր մարդու եւ շարժումի փոխարէն կը գտնենք վերացական թուականներ ու դէպքեր):

Մովսէս Խորենացիի պատմութիւնը՝ գրուած երբ աքատեմիի գաղափարն անգամ չկար, շատ աւելի կը կարդացուի ու կը մեկնաբանուի քան «աքատեմիք» պատմագրութիւնը, քանի որ այնտեղ կը գտնուին բազմիմաստ շերտեր՝ ընկերային, պատմական, քաղաքական, գրական, ժողովրդա-բանահիւսական, կրօնական, բան մը՝ որ արտօնուած չէ ներկայ «աքատեմիք» մտածողութեան: Աքատեմին ամէն բան պէտք է բաժնէ իրարմէ՝ մասնագիտութեան անունին տակ: Խորենացին նուա՞զ «մասնագէտ» էր արդեօք:

Կոմիտաս Վարդապետի երգերը իրենց իմաստային բազմազանութեամբ՝ բանաւոր մշակոյթի հետ սերտ առնչութիւն, մարդկային նիւթեր, կատարողական-յօրինողական-երաժշտագիտական-ազգագրագիտական-կրօնական-աշխարհիկ սահմաններու անտեսում, դարձած են հայկական ինքնութեան անբաժանելի մասնիկը: Բայց եւ այնպէս, հիմնահոսանքային երաժշտութեան խումբ մը հետեւորդներ կը փորձեն զայն դիտել բացառապաշտական ակնոցով, աստուածացնելով հայ երաժշտութեան ամենէն աւելի մարդկային երաժիշտը, իսկ անոր բազմաշերտութեան գնահատութիւնը մեկուսացնելով այլընտրանքային միտքին:

Հիմնահոսանքային լրագրութիւնը արձագանգող լրագրութիւն է՝ իշխող գաղափարախօսութիւններուն հնազանդ հետեւորդ, մինչդեռ Ճոն Փիլկէրի (John Pilger) եւ Ռոպըրթ Ֆիսքի (Robert Fisk) նմաններուն լրագրութիւնը ստեղծիչ լրագրութիւն է: Լրագրողը՝ երբ լուրը կը շարադրէ ըստ մասսայական հաղորդակցութեան (corporate media) կամ կուսակցութիւններու կեդրոնական մարմիններէն հաստատագրուած տեղեկութեան՝ առանց փնտռելու (կամ առանց արտօնուած ըլլալու փնտռել) անոր ենթաբնագրային, նախաբնագրային (պատմական) եւ յետբնագրային (հետեւանքներ) կողմերը, կատարած կ'ըլլայ ուղիղ նշանառութիւն՝ առանց հետք ձգելու: Փիլկէրի կամ Ֆիսքի լուրը հետք կը թողու՝ առանց նշանառութեան:

Կայ ժամանակակից փիլիսոփայ Միշէլ Օնֆրէի (Michel Onfray) օրինակը՝ Ֆրանսայի ամենաժողովրդական եւ ամենաշատ վաճառուող փիլիսոփան: Ան ժողովրդական դարձաւ ոչ այսօրուան ընդունուած ձեւերով: Դրամատիրական աշխարհի աստղայնացումի միջոցները (հաղորդակցական միջոցներու զօրահաւաքներ, շքեղ ծանուցումներ, bestseller-ի չահարկումներ) բոլորովին բացակայ էին իր ժողովրդականացման ընթացքին մէջ: Ընդհակառակը, ան ժողովրդականացաւ ճիշդ հակառակ միջոցներու օգտագործումով, նախ եւ առաջ վերացնելով փիլիսոփայի առանձնաշնորհեալ դիրքն ու պատկերը: 2002-ին հիմնեց Քաէնի Ժողովրդական Համալսարանը (Université populaire de Caen)՝ անվճար դասընթացքներով, որ կը շարունակուի մինչեւ այսօր: Նպատակն է ստեղծել հաւաքական դաստիարակութիւն, հիմնուելով իրական բնագիրներու ընթերցանութեան վրայ եւ ոչ թէ այդ

4

ՃԱՌԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ԽՈՀԵՐ

## ԳԻՏԵԼԻՔԻ ՓՈԽԱՆՑՈՒՄ... ԿԵՂԾ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐ (Գ)

3

ընագիրներուն մասին արդէն կազմուած գաղափարներու կամ ուրիշներու գրած եւ յաճախ արմատացած կարծիքներու վրայ, ինչպէս սովորական է արդի կրթական համակարգին: Բնագիրի ընթերցումը ուղիղ կապ կը ստեղծէ գիտելիքին հետ՝ առանց ուժային միջամտութեան, եւ ասպարէզ կու տայ խորհելու, մտածելու, տարբերակելու, խօսելու, այսինքն՝ ընկալող ըլլալու փոխարէն մաս կազմելու բուն գիտելիքին: Նոյն սկզբունքին կը հետեւին նաեւ Օնֆրէի հրատարակութիւնները: Եւ ճիշդ այս պատճառով, ան անբաղձալի հիւրն է ֆրանսական հաստատուած հիմնարկներուն ու համալսարաններուն:

Ասիկա կը յիշեցնէ հայ ժամանակակից մշակութաբան եւ փիլիսոփայ Վարդան Ջալոյեանի (եւ իր նմաններուն) պարագան: Փնտռէ՛ իր անունը համացանցին մէջ (գրելով Հայաստանի ուղղագրութեամբ՝ Ջալոյան, առանց «ե»-ի), եւ իր գաղափարները՝ Օնֆրէի նման, կը գտնես ամէնուրեք՝ պարզ, մատչելի, հասկնալի եւ միշտ փիլիսոփայական: Իր գրութիւնները կրնաս կարդալ Հայաստանի այլընտրանքային բազմաթիւ հրատարակութիւններու մէջ, բայց հազիւ թէ հանդիպիս «վաւերացուած» աքատեմիին մէջ: Ան բացակայ է Հայաստանի քոչարեան-սարգսեանական Առաջին Ալիք հեռատեսիլի կայանին մէջ, որուն համար Նազենի Յովհաննիսեանի յուզառատ գիտելիքները շատ աւելի այժմէական կը թուին ըլլալ:

Վերջապէս, տեղը չէ այստեղ խօսելու կատարողական արուեստներու (ցուցահանդէս, նուագահանդէս, թատրոն) եւ համադումարներու մասին, որոնք կը ձգտին վերացնել կատարող-ունկնդիր, դասախօս-ընկալող, բեմ-հանդիսասրահ բաժանումները: Վերջերս մուտք գործած համադրողը (curator) միջոց մըն է մեղմելու այս երկուութեան սրութիւնը:

Այս բոլորի լոյսին տակ, վերյիշենք մաժոր-հիպոխոնական-միքսոլիդիականը: Յիշեալ եղրերը կան ու կարեւոր են: Զանոնք կարելի է մղել դէպի եղրաբանական բացառականութեան ուղին՝ գործածելի դարձնելով յատուկ գիրքերու մէջ եւ համալսարանական գրատախտակներու վրայ, կամ կարելի է գործածել յարաբերութիւններու եւ առնչութիւններու ընդմէջէն՝ կապուած իմաստի եւ մեկնաբանութեան հետ, կարելի ընելով անոնց պատմողականութիւնը եւ հնարաւոր դարձնելով անոնց շրջանառութիւնը եւ քննարկումը երաժշտական երկխօսութիւններու եւ հաւաքոյթներու մէջ:

Ուրեմն, ուժականութենէ զերծ գիտելիքը ունի փոխանցուելու, շրջանառելու, տարբերակուելու եւ մտածողութեան ու յիշողութեան մաս կազմելու յատկութիւն: Իր բազմաճիւղային այլազանութեան համար զայն պայմանականօրէն անուանեցի «յետ-աքատեմիք» (կարելի է ուրիշ անուանումներ տալ), որ բնականաբար չի նշանակեր «հակա-աքատեմիք» (այս երկուքը տարբեր հասկացութիւններ են): Անուանեցի «յետ-աքատեմիք», որովհետեւ ան իր մէջ կը պարունակէ աքատեմիին ստեղծած ճիւղային բաժանումները (պատմութիւն, փիլիսոփայութիւն, գրականութիւն, ընկերաբանութիւն, եւլն.)՝ առանց զանոնք բաժնող սահմանագիծերուն, եւ միաժամանակ անոր մեկնաբանութեան կերպը հիմնուած է փորձառութեան եւ դիտարկումի վրայ՝ մեծապէս մօտենալով բանաւոր մշակոյթի մը ունեցած բնայատկութիւններուն:

Չեքոսլովաքցի գրող Միլան Քունտերա ունի ծանօթ խօսք մը. «Ուժի դէմ ժողովուրդի մղած պայքարը՝ մոռացութեան դէմ յիշողութեան մղած պայքարն է»: Քունտերա ուժը կ'առնչէ մոռացութեան հետ, իսկ ժողովուրդը՝ յիշողութեան, ուր երկրորդը (ժողովուրդ-յիշողութիւն) պայքար-դիմադրութիւն մըն է առաջինին (ուժ-մոռացութիւն): Ասիկա ուղղակիօրէն կ'առաջնորդէ դէպի մեր նիւթը: Ա-էն (վերնախաւ) դէպի Բ (ժողովուրդ) փոխանցուած գիտելիքը՝ իր ուժային յատկութեան պատճառով, մոռացութիւն է, մինչդեռ հաւաքականօրէն ստեղծուած կամ հաւաքական ենթակայութեան դպչող գիտելիքը՝ յիշողութիւն: Ուժ-մոռացութիւնը հիմքն է Ա-ի եւ Բ-ի միջեւ յառաջացած կեղծ, չհաստատուած ու չմշակուած յարաբերութիւններուն:

Աւելցնեմ, որ այս բոլորը գրեցի համոզուած ըլլալով՝ որ ոչ ոք (ներառեալ ես ինքս) ազատ է գիտելիքի ուժային յարաբերութիւններէն, բայց մեզմէ իւրաքանչիւրը ընդունակ է առ նուազն գիտակցիլ անոր գոյութիւնը եւ ընթանալ ազատագրութեան ուղիով: Նաեւ, վստահ ըլլալով՝ որ Ա եւ Բ դասակարգումը, գիտելիքի «բանաւոր», «աքատեմիք» եւ «յետ-աքատեմիք» բաժանումները անկայուն երեւոյթներ են ու կը գործեն անընդհատ փոխներթափանցման ուղիով:

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

Մերճանեան Ազգ. Մանկապարտէզի 2012-2013 տարեշրջանի ամավերջի հանդէսի յաջողութեան ուրախ առթիւ օրուան նախագահ՝ Տէր եւ Տիկին Հրայր Յովակիմեան կը նուիրեն Ե.Ո. 2000

## ԵՐԵՒԱՆ - ԹԵԼ ԱՒԻՒ ԱՌԱՋԻՆ ԹՌԻՉՔԸ 5 ՅՈՒՆԻՍԻՆ

2

*են, որ Հայաստանի մէջ զբօսաշրջային բարենպաստ պայմաններ կան:*

*«Արկիա»-ի հայկական ներկայացուցչութեան ղեկավար Ալեքսանդր Նուրոկը նաեւ վստահութիւն յայտնած է այն մասին, որ այս թռիչքը պիտի նպաստէ Հայաստանի մէջ զբօսաշրջութեան զարգացման եւ պիտի ամրապնդէ հայ-իսրայէլական յարաբերութիւնները: Ըստ անոր, ծրագրուած է թռիչքներ կատարել շաբաթը անգամ մը: Երկու ուղղութեամբ տոմսին արժէքը պիտի սկսի 310 եւրոյէն: Ան նաեւ յայտնած է, որ Իսրայէլը Հայաստանի քաղաքացիներուն համար դիւրացուցած է մուտքի արտօնագիր ստանալու կարգը: Եթէ նախապէս արտօնագիր ստանալու համար անհրաժեշտ էր երթալ Վրաստան, ուր կայ Իսրայէլի դեսպանատուն, ապա ներկայիս արտօնագիր կարելի է ստանալ զբօսաշրջային գործակալութիւններէն:*

## ՆԱԽԱԳԱՀ ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԸ ՄԱՍՆԱԿՑԵՑԱՒ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՕՐՈՒԱՆ ՆՈՒԻՐՈՒԱԾ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԵԱՆԸ

1

կարիք ունենք յիշելու եւ յիշեցնելու, երիտասարդ սերունդներին նաեւ փոխանցելու կարեւոր պատգամներ, որ մեզ թողել են Մայիսի 28-ը նախապատրաստողներն ու կերտողները:

Եղէ՛ք միասնական:

Եղէք՛ պետականօրէն կազմակերպուած:

Ապաւինէ՛ք սեփական ուժերին:

Այս պարագայում մենք ի զօրու ենք ոչ միայն վերականգնել դարերով ընդմիջուած պետականութիւնն ու անկախութիւնը, այլ այդ պետութիւնը տանել դէպի լուրջ բարձունքներ: Դրանց մեկնարկը տրուել է այստեղ, եւ այսօր մենք այստեղ կանգնած ենք բաց ճակատով՝ որպէս ազատ ու անկախ երկրի հպարտ քաղաքացիներ, որպէս հերոս պապերի ժառանգորդներ:

Սիրելի՛ հայրենակիցներ,

Կրկին շնորհաւորում եմ բոլորիս այս փառահեղ տօնի կապակցութեամբ:

Մեր ժողովրդին մաղթում եմ երջանկութիւն եւ յաջողութիւններ, իսկ մեր երկրին՝ խաղաղութիւն եւ վերելք:

Փա՛ռք մայիսյան հերոսամարտը կերտած հայ ժողովրդին:

Փա՛ռք Հայաստանի Հանրապետութեանը:

Փա՛ռք Հայաստանի Հանրապետութեան զինուած ուժերին:

Ուռա՛:»



## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

**Կիրակի, 23 Յունիս 2013**

**Ս. Պատարագ՝ Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ:**

Յաւարտ Ս. Պատարագի, Հոգեհանգստեան մասնաւոր պաշտօն պիտի կատարուի ***ՔՍԱՆ ՀՆՉԱԿԵԱՆՆԵՐՈՒ*** հոգւոցն ի հանգիստ, որոնք կախաղան հանուեցան եւ նահատակուեցան 1915-ին, Կ. Պոլսոյ մէջ:

Ս. Պատարագ առաւօտեան ժամը 10.00-ին

Երթ ու դարձը դիւրացնելու համար հաստատուած է հանրաշարժի սպասարկութիւն:

Սալահ Էլ-տին Հրապարակ (ծաղկավաճառին առջեւէն) ժամը 8:45-ին

Այծեմնիկ Հանգստեան Տան շէնքին առջեւէն ժամը 9:00-ին

*Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ*

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

**ՆՈՐԸՆՏԻՐ ԹԵՄԱԿԱՆ ԺՈՂՈՎԻ**

**2013 ՏԱՐԵՇՐՋԱՆԻ ԱՆԴՐԱՆԻԿ ՆԻՍՏ**

Աղեքսանդրիոյ Նորընտիր Պատկառելի Թեմական ժողովի 2013 տարեշրջանի Անդրանիկ Նիստը պիտի գումարուի Ուրբաթ, 31 Մայիս 2013-ի երեկոյեան ժամը 5:00-ին, Ազգային Առաջնորդարանի դահլիճին մէջ:

**ԴԻՒԱՆ ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ**
**ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**

ՏՈՄԱՐԱԳԻՏԱԿԱՆ

## 2013 Ս. ԶԱՏԻԿ ՄԱՐՏ 31, ՆՈՐ ՏՈՄԱՐ ՄԱՅԻՍ 5, ՀԻՆ ՏՈՄԱՐ

3

քաղաքական նկատումներով չէր համարձակեր Նոր Տոմարը գործածել: Յոյն Ուղղափառ Եկեղեցին, որուն Տիեզերական Պատրիարքը Օսմանեան Թուրքիոյ մէջ կը նստէր, անհրաժեշտ կը համարէր զգուշանալ պետական շահերուն դպչելէ: Անոնք եւս Հին Տոմարով գոհացան մինչեւ Առաջին Պատերազմի վախճանը:

Երբ Ցարական Ռուսիա տապալեցաւ 1917 թուի յեղափոխութեամբ, պոլշեւիկներ խկոյն որդեգրեցին Նոր Տոմարը որուն հետեւեցաւ Սովետական Հայաստանը 1923 թուականին: Ռուս ուղղափառ եկեղեցին եւս ընդունեց Նոր Տոմարի գործածութիւնը որուն հետեւեցաւ Վրաստանի եկեղեցին: Սակայն տարին չլրացած Ռուս եւ Վրացի եկեղեցիներ յետս կոչեցին իրենց որոշումը:

**Հայ Եկեղեցւոյ Դիրքը**

Հայաստանեայց Եկեղեցին սակայն մնաց Գէորգ Ե. Կաթողիկոսի Կոնդակին ուժով անսայլայլ Նոր Տոմարի գործածութեան մէջ առանց ազդուելու Ռուս եւ Վրացի եկեղեցիներու երկմիտ կեցուածքէն: Սփիւռքի հայ եկեղեցիները, բացառութեամբ Երուսաղէմի Հայոց Պատրիարքութեան, առանց դժուարութեան գործադրեցին Նոր Տոմարի դրութիւնը եւ Ս. Զատիկն ու յարակից տօները տօնախմբեցին իրենց դրացի քրիստոնեայ եկեղեցիներուն հետ միասին: Հայ Երուսաղէմը Սուրբ տեղեաց իրաւակցութեան կարեւոր հանգամանքով պիտի պահէր Հին Տոմարի դրութիւնը մինչեւ այսօր տեղւոյն Յոյն Պատրիարքութեան հետ միասին եւ համազօր պահելու համար սրբատեղեաց իրաւունքի իր բաժինը՝ Սուրբ Ծննդեան եւ Սուրբ Յարութեան տաճարներէն ներս:

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly



P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com



Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1705 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 13 ՅՈՒՆԻՍ 2013 ՀԱՏԸ ՉԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٧٠٥ الخميس ١٣ يونيه ٢٠١٣


**ԹՈՒՐՔԻԱ**

## Ս.Դ.Հ.Կ. Կ'ՈՂՋՈՒՆԷ ՔՍԱՆՆԵՐՈՒ ՈԳԵԿՈՉՈՒՄԸ ՊՈԼՍՈՅ ՄԷՋ

20'LER
20 Devrimci Ermeni, 15 Haziran 1915
20'ՆԵՐ
Քսան հայ յեղափոխականներ, 15 յունիս 1915 թ
Panel Tarihi:
13 Haziran 2013 saat: 19.30
Cezayir Salonu
Ճեզայիր Սրահ
13.յունիս.2013, ժամը՝ 19.30
Konuşmacılar:
Ragıp Zarakolu
Masis Kürkçügil
Mustafa Kahya
SDHP adına konuşmacı
Բանախօսներ՝
Ռագըփ Զարաքօղլու
Մասիս Քիւրքչիւկիլ
Մուսթաֆա Քահյա
ՍԴՀԿ ԿՎ խօսնակ

Իրենց նահատակութենէն ճիշդ 98 տարի ետք, Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան Կուսակցութեան կախաղան բարձրացած ղեկավարներու՝ Քսաններու ոգին վերստին պիտի վերադառնայ Սուլթան Պայազիտ Հրապարակ եւ Պոլիս, ուր յառաջիկայ օրերուն տեղի կ'ունենան Քսաններու յիշատակին նուիրուած աննախադէպ երկու միջոցառումներ, ներկայութեամբ Թուրք, Հայ եւ օտար մտաւորականներու, քաղաքական գործիչներու, աքթիւիստներու եւ լրատուամիջոցներու ներկայացուցիչներու: Ոգեկոչման հանդիսութիւնը տեղի կ'ունենայ այսօր՝ Հինգշաբթի, երեկոյեան ժամը 7:30-ին, Պոլսոյ կեդրոնական հատուածի «Ճեզայիր» սրահին մէջ: Ձեռնարկին ընթացքին խօսքեր կ'արտասանեն հեղինակաւոր իրաւապաշտպան Ռակըփ Զարաքօղլուն, Մասիս Քիւրքչիւկիլը եւ Մուսթաֆա Քահեան: Կ'արտասանուի նաեւ Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան Կուսակցութեան Կեդրոնական Վարչութեան ողջոյնի ուղերձը: Իսկ Շաբաթ, 15 Յունիս 2013-ի յետմիջօրէի ժամը 3:30-ին, Պոլսոյ Սուլթան Պայազիտ հրապարակին վրայ տեղի կ'ունենայ խորհրդանշական հաւաք: Կ'ակնկալուի, որ քսան երիտասարդներ ներկայացնեն Հնչակեան Քսան անմահներու կախաղան բարձրանալու տեսարանը: Այս առթիւ, կազմակերպիչ յանձնախումբը Պոլսոյ մէջ նաեւ հրապարակած է յատուկ աֆիշներ:

Ս.Դ.Հ.Կ. Կեդրոնական Վարչութենէն փոխանցուեցաւ, թէ ձեռնարկներու ծրագրաւորումն ու գործադրութիւնը նախաձեռնութիւնն են Թուրքիոյ մէջ գործող խումբ մը դեմոկրատական, ազատախոհ եւ մարդկային իրաւանց պաշտպան կազմակերպութիւններու եւ մտաւորականներու: Այս խմբակցութիւնները եւ մտաւորականները, անցնող երեք տարիներուն ընթացքին Պոլսոյ մէջ կազմակերպեցին Հայոց Ցեղասպանութեան ոգեկոչման միջոցառումներ, ճնշումներու եւ հալածանքներու պայմաններու տակ: Այս իրողութենէն ելլելով, Ս.Դ.Հ.Կ. Կեդրոնական Վարչութիւնը շրջանէ մը ի վեր յարաբերութեան մէջ մտած է նշեալ խմբաւորումներուն հետ: Քսաններու յիշատակը ոգեկոչող միջոցառումներու կազմակերպիչ մարմինը «մամլոյ եւ հանրային կարծիքին» ուղղուած յայտարարութիւն տարածած է, որուն մէջ մասնաւորապէս կ'ըսուի. «Թուրք ընկերվարականները եւ լուսաւորեալ դեմոկրատականները պահանջատիրութեան եւ դատի ճշմարտութեան մասին շատ սահմանափակ իմացութիւն ունին: Մինչդեռ անոնք, այս հողերուն վրայ լարուած կախաղաններու փայտերուն վրայ, իրենց կեանքը տուած ընկերվարականներու՝ նոյնինքն Փարամազի աւանդը շարունակողներն են: Փարամազի վճռակամութիւնը եւ անոր կախաղանէն արձակած կոչերը, մեզի համար, ընկերային ամուր կապի արտայայտութիւններ են, ժառանգութիւններ են, որոնք մենք յարգանքով կը յիշենք: Մոռացութեան դէմ արդարութիւնը իր տեղը գտնելու համար պէտք է անպայման ելակէտ մը մեկնարկէ ինքզինք: Քսաններու կախաղաններուն վրայ նահատակութեան 98 ամեակը եւ Փարամազի յիշատակը օրակարգի վրայ բերելը Թուրքիոյ ժամանակակից եւ ժողովրդավար ըլլալուն փորձաքարն է: Փարամազին եւ ընկերներուն հանդէպ արդարութիւն պահանջելով՝ պետութիւն թէ ժողովուրդ, ներողութեան խնդրանքը ներկայացուցած կ'ըլլանք: Մեր այս նետելիք քայլը, բարոյեական մտահոգութիւններէ անդին, մեր պատմական ամօթներուն դէմ հանդիման գալու եւ արիւնահոսող վէրքերը փակելու ուղղութեամբ տարուած շատ կարեւոր նախաքայլ կը

↬ 2

**ՎԱՏԻԿԱՆ**

## ՀՌՈՄԻ ՊԱՊԸ ՎԵՐԱՀԱՍՏԱՏԵՑ՝ «ՀԱՅՈՑ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԻՒՆԸ 20-ՐԴ ԴԱՐՈՒ ԱՌԱՋԻՆ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԻՒՆՆ Է»



Հռոմի Պապը եւ Հայ Կաթողիկէ պատրիարքը Վատիկանի մէջ:

Յունիս 3-ին Ֆրանչիսկոս Սրբազան Քահանայապետը յատուկ ունկնդրութիւն շնորհեց Հայ Կաթողիկէ Ամենապատիւ Տէր Ներսէս Պետրոս ԺԹ. կաթողիկոս պատրիարքին, որուն ընկերակցող պատուիրակութեան մաս կը կազմէին Անարատ Յղութեան Հայ քոյրերու ընդհանուր մեծաւորուհի մայր Եւդոքսիա Քէչիշեան, Քահանայապետական Լեւոնեան Հայ վարժարանի մեծաւոր հայր Գէորգ ծ.վ. Նորատունկեան, փոխտեսուչ՝ հայր Գրիգոր վրդ. Պատիշահ, մի քանի հաւատացեալներ, ինչպէս նաեւ Հայ հաղորդամիջոցներու ներկայացուցիչներ:

Պատուիրակութեան անդամները ընդունելէ առաջ, Սրբազան Քահանայապետը եւ ամենապատիւ Հոգեւոր Տէրը ունեցան առանձնակի զրոյց մը, որուն ընթացքին, ընդհանուր ակնարկով մը անդրադառնալէ ետք Հայ կաթողիկէ Եկեղեցւոյ մասին, ամենապատիւ Հոգեւոր Տէրը Սրբազան Քահանայապետէն խնդրեց, որ Սուրբ Աթոռը հանդիսաւորապէս մասնակցի Հայոց Ցեղասպանութեան 100-րդ տարելիցի յիշատակումին, եւ այս առիթով քահանայապետական յորդոր մը ուղղէ համայն քրիստոնեաներուն, ներկայացնելու համար 1915-ի Մեծ Եղեռնի նահատակներուն վկայութիւնը: Հոգեւոր Տէրը խնդրեց նաեւ որ Վատիկանի պետութիւնն ալ մասնակցի այս հարիւրամեակի յիշատակութեան՝ դրոշմաթուղթերու հրատարակութեամբ:

↬ 3

## ՊԱՊԸ Կ'ՈՒԶԷ ՀԱՅԱՍՏԱՆ ԱՅՑԵԼԵԼ



Հռոմի Ֆրանչիսկոս Պապը կը մտադրէ Հայաստան այցելել 2015 թուականին, մասնակցելու համար Հայոց Ցեղասպանութեան հարիւրամեակին նուիրուած կրօնական արարողութեան: Այս մասին յայտարարած է սրբազան քահանայապետը, Վատիկանի մօտ Հայաստանի դեսպանատան բացման արարողութեան ընթացքին:

Թրքական Zaman թերթին համաձայն, Ցեղասպանութեան գծով Պապին վերջին յայտարարութիւնները լարուածութիւն յառաջացուցած են թրքական շրջանակներուն մէջ: Թուրքիոյ արտաքին գործոց նախարարութիւնը իր մօտ կանչած է Վատիկանի դեսպանը եւ անոր փոխանցած է Անգարայի դժգոհութիւնը, սպառնալով Վատիկանի հետ երկկողմանի յարաբերութիւններու խաթարմամբ:

Նշենք, որ Հայաստանի դեսպան Միքայէլ Մինասեան իր հաւատարմագրերը յանձնեց Հռոմի Պապին: Առանձնազրոյցի ընթացքին քննարկուած են երկկողմանի պատմական յարաբերութիւնները, նաեւ Ֆրանչիսկոս Պապին փոխանցուած է Հայաստան այցելելու պաշտօնական հրաւէր, նախագահ Սերժ Սարգսեանի ստորագրութեամբ: Դեսպան Մինասեան ողջունած է Պապին վերջին յայտարարութիւնները, որոնց մէջ սրբազան քահանայապետը վերստին ճանչցած էր Հայոց Ցեղասպանութեան փաստը:

**ՄԻԱՑ. ՆԱՀԱՆԳՆԵՐ**

## ՃՈՆ ՔԵՐՐԻ.- «ԲՈԼՈՐՍ Կ'ՈՒԶԵՆՔ ԼՈՒԾՈՒԱԾ ՏԵՍՆԵԼ ՂԱՐԱԲԱՂԻ ՀԱՐՑԸ»



Էդուարդ Նալբանդեան եւ Ճոն Քերրի Պետական Քարտուղարութեան կեդրոնէն ներս:

Միացեալ Նահանգներու պետական քարտուղար Ճոն Քերրի Յունիս 3-ին եւ 4-ին Ուաշինկթընի մէջ յաջորդական հանդիպումներ ունեցաւ Ատրպէյճանի եւ Հայաստանի արտաքին գործոց նախարարներու՝ Էլմար Մամետեարովի եւ Էդուարդ Նալբանդեանի հետ, քննարկելով Լեռնային Ղարաբաղի հարցը:

Յունիս 4-ին, ընդունելով Էդուարդ Նալբանդեանին Ճոն Քերրի նախ ըսած է, որ Հայաստան կարեւոր գործընկեր է Միացեալ Նահանգներուն՝ շարք մը հարցերու մէջ: Ապա, ան անդրադարձած է ղարաբաղեան հարցին, ընդգծելով, որ այդ խնդիրի լուծման համար քայլեր պէտք է ձեռնարկեն ոչ միայն Հայաստանն ու Ատրպէյճանը, այլ նաեւ տարածաշրջանի միւս երկրները: «Ակնյայտ է, որ ամենակարեւոր հարցը, որ մենք բոլորս կ'ուզենք լուծուած տեսնել, Ղարաբաղի սառեցուած հակամարտութիւնն է: Չափազանց կարեւոր է, որ բոլոր կողմերը փորձեն ճանապարհ գտնել փակուղիէն դուրս գալու համար, որ այս հակամարտութիւնը կը պահէ մշտապէս սրուած եւ հաւանական վտանգներով լեցուն վիճակի մէջ», - յայտարարած է Քերրի, յատուկ շեշտելով, որ բոլոր կողմերը ըսելով նկատի ունի ոչ միայն Ատրպէյճանին, այլ նաեւ Թուրքիային, Ռուսաստանին եւ Իրանին:

Ճոն Քերրի նաեւ յայտնած է, որ ղարաբաղեան հարցէն բացի մտադիր է փակ հանդիպումի ընթացքին Հայաստանի արտաքին գործոց նախարարին հետ քննարկել նաեւ հայ-ամերիկեան տնտեսական համագործակցութիւնը, Հայաստանի մէջ

↬ 4

**ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ**

## ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

Այսու կը տեղեկացնենք, թէ 7 Ապրիլ 2013-ին, Աղեքսանդրիոյ Պատկ. Թեմական Ժողովի մասնակի ընտրութիւնները կատարուած ըլլալով, Թեմական Ժողովի 2013 տարեշրջանի Անդրանիկ Նիստը գումարուեցաւ, Ուրբաթ 31 Մայիս 2013-ին, կեսօրէ ետք ժամը 5:00-ին, Ազգային Առաջնորդարանին մէջ, նախագահութեամբ Եգիպտահայոց Թեմի Բարեխնամ Առաջնորդ Գերշ. Տ. Աշոտ Եպսկ. Մնացականեանի եւ ներկայութեամբ 16 երեսփոխաններու:

Սրբազան Հօր «Տէրունական Աղօթք»-էն եւ «Հոգւոց»-էն ետք, Պատկ. Թեմական Ժողովի Անդամ՝ Ողբ. Նուպար Շահպազեանի եւ համօրէն ննջեցելոց Ազգիս Հայոց հոգւոցն ի հանգիստ, Պատկ. Թեմական Ժողովը անցաւ Օրակարգի նիւթերու քննարկման:

2013-ի տարեշրջանի Թեմական Ժողովի Դիւանը ընտրուեցաւ միաձայնութեամբ հետեւեալ կազմով:

Տիար Մկրտիչ Խանճեան Ատենապետ
Տիար Ժորժ Լէյլէկեան Փոխ-Ատենապետ
Տիար Լեւոն Փափազեան Ատենադպիր

Նոյն Նիստին տեղի ունեցաւ նաեւ Պատ. Քաղաքական Ժողովի անդամներու ընտրութիւնը, եւ Սրբազան Հօր հետ մեկուսանալէ ետք, նորընտիր Քաղաքական Ժողովի անդամները գումարեցին իրենց անդրանիկ նիստը, եւ Թեմական Ժողովին ներկայացուցին նոր Դիւանի կազմը՝

Տոքթ. Արմէն Գավուքճեան Ատենապետ
Տիար Ալեքս Րէիզեան Փոխ-Ատենապետ
Տիար Գէորգ Գավուքճեան Ատենադպիր
Տիար Արթին Թօսունեան Գանձապահ
Տիար Հրայր Մարտիկեան Խորհրդական
Տիար Ժիրայր Մանուկեան Խորհրդական
Տիար Զաւէն Գուլթնույեան Խորհրդական

Օրակարգի 6-րդ հարցն էր, ընտրութիւն 2012-ի տարեշրջանի Քննիչ Յանձնախումբի:

Թեմական Ժողովի Ատենապետ Տիար Մկրտիչ Խանճեանի առաջարկին վրայ միաձայնութեամբ ընտրուեցան 2012-ի տարեշրջանի Քննիչ Յանձնախումբը հետեւեալ կազմով՝

Տիար Զաւէն Լէյլէկեան
Տիար Կարի Պօհճէլեան
Տիար Ժորժ Լէյլէկեան

Օրակարգի 8-րդ հարցն էր, ընտրութիւն Նուիրատուութեանց Յանձնախումբի:

Նուիրատուութեանց Յանձնախումբը ընտրուեցաւ միաձայնութեամբ, հետեւեալ կազմով, քառամեայ շրջանի համար, Ատենապետութեամբ՝ Թեմական Ժողովի Ատենապետ Տիար Մկրտիչ Խանճեանի եւ իր հետ ունենալով աջակից Տիար Արթօ Խանձեան եւ Տիար Պերճ Խորասանճեան:

Ժողովը փակուեցաւ Սրբազան Հօր «Պահպանիչ»-ով երեկոյեան ժամը 6:45-ին:

**ՏԵՂԵԿԱՏՈՒ ԴԻՒԱՆ ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ԱԶԳԱՅԻՆ ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ**

**ՄԻԱՑ. ՆԱՀԱՆԳՆԵՐ**

## ԼՈՒԻԶԻԱՆԱ ՆԱՀԱՆԳԻ ԾԵՐԱԿՈՅՏԸ ՃԱՆՉՑԱՒ ԼԵՌՆԱՅԻՆ ՂԱՐԱԲԱՂԻ ԱՆԿԱԽՈՒԹԻՒՆԸ

*Հայ Ամերիկեան Խորհուրդի Լուիզիանայի մասնաճիւղի տարած աշխատանքներուն շնորհիւ, Նահանգի Ծերակոյտը ճանչցաւ Լեռնային Ղարաբաղի Հանրապետութեան անկախութիւնը:*



Սփիւռքի նախարարը հանդիպում կ'ունենայ Վազգէն Գալթաքճեանի եւ ՍԴՀԿ Հայաստանի վարչութեան անդամներուն հետ:

*Յունիս 30-ին Ծերակոյտը վաւերացուց թիւ 151 բանաձեւը, որ կու գայ պաշտօնապէս ճանչնալու Լեռնային Ղարաբաղի Հանրապետութիւնը, զօրակցութիւն յայտնելով, որ ան զարգանայ որպէս ազատ եւ անկախ երկիր ու կարելիութիւն ունենայ իր քաղաքացիներուն ապահովել այդ ազատութիւնները:*

*Բանաձեւը միաժամանակ կոչ կ'ընէ Միացեալ Նահանգներու նախագահին եւ Գոնկրէսին, որպէսզի աջակցին Լեռնային Ղարաբաղի ազատ ինքնորոշման իրաւունքին ու անոր անկախութեան եւ անկարելիութիւնը ունենայ կառուցողական իր մասնակցութիւնը բերել՝ միջազգային հանրութեան կողմէ տարուող այն աշխատանքներուն, որոնք կը ձգտին արդար եւ մնայուն խաղաղութիւն ապահովել այդ կարեւոր տարածաշրջանէն ներս:*

↳ 2

## ՀԱՅ ԽԱՂԱՂԱՊԱՀՆԵՐԸ ԿԱՐՈՂ ԵՆ ԼԻԲԱՆԱՆ ՄԵԿՆԻԼ ԱՅՍ ՏԱՐՈՒԱՅ ԸՆԹԱՑՔԻՆ




*Հայաստանի պաշտպանութեան նախարարի մամուլի խօսնակ Արծրուն Յովհաննիսեանն հաստատեց այն տեղեկութիւնները, որ ՄԱԿ-ը դիմել է Հայաստանին՝ Լիբանանում, Սիրիայի սահմանին կից հայ խաղաղապահներ տեղակայելու համար:*

*«Լիբանանում ՄԱԿ-ի հովանու ներքոյ իրականացուող խաղաղապահ առաքելութեան հրամանատար երկիր հանդիսացող Իտալիան պաշտօնապէս ՄԱԿ-ի միջոցով դիմել է Հայաստանին առաքելութեան կազմում հայկական զօրախումբ ընդգրկելու առաջարկութեամբ: Զօրախումբը իրականցնելու է խաղաղապահ առաքելութեանը բնորոշ սովորական գործառոյթներ: Հայկական զօրախումբը ընդգրկելու վերաբերեալ ընթանում են բանակցութիւններ ՄԱԿ-ի եւ Իտալիայի պաշտպանութեան նախարարութեան հետ՝ կառուցուածքի, տեղակայման վայրի, ապահովման, քանակի եւ միւս հարցերի շուրջ», – «Ազատութիւն» ռադիոկայանին փոխանցեց խօսնակը՝ յաւելելով, որ բանակցութիւնների*

↳ 4

## ԹՈՒՐՔ ԱԶԳԱՅՆԱԿԱՆՆԵՐԸ ԿԸ ԹԻՐԱԽԱՒՈՐԵՆ ՀԱՅՈՑ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԻՒՆԸ ՃԱՆՉՑՈՂ ՑՈՒՑԱՐԱՐՆԵՐԸ

*«Ֆէյսպուք» ընկերային ցանցին մէջ Turk Polisi (Թըրքական ոստիկանութիւն) անուամբ էջը սկսած է թիրախաւորել հայերը եւ Հայոց Ցեղասպանութիւնը ճանչցող թուրքերը:*

*Շուրջ 40 հազար մարդու կողմէ դիտուող էջին մէջ նիւթ մը հրատարակուած է, որուն մէջ կը փորձեն ցոյց տալ, թէ «Թուրքիոյ հակակառավարական ցոյցերու հետեւանքները ինչպիսին են, եւ որոնք կանգնած են անոնց ետեւը»:*

*Ֆէյսպուքեան էջին մէջ տեղ գտած գրութիւնը ունի «Թաքսիմի իրական դէմքը» վերնագիրը: Գրառման մէջ կը նշուի, որ Թուրքիոյ Յեղափոխական ընկերվարական աշխատաւորական կուսակցութեան անդամները Սթամպուլի փողոցը Հրանդ Տինք կ'անուանեն, Թուրքիոյ կ'անուանեն մարդասպան եւ Հայոց Ցեղասպանութիւնը իրականացնող:*

*Նիւթին կից կը ներկայացուի տեսանիւթ մը, ուր թուրք ընկերվարականները թրքական պետութիւնը կ'անուանեն մարդասպան:*

**ԳԱՀԻՐԷ**

## ԳԱԼՈՒՍՏԵԱՆ-ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

### ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆ

Ուրախութեամբ կը տեղեկացնենք յարգոյ հասարակութեան եւ ազնիւ ծնողներուն, Վարժարանիս 2012-2013 ուսումնական տարեշրջանի Զ. Նախակրթարանի եւ Գ. Պատրաստականի Պետական քննութեանց արդիւնքները:

Ստորեւ կուտանք ցանկը համապատասխան նիշերով:

**Զ. Նախակրթարան**

| | | |
|---|---|---|
| Ռիթա Սարգիս Զամքէրթճեան | Գերազանց | 96.31 % |
| Մարի Մանուէլ Գրիգորեան | Գերազանց | 95.65 |
| Նաթալի Գէորգ Աւանեան | Գերազանց | 94.85 |
| Լիլիթ Յակոբ Սայեան | Գերազանց | 93.32 |
| Արմէն Կարօ Աբգարեան | Գերազանց | 91.74 |
| Ժուէլ Էսքանտր Շաքարճեան | Գերազանց | 89.89 |
| Ալեքսան Ճորճ Զերտելեան | Գերազանց | 89.58 |
| Մարիղա Ռոպէր Սալմօ | Գերազանց | 85.25 |
| Րինա Մակտի Շաֆիք | Շատ լաւ | 81.80 |
| Ժիրայր Յակոբ Գարակէօզեան | Շատ լաւ | 81.57 |
| Մակի Մակէտ Ատլի | Շատ լաւ | 81.44 |
| Րաֆֆի Սաատ Նակիպ | Շատ լաւ | 80.66 |

**Գ. Պատրաստական**

| | | |
|---|---|---|
| Ճուլեա Գէորգ Աւանեան | Գերազանց | 91.25 |
| Լորիկ Հրայր Տրդատեան | Գերազանց | 88.83 |
| Ռիթա Գէորգ Կոտոլոշեան | Գերազանց | 87.33 |
| Ռուպինա Սաատ Նակիպ | Գերազանց | 85.58 |
| Քրիս Ռոպէր Նակիպ | Գերազանց | 85.5 |
| Սիլվա Րաֆիք Պաթանի | Շատ լաւ | 84 |
| Գոհար Յարութիւն Վարդանեան | Շատ լաւ | 83.75 |
| Ժորժ Սարգիս Շավարշ | Շատ լաւ | 83.58 |
| Շատի Իսահակ Ղազարեան | Շատ լաւ | 77.16 |

Վարժարանի Տնօրէնութիւնը եւ ուսուցչական կազմը ջերմօրէն կը շնորհաւորեն յարգելի ծնողները եւ աշակերտները իրենց յաջողութեան առթիւ:

***ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ***

** Այս առիթով խմբագրութիւնս կը շնորհաւորէ յաջողած աշակերտները եւ կը գնահատէ Տնօրէնութեան եւ ուսուցչական կազմին յարատեւ ջանքերը:*

**ՖՈՒԹՊՈԼ**

## ԱՇԽԱՐՀԻ ԲԱԺԱԿԻ ԶՏՈՒՄԻ ՄՐՑՈՒՄՆԵՐ 4-0 ԱՐԴԻՒՆՔՈՎ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԽՈՒՄԲԸ ԴԱՆԻՈՅ ՄԷՋ ՋԱԽՋԱԽԵՑ ՀԻՒՐԸՆԿԱԼ ԿԱԶՄԸ



*Քոփենհակընի մէջ հանդիպեցան Դանիոյ եւ Հայաստանի հաւաքականները՝ Աշխարհի բաժակի զտումի մրցումներու ծիրէն ներս: Հայաստանի մարզիկները սկիզբէն տպաւորեցին իրենց բարձր մակարդակով: Եուրա Մովսիսեան առաջին վայրկեանին Օզպիլիսէն ստացած փոխանցումը կոլի վերածեց ձախէն աջ հարուածով մը: 19րդ վայրկեանին, Օզպիլիս՝ Ալեքսանեանէն ստացած փոխանցումը կոլի վերածեց հեռահար հարուածով մը: Երկրորդ կիսախաղի 59րդ վայրկեանին Մովսիսեանը նորէն Օզպիլիսէն ստացած փոխանցումը կոլի վերածեց: Խումբին վերջին կոլը նշանակեց Հենրիխ Մխիթարեան, երբ 82րդ վայրկեանին Ետիկարեանի փոխանցումը գեղեցիկ կոլի վերածեց: Հոս հարկ է նշել, որ Հայաստանի պաշտպանութիւնն ալ գործեց անսխալ:*

*Այսպիսով Հայաստան իր յոյսերը վառ պահեց այս խմբակին մէջ:*

1 ↳

## Ս.Դ.Հ.Կ. Կ'ՈՂՋՈՒՆԷ ՔՍԱՆՆԵՐՈՒ ՈԳԵԿՈՉՈՒՄԸ...

*համարենք: Պետութեան մը մէջ, ուր խաղաղութեան եւ ժողովրդավարութեան պահանջքներ կը բարձրացուին, այդ պետութեան ձեւաւորման համար երբեմն բաց, երբեմն գոց շատ բաներ կը խօսուին:*

*Փարամազն ու իր ընկերները, որպէս ընկերվարականներ, ուրիշներու չեն պատկանիր: Փարամազն ու իր ընկերները այլոց ընկերվարականները եւ այլոց հերոսները ըլլալէն պէտք է դուրս բերենք եւ անոնց դարձնենք մեր պատմութեան մէկ մասնիկը: Անոնք պէտք է ներկայացուին որպէս մերը՝ որպէսզի յաջորդ սերունդներուն այդ անունները ներկայացնենք որպէս օրինակներ: Մենք կը հաւատանք, որ միայն այդ ժամանակ այս տարածաշրջանին մէջ ապրող ժողովուրդներուն համար արդարութեան եւ հաւասարութեան հիմքերու վրայ ապրելու ապագայ մը պիտի ապահովենք: Հակառակ պարագային, նախորդ սերունդներուն կողմէ մեր ուսերուն վրայ ձգուած ամօթալի բեռը, պատմութեան ընթացքին եղած դէպքերուն հանդէպ յառաջացած կրաւորականութիւնը աւելի պիտի ծանրացնէ, հասցնելով անտանելի վիճակի մը, զոր պիտի փոխանցենք գալիք սերունդներուն»:*

*Այս առթիւ, Ս.Դ.Հ.Կ. Կեդրոնական Վարչութիւնը իր ողջոյնի խօսքը յղած է նախաձեռնող յանձնախումբին:*

ԺԸՆԵՒ

## ՇԱՐԼ ԱԶՆԱՒՈՒՐ ՆԵՑՈՒԿ ԿԸ ԿԱՆԳՆԻ «ԵՓՐԵՄ» ՈՍԿԵՐՉԱԿԱՆ ՏԱՆ «ԽԱՉՔԱՐ» ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹԵԱՆ

*2013 Թուականին, Լիբանանահայ նշանաւոր ոսկերչական «Եփրեմ» հաստատութիւնը նախաձեռնեց «Խաչքար» ոսկեայ ադամանդակուռ ապարանջանի ստեղծման գլուխ-գործոց մը, որ կը հետապնդէ հայկական ազգային եւ բարեգործական վեհ նպատակներ:*



*9-րդ դարուն յայտնուած հայկական խաչքարերը մեծ նշանակութիւն ունէին հայ ժողովուրդի եւ Քրիստոնէութեան պատմութեան մէջ եւ այսպիսի ոսկերչական ստեղծագործութեան մարմնաւորումը պիտի նշանակէր որպէս աշխարհասփիւռ հայերու միաւորման եւ ազգային փառքի խորհրդանիշ: Անոր համար է որ «Խաչքար»ի որեւէ գնում կը նպաստէ հայկական ժառանգութեան երկարակեցութեան, մանաւանդ որ վաճառքի 5 տոկոսը պիտի տրամադրուի հայկական դպրոցներու օգնութեան հիմնադրամին:*

*Որպէսզի այս ազգանուէր նախաձեռնութեան վրայ հայ եւ օտար գնորդներու ուշադրութիւնը սեւեռէ, «Եփրեմ» ոսկերչական տունը կապուեցաւ աշխարհահռչակ երգիչ, Զուիցերիոյ մօտ Հայաստանի Հ.Հ. դեսպան Շարլ Ազնաւուրին, որ ազնուօրէն հրաւիրեց լիբանանահայ հաստատութիւնը հանդիպելու Ժընեւի «Intercontinental» պանդոկին մէջ:*

*Հայազգի նշանաւոր երգիչը եւ մեծ հայրենասէրն ու մարդասէրը, հրճուանքով ընդունեց «Խաչքար»էն օրինակ մը, հայկական նռան գինիի սրուակին հետ եւ խոստացաւ ամէն կարելի միջոցներով օժանդակել այս բարեսիրական ծրագրի յաջողութեան՝ օգնելու համար հայ ազգի դարբնոց-դպրոցներուն:*

*Հայկական Այբուբենով եւ ամերիկահայ անմահ գրող Ուիլիըմ Սարոյեանի խօսքերով, թանկագին քարերով պարուրուած հայ ժողովուրդի դարաւոր պատմութիւնն ու ոսկերչական արուեստը ներկայացնող «Խաչքար»ը, միշտ պիտի զարդարէ մեծ հայորդի Շարլ Ազնաւուրին դաստակը՝ որպէս խորհրդանիշ Սփիւռք-Հայաստան միասնութեան՝ ի փառս հայ դպրոցին ու գիտութեան բարգաւաճման:*

*Ժընեւ-Պէյրութ* **ՀԱՄՕ ՄՈՍԿՈՖԵԱՆ**

## ՀՌՈՄԻ ՊԱՊԸ ՎԵՐԱՀԱՍՏԱՏԵՑ՝ «ՀԱՅՈՑ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԻՒՆԸ 20-ՐԴ ԴԱՐՈՒ ԱՌԱՋԻՆ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԻՒՆՆ Է»

1

*Այս մտերմիկ հանդիպումէն ետք, Հոգեւոր Տիրոջ ընկերացող պատուիրակութիւնը ներկայացաւ Սրբազան Քահանայապետին եւ աջահամբոյրէն ետք, հայ կաթողիկէ հաւատացեալներուն անունով Անոր նուիրեց պրոնզեայ «Խաչելութիւն» մը, որուն հեղինակն է լիբանանահայ արուեստագէտ՝ Րաֆֆի Թոգաթլեան: Ըստ «Ռատիօ Վատիկան»-ի, այս առթիւ արտասանած խօսքին մէջ, Սրբազան Քահանայապետը նշեց թէ Հայոց Ցեղասպանութիւնը «20րդ դարու առաջին ցեղասպանութիւնն է», եւ յորդորեց ներկաները աշխատելու միշտ Եկեղեցւոյ եւ ազգին միութեան ի նպաստ, ապրելով համերաշխութեամբ եւ ընդդիմանալով սատանայի փորձութիւններուն:*

## ԼՈՒԻԶԻԱՆԱ ՆԱՀԱՆԳԻ ԾԵՐԱԿՈՅՏԸ ՃԱՆՉՑԱՒ ԼԵՌՆԱՅԻՆ ՂԱՐԱԲԱՂԻ ԱՆԿԱԽՈՒԹԻՒՆԸ

2

*Այսպիսով, Մասաչուսեթսէն, Ռոտ Այլընտէն եւ Մէյնէն ետք, Լուիզիանան կը դառնայ ամերիկեան չորրորդ նահանգը, որ պաշտօնապէս կը ճանչնայ Լեռնային Ղարաբաղի Հանրապետութեան անկախութիւնը:*

*ՍԴՀԿ Կեդրոնական Վարչութեան անդամ եւ ՀԱԽ-ի Լուիզիանայի մասնաճիւղի ատենապետ ընկ. Վազգէն Գալթաքճեան այս օրերուն գտնուելով Հայաստան իր գոհունակութիւնը յայտնեց օրէնսդիր մարմինի որոշումին առթիւ: Ան Յունիս 4-ին հանդիպում ունենալով ՀՀ Սփիւռքի նախարար Հրանոյշ Յակոբեանի հետ մանրամասնութիւններ փոխանցեց Լուիզիանայի հայութեան, ինչպէս նաեւ այդ որոշումի մասին:*

*Իր ողջոյնի խօսքին մէջ նախարար Յակոբեան շնորհակալութիւն յայտնեց Վազգէն Գալթաքճեանին եւ Լուիզիանայի մէջ ապրող այն 100 հայ ընտանիքներուն, որոնք թէեւ փոքր համայնք կը կազմեն, սակայն գործնական մասնակցութիւն կը բերեն նահանգի հասարակական-քաղաքական կեանքին:*

<u>ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ԽՈՀԵՐ</u>

## ԿԱՆԽԱՊԱՅՄԱՆ՝ ՄՏԱԾԵԼՈՒ ՀԱՄԱՐ

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

Խօսիլ, գրել, յօրինել, ստեղծագործել, երգել, ասմունքել, բժշկել, մաթեմաթիքով զբաղուիլ կը նշանակէ մտածել:

Իր գոյութեան առաջին պահէն մարդը սկսած է մտածել: Եթէ ընդունինք որ մարդկային ցեղը (homo sapiens) կազմուած է ասկէ 500 հազար տարի առաջ (անշուշտ, նախամարդէն մարդու անցումը պայմանական է), ուրեմն մարդը 500 հազար տարի շարունակաբար մտածած է (սխալ է նաեւ կարծել՝ որ մտածելը միայն մարդու յատկութիւնն է, բայց առ այժմ մնանք մարդու եւ մարդկային ցեղի սահմաններուն մէջ): Մարդկային այս ժամանակա-տարածութեան մէջ գոյացած երգ-երաժշտութիւնը, բանաստեղծութիւնը եւ ծիսակատարութիւնը կը կազմեն այն ընդարձակ շերտը, որ այսօրուան եզրաբանութեամբ կը կոչուի բանաւոր մշակոյթ:

Քաղաքակրթութիւնը եւ «քաղաքակիրթ» մտածողութիւն-մշակոյթը սկիզբ առած է ասկէ 5-6 հազար տարի առաջ, երբ ստեղծուած են թագաւորութիւններն ու քրմապետութիւնները՝ իրենց տարածքային սեփականութիւններով եւ այդ սեփականութիւնները դուրսի աշխարհէն զանազանող ու պաշտպանող քարէ պատերով: Պատեր՝ որոնք բաժնեցին ներսը (քաղաքակրթութիւն) դուրսէն (բանաւորութիւն): Բանաւորութենէն ծնած բայց անկէ խուսափած քաղաքակրթութիւնը ձգտեցաւ հաստատագրման, եւ շուտով ստեղծեց իր գրութեան համակարգերը՝ *իր* մտածմունքը ամրացնելու նպատակով:

Բնականաբար, քաղաքակրթութիւնը միշտ չէ որ մնաց թագաւոր-կղերականի պատերուն մէջ (հին յունական մշակոյթ), երբեմն գրաւորութիւն - քաղաքակրթութիւնն ու բանաւորութիւնը ընթացան համաձոյլ (պուտտիզմ, հինտուիզմ), տեղի ունեցան ներթափանցումներ: Բայց մտածողութեան երկու համակարգեր շարժեցան զուգահեռաբար:

Բանաւորութեան համար գոյութիւնը (մարդը, կեանքը, փորձառութիւնը) կը կազմէ մտածումին հիմքը, քաղաքակրթութեան համար՝ մտածումն է գոյութեան հիմքը: Բանաւորութեան համար մտածումը կապուած է փորձառութեան հետ՝ ան փորձառութեան գոյաբանութիւնն (ontology) է, քաղաքակրթութեան համար գոյաբանութենէն կը բխի փորձառութիւնը, եթէ երբեւէ փորձառութեան պէտքը զգացուի:

Արդ, կանխամտածումներ, կանխամտածուած կաղապարներ բոլորովին կը բացակային բանաւոր մշակոյթին մէջ, քանի որ գոյութիւնը չի կրնար ունենալ «գոյանալու» պայմաններ: Պայմանը նոյն ինքը գոյութիւնն է: Քաղաքակիրթ աշխարհը համակարգուած կառուցուածք մըն է, ի տարբերութիւն բանաւորութեան անարշիսթական կառուցուածքին (անարշիզմ չի նշանակեր անկանոնութիւն, ինչպէս յաճախ կը ներկայացուի հիմնահոսանքին կողմէ, այլ կը նշանակէ հաւաքականօրէն ինքնասահմանուած համայնքային կազմակերպուածութիւն): Համակարգուած կառուցուածքին համար ընդունելի է «նախա» կամ «կանխա» դրոյթները՝ նախ կազմակերպել, յետոյ գործել: Արդարեւ, ստեղծուած նախապայմանը ժամանակի ընթացքին կը դառնայ ինքնուրոյն, նախապայմանը կը դադրի «նախա» ըլլալէ եւ կ'ընդունուի իբրեւ այդպիսին: Նախապայմանը («նախա»-ով կամ առանց «նախա»-յի) կը վերածուի առարկայականացուած գոյութեան, իսկ առարկայականութիւնները մտածումի (վիճաբանութիւն, խնդրականացում, սահմանափակում, բացասում) ենթակայ չեն՝ անոնք «առարկայական» են:

Մինչեւ արդիականութեան յառաջացումը, քաղաքակրթութեան ստեղծած նախապայմանները ունէին դրական անկայունութիւններ: Պարզ օրինակ մը: Հայկական միջնադարի բոլոր պատմիչները գրած են իշխաններու, թագաւորներու եւ հոգեւորականներու «հովանաւորութեամբ»: Բնականաբար, իրենց գրութիւնները պիտի ըլլային իշխանական բնոյթով, պիտի կատարէին անձնականացումներ թագաւորներու, իշխաններու եւ կաթողիկոսներու: Ասիկա ինքնին նախամտածում մըն է: Միաժամանակ, այս նոյն պատմագրութիւններուն մէջ կարելի է գտնել մեծ քանակութեամբ երկրորդային շերտեր՝ նախամտածումներէ ազատագրուած, որոնք հիմքը կազմած են անոնց չարժունակութեան եւ կարելիութիւն տուած անվերջ մեկնաբանութեան: Այս երկրորդային շերտերը կապուած կրնան ըլլալ բառային ճկունութեան հետ: Բառերն ու բառակապակցութիւնները կրնան տարբեր իմաստային ուղղութիւն տալ իշխանական ոճով գրուած առաջնային նախադասութիւններուն: Կամ, հասարակական շարժումներու (օրինակ՝ Թոնդրակեան շարժումին) մասին պատմագիրներու պարտադրաբար բացասական վերաբերմունքին տակ կարելի է գտնել շարժումին բուն յատկանիշները: Կամ, ոչ-դիտաւորեալ արտայայտութիւններ կրնան նոյնիսկ մատնել գովերգուող թագաւորին կամ կաթողիկոսին չահամոլութիւնները եւ բացայայտել անոնց քաղաքական ապակողմնորոշումները, ինչպէս, օրինակ, Պետրոս Գետադարձ կաթողիկոսի դերը Բագրատունեաց Թագաւորութեան վերացման մէջ՝ ինչպէս կարելի է կարդալ նոյն ինքը Պետրոս Գետադարձին գովաբանող Արիստակէս Լաստիվերցիի պատմութեան երկրորդային շերտերուն մէջ: Արդի պատմագրութեան հիմնական մասը՝ առարկայականութեան անունին տակ, վերացուց երկրորդային շերտերը:

Միայն արդիականութեան (modernism) շրջանին է որ կանխամտածումը դարձաւ օրէնք եւ հիմնահոսանքին համար հանդիսացաւ մտածումի ու գիտելիքի հսկողութեան միջոց: Միայն այս շրջանին է՝ որ 500 հազար տարի շարունակած բանաւոր մշակոյթը հասաւ իր քայքայման եզրին: Քաղաքակրթութեան արդիականացման շնորհիւ, բանաւորութիւնն աշխարհի մէջ այսօր կ'ապրի իր վերջին պահերը:

Ինչպէ՞ս կը գործէ արդի կանխամտածումը:

Համալսարանական միջավայրի մէջ անպակաս են ուսանողական, ուսուցչական եւ փրոֆեսորական թէզերը եւ ուսումնասիրութիւնները, բոլորն ալ գրուած թուանշան կամ աստիճան ստանալու պարտաւորութեամբ: Թուանշանն ու աստիճանը կու գան մտածումէն առաջ, մտածումը ուղղուած պէտք է ըլլայ դէպի թուանշանը: Ուսումնասիրութիւն-մտածելու անհրաժեշտութիւնը կը ծագի միայն հանգրուաններով՝ թուանշան-աստիճանի պահերուն, չըսելու համար՝ վերջիններուն ծառայելու համար:

Արեւմտեան հիմնահոսանքային համալսարանի մը մէջ, օրինակ, իմփերիալիսթական արեւելապաշտութիւնը՝ սայիտեան իմաստով, չ'ապահովեր աքատեմիք թուանշան, թէեւ Էտուարտ Սայիտի *Արեւելապաշտութիւնը* (Orientalism) ամենաշատ վաճառուող գիրքերէն է:

Դաշնակահար Կլէն Կուլտի (Glenn Gould) ազատագրուած Պախը՝ կատարողի գաղափարական-փիլիսոփայական մեկնաբանութիւններուն հետ միասին, ողջունելի չէ երաժշտանոցի քննութիւններուն, ուր ուսանող դաշնակահարը պէտք է նուագէ «ճշգրիտ» Պախ, ուրիշ հարց՝ թէ Կուլտ կը հանդիսանայ ամենասիրուած դաշնակահարներէն մէկը եւ մեծաքանակ գրութիւններ կը մեկնաբանեն իր գաղափարախօսութիւնները: Երաժշտանոցը կը պահանջէ Պախի մասին կանխապայմանաւորուած մտածողութիւն:

Քաղցկեղի (cancer) փաստուած բուժումներ՝ Gerson Therapy, Laetrile/B17, ESSIAC եւ այլն, որոնք կը գործածեն այլընտրանքային բժշկութեան բնական, ոչ-քիմիական բուժումներ, արգիլուած նիւթեր են համալսարանական եւ բժշկական հիմնարկներուն մէջ: Ինչո՞ւ: Որովհետեւ այս բուժումները հիմնուած են բնական բոյսերու վրայ, չունին քիմիական բաղադրումներ եւ ունին բուժումի իրական կարելիութիւն, հետեւաբար մեծ վնաս կը ներկայացնեն դեղագործական բազմազգ ընկերութիւններու դրամական կուտակումներուն եւ ամերիկեան հսկայ հիւանդանոցներու շահոյթներուն (նշանակալի քանակութեամբ ուսումնասիրութիւններ եւ վաւերագրական ֆիլմեր հրապարակուած են այս նիւթերուն մասին, որոնք դուրս կը մնան հիմնահոսանքի գիտելիքային կայսրութենէն): Բնական դարմանումներու մասին կատարուած համալսարանական ուսումնասիրութեան

4

ՑԱՆԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ԽՈՀԵՐ

## ԿԱՆԽԱՊԱՅՄԱՆ՝ ՄՏԱԾԵԼՈՒ ՀԱՄԱՐ

3

մը Թուանշանը հաւասար է զերոյի: Համալսարանը կը պահանջէ քաղցկեղի մասին կանխորոշուած դիրքորոշում:

Մինչ-արդիականութիւնը քաղաքակրթութեան ժամանակաշրջաններու եւ ընոյթներու անուանումները կը նշանակէր կատարուածէն ետք, երբ անցեալը կը դառնար անուանումի կարօտ իրադարձութիւն, ինչպէս՝ ֆէոտալիզմ, դրամատիրութիւն (capitalism), դասականութիւն (classicism), ռոմանթիզմ, տպաւորապաշտութիւն (impressionism): Ի դարը շրջեց այս հասկացութիւնը: Եզր-անուանումները դրուեցան կա՛մ իրադարձութեան ծագումին հետ միասին, եւ կա՛մ նախապէս հնարուեցան՝ իրադարձութիւն ստեղծելու նպատակով: Երկու պարագաներն ալ կ'ենթադրեն կանխապայմանաւորուած մտածում: Այս սկզբունքով ստեղծուեցան մտածումի դպրոցներ:

Օրինակ: 1960-ականներուն, գլխաւորաբար Միացեալ Նահանգներու մէջ, մեծ աղմուկ բարձրացուցին երաժշտական մինիմալիսթները՝ Steve Reich, Philip Glass, John Adams եւ քանի մը ուրիշներ: Քանի մը՝ եւ ոչ շատ, ուրիշներ, որպէսզի լաւագոյն կերպով գործէ դրամատիրութեան փայփայած աստղայնացման ընթացքը: Երաժշտական մինիմալիզմը կը գործէ նախապայմանի, կանխամտածումի մը վրայ. փոքր մոթիվ մը՝ որ անփոփոխ կը կրկնուի ու կը բազմակրկնուի, ապա նոյն մոթիվին տարբերակը՝ որ դարձեալ կը բազմակրկնուի, ապա երկրորդին տարբերակը, եւ այսպէս շարունակ: Զարմանալի է գտնել երաժշտահաններ՝ որոնց «մասնագիտութիւնն» է մոթիվային կրկնութիւնը եւ որոնք իրենց ողջ կեանքը կը ստեղծագործեն միայն ու միայն մոթիվային կրկնութիւններով՝ մինիմալիզմի շուկայացուած անունին տակ:

Կամ, դարձեալ երաժշտութեան պարագային, կը գտնենք սերիալիզմը, տասներկու-հնչիւնային թեքնիքը (twelve-tone technique), ամբողջական սերիալիզմը (total serialism) կամ set theory-ները, ուր երաժշտահանը ստեղծագործելէ առաջ կը կազմակերպէ հնչիւնաշարերու յաջորդականութիւնները, առանց որոնց ան անկարող կ'ըլլայ մտածել:

Իկոր Սթրավինսքիի ամենատարածուած գործերը իր առաջին շրջանի յօրինումներն են՝ *Pétrouchka, Le sacre du printemps, L'oiseau de feu*, որոնց մէջ հետեւած է ոչ մէկ կանոնի՝ բացի ստեղծագործութենէն բխած համոզումներէ: Երաժշտահանի այս շրջանը յետագային կոչուեցաւ «Ռուսական շրջան», որ պարզ նկարագրութիւն-կողմնորոշումէ մը անդին չ'անցնիր: Սթրավինսքի իր կեանքի երրորդ շրջանը կապեց տասներկու-հնչիւնային թեքնիքին հետ՝ կանխապէս սահմանուած ստեղծագործական թեքնիք մը, արտադրելով իր նուազ կատարուող գործերը:

Փիէռ Պուլէզ (Pierre Boulez) իր ամբողջական սերիալիզմին համար պէտք ունեցաւ հիմնել *միայն* արդի երաժշտութեան յատկացուած հիմնարկ՝ IRCAM: Երբեւէ ԺԹ դարուն ռոմանթիքները պէտք ունեցա՞ծ են հիմնել ռոմանթիք երաժշտութեան հիմնարկ՝ իրենց գործերը կատարելու համար: Մէյ մը որ հիմնուեցաւ IRCAM-ը, ան որոշեց թէ ով պէտք է կոչուի արդիական, այսինքն ով արժանի է ըլլալու տաղանդաւոր: Ծանօթ դէպք մըն է, երբ Պուլէզ առաջին անգամ ունկնդրելով Կորեցքիի (Górecki) Երրորդ Համանուագը, ուղղակիօրէն արտասանած է՝ "merde!": Անշուշտ, IRCAM-էն կը վրիպին Քարլ Օրֆ, Ալան Յովհաննէս, յետարդիականները (postmodernist) եւ Կորեցքիի համանուագին նման «ինքնակամ» արդիապաշտութիւնը: Անիկա հիմնարկ մըն է իշխելու արեւմտեան մտածողութեան վրայ՝ պարտադրելով արդիական երաժշտութեան մաս կազմելու նախապայմանները: Նոյնն է պարագան միւս հիմնարկացուած արուեստներուն եւ մտածողութիւններուն:

Կանխապայմանը նաեւ արդի շրջանի սովորականութիւններէն մէկը դարձած է: Ամէնուրեք կարելի է գտնել գրողներ՝ որոնք իրենց մտածումները թուղթին կը յանձնեն միայն այն ժամանակ երբ վստահ ըլլան ստանալիք գումարին մասին: Առարկութիւնս գումարի մասին չէ, երանի իւրաքանչիւր գրող գործարարէն աւելի եկամուտ ունենայ: Առարկութիւնս այն է՝ որ եթէ գումարի համաձայնութիւն չկնքուի, գրողը կը մերժէ մէկ տող անգամ գրել: Ինչպէ՞ս կարելի է միտքեր ունենալ եւ մերժել զանոնք արտայայտել: Ինչպէ՞ս կարելի է որոշել չմտածել: Ինչպէ՞ս կարելի է որոշել մտածել միայն տուեալ պահու մը: Գիտեմ անձեր՝ որոնք կը գրեն ու կը տպագրուին իրենց յանձնուած «պաշտօն»-ին հանգամանքով: Երբեք չեն գրած մինչեւ պաշտօնին տիրանալը, երբեք ալ պիտի չգրեն յետագային: Պեթհովէն, Կոմիտաս Վարդապետ, Արշակ Ալպօյաճեան մտածած են այնքան, որ յետ-մահու թողած են անտիպ ձեռագիրներու հսկայական ժառանգութիւններ: Կանխապայմանաւորուած գրողները անտիպներ չեն թողուր...:

## ՀԱՅ ԽԱՂԱՂԱՊԱՀՆԵՐԸ ԿԱՐՈՂ ԵՆ ԼԻԲԱՆԱՆ...

2

*նպատակով յաջորդ շաբաթ Հռոմ է մեկնելու Հայաստանի պաշտպանութեան նախարարութեան մասնագիտական աշխատանքային խումբը, ինչին կը յաջորդի Հայաստանի զինուած ուժերի գլխաւոր շտաբի պետի այցը Իտալիա, աւելի մանրամասն պայմանաւորուածութեան համար:*

ԾՈՆ ՔԵՐՐԻ.-

## «ԲՈԼՈՐՍ Կ'ՈՒԶԵՆՔ ԼՈՒԾՈՒԱԾ ՏԵՍՆԵԼ ՂԱՐԱԲԱՂԻ ՀԱՐՑԸ»

1

*ժողովրդավարութեան ամրապնդումը ու տնտեսութեան զարգացումը, ինչպէս նաեւ «Ամերիկայի բարեկամ հայ ժողովուրդի ապահովութիւնը»:*

*Իր պատասխան խօսքին մէջ Էդուարդ Նալբանդեան ըսած է, որ հայ-ամերիկեան յարաբերութիւնները այժմ կը գտնուին պատմութեան մէջ ամենաբարձր մակարդակի վրայ: Երկու երկրներն ալ, ըստ Հայ Նախարարի, կը կիսեն միեւնոյն տեսակէտը Ղարաբաղի հարցով, առ այն, որ խնդիրը պէտք է լուծուի բացառապէս խաղաղ ճանապարհով, միջազգային իրաւունքի սկզբունքի՝ ուժ չգործադրելու, ազգերու ինքնորոշման եւ տարածքային ամբողջականութեան հիման վրայ:*

*«Հայաստանն ու Միացեալ Նահանգները միեւնոյն դիրքորոշումն ունեն նաեւ հայ-թուրքական յարաբերութիւններն առանց նախապայմանների կարգաւորելու հարցում, ինչպէս նաեւ կիսում են ժողովրդավարութեան, հիմնարար իրաւունքների, ազատութեան, շուկայական տընտեսութեան միեւնոյն արժէքները»,- յայտարարած է Նալբանդեան:*

*Հայաստանի արտաքին քաղաքական գերատեսչութեան ղեկավարը նաեւ յատուկ երախտագիտութիւն յայտնած է Նախագահ Պարաք Օպամայի վարչակազմին՝ հայ-ամերիկեան յարաբերութիւններու սերտացման գծով ունեցած մեծ ներդրումին համար:*

*Հանդիպումի ընթացքին Ծոն Քերրի ըսած է, որ իր համար յատկապէս հաճելի է ողջունել Հայաստանի արտաքին գործոց նախարարին, քանի որ ինք բազմաթիւ ընկերներ ունի հայ համայնքէն ներս եւ տարիներ շարունակ աշխատած է անոնց հետ՝ շարք մը հարցերով:*

*«Կը կարծեմ որ, բոլորը գիտեն, որ Մասաչուսեթսը Հայաստանէն դուրս ապրող ամենամեծ հայկական համայնքներէն մէկուն տունն է, որուն համար մենք շատ երջանիկ ենք», - ըսած է ԱՄՆ-ի պետական քարտուղար եւ Մասաչուսեթսի նախկին ծերակուտական՝ Ծոն Քերրի:*

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

**Կիրակի, 23 Յունիս 2013**

**Ս. Պատարագ՝ Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ:**

Յաւարտ Ս. Պատարագի, Հոգեհանգստեան մասնաւոր պաշտօն պիտի կատարուի ***ՔՍԱՆ ՀՆՉԱԿԵԱՆՆԵՐՈՒ*** հոգւոցն ի հանգիստ, որոնք կախաղան հանուեցան եւ նահատակուեցան 1915-ին, Կ. Պոլսոյ մէջ:

Ս. Պատարագ առաւօտեան ժամը 10.00-ին

Երթ ու դարձը դիւրացնելու համար հաստատուած է հանրաշարժի սպասարկութիւն:

Սալահ Էլ-տին Հրապարակ (ծաղկավաճառին առջեւէն) ժամը 8:45-ին

Այծեմնիկ Հանգստեան Տան շէնքին առջեւէն ժամը 9:00-ին

*Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ*

ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

## ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

Աղեքսանդրիոյ Ազգային Իշխանութիւնը խոր ցաւով կը գուժէ մահը Պատկառելի Թեմական ժողովի անդամ, Պատուարժան Քաղաքական ժողովի նախկին անդամ՝

**ՈՂԲ. ՆՈՒՊԱՐ ԽԱՉԱՏՈՒՐ ՇԱՀՊԱԶԵԱՆԻ**

անսպասելի մահը, որ պատահեցաւ Շաբաթ, 19 Մայիս 2013-ին, յետ միջօրէի ժամը 3.00-ին, իր բնակարանին մէջ:

Ազգային Յուղարկաւորութեան տխուր արարողութիւնը տեղի ունեցաւ Կիրակի, 20 Մայիս 2013-ին, յետ միջօրէի ժամը 2.00-ին Շաթպիի Ազգային Գերեզմանատան Ս. Գէորգ մատրան մէջ:

Յուղարկաւորութեան արարողութեան կարգը կատարեց Աղեքսանդրիոյ Առաջնորդական Փոխանորդ եւ Հոգեւոր Հովիւ, Արժ. Տ. Գրիգոր Քհնյ. Մուրատեան, շրջապատուած եկեղեցւոյ Բարեջնորհ Ա. Սարկաւագ Նազարէթ Գարթալեանի եւ Դպրաց դասի:

Յուղարկաւորութեան ներկայ էին Պատկառելի Թեմական ժողովի անդամները, Մշակութային-Բարեսիրական եւ Մարզական միութիւններու վարչականներն ու անդամները, ինչպէս նաեւ ողբացեալին գաղափարակից ընկերները, բարեկամները եւ ծանօթները, որոնք եկած էին իրենց վերջին յարգանքը մատուցանելու ողբացեալին, որ սիրուած եւ յարգուած անձնաւորութիւն մըն էր:

Հոծ բազմութեան ներկայութեամբ Արժ. Տէր Հայրը յաւուր պատշաճի քարոզ մը տուաւ, իր խօսքին մէջ դրուատեց ողբացեալին բարեմասնութիւններն ու արժանիքները, եւ Աստուծմէ մխիթարութիւն հայցեց հանգուցեալի կնոջ, զաւակներուն եւ հարազատներուն, ինչպէս նաեւ թարգմանը հանդիսացաւ Եգիպտահայոց Բարեխնամ Առաջնորդ Գերշ. Տ. Աշոտ Ս. Եպիսկ. Մնացականեանի, Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ Ազգային իշխանութեանց խորազգաց ցաւակցութիւնները յայտնելով հանգուցեալի սգակիր պարագաներուն:

Տիար Պերճ Հալաճեան Դամբանական մը խօսեցաւ յանուն «Յուսաբեր»-ի Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ շրջանակներուն: Ան մանրամասնօրէն դրուատեց հանգուցեալին տասնամեակներու վրայ երկարաձգուող գործունէութիւնը, որպէս Պատկառելի Թեմական ժողովի անդամ, Պատուարժան Քաղաքական ժողովի նախկին անդամ եւ ազգային գործիչ:

Տիար Պերճ Հալաճեան Ամէնակալ Աստուծմէ հայցեց, որպէսզի հանգուցեալի հոգին Երկնային Արքայութեան արժանացնէ, ինչպէս նաեւ համբերութիւն եւ մխիթարութիւն պարգեւէ բոլոր իր սգակիր պարագաներուն, գործակից եւ գաղափարակից ընկերներուն եւ գաղութիս համայն անդամներուն:

Այս տխուր առթիւ բացի հարազատներէն եւ Ազգային Իշխանութենէն, ծաղկեպսակներ ղրկուած էին նաեւ «Յուսաբեր»-ի շրջանակի, մշակութային եւ մարզական միութիւններու կողմէ ի նշան վերջին յարգանքի:

Նոյն օրը ցաւակցութիւններ ընդունուեցան Ազգային Առաջնորդարանին մէջ եւ հանգուցեալին հոգւոյն համար սուրճ մատուցուեցաւ:

Թող Տէրը լուսաւորէ հանգուցեալին հոգին եւ երկնային անթառամ պսակներուն արժանացնէ:

Թող Եգիպտոսի ասպնջական հողը թեթեւ ըլլայ ողբացեալին յոգնատանջ ոսկորներուն:

**ՏԵՂԵԿԱՏՈՒ ԴԻՒԱՆ**
**ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1706 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 27 ՅՈՒՆԻՍ 2013 ՀԱՏԸ ՋԵՌՔԷ 75 Ե. ԴԻԿ. عدد رقم ١٧٠٦ الخميس ٢٧ يونيه ٢٠١٣


ԹՈՒՐՔԻԱ

## ՔՍԱՆՆԵՐՈՒ ՀԵՏՔԵՐՈՎ



Հնչակեան Քսան Կախաղաններու Նահատակութեան յիշատակի 98-րդ ոգեկոչումը անոնց նահատակութեան վայրին՝ Պոլսոյ Պայազիտ հրապարակին վրայ կազմակերպելը աննախադէպ ձեռնարկ էր թէ՛ իր բովանդակութեամբ, թէ՛ նախապատրաստութեան հանգրուաններով, թէ՛ արդիւնքներով: Կազմակերպութեամբ Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան Կուսակցութեան Քարոզչական Մարմնին, Պէյրութի Սահակեան-Լեւոն Մկրտիչեան Գոլէճի սրահին մէջ 25 Յունիսի երեկոյեան տեղի ունեցաւ «Քսաններու Հետքերով» հանդիսութիւն, բացայայտելու համար երեք օրերու ընթացքին Պոլսոյ մէջ կազմակերպուած ձեռնարկներու մանրամասնութիւնները, անոնց ընթացքը եւ կուսակցութեան Կեդրոնական Վարչութեան Պոլսոյ մէջ ունեցած հանդիպումներու եւ այցելութիւններու նկարագրականը:



Պոլսոյ մէջ կուսակցութեան Կեդրոնական Վարչութիւնը ներկայացնող Ընկ. Ալեքսան Քէօչկէրեան իր խօսքին մէջ բացայայտեց Պոլիս այցելութեան եւ Պոլսոյ մէջ կազմակերպուած Քսաններու ձեռնարկներու քաղաքական ու ազգային նշանակութիւնը՝ տարբեր մակարդակներու վրայ: Ան նախ բացայայտեց, որ նման հանդիսութիւններ կազմակերպելու միտքը յղացուած էր վերջին տարիներուն, Պոլսոյ մէջ Ցեղասպանութեան ոգեկոչման ձեռնարկներու լոյսին տակ:

«Մեր մօտ միտք ծագեցաւ գտնել այս մարդիկը, կապ հաստատել իրենց հետ. որոնումները սկսանք տարբեր ուղղութիւններով եւ հասցէներով. միտքը, աշխատանքները մնացին շատ սահմանափակ թիւով ընկերներու միջեւ, սակայն վստահ էինք, որ օր մը տեղէ մը արձագանգ պիտի գար», ըսաւ Ընկ. Քէօչկէրեան: Ան դիտել տուաւ, որ վերջնական կապը հաստատուած էր քանի մը ամիս առաջ, Հայաստան բնակող նախկին պոլսահայ Սարգիս Հացպանեանին միջոցաւ: «Պայման էր, որ կազմակերպիչները դրական վերաբերմունք ունենային մեր ազգային պահանջատիրական դատին հանդէպ: Մեր առաջին գրոյցէն իսկ իմացանք, որ այս մարդիկն էին Ցեղասպանութեան ոգեկոչման ձեռնարկներու կազմակերպիչները՝ իրաւապաշտպան Ռակըփ Զարաքօլուն, Նոր Սոցիալիստական Կուսակցութեան առաջնորդ Քատիր Աքընը, Կանաչներու եւ Ձախ Ապագայ Կուսակցութիւնը, «Նոր Զարթօնք» հայկական ↳ 3

ԼԵՀԱՍՏԱՆ

## ՀՀ ՆԱԽԱԳԱՀ ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆ Կ'ԱՅՑԵԼԷ ԼԵՀԱՍՏԱՆ



Հայաստանի եւ Լեհաստանի նախագահները՝ մամլոյ ասուլիսի ընթացքին:

Հայաստանի Հանրապետութեան նախագահ Սերժ Սարգսեան պաշտօնական այցելութեամբ ժամանեց Լեհաստան, ուր հանդիպում ունեցաւ իր պաշտօնակից Պրոնիսլաւ Քոմորովսքիի հետ: Քննարկուեցան երկկողմանի յարաբերութիւնները, քաղաքական ու տնտեսական կապերը զարգացնելու միջոցները:

Նախագահ Սարգսեան բարձր գնահատեց Երեւան-Վարշաւա յարաբերութիւնները, զանազան ոլորտներէ ներս: Մամլոյ միացեալ ասուլիսի ընթացքին, Սարգսեան անդրադարձաւ Ատրպէյճանի թշնամական վարկագիծին: «Մեր հարեւանը կը հերոսացնէ ցեղային պատճառներով մարդասպանութիւն գործողին, կը սպառնայ հարուածել քաղաքացիական օդանաւերը եւ պատերազմով ժողովուրդի մը զրկել իր հողին վրայ ապրելու իրաւունքէն: Իսկ մեր միւս հարեւանը՝ Թուրքիան փակած է սահմանները ու կը հրաժարի յարաբերութիւններ հաստատելու նախաձեռնութենէն», նշեց նախագահ Սարգսեան:

### ԼԵՀԱՍՏԱՆԻ ՄԱՅՐԱՔԱՂԱՔ ՎԱՐՇԱՒԱՅԻ ՊՈՒՐԱԿՆԵՐԷՆ ՄԷԿԸ ԱՆՈՒԱՆՈՒԵՑԱՒ «ՀԱՅԿԱԿԱՆ ՊՈՒՐԱԿ»

Անուանակոչման հանդիսաւոր արարողութեան իր մասնակցութիւնը բերաւ Հայաստանի Հանրապետութեան նախագահ Սերժ Սարգսեան: Պուրակը վերանուանելու որոշումը առնուած է Վարշաւայի քաղաքային խորհուրդին կողմէ՝ ի նշան հայլեհական բարեկամութեան: Սարգսեան երէկ այցելեց նաեւ Լիուպլին քաղաքի մօտ գտնուող նախկին համակեդրոնացումի բանակավայր, ուրկէ խօսեցաւ ցեղասպանութիւններու երեւոյթին մասին: Ան կոչ ուղղեց նման ոճիրներ մէկ անգամ ընդմիշտ կանխող եւ դատապարտող համընդհանուր բանաձեւ գտնել: Անոր խօսքով, նոր ցեղասպանութիւնները կը կանխուէին, եթէ 20րդ դարու առաջին ցեղասպանութիւնը՝ Մեծ Եղեռնի փաստը ճանչցուէր ու դատապարտուէր: ↳ 4

## ՌԱԶՄԱՎԱՐԱԿԱՆ ԴԱՇՆԱԿԻՑԻ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐԸ՝ «ՀԱՅԱՍՏԱՆ ՊԷՏՔ ՉԷ ԱՆՀԱՆԳՍՏԱՑՆԷ ԶԷՆՔԻ ՎԱՃԱՌՔԸ ԱՏՐՊԷՅՃԱՆԻՆ»

Հաւաքական անվտանգութեան պայմանագրի կազմակերպութեան ընդհանուր քարտուղար Նիքոլայ Պորտուժա Երեւանէն յայտարարեց, որ Ռուսիա Ատրպէյճանին զէնք կը վաճառէ, հաւասարութեան սկզբունքներէն մեկնելով: «Այս առեւտուրի հարց է, չուկայ է: Այս՝ Ռուսիոյ տնտեսութիւնն է: Այս է սկզբունքը, որ ուշադրութեան կեդրոնին եղած է, ձեր հարեւանին զէնք վաճառելու որոշումը կայացնելու ժամանակ», ըսաւ Պորտուժա:

Լրատուամիջոցներ քանի մը օր առաջ տեղեկութիւններ հրջան ըրին, ըստ որոնց, Ռուսիա սկսած է զինուորական ցամաքային ուժերու սարքաւորումներ տրամադրել Ատրպէյճանին: Վաճառուած զէնքերու խմբաքանակներուն մաս կը կազմեն զրահապատ մեքենաներ, հակաօդային պաշտպանութեան սարքեր եւ հրետանիի կտորներ: Ըստ տեղեկութիւններուն, ռուսական ընդհանուր վաճառքի գումարը կը հասնի 1 միլիառ տոլարի: ↳ 2

## «ՀԱՅԱՍՏԱՆ» ՀԱՄԱՀԱՅԿԱԿԱՆ ՀԻՄՆԱԴՐԱՄԸ ԿԸ ՇԱՐՈՒՆԱԿԷ ԱՋԱԿՑԻԼ ՍՈՒՐԻԱՀԱՅԵՐՈՒՆ

«Հայաստան» Համահայկական Հիմնադրամը սուրիահայութեան աջակցութեան ծրագրի շրջագիծէն ներս կը շարունակէ աջակցիլ մեր հայրենակիցներուն, ինչպէս կը յայտնէ Հիմնադրամի մամուլի ծառայութիւնը:

Այս նպատակով բացուած դրամատան հաշիւին փոխանցըւած գումարները ձեւաւորուած են մասնաւորապէս Հիմնադրամի Ֆրանսայի, Գերմանիոյ, Միացեալ Նահանգներու Արեւմտեան ափի, Արժանթինի, Պրազիլի, Լիբանանի եւ Շուէտի տեղական մարմիններու, Հեռուստամարաթոն 2012-ի ծիրէն ներս հաւաքած գումարներէն, ինչպէս նաեւ Հայաստանի եւ արտերկրի տարբեր իրաւաբանական եւ անհատ անձերու նուիրատուութիւններէն:

Իրականացուած են ծրագիրներ առողջապահութեան, կրթութեան եւ ընկերային ոլորտներէն ներս:

2013-ի Յունիսի դրութեամբ 100,000 եւրօ (Ֆրանսայի տեղական մարմին), 12,000 եւրօ (Գերմանիոյ տեղական մարմին), 100,000 ԱՄՆ տոլար (Լիբանանի տեղական մարմին) ուղղուած են Սուրիոյ մէջ բնակող մեր հայրենակիցներու տարբեր կարիքներուն: Գումարի զգալի մասը յատկացուած է Հալէպի հայկական վարժարաններու ուսուցիչներուն՝ որպէս աշխատավարձ:

Հիմնադրամի Պրազիլի, Արժանթինի եւ Շուէտի տեղական մարմիններու հանգանակած գումարներով Հիմնադրամը փոխհատուցած է 110 սուրիահայ ուսանողի ուսման վարձը, ինչպէս նաեւ վեց սուրիահայերու սրտի վիրահատութեան եւ երեքի յուղարկաւորութեան ծախսերը:

Հիմնադրամի Ամերիկայի Արեւմտեան ափի տեղական մարմինի հաւաքած 10,000 տոլարով նիւթական օժանդակութիւն ցուցաբերուած է Երեւանի Կիլիկեան դպրոցին, ուր կ'ուսանին Հայաստան տեղափոխուած սուրիահայ երեխաներ:

Գործարարներ Հրայր Յովնանեանի եւ Արա Աբրահամեանի նուիրաբերած միջոցներով, Հիմնադրամը ֆինանսաւորած է Հալէպ-Երեւան-Հալէպ չուերթներ:

ԹՈՒՐՔԻԱ

## ԹՈՒՐՔԻՈՅ ՄՕՏ ԱՄՆ ԴԵՍՊԱՆԸ ԱՅՑԵԼԱԾ Է ԱՂԹԱՄԱՐԻ ՍՈՒՐԲ ԽԱՉ ՀԱՅԿԱԿԱՆ ԵԿԵՂԵՑԻՆ



Միացեալ Նահանգներու դեսպանը իր տիկնոջ հետ կ՚այցելէ Աղթամարի Ս. Խաչ Եկեղեցին:

*Թուրքիայում ԱՄՆ դեսպան Ֆրենսիս Ռիկարդոնէն կնոջ հետ այցելել է Վան, եղել է նաեւ Վանի Աղթամար կղզու Սուրբ Խաչ եկեղեցում, տեղեկացնում է «Միլլիյէթը»:*

*Նա յայտարարել է, որ Վանում ջերմ ընդունելութեան է արժանացել: «Վանի հետ կապուած գեղեցիկ յիշողութիւններ ունեմ: Այն այժմ շատ է փոխուել: Մի ժամանակ շրջագայել եմ այստեղ եւ ցանկանում էի Վանակատու գնել»,- պատմել է դեսպանը:*

*Նա նշել է, որ իրենք ցանկանում են մեծացնել ամերիկացի զբօսաշրջիկների հետաքրքրութիւնը Վանի հանդէպ: «Վաղը Ֆլորիդայից Վան ամերիկացիներ են գալու: Ցանկացայ խրախուսել մեր քաղաքացիներին»,-ասել է դեսպանը:*

*Վանի նահանգապետ Մունիր Քարաօղլուն դեսպան Ռիկարդոնէին եւ նրա կնոջը Սուրբ Խաչ եկեղեցու պատկերով գեղանկար է նուիրել:*

## ԱՐԱՄ ԽԱՉԱՏՐԵԱՆԻ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԵՑԱՆ ԵՈՒՆԵՍՔՕ-Ի «ԱՇԽԱՐՀԻ ՅԻՇՈՂՈՒԹԻՒՆ» ՑԱՆԿԻՆ ՄԷՋ



*18 Յունիսին Քորէայի Հանրապետութեան մէջ կայացած ԵՈՒՆԵՍՔՕ-ի «Աշխարհի Յիշողութիւն» ծրագրի կոմիտէի նիստին, ԵՈՒՆԵՍՔՕ-ի Գլխաւոր տնօրէնին որոշումով եւ Միջազգային խորհրդատուական կոմիտէի եզրակացութեան հիման վրայ, ծրագրի Միջազգային ցուցակին մէջ (Memory of the World International Register) արձանագրուած է «Արամ Խաչատրեանի Ձեռագիր Նոթաները եւ Ֆիլմ-երաժշտութիւնը»:*

*Հայկական յայտը համալրեց աշխարհի բոլոր ցամաքամասերէն ներկայացուած քարէն մինչեւ ձայնային կրիչներու վրայ պահպանուող 299 փաստաթուղթեր պարունակող ցանկը: Այսուհետեւ, Արամ Խաչատրեանի անունը կը դասուի այս ցանկին մէջ արդէն իրենց տեղը գտած աշխարհահռչակ այնպիսի երգահաններու հետ, ինչպիսիք են՝ Պեթհովէն, Պրամս եւ Շուպէն:*

*«Արամ Խաչատրեանի Ձեռագիր Նոթաները եւ Ֆիլմ-երաժշտութիւնը» յայտը ԵՈՒՆԵՍՔՕ-ի կեդրոնակայան ներկայացուած էր 2010 թուականին եւ մինչեւ 2012 թուականը համալրուած էր յաւելեալ նոթաներու ձեռագիրներով:*

*Այսպիսով, «Աշխարհի Յիշողութիւն» ծրագրին մէջ իր տեղը գտաւ հայկական երրորդ փաստագրական ժառանգութիւնը. 1997 թուականէն Հայաստանը ներկայացուած էր Մեսրոպ Մաշտոցի անուան Մատենադարանով, իսկ 2011-էն՝ «Բենիամին Մարգարեանի Կալակթիքաներու Մասին Ուսումնասիրութեամբ»:*

*ԵՈՒՆԵՍՔՕ-ի «Աշխարհի Յիշողութիւն» ծրագիրը մեկնարկած է 1992 թուականին՝ աշխարհի մէջ գոյութիւն ունեցող արխիւներու եւ գրադարաններու արժէքաւոր հաւաքածոներու անհետ կորուստը կանխելու նպատակով: Այս ծրագրի ծիրէն ներս գոյութիւն ունի «Աշխարհի Յիշողութեան» ԵՈՒՆԵՍՔՕ-ի միջազգային ցուցակ, որ կը ներկայացնէ փաստագրական ժառանգութեան ցանկ, ուր ընդգրկուած են այն փաստաթուղթերը, ձեռագիրները, տեսա-հնչիւնային նիւթերն ու գրադարանային հաւաքածոները եւ արխիւները, որոնք ճանչցուած են իբրեւ բացառիկ նշանակութիւն ունեցող արժէքներու մարմնաւորում եւ պէտք է վկայագրուին եւ պահպանուին ամբողջ աշխարհի մարդկութեան համար:*

↳ 4

## ՀԱՅԱՍՏԱՆ Կ՚ՈՒԶԷ ՈՒՆԵՆԱԼ ԻՐ ՍԵՓԱԿԱՆ ԱՐԲԱՆԵԱԿԸ

*Հայաստան կը ծրագրէ տիեզերք ուղարկել Armsat անունով իր սեփական արբանեակը: Իշխանութիւնները որոշած են օգտագործել Հայաստանին պատկանող ուղեծիրային երկու դիրքերը, որոնցմէ մէկը նախատեսուած է հեռարձակումներու, միւսը՝ հեռահաղորդակցութեան նպատակներու համար:*

*Փոխադրութեան եւ հաղորդակցութեան նախարարութեան աշխատակազմի ղեկավար Գագիկ Գրիգորեան «Ազատութիւն» ռատիոկայանին հաղորդած է, որ այդ նպատակով ստեղծուած «Արմկոսմոս» ընկերութիւնը այժմ կը զբաղի տիեզերքի ուղեծիրային դիրքին Հայաստանի իրաւունքի արձանագրութեան հարցերով, որմէ ետք Հայաստան կրնայ արձակել իր սեփական արբանեակը:*

*Ըստ Գրիգորեանի, այս ծրագիրը պիտի արժէ շուրջ 250 միլիոն տոլար: Ան աւելցուցած է, թէ պիտի ներգրաւուին անձնական ներդրում կատարողներ, քանի «ծրագիրը, բնականաբար, չի լինի միայն պետական միջոցներով: Կը լինի անպայման պետութիւն-մասնաւոր հաստուած համագործակցութեան միջոցով», բացատրած է Գրիգորեան:*

## ՇՐՋԱՆԱՌՈՒԹԵԱՆ ՄԷՋ ԴՐՈՒԱԾ Է ԿԻՒՄՐԻՆ ԱՊՀ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ՄԱՅՐԱՔԱՂԱՔ ՀՌՉԱԿՈՒԵԼՈՒՆ ՆՈՒԻՐՈՒԱԾ ՊԱՇՏՕՆԱԿԱՆ ՏԵՍԱՀՈԼՈՎԱԿԸ




*Կիւմրին 2013 թուականի Անկախ Պետութիւններու Հասարակապետութեան (ԱՊՀ) մշակութային մայրաքաղաք հռչակուելուն առթիւ հանդիսաւոր արարողութիւն ու տօնական համերգ տեղի պիտի ունենայ 30 Յունիսին:*

*Արդէն շրջանառութեան մէջ դրուած է Կիւմրին ԱՊՀ մշակութային մայրաքաղաք հռչակուելուն նուիրուած պաշտօնական տեսահոլովակը:*

*5 Դեկտեմբեր 2012 թուականին, Աշխաբատի մէջ ԱՊՀ պետութիւններու ղեկավարներու խորհուրդի նիստին Կիւմրին յայտարարուած էր 2013-ի ԱՊՀ մշակութային մայրաքաղաք:*

ԳԱՀԻՐԷ

## ՃՇԴՈՒՄ
## ԳԱԼՈՒՍՏԵԱՆ-ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ
### ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆ

Ուրախութեամբ կը տեղեկացնենք յարգոյ հասարակութեան եւ ազնիւ ծնողներուն, Վարժարանիս 2012-2013 ուսումնական տարեշրջանի Զ. Նախակրթարանի եւ Գ. Պատրաստականի Պետական քննութեանց արդիւնքները:

Ստորեւ կուտանք ցանկը համապատասխան նիշերով:

**Զ. Նախակրթարան**

| | | |
|---|---|---|
| Ռիթա Սիմոն Զամքէրթճնեան | Գերազանց | 96.31 % |
| Մարի Մանուէլ Գրիգորեան | Գերազանց | 95.65 |
| Նաթալի Գէորգ Կոտոլոշեան | Գերազանց | 94.85 |
| Լիլիթ Յակոբ Սայեան | Գերազանց | 93.32 |
| Արմէն Կարօ Աբգարեան | Գերազանց | 91.74 |
| Ժօուէլ Էսքանտար Շաքարճեան | Գերազանց | 89.89 |
| Ալեքսան Ճօրճ Ջերտելեան | Գերազանց | 89.58 |
| Մարիղա Ռուպէր Սալմօ | Գերազանց | 85.25 |
| Ռինա Մակտի Շաֆիք | Շատ լաւ | 81.80 |
| Ժիրայր Յակոբ Գարակէօզեան | Շատ լաւ | 81.57 |
| Մակի Մակէտ Ատլի | Շատ լաւ | 81.44 |
| Րաֆֆի Սաատ Նակիպ | Շատ լաւ | 80.66 |

**Գ. Պատրաստական**

| | | |
|---|---|---|
| Ճուլեա Գէորգ Աւանեան | Գերազանց | 91.25 |
| Լորիկ Հրայր Տրդատեան | Գերազանց | 88.83 |
| Ռիթա Գէորգ Կոտոլոշեան | Գերազանց | 87.33 |
| Ռուպինա Սաատ Նակիպ | Գերազանց | 85.58 |
| Քրիս Ռուպէր Նակիպ | Գերազանց | 85.5 |
| Սիլվա Րաֆիք Պաթանի | Շատ լաւ | 84 |
| Գոհար Յարութիւն Վարդանեան | Շատ լաւ | 83.75 |
| Ժորժ Սարգիս Անդրանիկեան | Շատ լաւ | 83.58 |
| Շատի Իսահակ Ղազարեան | Շատ լաւ | 77.16 |

Վարժարանի Տնօրէնութիւնը եւ ուսուցչական կազմը ջերմօրէն կը շնորհաւորեն յարգելի ծնողները եւ աշակերտները իրենց յաջողութեան առթիւ:

***ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ***

** Այս առիթով խմբագրութիւնս կը շնորհաւորէ յաջողած աշակերտները եւ կը գնահատէ Տնօրէնութեան եւ ուսուցչական կազմին յարատեւ ջանքերը:*

## ՌԱԶՄԱՎԱՐԱԿԱՆ ԴԱՇՆԱԿԻՑԻ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐԸ՝ «ՀԱՅԱՍՏԱՆ ՊԷՏՔ ՉԷ ԱՆՀԱՆԳՍՏԱՑՆԷ ԶԷՆՔԻ ՎԱՃԱՌՔԸ ԱՏՐՊԷՅՃԱՆԻՆ»

1 

*Հայաստանի պաշտպանութեան նախարարութենէն հաղորդեցին, որ վաճառուող արտադրանքի քանակն ու տեսակը չեն խախտեր շրջանային հաւասարակշռութիւնը:*

*Նոյն ծիրէն ներս, Պաքուի մէջ երէկ տեղի ունեցաւ 50 վայրկեան երկարող զօրահանդէս, նուիրուած զինուած ուժերու տօնին: Շքահանդէսին իրենց մասնակցութիւնը բերին մօտ 5 հազար միաւորներ, զինուորական տարբեր տեսակի սարքաւորումներու ցուցադրութեան կողքին: Քաղաքի բնակիչները սակայն մնացին դժգոհ: Անոնց արգիլուեցաւ ներկայ գտնուիլ զօրահանդէսին, որ յատկացուած էր բացառաբար պաշտօնական անձնաւորութիւններու եւ հիւրերու:*

*Նախագահ Իլհամ Ալիեւ ունեցաւ 19 վայրկեան երկարող ուղերձ մը: 11-րդ վայրկեանին, ան կանգ առաւ ու նայեցաւ ժամացոյցին տեսնելով, որ տակաւին ստիպուած է 8 վայրկեան խօսիլ: Ալիեւ կրկնեց սովորական քարոզչութեան մաս կազմող բոլոր կէտերը: Անոր համաձայն, Հայաստան հիմնուած է ատրպէյճանական հողի վրայ, Պաքուի տնտեսական եւ զինուորական կարողութիւններուն շնորհիւ շուտով պիտի ազատագրուի Ղարաբաղը, Աշխարհի մէջ Ատրպէյճանին նման արագ զարգացող պետութիւն չկայ, կարելի պիտի ըլլայ լուծել ղարաբաղեան հարցը, շնորհիւ Ատրպէյճանի տնտեսական ներուժին:*

*Հակադարձելով Ալիեւի յայտարարութիւններուն, Հայաստանի արտաքին գործոց փոխ նախարար Շաւարշ Քոչարեան նշեց, որ Ատրպէյճանի պատասխանատուները կը խեղաթիւրեն պատմութիւնը եւ փաստերը: «Ատրպէյճան մէկ հնարաւորութիւն ունի Ստեփանակերտի մէջ իր դրօշը բարձրացնելու. թող ճանչնան Արցախի անկախութիւնը ու հաստատեն դիւանագիտական յարաբերութիւններ, ապա բանան սեփական դեսպանատուն», ըսաւ Քոչարեան:*

1

# ՔՍԱՆՆԵՐՈՒ ՀԵՏՔԵՐՈՎ



*Կէզի զբօսայգիին մէջ, «Նոր Զարթօնք» կազմակերպութեան վրանին մօտ:*

*կազմակերպութեան երիտասարդները, մտաւորականներու խումբ մը: Անոնք բոլորն ալ անվերապահ ճանչցած են Հայոց Ցեղասպանութեան փաստը եւ այլ ազգութիւններու դէմ կատարուած ցեղասպանութիւնները», ըսաւ Ընկ. Քէօշկէրեան:*

*Ան ապա ընթերցեց Կանաչներու Կուսակցութեան ծրագրի երրորդ գլուխին երկրորդ կէտը, որ կը վերաբերի Հայոց Ցեղասպանութեան, նաեւ անդրադարձաւ կազմակերպիչներու մշակած գրքոյկին եւ բաժնուած բացիկներուն վրայ տեղ գտած յայտարարութեան, որուն մէջ կազմակերպիչները կ'ըսեն. «15-16 Յունիսին Պայազիտի վրայ կախաղան բարձրացուած Հայ սոցիալիստ Փարամազի եւ իր 19 ընկերներուն ողբերգական պատմութիւնը, մեր օրերուն եւս Հայ Հասարակութեան յիշողութեան մէջ առանց սրբուելու կը մնայ: Իսկ ասոր դիմաց, Թուրքիոյ մէջ իր անցեալին հետ կամաց կամաց դէմ յանդիման եկող հասարակութիւնը եւ քաղաքական շրջանակները շատ տեղեակ չեն Քսաններու դատին: Մեր այս նետելիք քայլը, բարոյական մտահոգութիւններէ անդին, մեր պատմական ամօթներուն դէմ յանդիման գալու եւ արինահոսող վէրքերը փակելու ուղղութեամբ տարուած շատ կարեւոր նախաքայլ մը կը համարենք»:*

*Ընկ. Քէօշկէրեանի համաձայն, խնդիր էր Պոլսոյ մէջ ծայր առած բողոքի ալիքը, մանաւանդ որ կազմակերպիչներէն ոմանք կը ղեկավարէին ու կը մասնակցէին Թաքսիմ Հրապարակին վրայ ընթացող ցոյցերուն ու հաւաքներուն. «Սակայն ետդարձի ճամբայ չկար: Գետնի վրայ ամէն ինչ պատրաստ էր: Վիճակը չէինք կրնար ճիշդ գնահատել, մինչեւ որ գետնի վրայ չգտնուէինք: Որոշեցինք աֆիշներուն վրայ Կեդրոնական Վարչութիւնը ներկայացնող բանախօսին անունը չտպել, Պայազիտի ձեռնարկին մօտենալ մեծ զգուշութեամբ եւ տեղւոյն վրայ որոշել ողջոյնի ուղերձը ընթերցողին ինքնութիւնը», ըսաւ ան: Ապա հակիրճ կերպով անդրադարձաւ արտասանուած ուղերձներու գլխաւոր ուղղութիւններուն՝ Հնչակեան Կուսակցութեան Թուրքիոյ մէջ առաջին ընկերվարական կուսակցութիւնը ըլլալու փաստին, Իթթիհատի դէմ Քսաններու սխրագործութեան, Ցեղասպանութեան եւ Քսաններուն միջեւ սերտ կապակցութեան, Հայ ժողովուրդի պահանջատիրութեան եւ փոխհատուցումի հարցերուն: «Առաջին օրը զգացինք, որ իրապէս Թուրքիոյ պատմութեան մէջ փոփոխութեան մը սկիզբ կրցանք դնել: Երկար տարիներէ ի վեր գոյութիւն ունեցող կարծիք մը յեղաշրջուեցաւ՝ բանալով նոր դուռ մը, նոր մօտեցում մը, յատկապէս այդ տարածաշրջանի ընկերվարական շարժումի պատմութեան մէջ: Փարամազի եւ ընկերներու գաղափարները դարձան հասարակութեան մը սեփականութիւնը, որ ինք իսկ չէր գիտեր անոր գոյութեան մասին, այս հանգամանքը իր կարեւոր պատմական նշանակութեան կողքին ունի քաղաքական կարեւոր նշանակութիւն, այսինքն՝ մեր ներկայութեամբ անուղղակի մասնակից դարձանք Թուրքիոյ քաղաքական կեանքին», նշեց Ընկ. Ալեքսան Քէօշկէրեան:*

*Խօսելով Քսաններու թաղման վայրին մասին, ան հաստատեց որ յանձնարարականներ տրուած են Պոլսոյ մէջ, հետապնդելու համար այդ խնդիրը եւ փաստերով բացայայտելու Քսաններու շիրիմը:*



*Ընկ. Ալեքսան Քէօշկէրեան*

*Ընկ. Քէօշկէրեան մանրամասնօրէն բացայայտեց Պայազիտ Հրապարակին վրայ կազմակերպուած հաւաքին մանրամասնութիւնները, նախապատրաստութիւնները, վերջին պահուն ձեռնարկը չեղեալ յայտարարելու մտավախութիւնը եւ մասնակիցներու անվտանգութիւնը չերաշխաւորելու գծով ոստիկանութեան որոշումը: «Մեր որոշումը կտրուկ էր, երթալ՝ ձերբակալութեան գնով, այնտեղ կանգնիլ, ծաղիկ տեղադրել ու վերադառնալ: Յուզմունքս շատ մեծ էր, երբ մեզի միացաւ 2011-ին, Ապրիլ 24-ի օրը, թրքական բանակին մէջ սպաննուած զինուոր Սեւակ Պալըքճըի հայրը, որ եկած էր մեր ձեռքը սեղմելու, իր սպաննուած զաւակին վրէժը լուծելու: Մեզի մօտեցան Քենանը եւ վերջերս իր ազգութեան դարձած Տերսիմցի Միրան Բերկիչը, թուրք Լիւթֆիւն, լազ Ֆիրտեւսը, յոյն Սերտարը, անծանօթ պոլսահայեր, որոնք աֆիշը տեսած էին, փակած իրենց խանութները՝ միանալու մեզի: Վախի պատնէշը կտրուած էր», ըսաւ Ընկ. Քէօշկէրեան:*

*Ան ապա անդրադարձաւ Կէզի զբօսայգիին մէջ վերջին պահուն կազմակերպուած հաւաքին, ուր «Նոր Զարթօնք» կազմակերպութեան տաղաւարին առջեւ արտասանուեցան խօսքեր, ընթերցուեցաւ Հնչակեան Կուսակցութեան ողջոյնի խօսքը, եղան հարցազրոյցներ՝ տարբեր լրատուամիջոցներու հետ: «Հարցեր եղան Թաքսիմի ցոյցերուն մասին. մեր պատասխանը միանշանակ էր, որ մենք չենք ուզեր միջամուխ ըլլալ Թուրքիոյ ներքին հարցերուն, սակայն բարոյապէս առաւելագոյնս կը զօրակցինք աշխատաւորներուն, ընկերային արդարութեան պաշտպաններուն եւ բնապահպաններուն հետ», նշեց Ընկ. Քէօշկէրեան եւ պատմեց թրքական կուսակցութիւններու ու կազմակերպութիւններու հետ Իսթիքլալ պողոտայի կեդրոնին մէջ տեղի ունեցած հանդիպումին մասին, որուն ընթացքին քննարկուեցան հայութիւնը հետաքրքրող թեմաներ:*

*Աւարտին, ան ներկայացուց Պոլսոյ աննախադէպ հանդիսութիւններու եզրակացութիւնը: Ընկերը նշեց, որ Հնչակեան Կուսակցութիւնը եղաւ առաջին հայկական կազմակերպութիւնը, որ յանդգնութիւնը ունեցաւ բոլոր լրատուամիջոցներով յայտարարելու եւ Թուրքիոյ հասարակութեան հետ խօսելու Ցեղասպանութեան ճանաչման եւ հատուցման մասին: «Մեր կուսակցութեան առջեւ բացուեցաւ նոր դուռ մը՝ Ցեղասպանութեան ճանաչումը Թուրքիոյ պետութեան ներսէն պարտադրելու: Հրաւէրներ ստացանք տարբեր կազմակերպութիւններէ, միացանք թրքահայութեան մէջ ազգային ինքնագիտակցութեան զարթօնքին, յստակ առաջարկներ եղան Ցեղասպանութեան հարիւրամեակը Թուրքիոյ մէջ ոգեկոչելու ձեւերուն եւ միջոցներուն մասին», եզրափակեց Ընկ. Ալեքսան Քէօշկէրեան:*

## ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ԽՈՀԵՐ

# ՔՆՆԱԴԱՏՈՒԹԻՒՆ՝ ԵՐԵՔ ԴԷՄՔՈՎ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Ուսումնական համակարգին մէջ չեն սորվեցներ ինքնաքննադատութիւն: Կը սորվեցնեն քննադատութիւն, այսինքն՝ քննադատել *ուրիշ*ին: Հաւանաբար որովհետեւ ինքնաքննադատութիւնը մտածող էակի բնական մղում մըն է: Անասուն մը իր սխալ քայլը, սխալ որսը կը փորձէ սրբագրել յաջորդ անգամ: Մարդը շատ բան կը սորվի «կեանքի փորձառութենէն», ինչպէս յաճախ կ'ըսուի: Ասոնք ինքնաքննադատութիւններ են:

Բայց մշակոյթը ինքնաքննադատութեան համար սահմաններ կը դնէ: «Այլընտրանքային խոհեր»-ը ինքնաքննադատաբար կը սրբագրուին մինչեւ կը հասնին այն կէտին՝ ուր կը յանձնուին տպագրութեան: Դաշնակահար մը իր կատարողականութիւնը կը մշակէ մինչեւ նուագահանդէսի մը կամ ձայնագրութեան մը կէտը: Այս կէտին նախորդող փուլը այն ժամանակահատուածն է, ուր քննադատութիւնը՝ ինքնաքննադատութեան ծիրին մէջ, կ'ապրի իր ամենէն աւելի անկաշկանդ ու ստեղծագործական փուլը: Տուեալ կէտէն ետք, տուեալ գործին հետ կապուած ինքնաքննադատութիւնը կը կորսնցնէ իր ներքին մղումը, քանզի գործը արդէն «յանձնուած» է հասարակութեան ուշադրութեան: Թէեւ արուեստագէտներն ու մտաւորականները անընդհատ կը յայտարարեն՝ թէ իրենք միշտ վերանորոգման ընթացքի մէջ են, բայց կը վարանին կատարել ուղղակի քննադատութիւն (կամ՝ ինքնաքննադատութիւն) իրենց արդէն հրապարակուած գործի մը մասին: Այս «պարտաւորութիւն»-ը կը ստանձնէ ուրիշը, ուրիշն է որ կը քննադատէ, քննադատութիւնը ուղղուած է ուրիշին: Այս քննադատութիւնը գրաւոր մշակոյթին մէջ կը թարգմանուի «քննախօսութիւն» (գրախօսութիւն, երաժշտական քննադատութիւն, եւլն.) եզրով: Քննախօսութիւնը կրնայ ներկայանալ երեք դէմքով.

1. Իբրեւ ուսումնական համակարգի դասընթացք: Ուսումնական համակարգը իր պարտականութիւնը կը սեպէ սորվեցնել ուրիշը քննադատել-քննախօսելու «գաղտնիքներ»-ը: Գրախօսութեան դասընթացքը ուսանողին կը սորվեցնէ համառօտագրել ենթադրաբար իրմէ աւելի բարձր, աւելի գիտակից եւ աւելի տաղանդաւոր անհատի մը գիրքը: Ուսանողը կը սորվի ներակայացնել գիրքին միջուկը՝ նուազագոյն կամ առանց միջամտութեան: Կը սորվի վերարտադրել ուրիշի մտածածը, անկէ վերացնելով գլխաւոր գաղափարը յենող ու գեղագիտականացնող երկրորդային չերտերը: Կը սորվի թեքնիքականացնել ուրիշի մտածումը:

2. Կրթական այս փորձառութիւնը՝ ինքն իր մէջ սպառող, բոլորովին անհրապուրիչ է արդի շուկային համար: Շուկան պէտք ունի քննախօսականներու որոնք բովանդակեն ցնցող՝ բայց ոչյարատեւ իմաստներ բացայայտող բառեր, կեդրոնաձիգ՝ բայց ոչ տարածական յատկութիւններով օժտուած խօսքեր, կայծակնափայլ՝ բայց շուտով յանգող արտայայտութիւններ: Ասիկա իր լաւագոյն կողմերով արտայայտուած է լրագրային քննախօսութեան մէջ: *The New York Times, Le Monde, The Times, BBC Music Magazine* քննախօսական կայուն սիւնակներու սեփականատէրերն են՝ պաշտօնի կոչուած քննախօսներով: Քննախօսներ՝ որոնց վճարուած պաշտօնն է քննադատել *ուրիշ*ին, իրենք ըլլալով ամենագէտի կողմը իսկ քննադատուողը՝ գիտութեան ձգտողի: Քննախօսներ՝ որոնք միաժամանակ պէտք է գրեն առաւելագոյն գրաւչութեամբ՝ բազմացնելու ընթերցողներու քանակը եւ ոչ որակը:

Այս հիմնահոսանքային լրագրային քննախօսութիւնը հիմնուած է ուղիղ գնահատականներու վրայ, չափանիշ ունենալով լաւն ու վատը: Քննադատուող առարկան կամ լաւ է եւ կամ վատ: *BBC Music Magazine* երաժշտական ամսագիրը իւրաքանչիւր թիւին կը հրատարակէ աւելի քան հարիւր քննախօսական՝ նոր լոյս տեսած երաժշտական խտասալիկներու մասին: Աւելցնելու համար իր գնահատականներուն վճռականութիւնը, ան իւրաքանչիւր քննախօսուող ձայնագրութեան կը յատկացնէ 1-5 աստղանի գնահատական մը, յօրինող-կատարողներու աւելի քան մէկ ժամ տեւող մտածողութիւն-ձայնագրութիւնը նուազեցնելով աստղթուանշաններու անշարժութեան մէջ:

Անհամար ընթերցողներ գաղափար կը կազմեն նուագահանդէսի, ցուցահանդէսի, գիրքի կամ ձայնագրութեան մը մասին՝ քննախօսի միջնորդութեամբ: Կը պատճառաբանուի, որ կարելի չէ Եգիպտոսի մէջ նստելով դիտել փարիզեան Լուվրի ցուցահանդէս մը, հետեւաբար քննախօսը կը կատարէ ցուցահանդէսը մեզի հասցնելու բարի դերը: Արդարեւ, անկարելիութիւն մըն է Լուվրի նկարներուն հաղորդակից դառնալ առանց անձնապէս առնչուելու անոնց հետ:

3. Քննախօսութիւնը կրնայ ազատագրուիլ այս բոլորէն, եթէ որոշէ չդիմել *ուրիշ*ի գնահատութեան: Այսինքն, երբ քննախօսը ոչ միայն դադրի քննախօսուողի առարկաներուն հետ կառչելէ, այլ ձգտի քննախօսուող նիւթի ընթերցուածքէն բխեցնել ու յառաջացնել զանազան միտքեր, դիմել միտքերու տարբերակային շարունակութեան, կամ պարզապէս կատարել փոփոխակներ քննախօսուողի թեմայով: Քննախօսութիւնը կրնայ առիթ ընձեռնել ուրիշ քննախօսութեան՝ մտածողութիւնը մտցնելով շրջանառութեան մէջ: Յիշենք՝ որ թիւ 2-ին մէջ յիշուած քննախօսութիւնը ենթակայ չէ կրկին քննախօսութեան:

4

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## ՆՇԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

**ՊՐ. ԽԱՉԻԿ ԱՒԵՏԱՆԵԱՆ**

**Ընդ**

**ՕՐ. ՄԱՐԻ ԳԱՐԹԱԼԵԱՆԻ**

Գահիրէ – Աղեքսանդրիա Շաբաթ 22 Յունիս 2013

*Խմբագրութիւնս ջերմօրէն կը շնորհաւորէ խօսեցեալ զոյգը, անոնց ծնողները՝ Տէր եւ Տիկին Յակոբ Աւետանեանները եւ Տէր եւ Տիկին Նազարէթ Գարթալեանները, մաղթելով խօսեցեալ զոյգին երջանիկ կեանք:*

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

*Տեղեկացնում ենք, որ ՀՀ կրթութեան եւ գիտութեան նախարարութեան 2013-2014 ուսումնական տարում սփիւռքահայ դիմորդների համար պետպատուէրի շրջանակներում հաստատել է 70 համալսարանական (բակալաւրիատ) անվճար տեղեր, որոնց մրցոյթին կարող են մասնակցել մանկավարժական, հայագիտական, մշակութային մասնագիտութիւնների համար դիմորդները: Սփիւռքահայ դիմորդները հնարաւորութիւն ունեն ընդունուելու նաեւ վճարովի համակարգ:*

*Փաստաթղթերի ներկայացման ժամկէտն է՝ Յուլիսի 9-ից մինչեւ Օգոստոսի 24-ը, իսկ Նախապատրաստական բաժանմունքում եւ մագիստրատուրայում ուսանելու համար փաստաթղթերը կ'ընդունուեն մինչեւ Նոյեմբերի 8-ը, հեռակայ բաժանմունքում՝ մինչեւ Սեպտեմբերի 20-ը:*

*Պահանջուող փաստաթղթերն են՝*

*1.- Դիմում՝ ՀՀ կրթութեան եւ գիտութեան նախարարի անունով, որում պետք է նշուած լինի ընտրած համալսարանը եւ մասնագիտութիւնը,*

*2.- Անձնագրի պատճէնը,*

*3.- Ծննդեան վկայականի պատճէնը՝ պետական նոտարի եւ դեսպանութեան վաւերացմամբ կամ մկրտութեան վկայականը,*

*4.- Կրթութեան վկայականի պատճէնը թուանշաններով պետական նոտարի եւ դեսպանութեան վաւերացմամբ,*

*5.- Ընդհանուր առողջութեան մասին բժշկական տեղեկանք,*

*6.- 3x4 չափսի 4 լուսանկար,*

*7.- Ինքնակենսագրութիւն՝ հայերէն կամ անգլերէն լեզուներով:*

*Փաստաթղթերը ՀՀ կրթութեան եւ գիտութեան նախարարութիւն ներկայացւում են անձամբ դիմորդի կամ նրա լիազօրուած անձի կողմից:*

*Յաւելեալ տեղեկութիւններ ստանալու, ինչպէս նաեւ համալսարանների եւ մասնագիտութիւնների ցանկին ծանօթանալու համար կարելի է դիմել Հայաստանի Հանրապետութեան դեսպանութիւն:*

*Գահիրէ, Զամալէք թաղամաս, 20, Մոհամէտ Մազհար փողոց, Հեռ. 2737 4157, 2737 4159 Ֆաքս. 2737 4158.*

*Էլ. փոստ, armegyptembassy@mfa.am*

**ՀՀ ԴԵՍՊԱՆՈՒԹԻՒՆ – ԳԱՀԻՐԷ**

ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ԽՈՀԵՐ

## ՔՆՆԱԴԱՏՈՒԹԻՒՆ՝ ԵՐԵՔ ԴԷՄՔՈՎ

3

Կոմիտաս Վարդապետ տուած է այս տեսակ քննախօսութեան եզակի նմոյշ մը «Երգեցողութիւնք Ս. Պատարագի» յօդուածին մէջ(1): Դրդապատճառը Մակար Եկմալեանի նոր տպագրուած Պատարագն էր: Կոմիտաս Վարդապետ հիմք ունենալով այս գործին որոշ յատկանիշները, կ'առաջարկէ իր լուծումներն ու թելադրութիւնները, ընդհուպ մինչեւ հասնելով հայկական ձայնաչարի չղթայակապուած քառեակներու գիւտին, բոլորովին նոր յայտնագործութիւն մը հայկական երաժշտագիտութեան համար: Կոմիտաս այս քննախօսականը կը գրէ ինքնզինք դնելով Եկմալեանի գաղափարներուն մէջ եւ ոչ իբրեւ արտաքուստ գնահատող քննախօս մը: Ենթակայական կապ մը կայ Կոմիտասի քննախօսութեան եւ Եկմալեանի բնագիրին միջեւ, ի տարբերութիւն լրագրային քննախօսութեան առարկայական խզումին:

Անշուշտ, բնաւ ալ պայման չէ Կոմիտասի նման գիտերու՝ քննախօսականը չարժուն դարձնելու համար: Կը բաւէ որ մօտեցումը ըլլայ ոչ-օտարացած: Նման քննախօսականներ յաճախ կը գտնուին այլընտրանքային գրականութեան մէջ՝ Լոնտոնի *New Left Review* երկամսեայ հանդէսը, Երեւանի *Արտերիա* մշակութային քննադատական ամսագիրը(2) եւ շատ ուրիշներ:

Բայց տակաւին ինքնաքննախօսութեան հարցը կը մնայ առկախ...:

(1) *Արարատ*, Վաղարշապատ, 1898, թիւ 3-4, էջ 111-117

(2) http://www.arteria.am

## ԱՊԱՔԻՆՈՒՄԻ ՄԱՂԹԱՆՔ

Կը տեղեկանանք որ եգիպտահայութեան ծանօթ եւ սիրուած դէմքերէն ու Եգիպտոսի «ՌԱԿ» Շրջանակի Պատուոյ ատենապետ՝ Տիար Նորայր Տէօվլէթեան, վերջերս բարդ վերահատումի մը ենթարկուած է եւ ան այժմ իր բնակարանը վերադառնալով, ապաքինման շրջան մը կը բոլորէ:

«Ջահակիր»ի Շրջանակը շուտափոյթ եւ կատարեալ ապաքինում կը մաղթէ իր սիրելի Տիար՝ Նորայր Տէօվլէթեանին:

## ԱՐԱՄ ԽԱՉԱՏՐԵԱՆԻ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԵՑԱՆ ԵՈՒՆԵՍՔՕ-Ի «ԱՇԽԱՐՀԻ ՅԻՇՈՂՈՒԹԻՒՆ» ՑԱՆԿԻՆ ՄԷՋ

2

*Այլ գետնի վրայ, Արամ Խաչատրեանի յոբելենական տարուայ ծիրէն ներս Լոռիի մարզային գրադարանին մէջ կազմակերպուած է «Արեւային Մեղեդիներու Հանճարը» խորագիրով միջոցառում, որուն ներկայ «Տեղեկատուական Արհեստագիտութիւններ եւ Կրթութիւն» ընկերութեան նախագահ Գարեգին Չուքասզեան հանդէս եկած է զեկոյցով՝ ներկայացնելով իր հեղինակած «Արամ Խաչատրեան-110»՝ անուանի երաժշտահանի կեանքին ու գործունէութեան նուիրուած մալթիմետիա հանրագիտարանը՝ մէկ սկաւառակի մէջ ամփոփուած:*

## ՀՀ ՆԱԽԱԳԱՀ ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆ Կ'ԱՅՑԵԼԷ ԼԵՀԱՍՏԱՆ

1

*«Չկայ դատապարտում առանց կանխարգիլումի եւ չկայ կանխարգիլում առանց դատապարտումի: Ես կը հաւատամ, որ ճակատագիրը մարդկութեան պատգամ ձգած է դասեր քաղել անցեալէն ու հետեւողականօրէն պայքարիլ՝ Ցեղասպանութեան կանխարգիլումի մասին բացարձակ գիտակցութիւնը արմատաւորելու ուղղութեամբ», ըսաւ Նախագահ Սարգսեան:*

*Ան հաստատեց, որ Հայաստան այսօր յանձնառու է միջազգային հանրութեան մշտական ուշադրութեան կեդրոնին պահել ցեղասպանութեան յանցագործութիւնները կանխարգիլելու եւ պատժելու համար պետութիւններու համատեղ ջանքեր ի գործ դնելու անհրաժեշտութիւնը: «2015 թուականին կը լրանայ Ցեղասպանութեան հարիւրամեակը: Համոզուած եմ, որ այս կարեւոր տարելիցը համամարդկային ջանքերը կրկնապատկելու առիթ կը հանդիսանայ՝ ցեղասպանութիւններու կանխարգիլման ի նպաստ յստակ դիրքորոշում արտայայտելու համար», եզրափակեց Հայաստանի Հանրապետութեան Նախագահը:*



## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Այսու կը ծանուցանենք եգիպտահայ յարգոյ մեր հասարակութեան, որ Առաջնորդարանին մօտ տրամադրելի են արեւմտահայերէն «Նոր Կտակարան»-ներ:

Փափաքողները, ունենալու համար, կրնան դիմել Ազգային Առաջնորդարան:

**Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

*Այսու կը ծանուցանենք եգիպտահայ մեր հասարակութեան, որ Պատկառելի Թեմական Ժողովի 10 Յունիս 2013-ի նիստին, Պատուարժան Քաղաքական Ժողովին կողմէ ներկայացուած առաջարկին հիման վրայ հաստատուեցաւ «ԿԱՐԱՊԵՏ ԱՂԱ ԳԱԼՈՒՍՏ ԲԱՐՁՐԱԳՈՅՆ ՈՒՍՈՒՄԻ ՀԻՄՆԱԴՐԱՄ»-ը եւ վաւերացուեցաւ կանոնագիրը:*

*Սոյն կանոնագրութեամբ Թեմական Ժողովը ամէն տարի պիտի կը տրամադրէ Եգիպտոս հաստատուած Հայ Առաքելական Եկեղեցւոյ անդամ աշակերտներուն՝ բարձրագոյն կամ համալսարանական ուսումի ծախսերուն իբր օժանդակութիւն:*

*Յատկացումը կը կատարուի Եգիպտոսի կամ Հայաստանի մէջ բարձրագոյն կամ համալսարանական ուսման, ինչպէս նաեւ մագիստրական կամ տոքթորական աստիճան ստանալու համար:*

*Սաներու ընտրութիւնը կը կատարուի ամէն տարի, դպրոցական տարեվերջի քննութիւններէն յետոյ, յետ եգիպտահայ մամուլին մէջ հրատարակուած յայտարարութեան:*

*Թեմական Ժողովին որդեգրումով ներկայ կանոնագիրը գործադրելի է 2013-2014 համալսարանական ուսումնական տարեշրջանէն սկսեալ:*

**ԴԻՒԱՆ**
**ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**

## ՀՄԸՄ-ՆՈՒՊԱՐ ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

ԳՐԱՒՈՒԱԾ ԹՈՒԱԿԱՆՆԵՐ

**ՊԱՍՔԷԹ-ՊՈԼԻ ԵԳԻՊՏԱՀԱՅԿԱԿԱՆ ՄՐՑԱՇԱՐՔ**

Ուրբաթ 19, Շաբաթ 20 եւ Կիրակի 21 Յուլիս 2013

ՆՈՒԻՐՈՒԱԾ՝

**ԱՍՊՆՋԱԿԱՆ ԵԳԻՊՏՈՍԻ ՅՈՒԼԻՍ 23-Ի՝ ՅԵՂԱՓՈԽՈՒԹԵԱՆ 61-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻՆ**

*Մանրամասնութիւնները յաջորդիւ*

**ՎԱՐՉՈՒԹԻՒՆ**

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly


P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com


Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1707 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 11 ՅՈՒԼԻՍ 2013 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Ղիկ. عدد رقم ١٧٠٧ الخميس ١١ يوليه ٢٠١٣


ՄՈԼՏՈՎԱ

## ՍԱՐԳՍԵԱՆ Կ'ԱՅՑԵԼԷ ՄՈԼՏՈՎԱ



Հայաստանի Հանրապետութեան նախագահ Սերժ Սարգսեան աշխատանքային այցելութեամբ հասաւ Մոլտովա: Ան նախ առանձնազրոյց, ապա ընդլայնուած կազմով հանդիպում ունեցաւ իր պաշտօնակից Նիքոլաէ Տիմոֆտիի հետ:

Նախագահները քննարկեցին երկկողմանի քաղաքական երկխօսութիւնը աշխուժացնելու եւ առեւտրատնտեսական ոլորտին մէջ համագործակցութիւնը զարգացնելու վերաբերեալ հարցերու լայն շրջանակ: Տեղի ունեցաւ փաստաթուղթերու ստորագրութիւն՝ հայ եւ մոլտովացի նախարարներու ձեռամբ: Սարգսեան հանդիպում ունեցաւ նաեւ վարչապետ Եուրի Լիանկէի հետ:

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՀԱՅԱՍՏԱՆ ԵՒՐՈՊԱԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ ՈՒՂԻԻՆ ՎՐԱՅ



Հայաստանի ու Եւրոմիութեան միջեւ յարաբերութիւնները կը գտնուին իրենց կարեւորագոյն փուլին մէջ: Այս մասին յայտարարեց Եւրոմիութեան ընդլայնման ու հարեւանութեան քաղաքականութեան գլխաւոր յանձնակատար Ստեֆըն Ֆիւլէն, Երեւանի մէջ հանդիպումներ ունենալէ ետք գլխաւոր պատասխանատուներուն հետ: Անոր խօսքով, Հայաստանն ու Եւրոմիութիւնը կը մշակեն այնպիսի գործընկերութիւն մը, որ աւելի լայն եւ խոր է, քան ինչ եղած է մինչեւ օրս:

Ֆիւլէ տեսակցութիւններ ունեցաւ Հանրապետութեան նախագահ Սերժ Սարգսեանի, Ազգային ժողովի նախագահ Յովիկ Աբրահամեանի, վարչապետ Տիգրան Սարգսեանի հետ, քննարկելու երկկողմանի յարաբերութիւնները, Եւրոպայի հետ Հայաստանի կապերու զարգացումը, տարածաշրջանային ու միջազգային խնդիրները:

Ֆիւլէ յայտարարեց, որ Թուրքիա պէտք է դրական յարաբերութիւններ ունենայ իր բոլոր հարեւաններուն հետ, նախքան Եւրոմիութիւն մուտք գործելը: Ան խոստացաւ աշխատանք տանիլ, օժանդակելու ղարաբաղեան հիմնախնդիրի լուծման բանակցութիւններուն: Ֆիւլէի համաձայն, Ռուսիոյ հետ Հայաստանի յարաբերութիւնները չեն խոչընդոտեր Պրիւքսէլի հետ Երեւանի կապերու զարգացումը: Ան վերահաստատեց եւրոպական կողմին յանձնառութիւնը՝ Հայաստանի մէջ զանազան ոլորտներու բարեփոխումներուն: Հայ պատասխանատուներուն հետ Ֆիւլէ արծարծեց նաեւ Հայաստանի ներքին զարգացումները ու եւրոպական չափանիշերուն հասնելու համար Երեւանին տրամադրուած օժանդակութեան վերաբերող թեմաները:

ԳԱՀԻՐԷ

## ԱՏԼԻ ՄԱՆՍՈՒՐ ՍՏԱՆՁՆԵՑ ԺԱՄԱՆԱԿԱՒՈՐ ՂԵԿԱՎԱՐԻ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆԸ



Եգիպտսի ժամանակաւոր պետութեան ղեկավար՝ Ատլի Մանսուր:

Միջազգային եւ շրջանային լուսարձակները կեդրոնացած են Եգիպտոսի քաղաքական զարգացումներուն վրայ, ուր վայրկեան առ վայրկեան տեղի կ'ունենան անկիւնադարձային փոփոխութիւններ: Սակայն բեւեռացած քաղաքական կացութիւնը չուտափոյթ լուծում չի խոստանար Փարաւոններու երկրին:

Եգիպտոսի Սահմանադրական Ատեանի նախագահ՝ Ատլի Մանսուր Յուլիս 3-ին կատարեց երդմնակալութեան ուխտը, իբրեւ ժամանակաւոր պետութեան ղեկավար: Այս առիթով արտասանած իր խօսքին մէջ, Մանսուր յայտնեց թէ Իսլամական Եղբայրութիւնը երկրին կարեւոր մէկ մասնիկն է: Ան՝ պետութիւն կառուցելու հրաւիրեց քաղաքական բոլոր ուժերը:

Ամիսներու վրայ երկարող Եգիպտոսի քաղաքական տագնապը նոր հանգրուան մը թեւակոխեց, երբ Եգիպտոսի պաշտպանութեան նախարար, բանակի գերագոյն հրամանատար, զօրավար Ապտըլ Ֆաթթահ Ալ Սիսի հեռատեսիլային ուղղակի հաղորդումի մը ընթացքին, յայտարարեց թէ երկրին սահմանադրութեան կիրառութիւնը ժամանակաւորապէս դադրած է:

Սիսի նշեց, թէ Սահմանադրական Ատեանի նախագահը ժամանակաւորապէս պիտի ստանձնէ երկրին նախագահութեան լիազօրութիւնները, որուն լոյսին տակ Մուհամէտ Մորսի կը դադրի նախագահի պաշտօնէն:

Եգիպտոսի անցումային վարչապետ Հազէմ Պիպլաուի յայտարարեց, որ իրենք նոր կառավարութիւնը պիտի կազմեն քանի մը օրերու ընթացքին: Պիպլաուի սակայն նշեց, որ նախարարներու անունները տակաւին չէ վճռած, սակայն

2

ՎԻԷՆՆԱ

## ՆԱԼՊԱՆՏԵԱՆ-ՄԱՄԵՏԻԱՐՈՎ ՀԱՆԴԻՊՈՒՄ



Հայաստանի եւ Ատրպէյճանի արտաքին գործոց նախարարները այսօր Վիեննայի մէջ ունեցան հանդիպում, շարունակելու ղարաբաղեան հակամարտութեան խաղաղ լուծման բանակցութիւնները: Էտուարտ Նալպանտեանի եւ Էլմար Մամետիարովի տեսակցութեան ներկայ գտնուեցան նաեւ ԵԱՀԿ-ի Մինսքի խմբակի համանախագահները:

Ժողովակիցները արծարծեցին շփման գիծին վրայ զինադադարի խախտումի դէպքերը, վստահութիւնը վերականգնելու միջոցները եւ բանակցութիւններուն առնչուող շարք մը այլ թեմաներ:

ԱՐՑԱԽ

## ԱՒԵԼԻ ՔԱՆ 800 ԿՐԱԿՈՑ՝ ՀԱՅ ԴԻՐՔԱՊԱՀՆԵՐՈՒ ՈՒՂՂՈՒԹԵԱՄԲ

Արցախի Պաշտպանութեան Բանակի ներկայացուցած տուեալներուն համաձայն, Յունիս 30-Յուլիս 6 երկարող ժամանակահատուածին ղարաբաղա-ատրպէյճանական հակամարտ զօրքերու սահմանին հակառակորդին կողմէ զինադադարը խախտուած է շուրջ 150 անգամ, որուն ընթացքին, տարբեր տրամաչափի հրաձգային զինատեսակներէ, հայ դիրքապահներու ուղղութեամբ արձակուած է աւելի քան 800 կրակոց:

Պաշտպանութեան Բանակի յառաջապահ զօրամասերը համարժէք պատասխան տուած են հակառակորդի սադրիչ գործողութիւններուն եւ շարունակած վստահօրէն իրականացնել մարտական հերթապահութիւն:

ՍՈՒՐԻԱ

## ՀԱԼԷՊԸ ՏԱԳՆԱՊԻ ՄԷՋ Է ԵՒ ՔԱՂԱՔԸ ՍՈՎԻ ՄԱՏՆՈՒԱԾ

Սուրիոյ տնտեսական մայրաքաղաքը նկատուող Հալէպը մէկ շաբաթէ ի վեր շրջափակման մէջ է: Փակ են քաղաքի բոլոր մուտքերն ու ելքերը: Մնդամթերք, դեղորայք, մանկական սնունդ, հաց եւայլն գտնելը կարելի չէ քաղաքին մէջ:

Թէեւ պարբերաբար ռմբակոծութիւններու ձայներ են կը հնչեն, սակայն այդ արդէն առաջուայ պէս չի վախեցներ. հայաշատ Հալէպի բնակիչներուն համար օրուայ հաց գտնելը գերխնդիր դարձած է:

Հայաստանեան Tert.am լուրերու կայքը հալէպահայ իր աղբիւրներէն տեղեկացած է, որ խանութները եւ շուկաները ամբողջութեամբ պարպուած են, իսկ եթէ այնուհանդերձ կարելի ըլլայ գտնել որեւէ բան, ապա խիստ թանկ է եւ մարդիկ կարելիութիւնը չունին մօտենալու անոնց:

Օրինակ, եթէ նախապէս Հալէպի մէջ հացը կ'արժէր 15 սուրիական ոսկի, իսկ դէպքերու լարուած ժամանակաշրջանին հասած

2

ՖՐԱՆՍԱ

## ՖՐԱՆՍԱՅԻ ՀԱՅ ՀՈԳԵՒՈՐ ԹԵՄԻ ԱՌԱՋՆՈՐԴԸ ՀՐԱԺԱՐԱԿԱՆ ՏՈՒԱԾ Է



*Հայ Առաքելական եկեղեցւոյ Ֆրանսայի թեմի առաջնորդ Նորվան Արքեպիսկոպոս Զաքարեանը հրաժարականի դիմում ներկայացուցած է Ամենայն Հայոց Կաթողիկոս Գարեգին Բ.-ին: Այս մասին կը հաղորդէ «Nouvelles d'Armenie»ն:*

*Իբրեւ Ֆրանսայի թեմի առաջնորդ՝ Նորվան Արքեպիսկոպոս Զաքարեանի իրաւագիրը պիտի աւարտէր 2014-ին: Անոր հրաժարականի դիմումը Սուրբ Էջմիածին փոխանցուած է Յուլիս 1-ին:*

*Նորվան սրբազանը Ֆրանսայի թեմի առաջնորդ ընտրուած է 2007-ին՝ Թեմական ժողովի ժամանակ, եւ կը ծառայէ Փարիզի Սուրբ Յովհաննէս Մկրտիչ առաջնորդանիստ եկեղեցւոյ մէջ:*

### ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

*Երկուշաբթի, 1 Յուլիս 2013ին տեղեկացանք, թէ ֆրանսահայոց Առաջնորդ, Արեւմտեան Եւրոպայի Կաթողիկոսական Պատուիրակ, Տէր Նորվան Արքեպիսկոպոս Զաքարեան յանձնած է իր հրաժարականը:*

*Ուէէ բարձրաստիճան անձնաւորութեան մը հրաժարականը բնաւ հաճելի չէ այն շրջանակէն ներս, որուն համար ենթական կոչուած է ծառայելու:*

*Տէր Նորվան Արքեպիսկոպոս Զաքարեանը Ֆրանսայի թեմի առաջնորդ ընտրուած է 2007 թուականին: Ան ձեռնարկեց բազմիցս ծրագիրներու եւ իրենց աւարտին հասցուց կիսաւարտ մնացած աշխատանքներ (դպրոցաշինութիւն, միջ-կրօնական հանդիպումներ եւ ոգեկոչումներ, կանոնադրութիւն, եւայլն):*

*Վստահաբար անոր հրաժարականը մղուած է յստակ եւ իրաւացի պատճառներով: Բայց, արդեօ՞ք ժամանակն ու ձեւը նպատակայարմար էին: Հայորդիներու բացակայութիւնը Եկեղեցիէն ներս տեղ կու տայ որոշ թուլութիւն հաւատքի բոյնին հանդէպ: Եկեղեցին եղած է, է եւ պէտք է մնայ հայապահպանման անխախտելի եւ անխոցելի սիւներէն մէկը:*

*Մերժումի վտանգին հզօրացման առաջ, Եկեղեցիին հանդէպ եղած ոտնձգութիւններուն դէմ այսպիսի դէպքերը միայն կրնան տկարացնել հայրենասէրներու անդրդուելի յարգանքը Եկեղեցիին եւ դուռ բանալ մեկնաբանութիւններու:*

*Մայր Աթոռ Սուրբ Էջմիածինը, Հայոց Եկեղեցւոյ սրբազան վայրը ու ամենաբարձր գահը, տեղեակ այս բոլորէն, քայլեր պէտք է առնէ, միջոցներու դիմէ, հետեւանքները կանխելու համար:*

*Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան Կուսակցութիւնը, մտահոգ այս դէպքով, աչալրջօրէն կը հետեւի նորանոր զարգացումներուն:*

**ՍԴՀԿ-Ի**
**ՖՐԱՆՍԱՅԻ ՇՐՋԱՆԻ ՎԱՐԻՉ ՄԱՐՄԻՆ**

*Փարիզ, 8 Յուլիս 2013*

## ՀԱԼԷՊԸ ՏԱԳՆԱՊԻ ՄԷՋ Է ԵՒ ՔԱՂԱՔԸ ՍՈՎԻ ՄԱՏՆՈՒԱԾ




*էր մինչեւ 100 ոսկիի, այժմ, երբ հացի փուռերու մեծ մասը փակ է, իսկ գործող փուռերու մօտ հազարաւոր մարդիկ հացի հերթի կը կանգնին, հացի տոպրակը կ'արժէ 300 սուրիական ոսկի:*

*Քաղաքին մէջ պենզին եւ կազ գտնելը եւս դժուար է եւ անոնց գիները եւս տասնապատկուած են:*

*Ըստ տարածուած տեղեկութիւններու՝ այսպիսի իրավիճակ կը տիրէ միայն այն շրջաններուն մէջ, որոնք կը գտնուին կառավարութեան վերահսկողութեան տակ: Իսկ Հալէպի այն թաղամասերը, ուր կ'իշխեն ապստամբ ընդդիմադիրները, ամէն ինչ առատ է, սակայն այդ թաղամասերէն մթերք դուրս բերելը արգիլուած է: Ենթադրաբար, այդ քայլը կը միտի կառավարամէտ շրջաններու բնակիչները ճնշելու եւ ոտքի հանելու համար:*

*Երկրի կառավարութեան աղբիւրները կը տեղեկացնեն, որ իրավիճակէն ելքը կը գտնուի մի քանի օրուայ ընթացքին, սակայն այս պայմաններուն մէջ սուրիահայերը անհաւանական կը գտնեն որ նման բան պատահի:*

**ՀԱՅ ԹԵՐԹԸ ԸՆԿԵՐՆ Է ՀԱՅ ՏԱՆ**

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՄՈՐՄՈՆԱԿԱՆ ԵԿԵՂԵՑԻՆ ԿԸ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԻ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ

*Մորմոնական «Յիսուս Քրիստոսի Վերջին Օրերու Սուրբերու Եկեղեցի»ն յայտարարած է, թէ Հայաստանի մէջ հիմնած է իր առաջին «stake»-ը, որ մօտաւորապէս կը համապատասխանէ ծուխին:*

*Յունիս 16-ին Երեւանի մէջ կատարուած մորմոնական արարողութեան նախագահելով, Էլտէր Նելսըն յայտարարած է լուրը՝ ըսելով, թէ Հայաստանի մէջ լաւ կրօնաւորներ ունին, ինչպէս նաեւ «կոսփէլ» երաժշտութեան համար կարող ուժեր:*

*Է. Նելսըն 1988-էն ծանօթացած է Հայաստանին, երբ եկած է վճարագիր մը յանձնելու երկրաշարժէն տուժածներուն համար: Ըստ իրեն, մինչ 1992-ին Հայաստանի մէջ միայն քանի մը մկրտութիւններ ըրած էին, այսօր հոն ունին աւելի քան 3.000 հետեւորդներ:*

*Մորմոնական 3.025 «ծուխ»եր գոյութիւն ունին աշխարհի զանազան երկիրներու մէջ:*

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ ԱՒԵԼՑԱԾ Է ԹՄՐԱՄՈԼՆԵՐՈՒ ԹԻՒԸ

*Յունիս 26-ը թմրամոլութեան եւ թմրեցուցիչներու ապօրինի շրջանառութեան դէմ պայքարի միջազգային օր էր:*

*Թմրամոլներու բուժարանի ղեկավար Պետրոս Սեմերճեան այս առթիւ լրագրողներու հետ ունեցած զրոյցին նշած է, որ այս տարի Հայաստանի մէջ 30% աւելցած է թմրամոլներու թիւը: Նախկին շուրջ 3850-ին փոխարէն այս տարի արձանագրուած է 4332 թմրամոլ: 65-75%-ը 29-49 տարիքի չերտին կը պատկանին, կայ նաեւ անչափահաս մը:*

## ԹՈՒՐՔԻԱ ՄԵԿՆՈՂ ՀԱՅԱՍՏԱՆՑԻՆԵՐՈՒ ԹԻՒԸ ԱՃԱԾ Է

*Թուրքիա մեկնած Հայաստանի քաղաքացիների թիւը 2013 թուականի Յունուար-Մայիս ամիսներին կազմել է 20500 մարդ:*

*Ինչպէս NEWS.am-ը տեղեկանում է Թուրքիայի մշակոյթի եւ տուրիզմի նախարարութիւնից, 2013 թուականի Յունուար-Մայիս ամիսներին Թուրքիա այցելած հայաստանցիների թիւը 3,9 տոկոսով աճել է նախորդ տարուայ նոյն ժամանակահատուածի համեմատ՝ կազմելով 20500 մարդ:*

*Այս թիւն իր հերթին 4.8 տոկոսով աւելին է 2011 թուականի նոյն ժամանակահատուածի համեմատ: Միայն 2013-ի Մայիսին Թուրքիա է այցելել 5236 հայաստանցի:*

*Նշենք, որ 2012-ի ընթացքում Թուրքիա այցելած հայաստանցիների թիւը կազմել է 70956 մարդ:*

## ՀԱՅԱՍՏԱՆՑԻՆԵՐՈՒ ՄԵԾ ՄԱՍԸ Չ'ՈՒԶԵՐ ՄԱՍՆԱԿՑԻԼ ՓՏԱԽՏԻ ԴԷՄ ՊԱՅՔԱՐԻՆ

*«Թրանսփարենսի Ինթերնեշընըլ» հակակոռուպցիոն կեդրոնը ներկայացուց կոռուպցիայի (փտախտի) ընկալման վերաբերող հասարակական կարծիքի ամենամեայ իր ուսումնասիրութիւնը:*

*Կեդրոնի կազմակերպած այս տարուայ հարցումները կը վկայեն, որ հայաստանցիները ամենակոռումպացուածն կը համարեն դատական ու առողջապահական համակարգերը եւ պետական պաշտօնեաները:*

*«Այն մարմինները, որոնք կոչուած են լինել կոռուպցիայի դէմ պայքարի առաջին դիրքերում՝ ոստիկանութիւն, դատական համակարգ, սրանք լիդերներն են իրենց կոռումպացուածութեան տեսանկիւնից», - Յուլիս 9-ին մեկնաբանելով իրենց կազմակերպած ուսումնասիրութիւնը, յայտնեց «Թրանսփարենսի Ինթերնեշընըլ» հակակոռուպցիոն կեդրոնի գործադիր տնօրէն Վարուժան Հոկտանեան, - «Կոնկրետ Հայաստանի դէպքում դատական համակարգը ընկալւում է որպէս կոռումպացուած կամ ծայրայեղ կոռումպացուած հարցուածների 69 տոկոսը, իսկ ոստիկանութիւնը՝ 66 տոկոսը: Սրանք իսկապէս մտահոգիչ թիւեր են»:*

*Այս տարուայ հարցման մասնակցած շուրջ հազար հայաստանցիներու գրեթէ կէսը՝ 43 տոկոսը պնդած է, որ վերջին երկու տարիներուն կոռուպցիան Հայաստանի մէջ աճած է, եւ միայն 19 տոկոսը հակառակ համոզմունքը յայտնած է:*

*Հարցուածներու 53 տոկոսը անարդիւնաւէտ, նոյնիսկ ընդհանրապէս չգոհացնող գնահատած է Հայաստանի իշխանութիւններու գործադրած ջանքերը՝ կոռուպցիայի դէմ պայքարի գծով:*




## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ ՀԱՅԱԼԵԶՈՒ ՀԱՄԱԿԱՐԳԻՉ ՊԻՏԻ ԿԱԶՄՈՒԻ

*«Unicomp» ընկերութիւնը Intel-ի հենքին վրայ պիտի կազմէ դպրոցականներու համար նախատեսուած անհատական համակարգիչներ՝ Classmate PC-ներ: Այս մասին յայտնած է «Microsoft» ընկերութեան հայաստանեան գրասենեակի տնօրէն Գրիգոր Բարսեղեան:*

*Սարքաւորման արտաքին տեսքը յարմարցուած է յատուկ երեխաներու համար. թեթեւ է, ամուր եւ զայն կրելը դիւրին է:*

*Համակարգիչին ծրագրային ապահովութիւնը իրականացուցած է Microsoft-ը, (մասնաւորապէս՝ համակարգիչը ապահովուած է Windows 8-ով, ուսումնական ծրագիրներով, ունի անվճար ելեկտրոնային փոստ, եւ այլն):*

*Այս համակարգիչին առանձնայատկութիւնը այն է, որ ունի հայերէն ստեղնաշար: Համակարգիչին արժէքը 169.000 դրամ է, սակայն Գ. Բարսեղեան յայտնած է, որ միայն ծրագիրներու շուկայական արժէքը այդքան է:*

## ԱՏԼԻ ՄԱՆՍՈՒՐ ՍՏԱՆՁՆԵՑ ԺԱՄԱՆԱԿԱՒՈՐ ՂԵԿԱՎԱՐԻ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆԸ




*վստահ է, որ նոր կառավարութիւնը պիտի չըլլայ ազգային միասնականութեան կառավարութիւն:*

*Միացեալ Նահանգներու պաշտպանութեան նախարարութիւնը յայտարարեց, որ նախագահ Պարաք Օպամա պահանջած է վերատեսութեան ենթարկել Եգիպտոսին յատկացուած բոլոր օգնութիւնները, հակառակ որ յանձնառու կը մնայ իր պաշտպանական ոլորտի օժանդակութիւններուն:*

*Ժամանակաւոր հանգրուանի նախագահ Ատլի Մանսուր, Եւրոմիութեան արտաքին գործոց նախարար Քաթրին Աշթոնի հետ քննարկեց Եգիպտոսի զարգացումները եւ տագնապէն դուրս գալու միջոցները: Աշթոն Գահիրէի նոր իշխանութիւններուն կոչ ուղղեց բոլոր ուժերը ներգրաւելու՝ քաղաքական անցումային հանգրուանին մէջ:*

*Ռուսիոյ արտաքին գործոց նախարար Սէրկէյ Լաւրով յայտարարեց, որ Միջին Արեւելքի եւ մահմետական աշխարհին մէջ կայունութիւնը մեծ մասամբ կախեալ է Եգիպտոսի մէջ տիրող իրավիճակէն: Լաւրովի համաձայն, Մոսկուայի իշխանութիւնները մեծապէս հետաքրքրուած են Եգիպտոսի մէջ ապահովական կացութեամբ: «Եգիպտացիները պէտք է որոշեն իրենց երկրի ապագան», ըսաւ Ռուսիոյ արտաքին գործոց նախարարը: Իսկ Թուրքիոյ վարչապետ Ռէճէպ Թայիպ Էրտողան վերստին մերժեց Եգիպտոսի մէջ արձանագրուած յեղաշրջումը:*

*Էրտողանի համաձայն, միջազգային ընտանիքը ձախողեցաւ յեղաշրջումը դատապարտելու իր առաքելութեան մէջ:*

*Այլ գիծի վրայ, Human Rights Watch կազմակերպութիւնը Եգիպտոսին կոչ ուղղեց ընդունիլ սուրիացի գաղթականներուն: Նշենք, որ Գահիրէ նոր միջոցառումներու դիմած է, կանխարգիլելու համար առանց արտօնագրի սուրիացիներուն երկիր մուտքը:*

ԹՈՒՐՔԻԱ

# ԹՈՒՐՔԵՐԸ ՀԱՅԿԱԿԱՆ ԳԵՐԵԶՄԱՆՈՑԻՆ ՎՐԱՅ ԿԸ ՓՈՐՁԵՆ ՃԱՇԱՐԱՆ ԿԱՌՈՒՑԵԼ



*Մալքարացի Թուրք գրող Ումիթ Պայազօղլուն լրատուամիջոցներուն յայտնած է, որ Մալքարայի հայկական գերեզմանոցին վրայ ճաշարան կը կառուցուի: Ճաշարանի կառուցման աշխատանքները կը շարունակուին նոյնիսկ այն պարագային, երբ բոլորին պարզ դարձած է, որ այդտեղ հայկական գերեզման եղած է: Այս մասին կը հաղորդէ «Ermenihaber.am»ը:*

*Նշենք, որ Թուրքիոյ Թեքիրտաղ նահանգի հիւսիս-արեւմուտքը գտնուող Մալքարա քաղաքին մէջ 1915 թուականի սկիզբները աւելի քան 3500 հայ բնակչութիւն կ'ապրէր:*

*Քաղաքապետարանի՝ քաղաքաշինական ծրագիրներու ծիրէն ներս ներկայացուած յայտի մը համաձայն, կը նախատեսուի այդտեղ գտնուող փոքրիկ աղիւսէ շինութիւնը վերածել ճաշարանի: Հիմքերը փորելու աշխատանքները հազիւ սկսած այդտեղ ի յայտ եկած են մարդկային ոսկորներ:*

*Վարչապետ Էրտողանի գլխաւորած «Արդարութիւն եւ Զարգացում» կուսակցութեան տարածքային կազմակերպութեան ղեկավար Տեմիր Ալի Փալան լրագրողներու հետ զրոյցի մը ընթացքին նշած է, որ նոյնիսկ իր հայրը չի գիտեր, թէ այդտեղ գերեզման եղած է թէ ոչ: Փալան նշելով, որ այդ տեղը զբօսանքի վայր է եւ որոշ մարդիկ այստեղ ոգելից խմիչք եւ նոյնիսկ թմրանիւթ կ'օգտագործեն, ըսած է որ անհրաժեշտ է մաքրել տեղանքը:*

*Գերեզմանատունէն քիչ մը հեռու կը գտնուի կարծես վերականգնման սպասող Սուրբ Թորոս եկեղեցին: Ոչ ոք չի կրնար երաշխաւորել, որ եկեղեցին ալ յառաջիկայ տարիներուն ուրիշ յայտի մը զոհը չի դառնար: Սակայն, եկեղեցւոյ պարագային յոյս կը ներշնչէ այն հանգամանքը, որ եկեղեցին արձանագրուած է յուշարձաններու խորհուրդին կողմէ:*

ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ԽՈՀԵՐ

# *ԱՆՈՒՇ* ՕՓԵՐԱՆ՝ ԻՇԽԱՆԱԶՐԿՈՒՄԻ ՈՒՂԻՈՎ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Գ. Սունդուկեանի անուան Ազգային Ակադեմիական Թատրոն, Երեւան, 26, 27 Ապրիլ, 3, 4 Մայիս 2013

Théâtre Nanterre-Amandiers, Նանթէռ, 22, 23, 25, 26 Մայիս 2013

*Անուշ*՝ Տիգրանեանի օփերայի եւ Թումանեանի պոէմի հիման վրայ

Բեմադրութիւն եւ լիպրեթթոյի յարմարեցում (ադապտացիա)՝ Սերժ Աւետիքեան

Գործիքաւորում ու երաժշտութեան վերամշակում՝ Անահիտ Սիմոնեան

Հագուստներու եւ բեմի ձեւաւորում եւ պարուսոյց՝ Նիքոլա Միւզէն

Լոյսի ձեւաւորում՝ Ժան-Մարք Սքաչօ

Հովեր Պետական Կամերային Երգչախումբ

Խմբավար՝ Սոնա Յովհաննիսեան

Նուագավար՝ Վահան Մարտիրոսեան

Անուշ՝ Սոֆիա Սայադեան *սոփրանօ*

Սարօ՝ Լիպարիտ Աւետիսեան *թենոր*

Մոսի՝ Գուրգէն Բաւէյեան *պարիթոն*

Անուշի մայր՝ Քրիստինա Սահակեան

Սարոյի մայր՝ Լիլիթ Սողոմոնեան

Ուշադրութիւն՝ ասիկա Արմէն Տիգրանեանի *Անուշ* օփերան չէ: Բեմադրիչը յստակօրէն չեշտած է՝ «*Անուշ*, ըստ Տիգրանեանի եւ Թումանեանի», եւ յիշատակած բառերն ու երաժշտութիւնը յարմարցնողներուն անունները: Մէյ մը որ յստակած է իր հարթակը, բեմադրիչին առջեւ յաջառացած է տարածութիւն մը՝ ուր կարելի եղած է բանալ մտածմունքի տարբեր շերտեր, հիմնուած բնագիրներու (երաժշտական նուագագրութիւն (score) եւ բանաստեղծութիւն) վերընթերցման վրայ:

Այս վերընթերցումները կարելի է համախմբել քանի մը առանցքներու շուրջ.

1. **Լիպրեթթօ-բանաստեղծութիւն**: Ահաւասիկ բեմադրիչ Աւետիքեանի խօսքերը.

«Առաջինը, ինչ արեցի, Թումանեանի պոէմը կրկին կարդալն ու լիբրետոյում վերականգնելն էր այն, ինչ կտրել, կրճատել էր Խորհրդային Միութիւնը: Դրանք կարճ հատուածներ են, բայց շատ կարեւոր հաղորդագրութիւն ունեն՝ ներկայացնում են երիտասարդների դիրքորոշումը Անուշի եւ Սարոյի, նրանց վարքի հանդէպ, հօր դիրքը Անուշի հանդէպ, քահանայի դիրքը Անուշի ծնողների եւ գիւղի հանդէպ... *Այդ լեզուները կտրուել էին, մնացել էր անեկդոտը, պատուի հարցն ու վրէժխնդրութիւնը*.

«Թումանեանը 19-րդ դարի վերջին համամարդկային գործ է գրել երիտասարդ աղջկայ եւ տղայի մասին, որոնք ուզում են ազատօրէն վայելել միմեանց հանդէպ սէրը, սակայն իրենց չեն թոյլատրում, որովհետեւ գոյութիւն ունեն ադաթներ կամ ինչպէս ասում են՝ չգրուած օրէնքներ, ըստ որոնց, օրինակ, Սարոն սոցիալապէս աւելի ցածր է, քան Մոսին եւ Անուշը, որովհետեւ հայր չունի, մայրն էլ յայտնւում է իր մահից յետոյ, կամ խաղի ընթացքում մի իգիթն իրաւունք չունի ամբոխի առջեւ գետնին գցել միւսին. պատուի հարց կայ: Թէեւ Թումանեանը չի գրել այս ադաթի մասին, լիբրետոյում հանդիսատեսին տեղեկացնում ենք, որ դա նշանակում է՝ խաղն արգելուած էր, բայց չէ որ կեանքում չկայ մի խաղ, որը յաղթող եւ պարտուող չունենայ...

«*Այս երեւոյթը մինչեւ այսօր Հայաստանում ու ամբողջ աշխարհում կայ. կայ օրէնք եւ կայ ադաթ*: Սարոն Մոսիին գցում է գետնին, հետեւանքները գիտենք, հիմա էլ մէկը իրաւունք չունի միւսին մի բան ասել, նոյն բանը կը կատարուի: Եւ եթէ որեւէ մէկն ինձ ասի, թէ սա ժամանակակից գործ չէ, կարող եմ հինգ րոպէում հակառակն ապացուցել. ոչինչ չի փոխուել, եւ ադաթներն օրէնքներից զօրեղ են:»(1)

*Անուշ*ի «դասական» բեմադրութիւնները կը հիմնուին հին եւ նոր ժամանակա-տարածային խզումներու վրայ, այն իմաստով որ այնտեղ գտնուող ընկերային յարաբերութիւնները արդէն անցեալ դարձած բարքեր են (ժամանակ)՝ տեղի ունեցած հայկական սիրելի գիւղի մը մէջ (տարածութիւն): Բայց այսպէս են օփերաներու բոլոր «դասական» բեմադրութիւնները: Օրինակ, Մոցարթի *Don Giovanni* օփերան «դասական» բեմադրութիւններուն մէջ կը ներկայացուի հին տարազներով, երեւակայական միջավայրի մէջ, պղատոնեան սիրոյ յարաբերութիւններով, կարծես տոն ժուանութիւնը այսօր ու այստեղ (ուր որ ալ ըլլայ այս «այստեղ»-ը) վերջացած երեւոյթ մը ըլլայ: Վախ մը կայ ներկայացնելու մեր ժամանակները, վախ մը կայ ըսելու՝ որ տոն ժուանութիւնը իր ժամանակակից տարբերակներով եւ իր շուրջ կազմուած թապուներով նոյնիսկ աւելի իրական է քան Մոցարթի ժամանակ: Ծիշդ այնպէս, ինչպէս երկչոտութեամբ կ'ուզենք ընդունիլ՝ որ ոչ-արդիականացուած (բայց հրաշալի, գեղեցիկ, աւանդական) գիւղին բարքերը նոյնութեամբ կրնան գործել նաեւ արդիականացուած քաղաքին մէջ, որուն մենք մաս կը կազմենք եւ որուն մաս կը կազմէ օփերա կոչուող զարգացած արուեստի հանդիսատեսը:

Ինչպէս վերոյիշեալ քաղուածքէն կ'երեւի, ժամանակա-տարածային առնչութիւնները Սերժ Աւետիքեանի վերընթերցումի միջոցներէն մէկն է: Կը մնար «անեկտոդային» (Աւետիքեանի բառը գործածած ըլլալու համար) կարծրատիպը վերածել հասարակական ներթափանցումներու՝ բխած Թումանեանի բուն բնագիրէն:

Աւետիքեան բնագրային յաւելագրութիւնները քաղած է Թումանեանի *Անուշ*էն եւ զանոնք ընդելուզած Տիգրանեանի երաժշտական համարներուն մէջ ռեչիթաթիւներու (բանաստեղծութեան արտասանութիւն՝ առանց երաժշտութեան) միջոցով:

2. **Երաժշտութիւն**: Աւետիքեան.

«Արդէն 1912-ին պոէմը մշակում է Արմէն Տիգրանեանը եւ բեմադրում Գիւմրիի թատրոնում: Բեմում 11 հոգի են եղել, Անուշի դերակատարն էլ ոչ թէ երգչուհի էր, այլ՝ դերասանուհի: Գործը շատ աւելի նման է եղել երաժշտական ներկայացման, քան՝ ուռճացած օպերայի, սակայն խորհրդային տարիներին Տիգրանեանից պահանջել են այն վերածել երկու եւ կէս ժամ տեւողութեամբ, 150 հոգանոց նուագախմբի համար ստեղծագործութեան: *Ես գտել եմ 1912-ին Տիգրանեանի ձեռքով գրուած պարտիտուրան, որով էլ Անահիտ Սիմոնեանի հետ առաջնորդուել ենք երաժշտութիւնը վերամշակելիս* եւ զտել ենք գրեթէ բոլոր կրկնութիւնները ու ուռճացուած հատուածները:»(2)

Վերադառնալ դէպի սկիզբը, դէպի առաջինը, չի կրնար հանդիստ կերպով մերուիլ տիալեքթիք զարգացման, կատարելագործութեան եւ յառաջընթացի գաղափարներուն հետ, հոգ չէ թէ այս վերջիններն անկարող են բացատրել բազմաթիւ հարցեր: Չեն բացատրեր թէ ինչու, օրինակ, Ռոսինիի 1816-ին յօրինած *Il barbiere di Siviglia* օփերան խիստ ժողովրդական է եւ ունի 135 ձայնագրութիւն, մինչդեռ 13 տարի ետք (*աւելի հասուն տարիքին*) յօրինած *Guillaume Tell*-ը՝ 32(3): Չեն բացատրեր, թէ ինչու մարդասպանութեան գործիքները հետեւողականօրէն «զարգացած են» նիզակէն մինչեւ ատոմական ռումբ եւ քիմիական զէնք (զարգացած է մարդասպանութիւնը):

*Անուշ* օփերային վերադարձը 1912-ի բեմադրութեան փորձ մըն է դիմելու բնածինին եւ ինքնաբխութեան, վերադառնալու դէպի նախնականը՝ զերծ մարդկային մտածողութեան «յառաջացած» տարիքի շերտային կուտակում-բարդացումներուն, ինչպէս նաեւ խորհրդային շրջանի վերադիր ակամայ թելադրանքներուն:

3. **Ազգայինի հարցը**: Աւետիքեան.

«Ցանկանում եմ գնալ համամարդկայինի, զտման ճանապարհով: Ուզում եմ տարազայինը հանել գործի միջից, որովհետեւ ազգայինն արդէն իսկ կայ երաժշտութեան մէջ, լեզուն հայերէնն է: Ամէն ինչ ներկայացուելու է զտուած տարածքում, լինելու են Հայաստանի բնապատկերները, որոնք նկարահանել եմ: Նշեմ, որ օգտագործել ենք նաեւ Տիգրանեանի օպերայից հանուած ժողովրդական գործիքները՝ դհոլը, զուռնան, դուդուկը:»(4)

Ըսել կ'ուզէ, ազգայինը չէ կապուած անշարժ տարրերու հետ, կարելի չէ սահմանել զայն: Ազգայինը գործողութիւն է, իսկ գործողութեան ընթացքին կը փոխուին չափանիշները:

Պատմական տարազի գոյութիւնը անպայմանօրէն չի հաստատեր ազգայինը, իսկ ազգայինը անպայմանօրէն չէ կապուած տարազի բացարձակացման հետ: Խօսիմ աւելի պարզ:

Բիւրեղապաշտները կը պնդեն՝ որ *Անուշ*ի տարազները պէտք է ըլլան ազգային: Գեղեցիկ վերտառութիւն: Բայց ո՞ր ազգայինը: Հայաստանի իւրաքանչիւր գիւղ ունեցած է *իր* տարազները, որոնք եղած են անկայուն՝ անընդհատ փոխուելով ժամանակի ընթացքին: Ուրեմն, իրական ազգային ըլլալու համար պէտք է նախ գտնել ԺԹ դարու Դսեղ գիւղի տարազները, ընտրել անոնցմէ մէկը եւ ապա որոշել թէ Անուշի ընտանիքը ճշգրիտ ինչ տարազ կը հագուէր: Անշուշտ, ասիկա անկարելիութիւն մըն է, որմէ կը բխի ազգայինի կամ ազգային տարազի սահմանափակութիւնը: Բոլորիս ծանօթ *Անուշ*ի «դասական» բեմադրութիւնները կը հիմնուին տարազի ընդհանրացուած ու կեդրոնականացուած ազգային ոճի մը վրայ: Բայց օփերայի մէջ, օփերայի թատրոնի մէջ, գիւղը չէ որ կը ներկայանայ (գիւղը այնտեղ է, գիւղին մէջ), այլ անոր պատկերը: Գիւղի բնաբանը (context) գիւղի մէջ տարբեր է օփերայէն: Օփերայի երգեցողական ձայներ, արհեստական լուսաւորութիւն, բեմն ու հանդիսասրահը բաժնող սահմաններ չկան գիւղին մէջ: Գիւղական տարազն իր գոյներով ծնունդն է *իր* բնութեան, ան տրամադրութիւններ կը յառաջացնէ *իր* շրջապատի տեսարաններուն եւ գոյներուն հետ միանալով: Այդ նոյն տարազը օփերայի բեմին վրայ կրնայ ստեղծել բոլորովին այլ տրամադրութիւն: Եթէ բեմադրիչին նպատակն է պատմել Անուշի մասին (այսինքն՝ տարածութիւն մը կայ դերակատարին եւ Անուշին միջեւ), կրնայ դիւրութեամբ այդ սահմանեալ տարազները փոխադրել բեմ: Եթէ իր նպատակն է խօսիլ Անուշի անունով, դառնալ Անուշ (այսինքն՝ նոյնացնել դերակատարի եւ Անուշի տարածութիւնները), ուրեմն տրամադրութիւնը պիտի թելադրէ օփերայի թատրոնին մէջ գտնել տարազային տարբեր լուծումներ, որոնք չեն կեդրոնանար մէկ տիրական գաղափարի մը շուրջ: Այս երկրորդ գիծին հետեւեցաւ Աւետիքեան:

4. **Բեմադրութիւն**: Նախորդ երեք կէտերուն մէջ արծարծուած գաղափարներուն մարմնաւորման համար, բեմադրական միջոցներու «ոչ-դասական» գործադրութիւնը կը դառնար բնական: Անշուշտ (դժբախտաբար), Գահիրէի մէջ նստած, Երեւանի կամ Նանթէռի բեմադրութիւնները դիտած ըլլալու հաւակնութիւնը չեմ կրնար ունենալ, բայց YouTube-ի մէջ առանց դժուարութեան հաւաքած եմ շուրջ տաս վայրկեան տեւող տեսագրութիւններ, որոնք, թէեւ չեն կրնար պատկերացում տալ բեմադրական յաջորդական լուծումներուն մասին, բայց յստակօրէն ցոյց կու տան ընդհանուր ուղղուածութիւնները: Ասոնցմէ մէկը մեներգչային ձայնական փայլքի ստորայնացումի անհետացումն է, յանուն բազմամարդ շարժումի եւ իրադարձութեան ստեղծումին: Կեդրոնը աստղ-մեներգիչէն (բեմադրութեան սեւեռումը առարկայի մը վրայ կամ բեմադրութեան առարկայացումը) շեղումն է դէպի իրադարձութիւնը (միջ-դերասանական յարաբերութիւններու ենթակայականութիւնը): Աւետիքեան հաւանաբար այս կէտը նկատի ունի երբ «դասական» օփերայի թատրոնը անուանեց «օձերի բոյն»(5): Յայտնի երգչուհի Քէթի Պէրպէրեան պել քանթոյի մեներգիչներուն ժամանակին անուանած էր «խեղճ հինցած կովեր» (իր խօսքով՝ "poor old cows"), այն իմաստով որ իրենց նպատակը բիւրեղացած ձայնարտադրութիւնն է՝ ի հաշիւ երաժշտական ու բառային իմաստներուն:(6)

Ուրիշ կէտ մըն ալ գոյներն են: Անոնք ընտրուած են ոչ թէ ➪ 4

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## ՅՄԸՄ-ՆՈՒՊԱՐ ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

### ՊԱՍՔԷԹ-ՊՈԼԻ ԵԳԻՊՏԱՀԱՅԿԱԿԱՆ ՄՐՑԱՇԱՐՔ

Ուրբաթ 19, Շաբաթ 20 եւ Կիրակի 21 Յուլիս 2013
ՆՈՒԻՐՈՒԱԾ՝
**ԱՍՊՆՋԱԿԱՆ ԵԳԻՊՏՈՍԻ ՅՈՒԼԻՍ 23-Ի ՅԵՂԱՓՈԽՈՒԹԵԱՆ 61-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻՆ**
ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ
**ԳԵՐՇ. Տ. ԱՇՈՏ Ս. ԵՊՍ. ՄՆԱՑԱԿԱՆԵԱՆԻ**
ԲԱՐԵԽՆԱՄ ԱՌԱՋՆՈՐԴ ԵԳԻՊՏԱՀԱՅՈՑ
ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ
**ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ՕՆՆԻԿ ՊԸԼԸՔՏԱՆԵԱՆԻ**
ԱՏԵՆԱՊԵՏ ԳԱՀԻՐԷԻ ՊԱՏ. ՔԱՂԱՔԱԿԱՆ ԺՈՂՈՎԻ
ՄՐՑԱՇԱՐՔԻՆ ԲԱԺԱԿԸ ՆՈՒԻՐԱԾ ԵՆ՝
**ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ԺԻՐԱՅՐ ՏԵՓՈՅԵԱՆ**
ԱՏԵՆԱՊԵՏ ՀԵԼԻՈՊՈԼՍՈՅ Հ.Մ.Ը.Մ.-ՆՈՒՊԱՐԻ
ՄՐՑԱՇԱՐՔԻՆ ՄԵՏԱՅԼՆԵՐԸ ՆՈՒԻՐԱԾ ԵՆ՝
**ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ՎԱՐԴ ԱԼԵՔՍԱՆԵԱՆ**
**Մրցումներու Յայտագիրը Մօտ Օրէն**

**ՎԱՐՉՈՒԹԻՒՆ**

ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ԽՈՀԵՐ

### 3 *ԱՆՈՒՇ* ՕՓԵՐԱՆ՝ ԻՇԽԱՆԱԶՐԿՈՒՄԻ ՈՒՂԻՈՎ

ըստ գոյութեան (այսինչ գիւղին տարազները այս գոյնը *ունին*) այլ ըստ կացութեան (այսինչ գիւղին տարազները այս գոյնը *կրնան ունենալ*): Իւրաքանչիւր ինքնուրոյնութիւն ունի իր գոյնը, որ բեմայարդարանքի եւ լուսաւորութեան գոյներուն հետ կոչուած է յառաջացնել յատուկ տրամադրութիւններ:

Ասոնք բոլորն ալ արդիականացուած բեմադրութիւններու ընդհանուր յատկանիշներ են, որոնք յստակօրէն արտացոլուած են տաս վայրկեանանոց հատուածներուն մէջ: Մասնայատկութիւններուն մասին խորհրդածելու համար անհրաժեշտ է դիտել ամբողջական բեմադրութիւնը:

Խումբ մը աքատեմիքներ չհաւնեցան Երեւանի այս բեմադրութիւնը եւ նամակ գրեցին Հայաստանի մշակութասէր նախագահ Սերժ Սարգսեանին.

«Յարգարժան պարոն նախագահ, այս բշուառ *Անուշը* հեռաւոր կապ չունի մինչ օրս սրբութեամբ պահուած գոհարներից ամենաթանկագինի հետ: Չի կարելի թոյլ տալ որ այն դառնայ շուկայական էժանագին առեւտրի մանրադրամ: Ազգային մեր հպարտութիւնների հետ նման սրբապիղծ ձեւով վարվողներին պիտի խստագոյնս պատժել:

«Որպէսզի ծիծաղի առարկայ չդառնայ մեր մշակոյթի գոհարի աղաւաղուած շարժը, եւ ծաղրի առարկայ չդառնայ մեր ժողովուրդը, խնդրում ենք արգելել այս ներկայացման »արտահանումը« արտասահման:»(7)

Իշխանական, հրամայական, վճռական, բարձրաձայն, անվիճելի խօսքեր, խօսքեր՝ որոնց թօթափման եւ հերքման ուղիով ընթացած էր բեմադրութիւնը: Նամակին մէջ առաջարկուած արուեստին «նպատակն է իշխանութիւն հաստատել մշակոյթի ոլորտում: Իսկ եթէ մի խումբ ստանձնում է մշակութային իշխանութիւնը, նա ունենում է ամենակայուն իշխանութիւնը», կը պատասխանէ Հայաստանի այլընտրանքային մտքի ներկայացուցիչ Արա Նեդոլեան:(8)

Որքան գիտեմ, իրական համակարգի «խստագոյն պատիժը» մահապատիժն է կամ ցկեանս բանտարկութիւնը: Մահապատիժէն կամ բանտարկութենէն ետք Հայաստանի նախագահը այլեւս պէտք պիտի չունենար աւելորդ ծախսի ենթարկելով պետութիւնը հեռաձայնել Ֆրանսուա Օլլանտին՝ արգիլելու համար *Անուշի* բեմադրութիւնը Նանթէի մէջ: Այնպէս որ նամակին վերը քաղուած հատուածին երկրորդ պարբերութիւնը կը գտնեմ աւելորդ...:

1. «Սերժ Աւետիքեան. «Անհրաժեշտ է շարունակել մեր վերածնունդը»», Զրոյցը վարեց Լիլիթ Բաբայեան, *Bravo.am*, 23 Ապրիլ 2013, www.bravo.am/news/Սերժ-Աւետիքեան-Անհրաժեշտ-է-շարունակել-մեր-վերածնունդը/
2. Անդ:
3. Այս թիւերը տրուած են ըստ Պրայըն Քափոնի (Brian Capon) մինչեւ 2009 կատարուած ձայնագրութիւններու տիսքոկրաֆիին՝ http://www.operadis-opera-discography.org.uk/CLORROSS.HTM
4. «Սերժ Աւետիքեան. «Անհրաժեշտ է շարունակել մեր վերածնունդը»»:
5. Արծուի Բախչինեան, «Արգելքի կոչեր անող մեր յարգարժան արուեստագէտներին», *Ազգ*, օրաթերթ, թիւ 75, 8 Մայիս 2013:
6. Տե՛ս իր մասին պատրաստուած հոլանտական վաւերագրականը՝ *Muziek is Mijn Adem: Cathy Berberian* (1994):
7. Այս նամակը տարածուած է համացանցի մէջ:
8. «Ստալինիզմը եւ աշխարհից կտրուած մտաւորականները. *Անուշ* օպերայի շուրջ աղմուկի մասին», *ePress.am*, 5 Մայիս 1913, www.epress.am/2013/05/08/Ստալինիզմի-հետեւանքները-եւ-աշխարհից-կտ.html

## ԾՆՈՒՆԴ

Ուրախութեամբ տեղեկացանք, որ մեր բարեկամներէն՝ Տէր եւ Տիկին Վաչէ եւ Հուրիկ Պալաեաններ (Մոնթրէալ), Յուլիս 9-ին բախտաւորուած են առջինեկ երկուորեակով, զորս անուանակոչած են Ժոզէֆ եւ Մարգ:

Այս ուրախ առթիւ ջերմօրէն կը շնորհաւորենք նորածիններուն ծնողքը, մեծ ծնողքը՝ Տէր եւ Տիկին Վահէ Պալաեաններ եւ մեծ մեծ մայրը՝ Տիկին Լուսի Պալաեան, մաղթելով նորածիններուն առողջ եւ երջանիկ կեանք:

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Այսու կը ծանուցանենք եգիպտահայ յարգոյ մեր հասարակութեան, որ Առաջնորդարանին մօտ տրամադրելի են արեւմտահայերէն «Նոր Կտակարան»-ներ:

Փափաքողները, ունենալու համար, կրնան դիմել Ազգային Առաջնորդարան:

**Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

### ՀԱՅԱՍՏԱՆՑԻՆԵՐՈՒ ՄԵԾ ՄԱՍԸ Չ՛ՈՒԶԵՐ ՄԱՍՆԱԿՑԻԼ ՓՏԱԽՏԻ 2 ԴԷՄ ՊԱՅՔԱՐԻՆ

*Վարուժան Հոկտանեան ամբողջութեամբ համաձայն է այս գնահատականի հետ: «Հայաստանի դէպքում կայ մէկ այլ մտահոգիչ փաստ, եւ ասեմ, որ արդէն այդ անհանգստութիւնը երէկ ես հեռախօսազանգով ստացայ նաեւ Բեռլինի մեր կենտրոնակայանից:*

*Դա վերաբերում է մարդկանց ցանկութեանը՝ ներգրաւուելու կոռուպցիայի դէմ պայքարում: Հարցուողների 10-ից 9-ը համաշխարհային մասշտաբով պատրաստ է ներգրաւուել կոռուպցիայի դէմ պայքարում: Հայաստանում պատկերը հակառակն է», - մանրամասնեց Հոկտանեանը:*

*Ան տարբեր պատճառներ կը յիշէ՝ վախի մթնոլորտը, յուսալքութիւնը:*

*Խորհրդարանական ընտրութիւններէն յետոյ հեռախօսային հարցում կազմակերպուած էր. հարցուածներու գոնէ մէկը չէր խոստովանած, որ ընտրակաշառք վերցուցած է: Այս մթնոլորտի արձանագրումը, ըստ Հոկտանեանի, զեկոյցի ամենասեւ կէտն է:*

*Հրապարակուած հարցման արդիւնքները նաեւ կ'արձանագրեն, որ հայաստանցիներու գրեթէ կէսի համոզմամբ՝ երկիրը կը ղեկավարուի միայն իրենց շահերը հետապնդող ընդամէնը մի քանի ազդեցիկ ու հարուստ խումբերու կողմէ:*



## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Այսու կը ծանուցանենք եգիպտահայ համայնքին, որ 1 Յուլիս 2013-էն սկսեալ, շուրջ 6 ամիս, Մար Մինայի Ազգային գերեզմանատան Ս. Մինաս մատուռը նորոգութեան մէջ պիտի ըլլայ:

Յիշեալ շրջանին Տաղաւար Տօներու Մեռելոցի Ս. Պատարագները պիտի մատուցուին Հելիոպոլսոյ Ազգային գերեզմանատան Ամենայն Սրբոց մատուռին մէջ:

Յաւելեալ տեղեկութիւններ ստանալու համար կը խնդրուի դիմել Առաջնորդարան՝ Բեչ. Րաֆֆի Սրկ. Պօղոսեանին:

**Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

*Տեղեկացնում ենք, որ ՀՀ կրթութեան եւ գիտութեան նախարարութեան 2013-2014 ուսումնական տարում սփիւռքահայ դիմորդների համար պետպատուէրի շրջանակներում հաստատել է 70 համալսարանական (բակալաւրիատ) անվճար տեղեր, որոնց մրցոյթին կարող են մասնակցել մանկավարժական, հայագիտական, մշակութային մասնագիտութիւնների համար դիմորդները: Սփիւռքահայ դիմորդները հնարաւորութիւն ունեն ընդունուելու նաեւ վճարովի համակարգ:*

*Փաստաթղթերի ներկայացման ժամկէտն է՝ Յուլիսի 9-ից մինչեւ Օգոստոսի 24-ը, իսկ Նախապատրաստական բաժանմունքում եւ մագիստրատուրայում ուսանելու համար փաստաթղթերը կ'ընդունուեն մինչեւ Նոյեմբերի 8-ը, հեռակայ բաժանմունքում՝ մինչեւ Սեպտեմբերի 20-ը:*

*Պահանջուող փաստաթղթերն են՝*

*1.- Դիմում՝ ՀՀ կրթութեան եւ գիտութեան նախարարի անունով, որում պետք է նշուած լինի ընտրած համալսարանը եւ մասնագիտութիւնը,*

*2.- Անձնագրի պատճէնը,*

*3.- Ծննդեան վկայականի պատճէնը՝ պետական նօտարի եւ դեսպանութեան վաւերացմամբ կամ մկրտութեան վկայականը,*

*4.- Կրթութեան վկայականի պատճէնը թուանշաններով պետական նոտարի եւ դեսպանութեան վաւերացմամբ,*

*5.- Ընդհանուր առողջութեան մասին բժշկական տեղեկանք,*

*6.- 3x4 չափսի 4 լուսանկար,*

*7.- Ինքնակենսագրութիւն՝ հայերէն կամ անգլերէն լեզուներով:*

*Փաստաթղթերը ՀՀ կրթութեան եւ գիտութեան նախարարութիւն ներկայացւում են անձամբ դիմորդի կամ նրա լիազօրուած անձի կողմից:*

*Յաւելեալ տեղեկութիւններ ստանալու, ինչպէս նաեւ համալսարանների եւ մասնագիտութիւնների ցանկին ծանօթանալու համար կարելի է դիմել Հայաստանի Հանրապետութեան դեսպանութիւն:*

*Գահիրէ, Զամալէք թաղամաս, 20, Մոհամէտ Մազհար փողոց, Հեռ. 2737 4157, 2737 4159 Ֆաքս. 2737 4158.*

*Էլ. փոստ, **armegyptembassy@mfa.am***

**ՀՀ ԴԵՍՊԱՆՈՒԹԻՒՆ - ԳԱՀԻՐԷ**

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

Հիմնուած 1948

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع
TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1708 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 29 ՕԳՈՍՏՈՍ 2013 ՀԱՏԸ ՉԵՐՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٧٠٨ الخميس ٢٩ أغسطس ٢٠١٣

## ԵԳԻՊՏՈՍԻ ՎԵՐԱ«ԳԱՐՈՒՆ»ԱՑՄԱՆ ԸՆԹԱՑՔԸ

Եգիպտոսի բանակի ներկայ զօրաւոր մարդը եւ իշխանաւորը՝ Զօր. Ապտըլֆաթթահ Ալ-Սիսին, անցեալ շաբթուան մէջ իր արտասանած ճառին մէջ թէեւ ուղղակիօրէն «Իխուան Ալ-Մուսլիմին»-ին (Մուսուլման Եղբայրներ Կազմակերպութեան) կ'ուղղէր խօսքը եւ անոնց կ'ազդարարէր վերջ տալ իրենց անկարգ եւ մահատարած արարքներուն, խորքին մէջ սակայն ան իր խօսքը կ'ուղղէր Ամերիկայի եւ անոր հետ Թուրքիոյ եւ Իսրայէլի, ըսելու անոնց թէ իրենց «ԻԽՈՒԱՆԱԿԱՆ» տիպի Միջին Արեւելք մը ստեղծելու ծրագիրը, որ կը միտի խաւարի եւ տգիտութեան մէջ պահել ամբողջ Արաբիստանը, մատնուած է ձախողութեան, որովհետեւ ան պիտի ծառայէր միայն անոնց շահերուն ի վնաս արաբական զարթօնքին:

Կը թուի թէ Զօր. Ալ-Սիսին կը պայքարի երկու ճակատներու վրայ.

1.- Ներքին ճակատ «Իխուան Մուսլիմին»-ին դէմ, որոնք «Եգիպտոսի Գարուն» կոչուող յեղափոխութիւնը գողցան եւ ուզեցին խեղդել Եգիպտոսի ու անոր ապագան:

2.- Արտաքին ճակատ՝ Ամերիկայի դէմ, որ կը ծրագրէ Եգիպտոսի «Իխուանական» իշխանաձեւը տարածել արաբական մնացեալ երկիրներուն մէջ, հետապնդելով հետեւեալ չորս նպատակները.

Ա.- Փակել դէպի յառաջդիմութիւն եւ արդիականութիւն տանող արաբական բոլոր դռները եւ ձախողութեան մատնել անկրօն պետութեան գաղափարը, տարածաշրջանը դարձնելով Ամերիկայի խաղադաշտը:

Բ.- Գոց պահել Իսրայէլ-Արաբ տագնապի ծրարը, որովհետեւ «Իխուանճի»ներու մտահոգութիւնը ազգային պայքար մղել չէ, այլ կրօնական յետադէմ իշխանութիւն հաստատել է:

Գ.- Արաբական Աշխարհի վարչամեքենան պահել «Իխուանճի»ական առումով գործակցող ԵԳԻՊՏՈՍ-ԹՈՒՐՔԻԱ ազդեցութեան տակ, հրահրելով տագնապներ եւ յեղափոխութիւններ Արաբական Ծոցի երկիրներուն մէջ, ինչ որ պատահեցաւ վերջերս «Իխուան»ական յորդորով սկսած շարժումներուն Արաբական Միացեալ Էմիրութիւններու, Քուէյթի, Սէուտական Արաբիոյ եւ Յորդանանի մէջ:

Դ.- Զանալ խորացնել Սիւննի-Շիի համայնքային պայքարը, տկարացնելու համար Իսլամական Աշխարհը:

Բանակին կողմէ հրապարակային ցոյցերն ու շրջափակումը բռնի ցրուելէ առաջ, Գահիրէն քաղաքակիրթ ձեւով Ուաշինկթընին ըսած էր, թէ «Մեզի իշխողը Եգիպտական Տունն է եւ ոչ Սպիտակ Տունը», եւ ըսած էր նաեւ թէ «Մենք դուրսի ստրուկները չենք»:

Զօր. Ալ-Սիսին կը շարունակէ յաճախ կրկնել թէ կը սխալին բոլոր անոնք, որոնք կը խորհին թէ ահաբեկչութեամբ կամ անկարգութեամբ կրնան ծունկի բերել Եգիպտոսի պետութիւնն ու անոր գիտակից ժողովուրդը, եւ կը նկատէ թէ իշխանութեան գլուխը ըլլալէն շատ աւելի պատուաբեր է պաշտպան կանգնիլ Եգիպտոսի ապահովութեան եւ յառաջդիմութեան:

Եգիպտոս եղած է ու կը մնայ Արաբական Աշխարհի առաջնորդը իր մշակոյթով, թիւով եւ աշխարհագրական դիրքով: Գովելի է անոր յետադիմութեան դէմ տարած ներկայ վերա«գարուն»ացման ընթացքը:

*«ԼՈՒՍԱԲԱՑ»* ՄԵԹՐ ՊԱՐԳԵՒ ԴԱՒԻԹԵԱՆ

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՈՒՍՈՒՄ՝ ԲՈԼՈՐԻՆ



*Հայաստանի Հանրապետութեան Նախագահ Սերժ Սարգըսեան ընդունեց անցնող ուսումնական տարուան ընթացքին բարձր յառաջդիմութիւն ցուցաբերած եւ տարբեր մրցումներու յաջողութիւններու հասած աշակերտները: Պարգեւատրութեան արարողութենէն ետք Սարգսեան արտասանեց խօսք մը, որուն մէջ իր անձնական հիւրերը համարեց յաջող աշակերտները:*

*«Մեր երկիրը ամէն ինչ պիտի ընէ, որպէսզի գիտութիւնը եւ կրթութիւնը զարգանան: Ես ամիսներ առաջ յանձնարարեցի, որ լաւ ուսանողները ընկերային պայմաններու բերումով չզըրկուին կրթութիւն ստանալու իրաւունքէն: Մեր երկրի պատասխանատուները պիտի ըլլան կա՛մ այս սրահին մէջ գտնուողները կա՛մ իրենց նմանները», ըսաւ Նախագահ Սարգսեան:*

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԲՈՂՈՔԻ ԱԼԻՔԸ ԿԸ ՇԱՐՈՒՆԱԿՈՒԻ



*Հայաստանի մէջ ամիսներէ ի վեր շարունակուող հասարակական բողոքի ալիքը կը շարունակուի, հակառակ ոստիկանութեան կողմէ կատարուող ձերբակալութիւններուն եւ ճնշումի այլ միջոցներուն:*

*Վերջին օրերուն բողոքի թատերաբեմ դարձած է Երեւանի Կոմիտաս 5 հասցէին վրայ կատարուող շինարարութիւնը: Նոր շէնքի կառուցման դէմ պայքարող մօտակայ շէնքերու բնակիչները կը շարունակեն շինութեան հրապարակը պահել իրենց հսկողութեան տակ:*

*Կոմիտաս 5 հասցէի մօտակայ շէնքերու բնակիչները կը պնդեն, որ այդ նեղ տարածքին վրայ կարելի չէ շէնք կառուցել, քանի որ շէնքը կը փակէ հրշէջ եւ շտապ օգնութեան մեքենաներու մուտքը, կը փակէ իրենց տուներու լուսաւորութիւնը, եւ որ շէնքի տակ պինդ ժայռ է, զայն փորձելով կոտրել, կը ցնցեն իրենց տուներու հիմքերը:*

*Լարուածութիւնը յատկապէս մեծ էր անցնող շաբաթավերջին, երբ բնակիչներն ու հասարակական ակտիւիստները մի քանի անգամ փակեցին փողոցը, բախումներ եղան ցուցարարներուն ու իրաւապահներուն միջեւ եւ աւելի քան երկու տասնեակ ցուցարարներ բերման ենթարկուեցան:*

*Միւս կողմէ, կը շարունակուի Երեւանի քաղաքապետարանի դիմաց Յուլիս 26-էն ի վեր ընթացող նստացոյցը: Ծեծի ենթարկուած են հինգ անձիք: «Սա կոչւում է ահաբեկչութիւն, եւ ես սա այսպէս չեմ թողնելու», - «Ազատութիւն»* 4

ԳԱՀԻՐԷ

## ԵԳԻՊՏԱՑԻՆԵՐ ԿԸ ՊԱՀԱՆՋԵՆ ՃԱՆՉՆԱԼ ՀԱՅՈՑ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԻՒՆԸ

*Իրաւաբան Ահմատ Իրակի Նասսարը դատական հայց է ներկայացրել Եգիպտոսի վարչական դատարան՝ պահանջելով պաշտօնապէս ճանաչել Հայոց ցեղասպանութիւնը, որը իրականացուել է Օսմանեան կայսրութեան կառավարութեան կողմից 1915-ին:*

*«Ալ-Մասալահ» կայքի փոխանցմամբ, հայցում յիշատակւում է Հայերի կեանքը՝ սկսած 11-րդ դարից, իրար յաջորդող իշխանութիւնների ստուերի ներքոյ:*

*Դրանցից վերջինն Օսմանեան կայսրութիւնն էր, որը ճանաչուել էր առանձին պետութիւն իր սեփական իրաւունքներով եւ 19-րդ դարում սկսեց վայրէջք ապրել՝ անուանուելով «Եւրոպայի ծեր մարդ»: Մի շարք ազգեր ստացան իրենց ինքնիշխանութիւնը:*

*Հայցում նաեւ ասւում է, որ օսմանեան սուլթան Ապտ էլ-Համիտ Երկրորդը հայերի, յոյների եւ ասորիների իրաւունքների նկատմամբ առաջին ոտնձգութիւններն է կատարել՝ կազմակերպելով նշուած ազգերի կոտորածները տնտեսական եւ կրօնական բազում պատճառ-* 3

ՍՈՒՐԻԱ

## ՀԱՅ ԶՈՀԵՐ ԴԱՄԱՍԿՈՍԻ ՄԷՋ

*Դամասկոսի առաջնորդանիստ Սուրբ Սարգիս եկեղեցւոյ ու անոր շրջակայքին վրայ ինկած են քանի մը ռումբեր: Պայթումներուն հետեւանքով մահացած է Յակոբ Սարգիսեանը, վիրաւորուած եւ հիւանդանոց փոխադրուած են Ռաֆֆի Ճապուրեանը եւ առաջնորդարանի պահակ Թորոս Սարգիսեանը:*

*Նիւթական վնասներ կրած են եկեղեցին եւ վարժարանը: Փշրուած են առաջնորդարանի շէնքի ապակիներուն մէկ մասը:*

*Դամասկոսի թեմի առաջնորդ Արմաշ Եպս. Նալպանտեան պայթումի պահուն գտնուած է առաջնորդարանի համալիրէն դուրս, սակայն վերադարձած է եւ վերա-* 2

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՈՐՈՇ ԱՂԱՆԴԱՒՈՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԻՒՆՆԵՐ ՍՈՒՐԻԱՅԷՆ ՆԵՐԳԱՂԹԱԾ ՄԵՐ ՀԱՅՐԵՆԱԿԻՑՆԵՐԸ ԿԸ ՓՈՐՁԵՆ ՄՈԼՈՐԵՑՆԵԼ

**Բաց նամակ Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Բ.-ին**

Վեհափառ Տէ՛ր, ըստ ՍԴՀԿ «Սարգիս Տխրունի» Ուսանողական-Երիտասարդական Միութեան տեղեկութիւններուն, որոշ աղանդաւորական կազմակերպութիւններ կը փորձեն մոլորեցնել Սուրիայէն ներգաղթած մեր հայրենակիցները: Անոնք կը փորձեն օգտուիլ մարդոց ծանր վիճակէն եւ կ'առաջարկեն միանալ իրենց շարքերուն, որպէսզի աջակցին ներգաղթեալներուն: Մէկ դարէ աւելի սուրիահայ ժողովուրդը ապրած է իսլամական պետութեան մէջ, բայց չէ օտարացած, ընդհակառակը կառուցած է եկեղեցիներ, որպէսզի կարենայ պահել իր հաւատքը, բայց վերադառնալով մայր հայրենիք անոնց կը սպասէ ապականութեան փորձը եւ հարազատ եկեղեցիէն հեռանալու վտանգը: ՍԴՀԿ «Սարգիս Տխրունի» Ուսանողական-Երիտասարդական Միութիւնը կը խնդրէ Ձեզմէ՝ որպէս համայն հայութեան հոգեւոր առաջնորդ, ձեռնարկել միջոցներ որպէսզի մեր քոյրերը եւ եղբայրները չերթան սխալ ճանապարհով:

Որդիական խոնարհութեամբ մատչինք ի համբոյր Ձերդ սրբութեան օծեալ եւ սուրբ աջոյն`

**ՍԴՀԿ «Սարգիս Տխրունի»**

**Ուսանողական-Երիտասարդական Միութիւն**

ԱՆԳԼԻԱ

## «ՊՐԻԹԻՇ ՄՈՒԶԷՈՒՄ» ԿԸ ՍՐԲԱԳՐԷ ՍԽԱԼԸ

*Մեծն Բրիտանիոյ «Պրիթիշ Միւզէում»ի սրահներէն մէկը, որ նախապէս կը կոչուէր «Ancient Anatolia» («Հին Անատոլիա»), վերանուանուած էր «Ancient Turkey» («Հին Թուրքիա»): Հոն կը ցուցադրուէին նախապատմական ժամանակաշրջանի, Ուրարտուին վերաբերող իրեր: Այս երեւոյթը նախ եւ առաջ կը թողէր այն տպաւորութիւնը, թէ անոնց մաս կը կազմեն Թուրքիոյ եւ թրքական անցեալին, ապա նաեւ Ուրարտուն եւ պատմական արեւմտեան Փոքր Ասիան կը ներկայացուէին որպէս Թուրքիա:*

*Այս խեղաթիւրումին յայտնաբերումէն անմիջապէս ետք՝ յատկապէս ընկերային ցանցերու միջոցով նախաձեռնուեցաւ բողոքի ստորագրահաւաք մը, պատմութեան բնագաւառի հանրածանօթ դէմքերու կողմէ, ճշմարտութեան վերահաստատման պահանջով, նամակներ յղուեցան թանգարանի տնօրէնութեան:*

*Հետեւողական այս աշխատանքը այսօր դրական արդիւնքի յանգած է, քանի որ «Պրիթիշ Միւզէում»ի պատասխանատուներէն տիկին Անճելա Սմիթ Յուլիս 23 թուակիր ել-գիրով մը կը հաղորդէ, թէ փոխած են նշեալ սրահին խնդրայարոյց անուանումը եւ այսուհետեւ ան կը կոչուի ոչ թէ «Հին Թուրքիա», այլ «Անատոլիա եւ Ուրարտու, Ն.Ք. 7000-300»:*

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ ԴԱՏ ԲԱՑԱԾ Է «ԱՐՄԱՎԻԱ»Ի ԴԷՄ

*Կառավարութիւնը՝ սնանկութիւն հռչակած «Արմավիա» օդային գիծերու ընկերութեան դէմ դատ բացած է տուրքերէ խուսափելու մեղադրանքով: «Արմավիա»էն կը պահանջուի 7,36 միլիառ դրամի (շուրջ 14 միլիոն եւրօ) գումար մը, որ ըստ կառավարութեան կը համապատասխանէ այն հարկերուն, զորս ընկերութիւնը պէտք է վճարած ըլլար:*

ԹՈՒՐՔԻԱ

## «ՀԱՅԵՐԸ ԿԸ ՇԱՐՈՒՆԱԿԵՆ ԹՐՔԱԿԱՆ ԼՐԱՏՈՒԱՄԻՋՈՑՆԵՐՈՒՆ ՄԷՋ» ԱՏԵԼՈՒԹԵԱՆ ԱՐՏԱՅԱՅՏՈՒԹԵԱՆ ԳԼԽԱՒՈՐ ԹԻՐԱԽԸ ՄՆԱԼ

*«Հրանդ Տինք» հիմնարկը անցեալ հինգշաբթի օր հրապարակած է «Լրատուամիջոցներու մէջ ատելութեան արտայայտութեան» մասին իր տարեկան զեկուցումը, որ ցոյց կու տայ, թէ Թուրքիոյ լրատուամիջոցներուն ամէնէն յաճախակի երեւոյթը ատելութեան արտայայտութիւններն են եւ յօդուածագիրները կը կազմեն յանցագործներուն մեծամասնութիւնը:*

*Զեկուցումը կը հաղորդէ, որ այս տարուան առաջին չորս ամսուան ընթացքին ատելութեան արտայայտութեան ամէնէն յաճախակի թիրախները հայերը, հրեաներն ու քրիստոնեաներն են, եւ ատելութեան համեմատութիւնն ու սրութիւնն ալ այդ շարքով կ'ընթանայ:*

*Թուրքիոյ յոյն եւ քիւրտ համայնքները խտրականութեան ենթարկուած երկու միւս խմբակներն են, սակայն անոնց* 4

## ՍՏԵՓԱՆԱԿԵՐՏԻ ՕԴԱՆԱՒԱԿԱՅԱՆԸ ՆՈՐ ՍԵՓԱԿԱՆԱՏԷՐ ՈՒՆԻ



Ստեփանակերտի օդանաւակայանի բաժնետոմսերը ամբողջութեամբ փոխանցուեցան Հայաստանի արտակարգ իրավիճակներու նախարարութեան:

Հայաստանի կառավարութիւնը իր երէկուայ Օգոստոսի նիստին ընթացքին որոշեց օդակայանին բաժնետոմսերը վերցնել պետական գոյքերու կառավարման վարչութեան մօտէն եւ յանձնել արտակարգ իրավիճակներու նախարարութեան:

Նշենք, թէ Ստեփանակերտի օդակայանը 2006-էն ի վեր դադրեցուցած է իր գործունէութիւնը:

## ՀԱՅ ԶՈՀԵՐ ԴԱՄԱՍԿՈՍԻ ՄԷՋ

1

*Հսկած՝ վնասներու արժեւորման աշխատանքները:*

*Դամասկոսի Տուէյլաա շրջանին մէջ վիրաւորուած է նաեւ Ժիրայր Թոփալեանը:*

*Միւս կողմէ, «Ազատութիւն» ռատիոկայանը կը տեղեկացնէ որ, Հալէպի մէջ ապրող սուրիահայերը սկսած են նախապատրաստուիլ Ամերիկեան հաւանական հարուածներուն: Կը պատրաստուին շէնքերու նկուղները ծառայեցնել որպէս ապաստարան, ուր կը պատըսպարուին հրթիռներու հարուածներէն ու ռմբահարումներէն:*

*Հալէպի մէջ տպագրուող Գանձասար ամսագրի աշխատակից Զարմիկ Պողիկեան ռատիոկայանին փոխանցած է թէ, համայնքը խուճապի չէ մատնուած: Ան ըսած է, որ եթէ նոյնիսկ սուրիահայերը ցանկութիւն ունենային այս օրերին լքել երկիրը, ապա, միեւնոյն է, այդ կարելի չէ: Հալէպը արտաքին աշխարհին կապող բոլոր ճանապարհները վտանգուած են: Օդանաւակայանը ամիսներէ ի վեր փակ է, իսկ ցամաքային ճանապարհները կամ ընդդիմադիրներու հսկողութեան տակ են եւ կամ ալ պատերազմական գործողութիւններու կեդրոնն են:*

*«Հայկական համայնքը մտահոգ է: Հայ համայնքի ղեկավարները կոչ կ'ընեն զգոյշ ըլլալ եւ շատ դուրս չգալ այս օրերուն», - ըսած է Պողիկեան:*

*Ըստ «Ազատութիւն» ռատիոկայանի, Հայաստանի մէջ գտնուող սուրիահայերը անհանգստացած են Հալէպի մէջ մնացած հարազատներուն համար: Անոնց միակ յոյս այն է, որ Ամերիկան նման քայլի չի դիմեր:*

ԳԱՀԻՐԷ

## ԳԱԼՈՒՍՏԵԱՆ-ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

### ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆ

Ուրախութեամբ կը տեղեկացնենք յարգոյ հասարակութեան եւ ազնիւ ծնողներուն Վարժարանիս 2012-2013 ուսումնական տարեշրջանի Գ. Երկրորդականի Պետական քննութեանց արդիւնքները:

Ստորեւ կու տանք ցանկը համապատասխան նիշերով:

| | |
|---|---|
| <u>Գիտական Ճիւղ</u> | |
| Յակոբ Պերճ Ասլանեան | 92.07%* |
| Քրիս Արման Վահան Գըլլըյեան | 90.73%* |
| Ժորժ Տիգրան Պօյաճեան | 87.07%* |
| Մատօննա Ռոպէր Սարգիս | 80.49%* |
| <u>Գրական Ճիւղ</u> | |
| Արեւ Արմէն Ալեքսանեան | 78.66%* |
| Ռուբէն Սաատ Նակիպ | 76.59%* |
| Փաթիլ Րաֆիք Պաթանի | 75.12%* |
| Գարօլին Էտուար Միխայիլ | 70.24%* |

Վարժարանի Տնօրէնութիւնը եւ ուսուցչական կազմը ջերմօրէն կը շնորհաւորեն յարգելի ծնողները եւ աշակերտները իրենց յաջողութեան առթիւ:

(*) Անգլերէնի (High Level) նիշերը աւելցնելէ վերջ:

**ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ**

*Այս առիթով խմբագրութիւնս կը շնորհաւորէ յաջողած աշակերտները եւ կը գնահատէ Տնօրէնութեան եւ ուսուցչական կազմին յարատեւ ջանքերը:*

ՄԻԱՑ. ՆԱՀԱՆԳՆԵՐ

## ՀԱՅՈՑ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԵԱՆ ՄԱՍԻՆ ԳՐՈՂ ՀԵՂԻՆԱԿ ՍԱՄԱՆԹԱ ՓԱՈՒԸՐ ՆՇԱՆԱԿՈՒԱԾ Է ՄԱԿ-Ի ՄԷՋ ԱՄՆ-Ի ԴԵՍՊԱՆ

*ԱՄՆ Ծերակոյտը գրեթէ միաձայն հաւանութիւն տուած է նախագահ Պարաք Օպամայի ընտրութեան՝ ԱՄՆ դեսպանի պաշտօնին նշանակելու ներքին քաղաքականութեան իր նախկին խորհրդական ու յայտնի իրաւապաշտպան Սամանթա Փաուըրը: Ծագումով իրլանտացի, Փաուըր փոխարինեց Սիւզըն Ռայսը:*

*«Իբրեւ մարդու իրաւունքներու ու արժանապատուութեան վաղեմի պաշտպան, ան կ'անդրադառնայ ԱՄՆ-ի համընդհանուր իրաւունքներուն, հիմնարար ազատութեան ու ազգային շահերուն»,- յայտարարած է Օպամա՝ ներկայացնելով թեկնածուն:*

*2003-ին Սամանթա Փաուըր «Փուլիցըր» մրցանակը ստացաւ իր «Խնդիրը Դժոխքէն. Ամերիկան Ցեղասպանութեան Դարուն» գիրքին համար, ուր մանրամասն անդրադարձած էր 1915-ին Օսմանեան Կայսրութեան մէջ Հայոց Ցեղասպանութեան:*

## ԱՄԵՐԻԿԱՅԻ ԴԵՍՊԱՆԻ ԿԱՐԾԻՔՈՎ՝ ԱՊՐԻԼԻ 24-Ի ԿԱՊԱԿՑՈՒԹԵԱՄԲ ՕՊԱՄԱՅԻ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ ՈՐԵՒԷ ՓԱՍՏ ՉԻ ՀԵՐՔԵՐ



Երեւանի մօտ Ամերիկայի դեսպան Ճոն Հէֆֆեր:

*Միացեալ Նահանգներու նախագահ Պարաք Օպամայի ամենամեայ յայտարարութիւնը՝ կապուած Ապրիլի 24-ի Հայոց ցեղասպանութեան զոհերու յիշատակման հետ, ուժեղ յայտարարութիւն է, որ որեւէ փաստ չի հերքեր: Այս մասին յայտարարած է Երեւանի մօտ Ամերիկայի դեսպան Ճոն Հէֆֆերն՝ «Եէյլ» համալսարանի «The Politic» ամսագրին տուած հարցազրոյցին մէջ:*

*«Այնտեղ յստակ ըսուած է, որ Օսմանեան Կայսրութեան վերջին օրերուն, 1.5 միլիոն հայ սպաննուած է: Յայտարարութիւնը կը վկայակոչէ այդ գործողութիւնները՝ որպէս 20-րդ դարու ամենավայրագ գազանութիւններէն մէկը: Յայտարարութիւնը կը ճանչնայ փաստերը եւ մեր կարծիքով, անոր մէջ փաստերու վերաբերեալ վիճելի հարցեր չկան»,- ըսած է դեսպանը:*

*Ճոն Հէֆֆերնի կարծիքով, ԱՄՆ կառավարութիւնը ունի այդ իրադարձութիւններու համար քաղաքական որոշում, որ կը ներառէ շարք մը իրաւական եւ քաղաքական գործօններ, որոնցմէ մէկը Հայաստանի եւ Թուրքիոյ յարաբերութիւններու կարգաւորումն է:*

*«Բնականաբար, Հայաստանին պէտք է Թուրքիոյ հետ բաց սահման: Մասնակի մեկուսացումը մեծ վնաս կը հասցնէ պետականութեան ու տնտեսութեան: ԱՄՆ-ի քաղաքականութիւնը ուղղուած է Հայաստանի եւ Թուրքիոյ հաշտեցման:* 4

<u>ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ԽՈՀԵՐ</u>

# ԴԻՄԱԴՐՈՒԹԻՒՆ ԳԻՏԵԼԻՔԻ ՀԱՆԴԷՊ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Մէյ մը որ ներսը անջատուեցաւ դուրսէն քարաշէն պատերով (ուղղակի եւ պայմանական իմաստներով), այսինքն՝ կազմուեցաւ մարդկային խմբաւորում մը իր ինքնութեամբ եւ իր գիտելիքով, յառաջացաւ դիմադրութիւն ուրիշ ու տարբեր գիտելիքի նկատմամբ: Տուեալ խմբաւորումին մէջ յարմարաւէտ է կրկնել ու չեշտել ընդունուած գիտելիքը եւ խիստ վտանգաւոր է նոյնիսկ փորձել մտածել *ուրիշի* գիտելիքի մասին: Խումբի մը նկատմամբ այլախոհ մտածողը, այսինքն՝ *աւելի* գիտելիքի ձգտողը, կրնայ ենթարկուիլ մեկուսացման, կամ կրնայ արտաքսուիլ խումբէն:

Գիտելիքի դիմադրութիւնը պատմական երեւոյթ մըն է: Պատմութեան ընթացքին կատարուած գիրքերու հրկիզում-ոչնչացումները ցուցանիշներ են արտախմբային գիտելիքի դիմադրութեան: Օրինակ, հակառակ արեւելապաշտներու (orientalist) պնդումներուն, իսլամները պէտք չունէին է. դարուն հրկիզելու հին Աղեքսանդրիոյ Գրադարանը, քանի որ իսլամական գիտելիքը կ'ուղղուէր դէպի արիսթոթէլեան-նորպղատոնեան ներառական (inclusive) հրաշալի փիլիսոփայութիւն մը՝ որ հասաւ մինչեւ Իպն Ռուշտ (Averroes) (1126-1198) եւ Իպն Խալտուն (1332-1382): Փոխարէնը, ԺԲ. դարու վերջաւորութեան, այդ նոյն իսլամի արմատականացման (radicalization) ժամանակ, երբ կրօնքը սկսաւ աստիճանաբար իրմէ վանել փիլիսոփայութիւնը եւ գայն դարձնել օտարացած գիտելիք, այդ գիտելիքի հանդէպ իսլամ ծայրայեղականները հանդէս բերին դիմադրութիւն, օրինակ՝ հրկիզելով Իպն Ռուշտի աշխատութիւնները: Այս գիծը իր անհանդուրժողականութեան կիզակէտին հասաւ ԺԳ. դարու Իպն Թայմիյայի (Ibn Taymiyyah) (1263-1328) գրութիւններուն մէջ: Իպն Ռուշտ / Իպն Թայմիյա երկուութիւնը իսլամական մշակոյթին մէջ կը շարունակուի մինչեւ այսօր: Յիշենք 1980-ականներու ընդհարումը Թաուֆիք Ալ Հաքիմի եւ Ալ Շէյխ Ալ Շա'արաուիի միջեւ: Զարմանալիօրէն, կամ հասկնալիօրէն, երբ լիպերալ արեւմուտքը իր հիմնահոսանքային քարոզչութեան մէջ կ'ուզէ իսլամական մշակոյթը ներկայացնել, կը ցուցադրէ ու կը սեւեռէ անոր բացառապէս արմատականացուած կողմը (Իպն Թայմիյա-Ալ Շէյխ Ալ Շա'արաուի գիծը), չնչելով իսլամական մշակոյթի միւս գիծին (Իպն Ռուշտ-Թաուֆիք Ալ Հաքիմ) գիտելիքը: Անկասկած՝ գիտելիքի նուազեցում:

Հայերը՝ որոնք յաճախ բռնած են լիպերալ արեւմուտքի դիրքը իսլամի գնահատման նկատմամբ, իրենք եւս բազմիցս զոհ դարձած են *իրենց* ունեցած գիտելիքին: Պատմութեան ընթացքին որքան հայկական մատենագիտական կեդրոններ թալանուած ու հրկիզուած են:

Գիտելիքի բնաջնջման գագաթնակէտն է սպանութիւնը: Իշխանութիւններու, ոստիկանութիւններու, կազմակերպութիւններու կամ խմբաւորումներու կողմէ կատարուած սպանութիւնները կը ցուցադրեն ուրիշի գիտելիքի հանդէպ գոյութիւն ունեցող վախը: Մարդակերտ աղէտը՝ ցեղասպանութիւնը, ժողովրդային ու հանրային գիտելիքի նուազեցման տենչ մըն է: Օսմանեան իշխանութեան ցեղասպանութիւնը վախ մըն էր մէկ ու կէս միլիոն հայու գիտելիքէն: Նոյնն էր նաեւ գերմանացի նացի վերնախաւին ցեղասպանութիւնը հրեաներուն, գնչուներուն, միասեռականներուն եւ մարդկային ուղղափառութենէն շեղուած համարուողներուն: Հրեան՝ հակառակ որ դեռ նոր իր գիտելիքին զոհը դարձած էր նացիներուն կողմէ, 1948-էն սկսեալ մինչեւ այսօր կը գործադրէ ցեղասպանութիւն պաղեստինցիներուն հանդէպ, արմատախիլ ընելով դարաւոր բնիկ մշակոյթ մը: Վերջապէս, Ի. դարու առաջին կէսի հայամիջեան ահաբեկչական սպանութիւնները արտախմբային գիտելիքի լռեցման միջոց էին:

Դրամը եւս կրնայ դիմադրել գիտելիքի տարբերակումը: Կազմակերպութիւններու պատմութիւններ կը գրուին, կը տպագրուին ու կը շուկայացուին այդ նոյն կազմակերպութիւններու դրամական հովանաւորութեամբ: Գրողներ կը յօժարին դրամ ստանալ՝ գրելու վճարողին մասին: Ի՞նչ կարելի է սպասել նման ինքնահովանաւորուած «ուսումնասիրութիւններէն» բացի արգիլուած գիտելիքի մեկուսացումէն եւ տարբեր գիտելիքի հանդէպ անխօս դիմադրութենէն: Նման գիրքերը ամէն տեղ են եւ կը ներկայանան իբրեւ հաստատական (affirmative) աքատեմիզմի նմոյշներ:

Տարբեր գիտելիքի հանդէպ դիմադրութիւնը կը յառաջացնէ նաեւ սեփական գիտելիքի կարծրացում: Երբ մարդ որոշէ չլսել տարբեր գիտելիք, կը մերժէ նաեւ *իր* գիտելիքի տարբերակումը: Գիտելիքի իմաստը իր տարբերակային շարժումին եւ ուրիշ գիտելիքի հետ ունեցած առնչութեան մէջ է, որոնց շնորհիւ կը կազմուի գիտելիքի բնաբանը (context): Պղատոնի, Խորենացիի, Մարքսի, Լէօի, Զարենցի, Մահմուտ Տարուիշի գիտելիքները կը շարունակուին արծարծուիլ, քննարկուիլ, մեկնաբանուիլ մինչեւ այսօր: Այս գրողներէն իւրաքանչիւրը ունի իր ուղղութիւնը, գաղափարականութիւնը եւ դիրքը, բայց անոնցմէ ոչ մէկը մտածած է ըլլալ բացառապաշտ (եւ ճիշդ այս պատճառով ալ չեն սիրուած բացառապաշտներուն կողմէ) եւ ոչ ալ երբեւէ ձգտած դիտաւորեալ կերպով, կամ խմբային պատկանելութեան կուրութեամբ համակուելով, դիմադրել ու վանել ուրիշը:

Իսլամ ծայրայեղականներու կատարած թաքֆիրները եւ լիպերալ ազատակոչներու յայտարարած դաւաճանները՝ որոնք մէկ լումայի երկու երեսները կը ներկայացնեն, տարբեր գիտելիքի հանդէպ արտակարգ դիմադրութեան դիւրին միջոցներ են:

Ումպերթօ Ճորտանոյի *Andrea Chénier* (լիպրեթթիսթ՝ Լուիճի Իլլիքա) օփերայի Ա. արարի պալատական հանդիսութեան ժամանակ, երբ գլխաւոր սպասարկողներէն մէկը՝ Ժերար, կը մերժէ այլեւս ենթարկուիլ կոմսուհիին եւ կը հրաժարի ազնուականներու անարդար հացէն, կոմսուհին կու տայ ճշգրիտ պատասխան մը. «Ընթերցանութիւնը կործանեց այս Ժերարին»: Ժերարն այլեւս շատ բան գիտէ: Ան տեղ չունի ազնուականներու շրջանակին մէջ, նոյնիսկ իբրեւ անոնց ծառայող ենթակայ:

1 ⇨

## ԵԳԻՊՏԱՑԻՆԵՐ ԿԸ ՊԱՀԱՆՋԵՆ ՃԱՆՉՆԱԼ ՀԱՅՈՑ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԻՒՆԸ

*ներով: Այս կոտորածները Հայցում նշւում են «Համիտական կոտորածներ» անուան տակ:*

*Եգիպտոսի ընդդիմադիր ազգային ճակատը Թուրքիայի հետ յարաբերութիւնների սրացման ֆոնին կրկին բարձրացրել է Ցեղասպանութեան ճանաչման հարցը: Ճակատի ներկայացուցիչ Մուհամմատ Սաատ Խէյր Ալլահը ճակատի անունից յայտարարել է. «Անհրաժեշտ է Եգիպտոսից վտարել Քաթարի եւ Թուրքիայի դեսպաններին»՝ աւելացնելով, որ Հայոց ցեղասպանութիւնը ճանաչել է 24 պետութիւն, իսկ Եգիպտոսը հարցը քննարկելու է Սեպտեմբերի 4-ին:*

*Նա նաեւ աւելացրել է, որ «Եգիպտական կառավարութեան կողմից Հայոց ցեղասպանութեան ընդունումը հարուած կը հասցնի Թուրքիային»:*

---

<u>ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ</u>

**ԵՂԻԱՅԵԱՆ ԿՐԹԱԹՈՇԱԿԻ ՀԻՄՆԱԴՐԱՄԻ ԵՒ ԿԱՐԱՊԵՏ ԱՂԱ ԳԱԼՈՒՍՏ ԲԱՐՁՐԱԳՈՅՆ ՈՒՍՈՒՄԻ ՀԻՄՆԱԴՐԱՄԻ**

**2013-2014 Ուսումնական Տարեշրջանի Յատկացումներ**

2013-2014 ուսումնական տարեշրջանի համար վերանորոգելի կրթաթոշակներէն զատ, Գահիրէի Ազգային Առաջնորդարանը պատրաստ է նոր կրթաթոշակներ յատկացնելու արժանաւոր ուսանողներու, որոնք կը փափաքին բարձրագոյն ուսման հետեւիլ <u>Եգիպտոսի</u> պետական ու ոչ պետական համալսարաններու եւ <u>Հայաստանի</u> պետական բարձրագոյն ուսումնական հաստատութիւններու մէջ:

Թեկնածուները պիտի հանդիպին Եղիայեան Յանձնախումբին անդամներուն հետ, ստանալու համար հարկ եղած լուսաբանութիւնը եւ յատուկ հարցաթուղթը՝ ներկայացնելով պահանջուած հետեւեալ փաստաթուղթերը.

Դիմումնագիր եւ երկու լուսանկար:

Հայկական եկեղեցիի մէջ մկրտուած ըլլալու հաստատագիր (վկայական):

Ինքնութեան թուղթ (եթէ եգիպտահպատակ չէ, ապա անցագիր եւ դիմումի թուականին նախորդող երեք տարիներուն վերաբերեալ մնայուն կեցութեան իրաւունքի հաստատագիր-փաստաթուղթ):

Երկրորդական բաժնի աւարտական վկայական, ինչպէս նաեւ անոր նախորդող բաժիններու աւարտական կարգերու քննութիւններու յաջողութեան վկայականներ:

<u>Ընդունելութեան ժամեր.</u>

Ամէն Ուրբաթ, առաւօտեան ժամը 12:00 - 2:00, 3 Օգոստոսէն սկսեալ:

Դիմումնագրերը ներկայացնելու վերջին պայմանաժամն է 30 Սեպտեմբեր 2013:

Յաւելեալ մանրամասնութիւններու համար դիմել Գահիրէի Ազգային Առաջնորդարան

Հեռաձայն 25901385 - 25904219 - 25913686.

**ԴԻՒԱՆ**
**ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**

---

**ԳԱԼՈՒՍՏԵԱՆ-ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆ**
**ՄԵՐՃԱՆԵԱՆ ՄԱՆԿԱՊԱՐՏԷԶ**

Ներկայիս կու գանք տեղեկացնելու յարգելի ծնողաց, թէ Գալուստեան-Նուպարեան Ազգային Վարժարանի եւ Մերճանեան Մանկապարտէզի 2013 - 2014 ուսումնական տարեշրջանի վերամուտը տեղի պիտի ունենայ Շաբաթ, 21 Սեպտեմբեր 2013-ին, իսկ Բողբոջ դասարանի վերամուտը տեղի պիտի ունենայ Երկուշաբթի, 23 Սեպտեմբեր 2013-ին:

Արձանագրութիւնները եւ Համազգեստի վաճառումները պիտի սկսին Շաբաթ, 14 Սեպտեմբեր 2013՝ առաւօտեան ժամը 9:30-12:00:

Նորեկ աշակերտներէն կը խնդրուի բերել 6 փոքր լուսանկար, ծննդեան եւ մկրտութեան վկայագրին բնագիրը:

**ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ**

---

**ԳԱԼՈՒՍՏԵԱՆ-ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆ**
**ՄԵՐՃԱՆԵԱՆ ՄԱՆԿԱՊԱՐՏԷԶ**
**Կ'ուզուի**

Այսու կը տեղեկացնենք թէ Վարժարանը Մերճանեան Ազգային Մանկապարտէզի բաժնին համար պէտք ունի մանկավարժ մանկապարտիզպանուհիի մը:

Դիմումները ներկայացնել Տնօրէնութեան ամէն օր առաւօտեան ժամը 9:30-12:00:

**ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ**

---

<u>ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ</u>

Այսու կը ծանուցանենք եգիպտահայ յարգոյ մեր հասարակութեան, որ Առաջնորդարանին մօտ տրամադրելի են արեւմտահայերէն «Նոր Կտակարան»-ներ:

Փափաքողները, ունենալու համար, կրնան դիմել Ազգային Առաջնորդարան:

**Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

## Հ.Բ.Ը.ՄԻՈՒԹԻՒՆ - Գահիրէ

# ՍԱԹԵՆԻԿ Ճ. ՉԱԳԸՐ ՀԻՄՆԱԴՐԱՄ ԿՐԹԱԿԱՆ ՕԺԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ 2013-2014 ՏԱՐԵՇՐՋԱՆ

Գահիրէի Հ.Բ.Ը.Մ.ի Սաթենիկ Ճ. Չագըր Հիմնադրամը 2013 - 2014 տարեշրջանին եւս կրթաթոշակ պիտի յատկացնէ արժանաւոր ուսանողներու, որոնք կրնան անձամբ ներկայանալ Հ.Բ.Ը.Մ.ի Հելիոպոլսոյ գրասենեակը, լեցնելու համար յատուկ հարցաթերթիկը, իրենց հետ ունենալով 2 լուսանկար, ծննդեան վկայականի պատճէն, դիմումնագիր մը և վերջին երկու տարիներու իրենց վիճակացոյցները:

Աղեքսանդրիոյ թեկնածուները՝ պարտին իրենց դիմումնագրերը ներկայացնել Աղեքսանդրիոյ Հ.Բ.Ը.Մ.ի գրասենեակը:

Սաթենիկ Ճ. Չագըր Հիմնադրամէն արդէն իսկ կրթաթոշակ ստացողները պարտին ղրկել նախորդ տարեշրջանին ա. և բ. կիսամեայի կամ տարեվերջի քննութեանց արդիւնքները, եւ անմիջապէս որ զանոնք ստանան իրենց յաճախած կրթական հաստատութիւններէն:

Բոլոր տեսակի դիմումնագրերը (նոր և վերանորոգելի) ընդունելու վերջին պայմանաժամն է՝ 30 Սեպտեմբեր 2013:

Ծ.Ն. Յաւելեալ մանրամասնութիւններու համար հեռաձայնել 22916444- 24151127-24152478:

# ՍԱԹԵՆԻԿ Ճ. ՉԱԳԸՐ ՀԻՄՆԱԴՐԱՄ ԿՐԹԱԿԱՆ ՄՐՑԱՆԱԿՆԵՐ

Գահիրէի Հ.Բ.Ը.Մ.ի Սաթենիկ Չագըր Հիմնադրամը, 2012-2013 տարեշրջանին համար, դրամական մրցանակներ պիտի տրամադրէ եգիպտահայ համայնքին պատկանող բոլոր այն ուսանողներուն, որոնք փայլուն արդիւնքներ կը բերեն որեւէ կրթական հանգրուանի աւարտական քննութիւններուն:

Այսպէս, մրցանակներ պիտի տրամադրուին նախակրթարանի, պատրաստականի, երկրորդականի և համալսարանական կրթութեան աւարտական կարգերու՝ պետական կամ համազօր քննութիւններու ներկայացող բոլոր այն աշակերտներուն որոնք 90% կամ աւելի արդիւնք բերած են:

Դրամական մրցանակները իւրաքանչիւր կրթական հանգրուանի համար են և պիտի տրամադրուին հետեւեալ ձեւով.

| | |
|---|---|
| Նախակրթարանի աւարտական դասարան | Ե.Ո. 100.- |
| Պատրաստականի աւարտական դասարան | Ե.Ո. 200.- |
| Երկրորդականի աւարտական դասարան | Ե.Ո. 500.- |
| Համալսարանի աւարտական տարի | |
| ա- Շատ լաւ արդիւնք | Ե.Ո. 800.- |
| բ- Գերազանց արդիւնք | Ե.Ո.1000.- |

Գահիրէի դիմորդները իրենց ձեռք բերած կրթական արդիւնքը հաստատող փաստաթուղթը և անկէ պատճէն մը, պարտին ներկայացնել Հ.Բ.Ը.Մ.ի Գահիրէի գրասենեակը:

Աղեքսանդրիոյ դիմորդները պարտին նոյները ներկայացնել Աղեքսանդրիոյ Հ.Բ.Ը.Մ.ի վարչութեան:

Բոլոր դիմումները ընդունելու վերջին պայմանաժամն է 21 Հոկտեմբեր 2013:

Մրցանակներու յանձնումը թէ՛ Գահիրէի և թէ՛ Աղեքսանդրիոյ մէջ պիտի կայանայ հանդիսաւոր իրադրութեամբ:

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Այսու կը ծանուցանենք եգիպտահայ համայնքին, որ 1 Յուլիս 2013-էն սկսեալ, շուրջ 6 ամիս, Մար Մինայի Ազգային գերեզմանատան Ս. Մինաս մատուռը նորոգութեան մէջ պիտի ըլլայ:

Յիշեալ շրջանին Տաղաւար Տօներու Մեռելոցի Ս. Պատարագները պիտի մատուցուին Հելիոպոլսոյ Ազգային գերեզմանատան Ամենայն Սրբոց մատուռին մէջ:

Յաւելեալ տեղեկութիւններ ստանալու համար կը խնդրուի դիմել Առաջնորդարան՝ Բեչ. Րաֆֆի Սրկ. Պօղոսեանին:

**Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

## «ՀԱՅԵՐԸ ԿԸ ՇԱՐՈՒՆԱԿԵՆ ԹՐՔԱԿԱՆ ԼՐԱՏՈՒԱՄԻՋՈՑՆԵՐՈՒՆ ՄԷՋ» ԱՏԵԼՈՒԹԵԱՆ ԱՐՏԱՅԱՅՏՈՒԹԵԱՆ ԳԼԽԱՒՈՐ ԹԻՐԱԽԸ ՄՆԱԼ

2 ☞

*դէմ եղած յօդուածներուն թիւը շատ աւելի քիչ է, քան առաջին երեքինը:*

*Այս ժամանակահատուածին ընթացքին նաեւ ատելութեան արտայայտութեան դէմ գրութիւններու աճ արձանագրուած է, ինչպէս՝ քիւրտերու նկատմամբ ատելութեան արտայայտութեան դէմ, Խոջալուի ջարդերուն ոգեկոչման, Փարիզի մէջ Փետրուարին սպաննուած ՔԱԿ-ի անդամ երեք կիներու եւ Մալիի մէջ ֆրանսական զինուորական գործողութեան պարագաներուն:*

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԲՈՂՈՔԻ ԱԼԻՔԸ ԿԸ ՇԱՐՈՒՆԱԿՈՒԻ

1 ☞

*ռատիոկայանին ըսած է ծեծի ենթարկուած Գանատայի բնակիչ Միքայէլ Տօնոյեանը:*

*Ան պատմած է որ, ուշ երեկոյեան քաղաքապետարանի առջեւ մօտ 20 վայրկեան խօսելէ ետք նստացոյցի մասնակիցներուն հետ, գացած է դէպի Յաղթանակի Կամուրջ: Կամուրջի մօտակայքը երեք-չորս երիտասարդներ փակած են ճանապարհը եւ հետաքրքրուած են, թէ արդեօք Տօնոյեան կը մասնակցի նստացոյցին: Եւ թէեւ ան պատասխանած է, որ նստացոյցին չի մասնակցիր, երիտասարդները, ըսելով թէ՝ «մեր պապաներուն նեղացուցած են», ետեւէն հարուածած են Տօնոյեանին: Ան հարուածներէն ազդուած ինկած եւ վնասուածքներ ստացած է, իսկ յարձակող երիտասարդները դիմած են փախուստի:*

*Երեւանի Ամիրեան եւ Մաշտոց փողոցներուն վրայ յարձակում տեղի ունեցած է եւս երկու ակտիւիստներու վրայ:*

## ԱՄԵՐԻԿԱՅԻ ԴԵՍՊԱՆԻ ԿԱՐԾԻՔՈՎ՝ ԱՊՐԻԼԻ 24-Ի ԿԱՊԱԿՑՈՒԹԵԱՄԲ...

2 ☞

*Այդ նպատակով նախագահը եւ նախկին ու ներկայիս պետական քարտուղարները կ'ընտրեն եւ կ'օգտագործեն այնպիսի բառեր, որոնք, ինչպէս իրենք կը խորհին, կը նպաստեն հաշտեցման»,- շեշտած է դեսպանը, մեկնաբանելով Օպամայի Ապրիլ 24-ի վերաբերեալ ամենամեայ յայտարարութեան բառերու ընտրութիւնը:*



## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

**Կիրակի, 15 Սեպտեմբեր 2013**

**Տօն է**

**ՎԵՐԱՑՄԱՆ ՍՐԲՈՅ ԽԱՉԻ (ԽԱՉՎԵՐԱՑ)**

**Սուրբ եւ Անմահ Պատարագ**

**Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ:**

**Յաւարտ Ս. Պատարագի**

**ԽԱՉՎԵՐԱՑԻ ԹԱՓՕՐ**

Սկիզբ Ս. Պատարագի առաւօտեան ժամը 10:00-ին

Երթ ու դարձը դիւրացնելու համար հաստատուած է հանրաշարժի սպասարկութիւն:

-Սալահ Էլտին Հրապարակ (ծաղկավաճառին առջեւէն) ժամը 8:45-ին

-Այծեմնիկ Հանգստեան Տան շէնքին առջեւէն ժամը 9:00-ին

Կը հրաւիրենք մեր բարեպաշտ ժողովուրդը ներկայ գտնուելու սոյն արարողութեան:

**Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

*Տեղեկացնում ենք, որ ՀՀ կրթութեան եւ գիտութեան նախարարութեան 2013-2014 ուսումնական տարում սփիւռքահայ դիմորդների համար պետպատուէրի շրջանակներում հաստատել է 70 համալսարանական (բակալաւրիատ) անվճար տեղեր, որոնց մրցոյթին կարող են մասնակցել մանկավարժական, հայագիտական, մշակութային մասնագիտութիւնների համար դիմորդները: Սփիւռքահայ դիմորդները հնարաւորութիւն ունեն ընդունուելու նաեւ վճարովի համակարգ:*

*Փաստաթղթերի ներկայացման ժամկէտն է՝ Յուլիսի 9-ից մինչեւ Օգոստոսի 24-ը, իսկ Նախապատրաստական բաժանմունքում եւ մագիստրատուրայում ուսանելու համար փաստաթղթերը կ'ընդունուեն մինչեւ Նոյեմբերի 8-ը, հեռակայ բաժանմունքում՝ մինչեւ Սեպտեմբերի 20-ը:*

*Պահանջուող փաստաթղթերն են՝*

*1.- Դիմում՝ ՀՀ կրթութեան եւ գիտութեան նախարարի անունով, որում պետք է նշուած լինի ընտրած համալսարանը եւ մասնագիտութիւնը,*

*2.- Անձնագրի պատճէնը,*

*3.- Ծննդեան վկայականի պատճէնը՝ պետական նոտարի եւ դեսպանութեան վաւերացմամբ կամ մկրտութեան վկայականը,*

*4.- Կրթութեան վկայականի պատճէնը թուանշաններով պետական նոտարի եւ դեսպանութեան վաւերացմամբ,*

*5.- Ընդհանուր առողջութեան մասին բժշկական տեղեկանք,*

*6.- 3x4 չափսի 4 լուսանկար,*

*7.- Ինքնակենսագրութիւն՝ հայերէն կամ անգլերէն լեզուներով:*

*Փաստաթղթերը ՀՀ կրթութեան եւ գիտութեան նախարարութիւն ներկայացւում են անձամբ դիմորդի կամ նրա լիազօրուած անձի կողմից:*

*Յաւելեալ տեղեկութիւններ ստանալու, ինչպէս նաեւ համալսարանների եւ մասնագիտութիւնների ցանկին ծանօթանալու համար կարելի է դիմել Հայաստանի Հանրապետութեան դեսպանութիւն:*

*Գահիրէ, Զամալէք թաղամաս, 20, Մոհամէտ Մազհար փողոց, Հեռ. 2737 4157, 2737 4159 Ֆաքս. 2737 4158.*

*էլ. փոստ, armegyptembassy@mfa.am*

**ՀՀ ԴԵՍՊԱՆՈՒԹԻՒՆ - ԳԱՀԻՐԷ**

# ՉԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.
TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1709 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 26 ՍԵՊՏԵՄԲԵՐ 2013 ՀԱՏԸ ՉԵՌՔԷ 75 Ե. ԴԻԿ. عدد رقم ١٧٠٩ الخميس ٢٦ سبتمبر ٢٠١٣


## ՍՈՑԻԱԼ ԴԵՄՈԿՐԱՏ ՀՆՉԱԿԵԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ 20-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՊԱՇՏՕՆԱԿԱՆ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

2013 Թուականի 11-13 Սեպտեմբերին, Ծաղկաձորի մէջ, Ս.Դ.Հնչակեան Կուսակցութիւնը գումարեց իր 20-րդ Համագումարը: Կուսակցութեան գերագոյն ժողովին կը մասնակցէին 17 երկիրներէ եկած պատգամաւորներ:




Համագումարը հանգամանալից կերպով քննարկեց Հայաստանի, Հայ ժողովուրդի եւ սփիւռքահայութեան առջեւ դրուած կենսական հարցերը, միջազգային եւ շրջանային քաղաքական իրավիճակները, ինչպէս նաեւ կազմակերպչական բնոյթի հարցեր:

Քննարկելով Հայաստանի ներքին քաղաքական, տնտեսական եւ ընկերային իրավիճակը, համագումարը վերահաստատեց կուսակցութեան հիմնական ուղեգիծը՝ թիկունք կենալու եւ առաջնորդելու ժողովուրդի ընկերային արդար պահանջքներն ու բողոքները կաշառակերութեան, հովանաւորչութեան եւ սակաւատէրութեան (օլիգարխիա) դէմ: Համագումարը անդրադարձաւ արտագաղթի մտահոգիչ երեւոյթին ու գտաւ, որ ան մեծ մասամբ արդիւնք է ընկերային անարդարութեան ու իր ապագայի նկատմամբ քաղաքացիի յոյսի կորուստին: Համագումարը շեշտեց, որ միայն վերոնշեալ արատաւոր երեւոյթներու վերացմամբ կարելի է կասեցնել այս ազգային ողբերգութիւնը:



Համագումարը արձանագրեց նաեւ, որ վերջին տարիներուն Հայաստանի մէջ դրական տեղաշարժ եղած է խօսքի ազատութեան ասպարէզէն ներս, սակայն ժողովրդավարութեան ամրապնդման ծիրէն ներս արձանագրուած յառաջընթացը տակաւին բաւարար չէ:

Համագումարը գտաւ, որ Հայաստանի Հանրապետութիւնը պէտք է վարէ տարածաշրջանային աշխարհաքաղաքական իրավիճակներէ թելադրուած արտաքին քաղաքականութիւն: Այդ առումով, համագումարը գգուշաւոր լաւատեսութեամբ ողջունեց Հայաստանի՝ Մաքսային Միութեան անդամակցելու որոշումը, միաժամանակ յոյս յայտնելով, որ Հայաստան կը շարունակէ խորացնել իր համագործակցութիւնը Եւրոպական կառոյցներուն հետ:

Համագումարը վերահաստատեց, որ Լեռնային Ղարաբաղի հարցը պէտք է լուծուի ազգերու ազատ ինքնորոշման իրաւունքի միջազգային սկզբունքի հիման վրայ ու գտաւ, որ որեւէ լուծման ձեւ պէտք է արժանանայ Արցախի ժողովուրդի, ազատ ու թափանցիկ հանրաքուէով ամրագրուած հաւանութեան: Համագումարը կարեւորեց Արցախի Հանրապետութեան բանակցային գործընթացի լիիրաւ կողմ դառնալու անհրաժեշտութիւնը:

↪ 2

ԷՋՄԻԱԾԻՆ

## 600 ՏԱՐՈՒԱՅ ՄԷՋ ԱՌԱՋԻՆ ԱՆԳԱՄ ԸԼԼԱԼՈՎ ԷՋՄԻԱԾԻՆԻ ՄԷՋ ԿԱՏԱՐՈՒԵՑԱՒ ԵՊԻՍԿՈՊՈՍԱՑ ԺՈՂՈՎԻ ԲԱՑՈՒՄԸ




Սեպտեմբերի 24-ին Մայր Աթոռ Սուրբ Էջմիածնում, նախագահութեամբ Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Բ. Ծայրագոյն Պատրիարք եւ Ամենայն Հայոց Կաթողիկոսի եւ Ն.Ս.Օ.Տ.Տ. Արամ Ա Մեծի Տանն Կիլիկիոյ Կաթողիկոսի, սկսուեց Հայաստանեայց Առաքելական Ս. Եկեղեցու Եպիսկոպոսաց ժողովը՝ մասնակցութեամբ Ամենայն Հայոց Կաթողիկոսութեան եւ Մեծի Տանն Կիլիկիոյ Կաթողիկոսութեան եպիսկոպոսաց դասի: Այս առիթով Մայր Աթոռ Ս. Էջմիածին էին ժամանել Հայ Եկեղեցու 75 արքեպիսկոպոսներից ու եպիսկոպոսներից 62-ը:

Ժողովի բացման արարողութեանը ներկայ էր Հայաստանի Հանրապետութեան նախագահ տիար Սերժ Սարգսեանը:

Ժողովն սկսուեց միասնական Տէրունական աղօթքով: Ապա ժողովականներն աղօթք բարձրացրեցին առ Աստուած հոգելոյս Տ. Շահան արքեպիսկոպոս Սուաճեանի, Տ. Արտաւազդ արքեպիսկոպոս Թրթռեանի եւ Հայ Եկեղեցու բոլոր հանգուցեալ սպասաւորների հոգիների հանգստութեան համար: Այնուհետեւ ներկաներին ողջունեց Գարեգին Բ Ամենայն Հայոց Կաթողիկոսը եւ հրաւիրեց տիար Սերժ Սարգսեանին՝ իր ողջոյնի խօսքն ուղղելու Եպիսկոպոսաց ժողովի մասնակիցներին:

ՀՀ նախագահի ուղերձից յետոյ ժողովականներին եպիսկոպոսաց ժողովի առիթով դիմեցին Նորին Սրբութիւն Գարեգին Բ Ամենայն Հայոց Կաթողիկոսը, Նորին Սրբութիւն Արամ Ա Մեծի Տանն Կիլիկիոյ Կաթողիկոսը եւ Կոստանդնուպոլսի Հայոց Պատրիարքական փոխանորդ Տ. Արամ արքեպիսկոպոս Աթէշեանը:

ՀԱՅԱՍՏԱՆ

## «ՀԱՅՈՑ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԵԱՆ 100-ՐԴ ՏԱՐԵԼԻՑԻՆ ԸՆԴԱՌԱՋ» ԽՈՐԱԳՐՈՎ ՀԱՅԿԱԿԱՆ ՀԻՄՆԱԽՆԴԻՐՆԵՐՈՒ ԻՐԱԶԵԿՄԱՆ ԿԱՌՈՅՑՆԵՐՈՒ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉՆԵՐՈՒ ՀԱՄԱՀԱՅԿԱԿԱՆ ՀԱՄԱԺՈՂՈՎԸ

*Երեւանի մէջ տեղի ունեցաւ ՀՀ Սփիւռքի նախարարութեան նախաձեռնութեամբ կազմակերպուած «Հայոց Ցեղասպանութեան 100-րդ տարելիցին ընդառաջ» խորագիրը կրող Հայկական հիմնախնդիրներու իրազեկման կառոյցներու ներկայացուցիչներու համահայկական համաժողովը:*

*Համաժողովի ընթացքին քննարկուեցան Հայոց Ցեղասպանութեան 100-րդ տարելիցին ընդառաջ Սփիւռքի մէջ ձեւաւորուած տարածաշրջանային յանձնախումբերու, Հայկական հիմնախնդիրներու իրազեկման կառոյցներու ներկայացուցիչներու գործունէութիւնը, ՀՀ արտաքին քաղաքականութեան արդի խնդիրները:*

*Սփիւռքի նախարար Հրանոյշ Յակոբեանի ղեկավարութեամբ «ժողովրդական դիւանագիտութեան հիմնախնդիրները» թեմայով քննարկում տեղի ունեցաւ ՀՀ ԱԺ արտաքին յարաբերութիւններու յանձնաժողովի անդամներու եւ միջազգային*

↪ 4

## ՂԱՐԱԲԱՂԵԱՆ ՀԱՐՑԸ ՔՆՆԱՐԿՄԱՆ ԱՌԱՐԿԱՅ Մ.Ա.Կ.Ի 68-ՐԴ ՆՍՏԱՇՐՋԱՆԻՆ

*Ատրպէյճանի Արտաքին գործոց նախարար Էլմար Մամետեարով ՄԱԿ-ի Ընդհանուր ժողովի 68-րդ նստաշրջանին մասնակցելու համար Նիւ Եորք կատարելիք այցի ընթացքին տեսակցութիւն ունեցած է ԵԱՀԿի ընդհանուր քարտուղար Լամպերթօ Զանիերի հետ:*

*Հանդիպման ժամանակ քննարկուած են ԵԱՀԿ-ի եւ Ատրպէյճանի միջեւ համագործակցութեան հարցերը, ինչպէս նաեւ կարծիքներ փոխանակուած են Լեռնային Ղարաբաղի հակամարտութեան կարգաւորման վերաբերեալ:*

*Իր կարգին, Թուրքիոյ նախագահ Ապտուլլա Կիւլ ՄԱԿ-ի Ընդհանուր ժողովի առջեւ իր արտասանած խօսքին մէջ անդրադառնալով ղարաբաղեան հարցին, կոչ ուղղեց հակամարտութիւնը լուծել Ատրպէյճանի տարածքային ամբողջականութեան սկզբունքին հիման վրայ: Կիւլ պահանջեց նաեւ պատժել Սուրիոյ մէջ քիմիական զէնքեր օգտագործած կողմը:*

## ՔՈՒԷՅԹԻ ՊԵՏՈՒԹԵԱՆ ՆՊԱՍՏԸ՝ ՍՈՒՐԻԱՀԱՅՈՒԹԵԱՆ

*Քուէյթի պետութիւնը 100 հազար Ա.Մ.Ն. տոլար կը փոխանցէ «Սուրիահայերու հիմնախնդիրները համակարգող կեդրոն» հասարակական կազմակերպութեան:*

*Այս գծով պայմանագիրը կը ստորագրուի այսօր՝ ՀՀ Սփիւռքի նախարարութեան մէջ: Գումարը կը տրամադրուի Հայաստանի մէջ բնակող սուրիահայերու համար իրականացուող դպրոցական եւ կրթական այլ ծրագիրներուն աջակցելու նպատակով:*

*Պայմանագրի ստորագրման արարողութեան կը մասնակցի ՀՀ սփիւռքի նախարար Հրանոյշ Յակոբեանը:*

*Հայաստանի մէջ կը բնակին շուրջ 10 հազար սուրիահայ, որոնք բնակարանային եւ աշխատանքի հարցերով մշտապէս կապի մէջ են ՀՀ Սփիւռքի նախարարութեան հետ:*

*Վերջին մի քանի շաբաթներու հոսքը քիչ մը աւելի աշխուժացած է. անոնք Հայաստան կու գան ոչ թէ Սուրիայէն, այլ Լիբանանէն, ուր հաստատուած էին նա-*

↪ 2

# Ս.Դ.Հ.Կ. ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ

## ՄԱՄԼՈՅ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

Շաբաթ 14 Սեպտեմբեր, 2013 Թուականին, Երեւանի մէջ կայացաւ Ս.Դ. Հնչակեան Կուսակցութեան նորընտիր Կեդրոնական Վարչութեան անդրանիկ նիստը ուր կատարուեցաւ դիւանային ընտրութիւն:

Նախորդ Կեդրոնական Վարչութեան ատենապետ Ընկ. Սեդրակ Աճեմեան իր բազմազբաղութեան պատճառով չկամեցաւ առաջադրուիլ Ատենապետի պաշտօնին:

Յետ դիւանային ընտրութեան, Կեդրոնական Վարչութեան կազմը ստացաւ հետեւեալ տեսքը՝

Ատենապետ՝ Ընկեր **ՅԱԿՈԲ ՏԻԳՐԱՆԵԱՆ**
Փոխ-Ատենապետներ՝ Ընկեր **ՍԵՊՈՒՀ ԳԱԼՓԱՔԵԱՆ** եւ Ընկեր **ՍԵԴՐԱԿ ԱՃԷՄԵԱՆ**
Ատենադպիր՝ Ընկեր Տոքթ. **ՀԱՄԲԻԿ ՍԱՐԱՖԵԱՆ**
Ընկեր **ՎԱԶԳԷՆ ԳԱԼԹԱՔՃԵԱՆ**
Ընկեր Տոքթ. **ԵՂԻԿ ՃԷՐԷՃԵԱՆ**
Ընկեր **ՎԱԶԳԷՆ ԽՈՏԱՆԵԱՆ**
Ընկեր **ԽԱՉԻԿ ՔԷՇԻՇԵԱՆ**
Ընկեր **ՍԱՄՕ ՍԱՐԳԻՍԵԱՆ**
Ընկեր **ՇԱՒԱՐՇ ԱԿԻՆԵԱՆ**
Ընկեր **ԳԷՈՐԳ ՊԵՐԿՈՒՊԵՐԿԵԱՆ**

**Ս.Դ.Հ.Կ. ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ**

*Երեւան, Սեպտեմբեր 14, 2013*

1

## ՍՈՑԻԱԼ ԴԵՄՈԿՐԱՏ ՀՆՉԱԿԵԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ 20-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՊԱՇՏՕՆԱԿԱՆ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Համագումարը վերահաստատեց, որ Արցախի անկախութեան ամրապնդումը՝ միջազգային դիւանագիտութենէն ներս կը մնայ հայ ժողովուրդի հիմնահարցը:

Հայ-Թուրք յարաբերութիւններու առումով, Համագումարը որոշեց շարունակել Հայոց Ցեղասպանութեան իրականութիւնը ընդունող Թուրք յառաջադէմ մտաւորականներու եւ կազմակերպութիւններու հետ սկսած իր յարաբերութիւնները, անոնց հետ փնտռելով գործակցութեան նոր դաշտեր:

Համագումարը միաժամանակ անհրաժեշտ համարեց՝ Թուրք-հայկական արձանագրութիւններու փաստաթուղթին յետ կանչումը Հայաստանի Ազգային Ժողովէն:

Հայոց Ցեղասպանութեան ոգեկոչման 100-ամեակի ծիրէն ներս, Համագումարը վերահաստատեց կուսակցութեան պատրաստակամութիւնը մասնակցելու այս նպատակին համար ծնած որեւէ համազգային մարմինի կամ ոչ հայկական նախաձեռնութեան որ կը նպաստէ հայ դատի հետապնդման:



Համագումարը քննարկեց հայ հինաւուրց գաղութներէն՝ Սուրիահայ գաղութի տագնապալի վիճակը ու գտաւ թէ Սուրիոյ տագնապը պէտք է լուծուի խաղաղ միջոցներով եւ առանց արտաքին միջամտութիւններու: Համագումարը կոչ ըրաւ համայն հայութեան շարունակել ու կրկնապատկել ճիգերը օժանդակելու Սուրիահայ մեր եղբայրներուն եւ քոյրերուն:

Համագումարը լսեց նաեւ տարբեր գաղթօճախներէ եկած պատգամաւորներու զեկոյցները իրենց շրջաններու ազգային կեանքին մասին ու վերահաստատեց հետեւողականօրէն շարունակել հայապահպանութեան համար տարուող աշխատանքները:

Քննելէ ետք կուսակցական շրջաններու կազմակերպչական կառոյցներուն իրավիճակը, Համագումարը այս կապակցութեամբ առաւ որոշումներ եւ տուաւ համապատասխան ցուցմունքներ:

Իր օրակարգի վերջին հարցով, Համագումարը ընտրեց նոր Կեդրոնական Վարչութիւն:

Համագումարը իր աշխատանքները աւարտեց այցելելով Եռաբլուր յարգանքի տուրք մատուցելու մեր նահատակներուն եւ վերահաստատելու անոնց ուղիէն ընթանալու Ս.Դ.Հ.Կ.-ի հաւատամքը:

**Ս.Դ.Հ.Կ. 20-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐ**

*ԾԱՂԿԱՁՈՐ, ՀԱՅԱՍՏԱՆ, 13 Սեպտեմբեր 2013*

## 5 ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԱԹՈՌ ՀԱՅԵՐՈՒՆ՝ ԻՐԱՔԵԱՆ ՔԻՒՐՏԻՍՏԱՆԻ ԽՈՐՀՐԴԱՐԱՆԻՆ ՄԷՋ

*Իրաքեան Քիւրտիստանի մէջ 21 Սեպտեմբերին տեղի ունեցան խորհրդարանական 4-րդ ընտրութիւնները, որուն համար նախատեսուած 111 պատգամաւորական աթոռներէն Թիւրքմէններուն, Հայերուն եւ քրիստոնեայ միւս ժողովուրդներուն (այս վերջիններուն՝ միասնաբար) պիտի տրամադրուի 5-ական աթոռ, այսինքն՝ ընդամենը 15: Նախապէս քրտական խորհրդարանին մէջ Թիւրքմէններուն եւ քրիստոնեաներուն (Հայերը չէին ընդգրկուած) նախատեսուած էր յատկացընել 5-ական, իսկ Հայերուն՝ ընդա մէնը մէկ աթոռ:*

*Իրաքեան Քիւրտիստանի դեմոկրատական գործընթացը մեծ ընդունելութեան արժանացաւ ընտրողներու կողմէ, որոնց թիւը կը գնահատուի շուրջ 1 միլիոն 200 հազար քուէարկող Սլէյմա նիէի մէջ, եւ 1 միլիոն 100 հազար քուէարկող Իրպիլի մէջ, իսկ 600 հազար եւս Տհոքի մէջ:*

*Ընտրութիւններուն կը հետեւին միջազգային քաղաքական թէ հասարակական կազմակերպութիւններու շուրջ 400 դիտորդ եւ ընտրութիւններու մանրամասնութիւնները տեղեկացնելու համար պաշտօնապէս արձանագրուած է 1000 լրագրող:*

1

## ՔՈՒԷՅԹԻ ՊԵՏՈՒԹԵԱՆ ՆՊԱՍՏԸ՝ ՍՈՒՐԻԱՀԱՅՈՒԹԵԱՆ

*խապէս, իսկ ներկայիս փակ են Սուրիայէն դուրս ելլելու բոլոր ճամբաները: Մէկուկէս տարուան ընթացքին 15 հազար սուրիահայ եկած են Հայաստան, որոնցմէ աւելի քան 5 հազարը վերադարձած է Սուրիա, իսկ չնչին մէկ մասը՝ Եւրոպա: Աշխատանքի խնդրանքով Սփիւռքի նախարարութիւն դիմած է մօտ 1000 սուրիահայ, որոնք բոլորն ալ ապահովուած են աշխատանքով:*

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՄԱՔՍԱՅԻՆ ՄԻՈՒԹԻՒՆ ՄՈՒՏՔԻ ՄԱՐՏԱՀՐԱՒԷՐԸ

*Կառավարութեան վերջին նիստին որոշուեցաւ Մաքսային Միութեան Հայաստանի միանալու համար բանակցութեան եօթ խումբեր ստեղծել:*

*Ըստ տնտեսութեան փոխնախարարին, առաջին խումբը պայմանագրի ընդհանուր կէտերը պիտի քննարկէ, թէ ինչ իրաւական ճանապարհով Հայաստանը կրնայ միանալ Մաքսային Միութեան: Երկրորդ խումբը գիներու կարգաւորման հարցերը կը քննարկէ, քանի որ Մաքսային Միութեան գիները կը տարբերին Հայաստանի գիներէն: Երրորդ խումբ մը կը զբաղի թեքնիք կամ որակի հարցերով: Ըստ տիկին Մինասեանի, Մաքսային Միութեան մէջ ընդամէնը 32 թեքնիք օրէնք կայ, իսկ Հայաստանի մէջ այդ թիւր աւելի է: Չորրորդ խումբ մը պիտի զբաղի հարկային եւ մաքսային հարցերով, քանի որ Մաքսային Միութեան մէջ կայ ուրոյն համակարգ, որուն պէտք է միանայ Հայաստանը: Հինգերորդ խումբ մը պիտի զբաղի Մաքսային Միութեան ենթակառուցուածքի ուսումնասիրութեամբ: Վեցերորդ խումբ մը պիտի զբաղի մրցակցութեան հետ կապուած խնդիրները կարգաւորելով: Տիկին Կարինէ Մինասեանը ըսաւ որ Մաքսային Միութեան միանալու որոշումը առնուած էր անցեալ տարուընէ ի վեր, գիտաշխատող խումբի մը կարծիքը առնելէ ետք:*

*Հայաստանի նախկին վարչապետ եւ Ազգային Ժողովի անդամ Հրանդ Բագրատեան ըսած է թէ պէտք է ստեղծել լուրջ յանձնաժողով մը զբաղելու համար Մաքսային Միութեան անդամակցելու հարցերով: Հարկերու բարձրացում կը նախատեսուի Միութեան անդամակցելով: Պէտք է ժամանակ խնդրուի, որպէսզի Պելառուսիոյ պէս տնտեսութիւնը չվնասուի: Նայինք Ղազախստանի օրինակին, որ Մաքսային Միութեան անդամակցելով օգտուեցաւ: Հայաստան պէտք է պահանջէ վառելանիւթի հարկի նուազեցում: Հրանդ Բագրատեան նաեւ հաստատեց թէ առանց մէկ դրամանիշի՝ ռուպլիի գօտիի ստեղծման, դժուար է պատկերացնել Մաքսային Միութիւն:*

## ԵՒՐՈՊԱՆ ՀԱՅԱՍՏԱՆՑԻ ԳՈՐԾԱՐԱՐՆԵՐՈՒ ՀԱՄԱՐ «ԵՐԱԶԱՆՔ ԿԸ ՄՆԱՅ»

*Եւրոպայի Միութեան «Թուինինգ» ծրագրի նպատակն է ներդաշնակեցնել ՀՀ օրէնսդրութիւնը սպառողների շահերի պաշտպանութեան ոլորտում առկայ ԵՄ չափանիշներին:*

*«Ազատութիւն» ռադիոկայանի հարցին՝ քանի որ Հայաստանը, Ռուսաստանի նախաձեռնած Մաքսային միութեանը անդամակցելու որոշում կայացնելով, փաստօրէն զրկուել է ԵՄ Ասոցացման Համաձայնագրի, ինչպէս նաեւ Խոր եւ համապարփակ ազատ առեւտրի գօտու պայմանագրից, արդեօք անիմաստ չէ՞ եւրոպական չափանիշների մասին խօսակցութիւնը, «Թուինինգ» ծրագրի մշտական խորհրդատու Ուիլիամ Հարսը պատասխանեց. - «Ձեմ կարող խօսել Եւրամիութեան կամ Հայաստանի կառավարութեան անունից, կարող եմ միայն ասել, որ քանի դեռ ծրագիրը շարունակւում է, մենք շարունակելու ենք մեր աշխատանքը: Հայաստանը կը շահի Շուկայի վերահսկողութեան տեսչութեան արդիականացումից, ծրագրի շրջանակում մեր կատարած աշխատանքից, անկախ այն որոշումից, որը կ'ընդունուի»:*

*Նշելով, որ իրենց կողմից անցկացուած վերահսկողութեան արդիւնքում յայտնաբերուած հիմնական խնդիրն այն է, որ ապրանքները չեն համապատասխանում անվտանգութեան եւրոպական չափանիշներին՝ «Թուինինգ» ծրագրի* 4

ՄԻԱՑ. ՆԱՀԱՆԳՆԵՐ

## ԱՄԵՐԻԿԵԱՆ ԾԵՐԱԿՈՅՏԻՆ ԿԸ ՆԵՐԿԱՅԱՑՈՒԻ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՒ ՀԱՅԻԹԻԻ ԱՆՏԱՌՆԵՐՈՒ ՎԵՐԱԿԱՆԳՆՄԱՆ ՄԱՍԻՆ ՕՐԻՆԱԳԻԾ

*ԱՄՆ Ծերակոյտի՝ ժողովրդավարական մեծամասնութեան առաջնորդի օգնական Ռիչըրտ Տըրպին Սեպտեմբեր 25-ին նոր օրինագիծ մը ներկայացուցած է, որուն նպատակն է կանխել Հայաստանի եւ Հայիթիի արագ անտապատացումը: Օրինագիծը կը նախատեսէ 20 տարուան ընթացքին վերականգնել անտառային չերտը՝ զայն հասցնելով մինչեւ 1990 թուականի մակարդակին:*

*Այս օրինագիծին նպատակն է խթանել անտառներու վերականգնման կայուն աճ Հայիթիի ու Հայաստանի անտառային տնտեսութիւններու զարգացման համար, ինչպէս նաեւ թոյլատրել «բնութիւն՝ պարտքի դիմաց» փոխանակումները, որ ֆինանսական գործարքներու փոխանակման ծրագիր է, ըստ որուն զարգացող երկրի արտաքին պարտքի մէկ մասը կը ներուի՝ շրջակայ միջավայրի պահպանման համար կատարուող տեղական ներդրումներու դիմաց:*

ՀԱՐՑԱԶՐՈՅՑ «ԱՐԱՐԱՏ»-ԻՆ

# Ս.Դ.ՀՆՉԱԿԵԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ ՆՈՐԸՆՏԻՐ ԱՏԵՆԱՊԵՏ՝ ԸՆԿ. ՅԱԿՈԲ ՏԻԳՐԱՆԵԱՆԻ ՀԵՏ

## «Կ'ՈՒՆԵՆԱՆՔ ՔԱՋՈՒԹԻՒՆ ԳՆԱՀԱՏԵԼՈՒ ԼԱՒՆ ՈՒ ՔՆՆԱԴԱՏԵԼՈՒ ՎԱՏԸ»

*-Ի՞նչպէս կը գնահատէք Ս.Դ.Հ.Կ.-ի 20-րդ Համագումարը եւ հոն առնուած որոշումները:*

Կուսակցութեանս 20-րդ Համագումարը ես պիտի կոչեմ անկիւնադարձային Համագումար: Հոն քննարկուած օրակարգերը եւ առնուած որոշումները անգամ մը համար եւս մեզ կը դնեն պարտաւորութիւններու առջեւ, զորս մենք ամենայն պատասխանատուութեամբ պիտի ստանձնենք եւ գործադրենք:

*-Գլխաւորաբար դուք ո՞ր որոշումները նկատի ունիք:*

Օրինակ, Հայ-Թրքական յարաբերութիւններու հարցը: Մենք կը հաւատանք, որ Թուրքիոյ կողմէ Ցեղասպանութեան փաստի ճանաչումը միայն արտաքին ճնշումներով չի կրնար յաջողութեան հասնիլ, այլ պէտք է ներսէն՝ Թուրքիոյ հասարակութեան գիտակցութեան բարձրացումով ազդել պետական քաղաքականութեան վրայ: Մեկնելով այս փաստէն, Համագումարը յանձնարարեց Կեդրոնական Վարչութեան, շարունակել Թուրքիոյ մէջ Հայկական Ցեղասպանութիւնը ճանչցած յառաջդիմական խմբաւորումներու եւ մտաւորականներու հետ գործակցութիւնը եւ անոնց հետ աշխատանքի նոր ուղիներու որոնումը:

*-Իսկ Հայ-Թրքական արձանագրութիւններու փաստը ի՞նչպէս կը մեկնաբանէք:*

Օրին արդէն դատապարտած ենք այդ փաստաթուղթը եւ մեր արմատական տեսակէտը յայտնած: 20-րդ Համագումարով ալ վերահաստատեցինք այդ արձանագրութիւններուն հանդէպ մեր ժխտական կեցուածքը պահանջելով անմիջապէս դուրս բերել այդ արձանագրութիւնները Հայաստանի ազգային ժողովէն:

Առաւել եւս անընդունելի են այս արձանագրութիւնները, այն առումով, որ կրնան հիմք հանդիսանալ ապագայի որեւէ նոր բանակցութեանց Հայաստանի եւ Թուրքիոյ միջեւ:

*-Հայաստանի ներքին քաղաքական կեանքէն ներս ի՞նչպիսի ներկայութիւն պիտի դրսեւորէ կուսակցութիւնը, իշխանամէտ թէ՞ ընդդիմադիր կեցուածք:*

Ելլելով մեր 126 ամեայ փորձէն, որպէս գաղափարական եւ սկզբունքի տէր կուսակցութիւն, մենք կը մնանք ինքնուրոյն կուսակցութիւն: Մեզի վերապահելով իրաւունքը իրերը իրենց անունով կոչելու, ունենալով քաջութիւնը գնահատելու եւ ողջունելու իշխանութիւններուն տարած ցանկացած դրական գործունէութիւն միեւնոյն ժամանակ դատապարտելու եւ քննադատելու սխալները, վատ որոշում ները եւ անօգուտ գործընթացը: Մեր քաղաքական դիրքորոշումները պիտի չ'առաջնորդուին իշխանամէտ եւ կամ ընդդիմադիր լոզունքներով, այլ իրականութեան հետ քայլ պահելով. առողջ եւ օրինակելի կեցուածքներով:

*-Դուք ընտրուեցաք Ս.Դ.Հ.Կ.-ի Կեդրոնական Վարչութեան նորընտիր ատենապետ, ի՞նչ ակնկալիքներ եւ սպասելիքներ պէտք է ունենայ Հնչակեան շարքն ու համակիրը:*

Նախ կ'ուզեմ ողջունել մեր անկեղծ եւ նուիրեալ շարքը: Հսկայ աշխատանք կայ կատարուելիք, որուն արդիւնքի ձեռքբերումը ժամանակի կը կարօտի: Նորընտիր կեդրոնը, իր նուիրուածութեամբ եւ աշխատանքով պատրաստ է դիմագրաւելու բոլոր դժուարութիւնները: Մեր առաջադրանքն է կուսակցութեան դիրքը բարելաւել այն աստիճանի, որ ան կարողանայ դիմագրաւել բոլոր մարտահրաւէրները առաւել կազմակերպուածութեամբ, օրինակելիութեամբ եւ կարգապահութեամբ:

*-Վերջին Շրջանին Հայաստանի մէջ ամենաչատ քննարկուող հարցը Հայաստանի Մաքսային Միութեան անդամակցութեան հարցն է. Ի՞նչ է Հնչակեան Կուսակցութեան տեսակէտը այս ուղղութեամբ :*

Այդ հարցը անշուշտ քննարկուեցաւ Համագումարի ընթացքին եւ ելլելով Հայաստանի աշխարհագրական դիրքէն, նկատի ունենալով շրջանային քաղաքական իրավիճակը, Հնչակեան Կուսակցութիւնը զգուշաւոր լաւատեսութեամբ կը դիմաւորէ Մաքսային Միութեան անդամակցութեան Հայաստանի որոշումը:

Մեզի Հնչակեաններուս համար առաջնահերթութիւն է Հայաստանի եւ Արցախի անվտանգութիւնը:

*-Այս տեսակէտը չի՞ վնասեր եւրոպական արժէքներու դրսեւորման Հայաստանեան առօրեայ կեանքին մէջ:*

Իսկապէս Եւրոպան ունի համամարդկային արժէքներ: Սակայն եկէք ընդունինք, որ եթէ Հայաստանի իշխանութիւններն ու ժողովուրդը կամք դրսեւորեն, այդ արժէքները իրագործելու համար պայման չէ դէպի Արեւմուտք թեքուիլ:

Օրինակ, ո՞վ կ'արգիլէ այսօր որ Հայաստանը դառնայ աւելի ժողովրդավարական երկիր, մարդու իրաւունքները պաշտպանուին, մենաշնորհները վերացուին, ընտրութիւնները աւելի թափանցիկ եւ օրինական դառնան, ընկերային արդարութիւնը խարսխուի, գործելու եւ ներդրումներու հաւասար հնարաւորութիւններ տրուին: Անպայման պէտք է Եւրոպա՞ն գայ եւ մեզ պարտադրէ այս բոլորը.

Անշուշտ ո'չ:

*-Սփիւռքի առընչութեամբ ի՞նչ մարտահրաւէրներու առջեւ կը գտնուիք:*

Հաւանաբար վերջին 100 տարիներու ընթացքին ամենադժուարին օրերն են որ կ'անցընէ Սփիւռքը: Մենք ունինք այսօր աւանդական եւ նոր ձեւաւորուող Սփիւռք: Աւանդական Սփիւռքի կորիզը կազմող Միջին Արեւելքի մեր գաղութները նոր վտանգներու առջեւ կը գտնուին: Պահը շատ լուրջ է: Շրջանային պատերազմները եւ անոնցմէ յառաջացած արտագաղթը կը վտանգեն մեր գաղութներուն ապագայի գոյութիւնը: Սա համազգային հարց է եւ մենք բոլորս միասին պէտք է քայլ պահենք եւ ըստ այնմ դիմագրաւենք դժուարութիւնները: Ինչ կը վերաբերի նոր ձեւաւորուող Սփիւռքին, մասնաւորաբար Հայաստանի անկախութենէն վերջ յառաջացած այս նոր Սփիւռքը որ կը ձեւաւորուի Արեւել եան եւ Կեդրոնական Եւրոպայի մէջ, ունի լուրջ հայապահպանման խնդիր: Այս նորաստեղծ համայնքները կրնան զոհը դառնալ համաշխարհայնացման (globalization):

Հետեւաբար հոս նաեւ անհրաժեշտութիւնը կայ համազգային ծրագրի մը այդ վտանգէն դուրս գալու համար:

*-Իսկ Արցախի հարցով կուսակցութեան դիրքի որեւէ փոփոխութիւն կա՞յ:*

Արցախի հարցով Հնչակեան կուսակցութեան դիրքը կը մնայ անփոփոխ: Այսինքն, Արցախի հարցի վերջնական լուծումը պէտք է տեղի ունենայ ազգերու ազատ ինքնորոշման իրաւունքի միջազգային սկզբունքներու հիման վրայ:

Առաւել Արցախի ժողովուրդը ինք հանրաքուէով պէտք է որոշէ իր ճակատագիրը:

Այս բոլորը յաջողցնելու համար սակայն, օր առաջ Արցախի Հանրապետութիւնը պէտք է մասնակցի բանակցային գործընթացին որպէս լիարժէք կողմ:

*(ԱՐԱՐԱՏ)* ՀԱՐՑԱԶՐՈՅՑԸ ՎԱՐԵՑ՝ Ա.Ե.

ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ԽՈՀԵՐ

# ՄԿՐԱՏՈՒՄ, ԱՌԱՐԿԱՅԱՑՈՒՄ, ՊԱՏՄՈՂԱԿԱՆԱՑՈՒՄ

### Մտածողութեան ծայրայեղականութեան ճամբուն վրայ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Տեղեկութեան ու գիտելիքի առատութիւն կայ ամէն տեղ: Հեռատեսիլ, լրագիր, պարբերական, համացանց, դպրոց, համալսարան, կիրակնօրեայ դպրոց՝ ամէն երկվայրկեան տեղեկութիւններու շարաններ կը տարածեն: Աշխարհի չորս ծագերէն կուտակուած ու պարտադրուած տեղեկութիւններ՝ իրարմէ անջատուած, մնացած առանց պատմութեան ու հետեւութեան, այսինքն՝ առանց բնաբանի (context):

Մկրատելով տեղեկութիւնը, գիտելիքի իշխանաւորներուն համար դիւրին կը դառնայ անկէ հանել գաղափարները իրար կապող հանրային ենթակայութեան (collective subjectivity) տարրը եւ զայն կապել մեղկ առարկայութեան (objectivity) մը հետ:

Ենթակայութիւնը կը մղէ իրադարձութիւնը դիտել ներսէն՝ բնաբանի մէջ, առանց այդ ենթակայութեան՝ իրադարձութիւնը կը դիտուի դուրսէն, ան կը վերածուի առարկայացուած դէպքի:

Ահաւասիկ օրինակներ:

Մարքսի կամ մարքսիզմի գրական-փիլիսոփայական-տնտեսագիտական միտքը առարկայականացնելով քանի մը կէտերու մէջ՝ փրոլեթարիա, դասակարգային պայքար կամ անաստուածութիւն (atheism), կը քօղարկուի անոր ամբողջ տինամիզմը, որ, իր վերջին փուլին մէջ կրնայ հասցնել Wall Street-ի քայքայման:

Իսլամի խտացումը կնոջական քօղի (եւ եթէ ասիկա սպառի, անցնիլ անոր աւելի «զարգացած» տարբերակին՝ պուրքային) կամ ահաբեկչութեան մէջ, մթութեան մէջ նետելն է միջնադարի իսլամական Ոսկեդարի գաղափարական շարժունակութիւնը, որ կրնայ խախտել Վերածնունդի *արեւմտեան* բացառապաշտութիւնը:

Աշակերտ-ուսանողին ի վերուստ տրուած գիտելիքին նուազեցումը թուանշաններու մէջ պայքար մըն է գիտելիքային տարածումին դէմ, քանի որ թուանշանը արտաքին տարր մըն է, ուժ մըն է՝ որ ինչպէս բոլոր ուժերը, հասած է դուրսէն եւ անընդունակ է ներթափանցման:

Ազգային պատմութիւններու կեդրոնացումը թագաւորներու եւ իշխաններու վրայ չէզոքացումն է ժողովրդային-ընկերային յարաբերութիւններուն եւ կասեցումը ժողովրդական հնարաւոր վտանգին *ներկայ* իշխանութիւններու գոյատեւման համար:

Քաղաքականութեան սեւեռումը անձերու շուրջ՝ Օպամա, Փութին, Սարգսեան, Մորսի, Էլ-Սիսի, քօղարկումն է քաղաքականութիւն կոչուած ճիւղին բոլոր խեղկատակութիւններուն՝ կապուած իշխանական խաւերու ինքնահաստատման եւ ինքնավերարտադրութեան հետ, եւ այս նպատակին համար գործադրուած բոլոր չահամոլութիւններուն:

Սուրիական ներկայ բարդ հարցին մարմնականացումը քիմիական զէնքի գործածութեան շուրջ մոռցնել կու տայ իմփերիալիզմին կողմէ մարզուած մոլեռանդներուն ներմուծումը «ազատ բանակ»-ին մէջ եւ կամ բուն ինքը քիմիական զէնքի արտադրութեան փաստը դրամատիրական բազմազգ ընկերութիւններուն կողմէ (քիմիական զէնքին *արտադրութիւնը* օրինական է, բայց անոր *գործածութիւնը* անօրինական):

Եգիպտահայ գաղութի վիճակին տեղադրումը անվերջանալիօրէն գովաբանուող ձեռնարկներու, «մենք ըրինք»-ներու, եւ ինքնագովաբանական հրատարակութիւններու մէջ անտեսումն է գաղութի դպրոցներու, կրթութեան, գրադարաններու, աղքատներու, կարիքաւորներու, մտաւոր շարժումներու, հայ-եգիպտական ներթափանցումներու եւ այլ բազում հարցերու, որոնք կրնան «տկարացնել» ձեռնարկներուն բացարձակութիւնը:

Հիմնահոսանքային գիտելիքը կը պարտադրէ ու կը պարգեւատրէ առաջինները: Հեռատեսիլն այսօր ողողուած է հարցամրցումներով, մինչեւ մէկ միլիոն տոլար հասնող պարգեւատրումներով: Ովքե՞ր են անոնց մասնակցողներն ու շահողները: Անոնք՝ որոնք գիտեն Ռոքֆելլըրի հարստութեան թիւը, բայց չեն գիտեր այդ նոյն հարստութիւնները կուտակողներուն պատճառով յառաջացած աշխարհի աղքատութեան թիւը: Անոնք՝ որոնք գիտեն Իսրայէլի հիմնադրութեան թուականը, բայց չեն գիտեր այդ հիմնադրութեան համար ջարդուած պաղեստինցիներուն քանակը: Անոնք՝ որոնք գիտեն ամերիկացիներուն կողմէ Իրաքի «ազատագրման» թուականը, բայց չեն գիտեր Ֆալլուճայի մէջ այդ քաղաքակիրթ ազատագրողներուն կողմէ լազերային զէնքի գործածութեան փաստը:

Մասնատելով եւ ապաբնաբանելով (decontextualisation) տեղեկութիւն-գիտելիքը, կատարեալ իշխանութեան հասնելու համար կը մնայ քայլ մը եւս կատարել: Այս քայլը մասնատուած տեղեկութեան վերածումն է մեծ պատմողականութեան (grand narrative): Յաջորդ թիւով՝ պատմողականութեան եւ անոր պատճառով յառաջացած մտածողութեան ծայրայեղութեան (extremism) մասին:

(Շար. 1/2)

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## ԳԱԼՈՒՍՏԵԱՆ-ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆ ՄԵՐՃԱՆԵԱՆ ՄԱՆԿԱՊԱՐՏԷԶ

### Կ'ուզուի

Այսու կը տեղեկացնենք թէ Վարժարանը Մերճանեան Ազգային Մանկապարտէզի բաժնին համար պէտք ունի մանկավարժ մանկապարտիզպանուհիի մը:

Դիմումները ներկայացնել Տնօրէնութեան ամէն օր առաւօտեան ժամը 9:30-12:00:

**ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ**

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Այսու կը ծանուցանենք եգիպտահայ յարգոյ մեր հասարակութեան, որ Առաջնորդարանին մօտ տրամադրելի են արեւմտահայերէն «Նոր Կտակարան»-ներ:

Փափաքողները, ունենալու համար, կրնան դիմել Ազգային Առաջնորդարան:

**Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

## Հ.Բ.Ը.ՄԻՈՒԹԻՒՆ - Գահիրէ

## ՍԱԹԵՆԻԿ Ճ. ՉԱԳԸՐ ՀԻՄՆԱԴՐԱՄ ԿՐԹԱԿԱՆ ՄՐՑԱՆԱԿՆԵՐ

Գահիրէի Հ.Բ.Ը.Մ.ի Սաթենիկ Չագըր Հիմնադրամը, 2012-2013 տարեշրջանին համար, դրամական մրցանակներ պիտի տրամադրէ եգիպտահայ համայնքին պատկանող բոլոր այն ուսանողներուն, որոնք փայլուն արդիւնքներ կը բերեն որեւէ կրթական հաստատութեան աւարտական քննութիւններուն:

Այսպէս, մրցանակներ պիտի տրամադրուին նախակրթարանի, պատրաստականի, երկրորդականի եւ համալսարանական կրթութեան աւարտական կարգերու՝ պետական կամ համազօր քննութիւններու ներկայացող բոլոր այն աշակերտներուն որոնք 90% կամ աւելի արդիւնք բերած են:

Դրամական մրցանակները իւրաքանչիւր կրթական հաստատութեան համար են եւ պիտի տրամադրուին հետեւեալ ձեւով.

| | |
|---|---|
| Նախակրթարանի աւարտական դասարան | Ե.Ո. 100.- |
| Պատրաստականի աւարտական դասարան | Ե.Ո. 200.- |
| Երկրորդականի աւարտական դասարան | Ե.Ո. 500.- |
| Համալսարանի աւարտական տարի | |
| ա- Շատ լաւ արդիւնք | Ե.Ո. 800.- |
| բ- Գերազանց արդիւնք | Ե.Ո.1000.- |

Գահիրէի դիմորդները իրենց ձեռք բերած կրթական արդիւնքը հաստատող փաստաթուղթը եւ անձի պատճէն մը, պարտին ներկայացնել Հ.Բ.Ը.Մ.ի Գահիրէի գրասենեակը:

Աղեքսանդրիոյ դիմորդները պարտին նոյնը ներկայացնել Աղեքսանդրիոյ Հ.Բ.Ը.Մ.ի վարչութեան:

Բոլոր դիմումները ընդունելու վերջին պայմանաժամն է 21 Հոկտեմբեր 2013:

Մրցանակներու յանձնումը թէ՛ Գահիրէի եւ թէ՛ Աղեքսանդրիոյ մէջ պիտի կայանայ հանդիսաւոր իրադրութեամբ:

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Այսու կը ծանուցանենք եգիպտահայ համայնքին, որ 1 Յուլիս 2013-էն սկսեալ, շուրջ 6 ամիս, Մար Մինայի Ազգային գերեզմանատան Ս. Մինաս մատուռը նորոգութեան մէջ պիտի ըլլայ:

Յիշեալ շրջանին Տաղաւար Տօներու Մեռելոցի Ս. Պատարագները պիտի մատուցուին Հելիոպոլսոյ Ազգային գերեզմանատան Ամենայն Սրբոց մատուռին մէջ:

Յաւելեալ տեղեկութիւններ ստանալու համար կը խնդրուի դիմել Առաջնորդարան՝ Բեչ. Րաֆֆի Սրկ. Պօղոսեանին:

**Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

## ԱԶԴ

*«Ջահակիր»-ի տնօրէն-խմբագիր Մարտիկ Պալաեանի Հայաստան այցելութեան պատճառով չկարողացանք լոյս ընծայել թերթիս վերջին երկու համարները, որուն համար կը հայցենք մեր յարգելի ընթերցողներուն ներողամտութիւնը: Իբրեւ Եգիպտոսի շրջանի ներկայացուցիչ, Պալաեան Հայաստան մեկնեցաւ մասնակցելու Ս. Դ. Հնչակեան Կուսակցութեան 20-րդ Համագումարին, որուն բացումը կատարուեցաւ Սեպտեմբեր 10-ին (Երեւան) իսկ նիստերը գումարուեցան Սեպտեմբեր 11-13-ին (Ծաղկաձոր): Իր տասնօրեայ կեցութեան ընթացքին, ան առիթէն օգտուելով Հայաստանի Ազգային Գրադարանին նուիրեց «Ջահակիր»-ի վերջին շրջանի ամբողջական հաւաքածոն:*

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆ**

## ԵՒՐՈՊԱՆ ՀԱՅԱՍՏԱՆՑԻ ԳՈՐԾԱՐԱՐՆԵՐՈՒ ՀԱՄԱՐ «ԵՐԱԶԱՆՔ ԿԸ ՄՆԱՅ»

2

*խորհրդատուն նաեւ համոզմունք յայտնեց, որ առնուազն չուկայի վերահսկողութեան ոլորտում Հայաստանը պատրաստ է ընդունել եւրոպական չափանիշները:*

*Մինչդեռ, «Ազատութիւն» ռադիոկայանի հետ զրոյցներում հայ գործարարները նշում էին, որ իրենք պատրաստ չեն եւրոպական շուկայի համար, իսկ Եւրոպան հայաստանցի գործարարների համար «երազանք» կը մնայ:*

## «ՀԱՅՈՑ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԵԱՆ 100-ՐԴ ՏԱՐԵԼԻՑԻՆ ԸՆԴԱՌԱՋ» ԽՈՐԱԳՐՈՎ ՀԱՅԿԱԿԱՆ...

1

*կազմակերպութիւններու մէջ խորհրդարանական պատուիրակութիւններու ղեկավարներուն հետ:*

*Այնուհետեւ քննարկումները շարունակուեցան ՀՀ պաշտպանութեան նախարարութեան մէջ, ուր նախարար Սէյրան Օհանեանի եւ նախարարութեան բարձրաստիճան հրամանատարական կազմին հետ քննարկուեցան ՀՀ պաշտպանութեան վերաբերող խնդիրներ:*

*Համաժողովին Ս.Դ. Հնչակեան կուսակցութիւնը կը ներկայացնէին Ուրուկուէյէն Տիէկօ Գարամանուկեան եւ Միացեալ Նահանգներէն Սեւակ Խաչատուրեան:*

**ՀԱՅ ԹԵՐԹԸ ԸՆԿԵՐՆ Է ՀԱՅ ՏԱՆ**

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

**Շաբաթ, 12 Հոկտեմբեր 2013**

**ՏՕՆ Է**

**ՍՐԲՈՑ ԹԱՐԳՄԱՆՉԱՑ ՎԱՐԴԱՊԵՏԱՑՆ ՄԵՐՈՑ ՄԵՍՐՈՊԱՅ, ԵՂԻՇԷԻ, ՄՈՎՍԷՍԻ ՔԵՐԹՈՂԻՆ, ԴԱՒԹԻ ԱՆՅԱՂԹ ՓԻԼԻՍՈՓԱՅԻՆ, ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑԻՈՅՆ ԵՒ ՆԵՐՍԷՍԻ ԿԼԱՅԵՑԻՈՅՆ ԵՒ ԱՅԼՈՑ ՄԵԾԱՆՈՒՆ ՎԱՐԴԱՊԵՏԱՑՆ**

**Կիրակի, 13 Հոկտեմբեր 2013-ի**

Յաւարտ Սուրբ եւ Անմահ Պատարագի տեղի պիտի ունենայ մասնաւոր հոգեհանգստեան պաշտօն, հանգուցեալ մեծանուն Ուսուցիչներու, Գրչի Վաստակաւորներու եւ Մշակոյթի Սպասարկուներու ինչպէս նաեւ Ազգային Բարերարներ՝

**ԱՒԵՏԻՍ ՋԱԳԸՃԵԱՆի**

եւ իր կողակցին

**ՎԵՐԺԻՆ ՋԱԳԸՃԵԱՆի**

եւ

**ՓՕԼ ՔԻԼԻՏՃԵԱՆԻ**

հոգւոցն ի հանգիստ

Սկիզբ Ս. Պատարագի առաւօտեան ժամը 10:00-ին

Երթ ու դարձը դիւրացնելու համար հաստատուած է հանրաշարժի սպասարկութիւն:

-Սալահ Էլտին Հրապարակ (ծաղկավաճառին առջեւէն) ժամը 8:45-ին

-Այծեմնիկ Հանգստեան Տան շէնքին առջեւէն ժամը 9:00-ին

Կը հրաւիրենք մեր բարեպաշտ ժողովուրդը ներկայ գտնուելու սոյն արարողութեան:

**Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

### ԵՂԻԱՅԵԱՆ ԿՐԹԱԹՈՇԱԿԻ ՅԻՄՆԱԴՐԱՄԻ ԵՒ ԿԱՐԱՊԵՏ ԱՂԱ ԳԱԼՈՒՍՏ ԲԱՐՁՐԱԳՈՅՆ ՈՒՍՈՒՄԻ ՅԻՄՆԱԴՐԱՄԻ

### 2013-2014 Ուսումնական Տարեշրջանի Յատկացումներ

2013-2014 ուսումնական տարեշրջանի համար վերանորոգելի կրթաթոշակներէն զատ, Գահիրէի Ազգային Առաջնորդարանը պատրաստ է նոր կրթաթոշակներ յատկացնելու արժանաւոր ուսանողներու, որոնք կը փափաքին բարձրագոյն ուսման հետեւիլ Եգիպտոսի պետական ու ոչ պետական համալսարաններու եւ Յայաստանի պետական բարձրագոյն ուսումնական հաստատութիւններու մէջ:

Թեկնածուները պիտի հանդիպին Եղիայեան Յանձնախումբին անդամներուն հետ, ստանալու համար հարկ եղած լուսաբանութիւնը եւ յատուկ հարցաթուղթը՝ ներկայացնելով պահանջուած հետեւեալ փաստաթուղթերը.

Դիմումնագիր եւ երկու լուսանկար:

Յայկական եկեղեցիի մէջ մկրտուած ըլլալու հաստատագիր (վկայական):

Ինքնութեան թուղթ (եթէ եգիպտահպատակ չէ, ապա անցագիր եւ դիմումի թուականին նախորդող երեք տարիներուն վերաբերեալ մնայուն կեցութեան իրաւունքի հաստատագիր-փաստաթուղթ):

Երկրորդական բաժնի աւարտական վկայական, ինչպէս նաեւ անոր նախորդող բաժիններու աւարտական կարգերու քննութիւններու յաջողութեան վկայականներ:

Ընդունելութեան ժամեր.

Ամէն Ուրբաթ, առաւօտեան ժամը 12:00 - 2:00, 3 Օգոստոսէն սկսեալ:

Դիմումնագրերը ներկայացնելու վերջին պայմանաժամն է 30 Սեպտեմբեր 2013:

Յաւելեալ մանրամասնութիւններու համար դիմել Գահիրէի Ազգային Առաջնորդարան

Յեռաձայն 25901385 - 25904219 - 25913686.

**ԴԻՒԱՆ ԳԱՅԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1710 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 3 ՀՈԿՏԵՄԲԵՐ 2013 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. ՂԻԿ. عدد رقم ١٧١٠ الخميس ٢٦ أكتوبر ٢٠١٣


## «ՂԱՐԱԲԱՂԸ ՁԵԶԻ ՀԱՄԱՐ ՏԱՐԱԾՔ Է, ԻՍԿ ՄԵԶԻ ՀԱՄԱՐ ՍՈՒՐԲ ՀԱՅՐԵՆԻՔ»

### ԵԽԽՎ-Ի ՄՕՏ ՍՕՍ ՍԱՐԳՍԵԱՆԻ ԽՕՍՔԵՐԸ ՄԷՋԲԵՐԱՒ ՀՀ ՆԱԽԱԳԱՀԸ




*Հայաստանի նախագահ Սերժ Սարգսեան, Սրթազպուրկի մէջ ելոյթ ունենալով Եւրոպայի խորհուրդի խորհրդարանական վեհաժողովին առջեւ յայտարարեց, թէ Հայաստան պիտի շարունակէ շահաւէտ համագործակցութիւնը Եւրոպական Միութեան հետ: «Մենք ըսած ենք ու կը շարունակենք ըսել, որ Հայաստանը կը ձգտի մօտ ըլլալ Եւրոպային» ըսաւ Սարգսեան, կարեւոր նախաձեռնութիւն համարելով Արեւելեան գործընկերութեան ծրագիրը, որ իր ուրոյն դերը ունի շարք մը նշանակալի բարեփոխումներու գործընթացին մէջ: Սարգսեան նաեւ ընդգծեց, որ Հայաստան ունի դաշնակցային յարաբերութիւններ Ռուսիոյ հետ, որոնք արդիւնաւէտօրէն կը շարունակուին:*

*«Հայաստան երբեք չէ ձգտած համագործակցութիւն կառուցել գործընկերոջ մը հետ՝ ի հակադրութիւն միւս գործընկերներուն», յայտարարեց Սերժ Սարգսեան:*

*Ան նաեւ ընդգծեց, որ Հայաստան հաւատարիմ է Լեռնային Ղարաբաղի հակամարտութեան խաղաղ կարգաւորման, կարեւորելով վստահութեան միջոցներու կառուցումը: «Ղարաբաղը ձեզի համար տարածք է, իսկ մեզի համար երկրորդ հայրենիք», մեծանուն դերասան Սօս Սարգսեանի խօսքերը մէջբերեց Հայաստանի Նախագահը՝ ցաւով նշելով, որ Հայաստանը օրեր առաջ հողին յանձնեց անուանի դերասանը: Սարգսեան խօսեցաւ նաեւ Հայոց Ցեղասպանութեան միջազգային ճանաչման անհրաժեշտութեան մասին:*

## ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆ.- «ՀԱՅԱՍՏԱՆԸ ՄՇՏԱՊԷՍ ՀԱՒԱՏԱՐԻՄ Է ՀԱՄԸՆԴՀԱՆՈՒՐ ԵՒՐՈՊԱԿԱՆ ԱՐԺԷՔՆԵՐՈՒՆ»

*ՀՀ նախագահ Սերժ Սարգսեան Սթրազպուրկի մէջ հանդիպում ունեցաւ Եւրոպայի խորհուրդի գլխաւոր քարտուղար Թորպիորն Եակլընտի հետ, որմէ յետոյ մամլոյ ասուլիսով հանդէս եկաւ հանդիպման արդիւնքներու վերաբերեալ յայտարարութեամբ, ուր ի մասնաւորի նշուած է որ անդրադարձ եղած է Եւրոպայի խորհուրդին մէջ Հայաստանի նախագահութեան առաջնահերթութիւններուն՝ մասնաւորապէս Եւրոպայի խորհուրդի բարեփոխումներուն, Մարդու իրաւունքներու եւրոպական դատարանի արդիւնաւէտութեան բարձրացման եւ ցեղապաշտութեան ու անհանդուրժողականութեան դէմ պայքարի անհրաժեշտութեան առնչուող հարցերուն, եւ այս նիւթին շուրջ Հոկտեմբեր 21-22-ը Երեւանի մէջ տեղի կ'ունենայ խորհրդաժողով, եւ այս առթիւ Եւրոպայի խորհուրդի գլխաւոր քարտուղարը կ'այցելէ Հայաստան:*

*Ըստ Սարգսեանի, Հայաստան մեծ կարեւորութիւն կու տայ նաեւ Եւրոպայի խորհուրդի արդիւնաւէտ գործունէութեան եւ կը շարունակէ ըստ ամենայնի նպաստել կառոյցի դերի եւ հեղինակութեան բարձրացման եւրոպական ճարտարապետութեան մէջ:*

*«Հայաստանը մշտապէս հաւատարիմ է համընդհանուր եւրոպական արժէքներուն՝ որպէս մեր երկրի բարգաւաճման, համաեւրոպական համագործակցութեան, կայուն զարգացման ու խաղաղութեան պահպանման կարեւորագոյն գրաւականի: Ժողովրդավարութիւնը, օրէնքի գերակայութիւնը եւ*

⇨ 4

**ԱՐՑԱԽ**

## ԲԱԿՕ ՍԱՀԱԿԵԱՆ ԱՐՑԱԽԻ ԱՆԿԱԽՈՒԹԻՒՆՆ ՈՒ ԱՆՎՏԱՆԳՈՒԹԻՒՆԸ ԵՆԹԱԿԱՅ ՉԵՆ ՈՐԵՒԷ ՍԱԿԱՐԿՈՒԹԵԱՆ

*Ղարաբաղեան շարժման 25-րդ ամեակի ձեռնարկներու ծիրին մէջ, իր աշխատանքները աւարտեց Արցախի Ազգային ժողովին մէջ նախօրէին մեկնարկած «Արցախահայութեան ազգային-ազատագրական պայքար. Կիլիստանէն մինչեւ մեր օրերը» խորագիրով միջազգային երկօրեայ գիտաժողովը:*

*Արցախի Հանրապետութեան նախագահ Բակօ Սահակեան, կարեւորեց նման միջազգային գիտական ձեռնարկներու կազմակերպումը՝ Արցախեան հիմնախնդիրը խորութեամբ հասկնալու, տարածաշրջանին մէջ տեղի ունեցող գործընթացները համակողմանիօրէն դիտարկելու եւ հնարաւոր զարգացումները աւելի ճշգրիտ կերպով կանխատեսելու տեսանկիւնէն:*

*Սահակեանի խօսքով, հայ ժողովուրդի ազատ եւ ինքնիշխան ապրելու եւ ազգային պետականութիւնը վերականգնելու ձգտումը՝ համաշխարհային պատմութեան մէջ ամենաերկարատեւ ազգային-ազատագրական պայքարներէն է, որուն ընթացքին անփոփոխ մնացած է՝ ազատ, ինքնիշխան եւ հզօր ազգային պետականութիւնը վերականգնելու հայութեան ռազմավարական գերնպատակը:*

*Անդրադառնալով Արցախի պետականաշինութեան ներկայ փուլին՝ նախագահ Սահակեան ընդգծեց, որ Արցախի անկախութիւնը եւ անվտանգութիւնը բացարիկ արժէքներ են, որոնք ենթակայ չեն որեւէ սակարկութեան:*

*«Արցախահայութեան ազգային-ազատագրական պայքար Կիլիստանէն մինչեւ մեր օրերը» խորագիրով գիտաժողովին, զեկուցումներով հանդէս եկան անուանի գիտնականներ Արցախէն, Հայաստանէն, Ռուսիայէն, Ֆրանսայէն, Գերմանիայէն, Յունաստանէն, Լիբանանէն եւ աշխարհի այլ երկիրներէն:*

*Ձեռնարկի աւարտին տեղի ունեցաւ նաեւ «կլոր սեղան»՝ «Արցախի տնտեսական զարգացման հեռանկարները» թեմայով:*

*Գիտաժողովի աշխատանքների աւարտէն ետք մասնակիցները այցելեցին Արցախի տեսարժան վայրեր:*

⇨ 2

## ԼԵՌՆԱՅԻՆ ՂԱՐԱԲԱՂԻ ԴԷՄ ԿՌՈՒԱԾ ԱՏՐՊԷՅՃԱՆՑԻ ՆԱԽԿԻՆ ՓՈԽ-ՆԱԽԱՐԱՐԸ ԱՅՑԵԼԵՑ ՍՏԵՓԱՆԱԿԵՐՏ

*Լեռնային Ղարաբաղ այցելեց Ատրպէյճանի պաշտպանութեան նախարարի նախկին տեղակալ Ալաքրամ Գումմաթով: Ան 90-ականներուն անձամբ ակտիւ մասնակցութիւն ունեցած է Ղարաբաղի դէմ պատերազմական գործողութիւններուն:*



Ատրպէյճանի պաշտպանութեան նախարարի նախկին տեղակալ Ալաքրամ Գումմաթով:

*«Ինչպէս տղամարդավարի կռուած եմ, այնպէս ալ եկած եմ տղամարդավարի հաշտութեան ձեռք երկարելու», - յայտարարեց Գումմաթով Արցախի Պետական Համալսարանէն ներս կազմակերպուած հանդիպման ժամանակ: -*

*«Ես միշտ ըսած եմ՝ եթէ տղամարդավարի կը կռուիս, ուրեմն պէտք է նաեւ տղամարդավարի ընկերութիւն ընես»:*

*«Ազատութիւն» ռատիոկայանի հարցին, թէ ինչ կը զգայ հիմա, երբ եկած է հանդիպելու այն ժողովուրդի հետ, որու դէմ պատերազմած է, Գումմաթով պատասխանած է, որ ինք այստեղ է, որպէսզի այդ ամէնը այլեւս չկրկնուի. - «Ես գիտեմ, թէ ինչ է պատերազմը եւ այլեւս չեմ ուզեր, որ այն երբեք կրկնուի: Այո, ես պատերազմած եմ Լեռնային Ղարաբաղի դէմ եւ այդ չեմ թաքցներ. Բայց այսօր ես կ'ըսեմ՝ ի՞նչ իրաւունքով երիտասարդ տղաները պատերազմի դաշտ կ'ուղարկէի...այս եւ նման շատ ու շատ հարցեր այսօր գիս հանգիստ չեն տար»:*

*Ալաքրամ Գումմաթով այժմ կը բնակի Հոլանտայի մէջ:*

⇨ 4

**ԷՋՄԻԱԾԻՆ**

## ԵՊԻՍԿՈՊՈՍԱԿԱՆ ԺՈՂՈՎԸ ՈՐԴԵԳՐԱԾ Է ՀԱՅՈՑ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԵԱՆ ՆԱՀԱՏԱԿՆԵՐՈՒ ՀԱՒԱՔԱԿԱՆ ՍՐԲԱԴԱՍՄԱՆ ՍԿԶԲՈՒՆՔԸ

*Սեպտեմբերի 24-27-ը Մայր Աթոռ Սուրբ Էջմիածինի մէջ գումարուած Եպիսկոպոսաց ժողովի դիւանը հաղորդագրութեամբ մը եկաւ ամփոփելու ժողովի աշխատանքները:*

*«Սեպտեմբերի 24-ի նիստերին եպիսկոպոսաց դասը քննարկեց Հայաստանեայց Առաքելական Ս. Եկեղեցում սրբադասման աւանդութեան վերականգնման հարցը եւ այդ շրջագծում Հայոց ցեղասպանութեան զոհերի սրբադասման խնդիրը», - ըսուած է հաղորդագրութեան մէջ:*

*Զեկոյցներու քննարկման արդիւնքով Հայոց ցեղասպանութեան զոհերու սրբադասման գործընթացի առնչութեամբ Եպիսկոպոսաց ժողովը որոշել է՝ որդեգրել Հայոց ցեղասպանութեան նահատակներու հաւաքական սրբադասման սկզբունքը, յանձնարարել Սրբադասման յանձնախումբին՝ շարունակել նահատակներու անհատական եւ խմբային սրբադասման ուսումնասիրութիւնը՝ Եպիսկոպոսաց յառաջիկայ ժողովներուն ներկայացնելու համար, յանձնարարել Սրբադասման յանձնախումբին մշակել սրբադասման կանոնակարգը եւ արարողակարգը՝ Եպիսկոպոսաց յառաջիկայ ժողովին ներկայացնելու համար:*

*Սեպտեմբեր 25-26-ի նիստերուն Եպիսկոպոսաց ժողովի մասնակիցները քննած են Հայաստանեայց Առաքելական Եկեղեցւոյ առաջին երկու խորհուրդներու՝ Մկրտութեան եւ Դրոշմի առնչութեամբ Ծիսական յանձնախումբի կողմէ կատարուած աշխատանքները:*

*Սեպտեմբեր 27-ի նիստերը նուիրուած էին Հայ եկեղեցւոյ այժմէական մարտահրաւէրներուն:*

*«Քննարկելով ներկայացուած մարտահրաւէրները, որոնք վերաբերում էին եկեղեցու ծիսական, քարոզչական կեանքին եւ կրթա-դաստիարակչական ու սոցիալական առաքելութեանը, հայապահպանութեան խնդիրներին՝ ժողովականները*

⇨ 4

# Ս.Դ.Հ.Կ.-Ն ԸՆԴԴԻՄԱԴԻՐ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԻՒՆ Է ՊՆԴՈՒՄ Է ՆՈՐԸՆՏԻՐ ԱՏԵՆԱՊԵՏԸ

## «Առաջին Լրատուական»-ի Զրուցակիցն է Ս.Դ.Հ.Կ. Նորընտիր Ատենապետ Յակոբ Տիգրանեանը:

*– Պարոն Տիգրանեան, Ձեր ատենապետ ընտրուելու հանգամանքը շատերի համար անակնկալ էր, արդեօ՞ք դա եղաւ ներքին տարաձայնութիւնների արդիւնքում. կարծես թէ սպասւում էր, որ Սեդրակ Աճէմեանը կը վերընտրուէր:*

– Իմ ընտրութիւնը ոչ թէ ներքին տարակարծութիւնների արդիւնք էր, այլ ընդհակառակը՝ այն Հնչակեան կուսակցութիւնում գոյութիւն ունեցող եւ գործող դեմոկրատական արժէքների արդիւնք էր: Ս.Դ.Հ.Կ.-ն եկաւ մէկ անգամ եւս փաստելու, որ այն երբեք անձերի կուսակցութիւն չի եղել, այլ հաւաքական ուժ, որը հիմնուած է գաղափարների եւ սկզբունքների վրայ:

Ս.Դ.ՀՆՉԱԿԵԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ ԱՏԵՆԱՊԵՏ՝ ԸՆԿ. ՅԱԿՈԲ ՏԻԳՐԱՆԵԱՆ

Հնչակեան շարքային կուսակցականը երբեք չի գերադասել իր անհատականը, կուսակցութիւնը հաւաքական է: Դրա ամենափայլուն օրինակն այսօր ընկեր Սեդրակ Աճէմեանի ներկայութիւնն է նորընտիր կեդրոնական վարչութիւնում:

*– Ի՞նչ խնդիրներ էք տեսնում Ս.Դ.Հ.Կ.-ում չլուծուած, ի՞նչ անելիքներ ունէք:*

– Ս.Դ.Հ.Կ.-ն գործում է աշխարհի 17 տարբեր շրջաններում, եւ ամէն մի շրջանի խնդիրները տարբերւում են միւսից: Ի հար կէ, Հայաստանի շրջանը ամենակարեւոր շրջանն է եւ յատուկ ուշադրութեան արժանի: 19-րդ համագումարից անմիջապէս յետոյ յառաջացած խնդիրները բացասական անդրադարձան հայաստանեան կառոյցի գործունէութեան վրայ, բայց կարծում եմ՝ դժուար օրերն արդէն անցեալում են ու 20-րդ համագումարի հաղորդած լիցքով ու առաջադրանքներով Հայաստանի շրջանը առաւել աշխոյժ գործունէութիւն է ծաւալելու Հայաստանի քաղաքական թատերաբեմում:

*– Շատերի համար անյայտ է՝ կուսակցութիւնը հիմա ընդդիմադի՞ր է, թէ՞ ինչպէս նախագահական ընտրութիւններում, այնպէս էլ յետագայում սատարելու էք իշխանութիւններին:*

– Հնչակեան կուսակցութիւնը իր 126-ամեայ գործունէութեան ընթացքում միշտ առաջնորդուել է իր գաղափարական սկզբունքներով եւ յանուն կուսակցական նեղ շահերի երբեք գործարքների մէջ չի մտել ոչ մէկի հետ՝ լինի դա իշխանութիւն կամ ընդդիմութիւն: Մենք տարիներ շարունակ առաջ ենք քաշել համակարգային փոփոխութեան գաղափարը՝ հաւատալով, որ լոկ անձերի փոփոխութեամբ հարցեր չեն լուծուելու: Մենք էութեամբ ընդդիմադիր կուսակցութիւն ենք, քանի որ միշտ կանգնած ենք եղել հասարակ ժողովրդի կողքին ու պայքարել նրա իրաւունքների համար: Ու քանի դեռ երկրում գոյութիւն ունի ընկերային անարդարութիւն, կաշառակերութիւն, հովանաւորչութիւն ու սակաւապետութիւն (օլիգարխիա), ուրեմն ընդդիմադիր ենք: Սակայն բոլորովին հակուած չենք ամէն ինչ սեւ տեսնելու եւ սեւ նկարագրելու: Ամէն մի դրական տեղաշարժ մեր կողմից ողջունելի է: Միւս կողմից, պատրաստ ենք համագործակցելու ցանկացած իշխանութեան հետ, երբ հարցը վերաբերւում է համայն հայութեան ընդհանրական շահերին, օրինակ՝ Ցեղասպանութեան 100 ամեակի կապակցութեամբ կամ սփիւռք-Հայրենիք կապերի առումով:

*– Մամուլում պարբերաբար հրապարակումներ են լինում այն մասին, որ ձեր կուսակցութիւնը սերտ կապերի մէջ է ՀՀ վարչապետ Տիգրան Սարգսեանի հետ, եւ դա է պատճառը, որ երբեմնի ընդդիմադիր կուսակցութիւնն այժմ արդէն իշխանամէտ է:*

– Ինչպէս արդէն ասացի Հնչակեան կուսակցութիւնը միշտ առաջնորդուել է իր գաղափարական սկզբունքներով ու իր քաղաքական ուղեգիծն ու դիրքորոշումները հիմնել է համագումարներում առնուած որոշումների վրայ, այլ ոչ թէ անձնական կապերի կամ նախաձեռնութիւնների վրայ: Որպէս կառավարութեան ղեկավարի, մենք վարչապետ Տիգրան Սարգսեանի հետ ունենք յարգալից եւ գործնական յարաբերութիւններ, ու մեր ներքին կուսակցական հարցերի վերաբերեալ ոչ քննարկում է տեղի ունեցել նրա հետ եւ ոչ էլ միջամտութիւն նրա կողմից:

*– Կուսակցութեան Կիպրոսի համագումարում որոշուել է, որ այն պէտք է Հայաստանակեդրոն լինի՝ համահնչակեան ամբողջ կեդրոնական վարչութիւնը պէտք է գործի մայր հողի վրայ: Դա նշանակում է, որ կուսակցութեան կեդրոնական վարչութեան անդամները պէտք է գոնէ Հայաստանում ապրեն,* 4

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ ՊԻՏԻ ԱՐՏԱԴՐՈՒԻՆ ՏԱՐԲԵՐ ՆՇԱՆԱԿՈՒԹԵԱՆ ԱՆՕԴԱՉՈՒ ԹՌՉՈՂ ՍԱՐՔԵՐ

*Հայկական «Ինստիկէյթ» ընկերութիւնը պիտի իրականացնէ անօդաչու թռչող սարքերու՝ էտուգոփդերի, փոթոգոփդերի եւ ակրոգոփթերի արտադրութիւն Հայաստանի մէջ: Այս մասին յայտնած է «Ինստիկէյթ» ՓԲԸ գլխաւոր ճարտարագէտ Վահագն Պօղոսեան:*

*Ան շեշտած է, որ այդ սարքերու մատակարարման մասին ձեռք բերուած են նախնական համաձայնութիւններ:*

*«Անօդաչու սարքերու արտադրութեամբ զբաղող դանիական ընկերութիւններէն մէկը, որ կը համագործակցի ամերիկեան ընկերութեան հետ, անկարող է ապահովելու անհրաժեշտ արտադրական ծաւալները եւ այդ պատճառով պայմանաւորուածութիւն ձեռք բերուած է Հայկական «Ինստիկէյթ» ընկերութեան հետ՝ Հայաստանի մէջ անօդաչու թռչող սարքերու արտադրութիւն սկսելու եւ պահանջուող պատուէրները լիովին բաւարարելու նպատակով: Մենք ամերիկեան ընկերութեան հետ պայմանաւորուած ենք, որ դանիական ընկերութեան մոտելները, ինչպէս նաեւ մեր սեփական մշակման մոտելները յետագային կը նախագծուին մեր ընկերութեան կողմէ, որմէ յետոյ ամերիկեան ընկերութիւնը դանիականին զուգահեռ կը գնէ նաեւ հայկական արտադրանքը: Երկու ընկերութիւններու հետ ձեռք բերած ենք պայմանաւորուածութիւններ՝ արտադ-* 3

ԲԱԿՕ ՍԱՀԱԿԵԱՆ

# ԱՐՑԱԽԻ ԱՆԿԱԽՈՒԹԻՒՆՆ ՈՒ ԱՆՎՏԱՆԳՈՒԹԻՒՆԸ ԵՆԹԱԿԱՅ ՉԵՆ ՈՐԵՒԷ ՍԱԿԱՐԿՈՒԹԵԱՆ

1

*Նշենք որ նոյնպէս Լեռնային Ղարաբաղի Հանրապետութեան նախագահ Բակօ Սահակեան ընդունեց սփիւռքահայ բարերար Վահէ Կարաշը եւ անոր հետ քննարկեց Արցախի մէջ շարք մը ծրագիրներու իրականացման հետ կապուած հարցեր: Զրուցակիցները յատուկ ուշադրութիւն դարձուցին ենթակառուցուածքներու եւ արտադրական ոլորտներուն:*

*Բակօ Սահակեան կարեւորեց Արցախի զարգացման գործին մէջ Սփիւռքի ներուժի օգտագործումը՝ զայն համաբելով պահանջուած՝ թէ՛ քաղաքական, թէ՛ ներհայկական կապերու ամրապնդման տեսանկիւնէ:*

# ԱԶՆԱՒՈՒՐ ԿԸ ՊԱՏՐԱՍՏՈՒԻ ԹՈՒՐՔԻԱ ԱՅՑԵԼԵԼ

*Մոնթելիմարի միջհամայնքային պալատը Սեպտեմբեր 27-էն սկսեալ կը կրէ Շարլ Ազնաւուրի անունը: Այս առիթով, Ազնաւուր յիշեցուցած է, որ իր անունով Հայաստանի մէջ հրապարակ, պուրակ ու չորս մեթրնոց արձան մը կայ:*

*Անուանակոչութեան միջոցառման ընթացքին, Ազնաւուր հարցազրոյց մը ունեցած է ֆրանսական թերթի մը հետ եւ դարձեալ խօսած է հայ-թրքական յարաբերութիւններուն ու իր հայկական ինքնութեան մասին:*

*«Համաձայն եմ Թուրքիոյ հետ մերձեցման» խորագիրը գործածուած է Ազնաւուրի հետ ֆրանսական «Լը Տոֆինէ Լիպերէ» թերթին կատարած հարցազրոյցին համար:*

*«Միշտ իւրայատուկ գաղափարներ ունեցած եմ: Օրինակ՝ առաջարկած եմ քայլեր առնել խլամացուած հայերը Հայաստան բերելու ուղղութեամբ: Ես ըսած եմ, որ պէտք է ճարել աշխատանք, կացարան: Ասոր վրայ երեք տարի անցած է, բայց ես ոչ մէկ առիթով լսած եմ մէկը, որ անոր մասին խօսի: Ես Թուրքիոյ հետ մերձեցման կողմնակից եմ: Բոլոր հայերը այս հարցին մէջ հետս համաձայն չեն, մինչդեռ շուտով պիտի ամբողջանայ Ցեղասպանութեան 100-ամեայ տարելիցը եւ սահմանները այսօր արդէն կը բացուին», ըսած է Ազնաւուր:*

*Ազնաւուր աւելցուցած է, թէ կը պատրաստուի Թուրքիա այցելելու, բայց այդ մէկը ոչ մէկ կապ ունի Հայկական Հարցին կամ Եւրոմիութեան անդամակցելու Թուրքիոյ ջանքերուն հետ: «Կ'ուզեմ երթալ այն երկիրը, ուր ծնած է մայրս», ըսած է Ազնաւուր եւ աւելցուցած, թէ կը հաւնի թուրք ժողովուրդը: «Երբ ես բան մը ըսեմ, խօսքը Անգարայի դէմ է, այլ ոչ թէ թուրք ժողովուրդին»:*

*Թուրքիա մեկնելու վտանգին հետ կապուած հարցումի մը պատասխանելով՝ Ազնաւուր ըսած է, թէ իր տարիքին, վտանգը այլեւս կարեւոր գործօն մը չէ եւ թէ ինք երբեք վախկոտ չէ եղած:*

*«Դուք ամենայայտնի հայն էք աշխարհի մէջ», ըսած է լրագրողը, որուն Ազնաւուր պատասխանած է. «1963ին, երբ ես ժամանեցի Հայաստան, զիս դիմաւորեցին «Բարով էք եկել ձեր տունը» պաստառներով: Բայց ես զանոնք ցաւցուցի՝ ըսելով, որ իմ երկիրը Ֆրանսան է: Ես հայերէն չեմ գրեր, չեմ կարդար, հայերէն չեմ աղօթեր, չեմ գիտեր Հայաստանի քայլերգը: Ինչո՞ւ ստել: Ճշմարտութիւնը կը ցաւցնէ, բայց ոչ երկար ժամանակ: Ճշմարտութիւնը կը յիշուի միշտ: Սուտն է, որ կը ցաւցնէ»:*

ՀԱՅԱՍՏԱՆ

# 2014 ՈՐՔԱ՞Ն ԱՇԽԱՏԱՎԱՐՁ ՊԻՏԻ ՍՏԱՆԱՆ ՆԱԽԱԳԱՀՆ ՈՒ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԵԱՆ ԱՆԴԱՄՆԵՐԸ

*2014-ին ամբողջական վերանայումի պիտի ենթարկուի բարձրաստիճան պաշտօնատար անձերու աշխատավարձի որոշման կարգը: Կառավարութիւնը նախաձեռնած է պատրաստութեան օրէնսդրական թղթածրարի մը, որ պետական պիւտճէին հետ պիտի ներկայացուի Հայաստանի Ազգային ժողովին՝ առ ի վաւերացում:*

*Հոն կատարուած հաշիւներուն եւ ճշդուած չափանիշներուն համաձայն կը կազմուի աշխատավարձերու հետեւեալ պատկերը. Հայաստանի նախագահը կը ստանայ 800 հազար դրամ (ներկայիս 400 հազար դրամ է), Ազգային ժողովի նախագահը եւ վարչապետը՝ 720 հազար դրամ (ներկայիս 340 հազար դրամ է), նախարարները՝ 480 հազար դրամ (ներկայիս 300 հազար դրամ է):*

*Այս աշխատավարձի հիմքը կը հանդիսանայ գործակիցներու թիւը: Նախ պիտի սահմանուի հիմնական դրոյթ մը, որ պիտի բազմապատկուի գործակիցներով: Ամէնէն աւելի գործակից ունի Հայաստանի նախագահը՝ 20, ապա Ազգային ժողովի նախագահն ու վարչապետը՝ 18: Հայաստանի Սահմանադրական դատարանի նախագահը չորրորդ դիրքի վրայ է՝ 16 գործակիցով, անոր կը հետեւի ազգային անվտանգութեան խորհուրդի նախագահը՝ 15.5:*

*Հայաստանի փոխվարչապետը, գլխաւոր դատախազը, վճռաբեկ պալատի նախագահը, վերահսկիչ պալատի նախագահն ու մարդու իրաւունքներու պաշտպանը ունին 15 գործակից:*

*Նախարարի գործակիցը սահմանուած է 12՝ հաւասարեցուելով Ազգային ժողովի մնայուն յանձնաժողովի նախագահի, նախագահի աշխատակազմի ղեկավարի, կառավարութեան աշխատակազմի ղեկավարի, ազգային անվտանգութեան ծառայութեան ու ոստիկանութեան պետի, Հայաստանի գլխաւոր դատախազի տեղակալի ու վճռաբեկ դատարանի դատաւորի գործակիցին:*

*Այս ցանկին մէջ յատկանշական է այն, որ մարդու իրաւունքներու պաշտպանի գործակիցներուն թիւը աւելի է, քան նախարարներունը:*

**ԹՈՒՐՔԻԱ**

## ՎԱՆԻ ՄԷՋ ՀԱՅԵՐՈՒ ԶԱՆԳՈՒԱԾԱՅԻՆ ԳԵՐԵԶՄԱՆ ԿԸ ՅԱՅՏՆԱԲԵՐՈՒԻ



*Վանի Կեւաշ գաւառին մէջ (պատմական Ոստան գաւառ) դպրոցի մը շինարարութեան ընթացքին յայտնաբերուած է զանգուածային գերեզմանոց մը, ուրկէ մարդկային գանկեր եւ ոսկորներ հողի երես դուրս բերուած են: Թրքական Haber X լրատու կայքը յայտնած է նաեւ, թէ ոսկորներն ու մարդկային գանկերը արդէն մէկ տարիէ ի վեր կը մնան շինարարական այդ վայրին մէջ եւ թէ այդ տեսարանը հոգեբանական ճնշումի տակ կը դնէ դպրոց յաճախող աշակերտները, եւ անոր հետեւանքով որոշ աշակերտներ նոյնիսկ կը խուսափին դպրոց յաճախելէ:*

*Իսկ գաւառի բնակիչներուն համաձայն՝ ուսուցիչներէն մէկը, տեսնելով այդ ոսկորները՝ հրաժարած է իր պաշտօնէն:*

*Գաւառի բնակիչներէն Երլմազ Թուլայ նշած է, որ ամենայն հաւանականութեամբ, այդ ոսկորները Հայոց Ցեղասպանութեան ընթացքին սպաննուած տեղացի հայերուն ոսկորներն են:*

*Միասնականութեան կրօնքի հետեւորդները հաւաքական թաղումներ չեն կատարեր: Հոս զանգուածային կոտորած տեղի ունեցած է: Գանկերէն ակնյայտ է, որ այդ մարդիկ տանջուած են եւ թաղուած իրարու վրայ, ըսած է Թուլայ:*

---

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ ՊԻՏԻ ԱՐՏԱԴՐՈՒԻՆ ՏԱՐԲԵՐ ՆՇԱՆԱԿՈՒԹԵԱՆ ԱՆՕԴԱՉՈՒ ԹՌՉՈՂ...

2 ➪

*րանքի իրացումէն գոյացող շահոյթի բաշխման ձեւերու եւ այլ հարցերու վերաբերեալ: Ամերիկեան ընկերութեան հիմնադիրներէն մէկը ազգութեամբ հայ է, ան կը հանդիսանայ «L1» կառավարման համակարգի ստեղծողը: Այդ համակարգը աշխարհի տարածքին արդէն ընդունուած է որպէս նորագոյն չափանիշ. այն տեսութիւն է, որուն հիման վրայ կարելի է շատ աւելի կենսունակ ու ճկուն համակարգեր ստեղծել, քան մինչ այդ ընդունուածները կ'ապահովէին», ըսած է Վահագն Պօղոսեան՝ աւելցնելով, որ նշեալ կառավարման համակարգը կ'օգտագործուի արդէն կենցաղային ինքնաշխատ սարքերու՝ ռոպոթաշինութեան մէջ, ներթափանցած է նաեւ ռազմարդիւնաբերութեան մէջ:*

---

ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ԽՈՀԵՐ

# ՄԿՐԱՏՈՒՄ, ԱՌԱՐԿԱՅԱՑՈՒՄ, ՊԱՏՄՈՂԱԿԱՆԱՑՈՒՄ

### Մտածողութեան ծայրայեղականութեան ճամբուն վրայ

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

Շարունակելով անցեալ սիւնակի միտքը, այստեղ կը դիտեմ մկրատում-ապաբնաբանումին (decontextualisation) վերածումը մեծ պատմողականութեան (grand narrative):

Տանօթ է, որ «մեծ պատմողականութիւն» արտայայտութիւնը առաջին անգամ 1979-ին գործածած է ֆրանսացի փիլիսոփայ Ժան-Ֆրանսուա Լիոթար (Jean-François Lyotard), իր *Յետարդիական վիճակը. զեկուցում գիտելիքի մասին* գիրքին մէջ (*La Condition postmoderne: Rapport sur le savoir*): Բնականաբար, Լիոթար նկատի չունէր *մասնակի* գիտելիքի պատմողականութիւնը (այս գաղափարը իմս է), այլ հիմնարկային ու գաղափարաբանական հին ու նոր գիտելիքային ընդհանրացումները, գիտելիքային տիեզերականութիւնը՝ ուր չկայ տարբերութիւն եւ մասնայատկութիւն, բայց կայ *տարբեր* պատմողականութեան հերքում եւ անտեսում: Ըստ իրեն, յետարդիական կացութեան մէջ, մեծ պատմողականութիւնը կամ մեթա-պատմողականութիւնը (meta-narrative) արդէն չի գործեր. «Խիստ պարզեցնելով հարցը, ես յետարդիականը կը սահմանեմ իբրեւ անվստահութիւն մեթա-պատմողականութիւններու նկատմամբ: Այս անվստահութիւնը անկասկած գիտութեան յառաջընթացի արտադրութիւնն է, իսկ այս յառաջընթացը իր կարգին կը նախասահմանէ զայն: Օրինականացման մեթա-պատմողական գործամիջոցին [apparatus] անգործածականութիւնը կը համապատասխանէ, յատկապէս, մեթաֆիզիքական փիլիսոփայութեան ճգնաժամին հետ, ինչպէս նաեւ համընդհանրացած հիմնարկին հետ՝ որուն մեթա-պատմողականութիւնը կ'ապաւինէր անցեալին վրայ: Պատմողական գործառնութիւնը [function] կը կորսնցնէ իր գործօնները՝ իր մեծ հերոսը, իր մեծ վտանգները, իր մեծ ճանապարհորդութիւնները, իր մեծ նպատակը: Ան կը ցրուի պատմողական լեզուի տարրերու շարաններու մէջ, պատմողական՝ բայց նաեւ մատնանշական, հրահանգչական, նկարագրողական, եւ այլն:»(1)

Բայց, հակառակ յետարդիապաշտներու ցանկութեան, մեծ պատմողականութիւնը ոչ միայն չէ դադրած գործելէ այսօր, այլ աւելի ու աւելի տարածուած ու ամրացուած է: Պաղեստինցի-ամերիկացի Էտուարտ Սայիտ կու տայ իր պատասխանը.

«Մտաւորականի մը գործունէութեան նպատակը մարդկային ազատութեան եւ գիտելիքի յառաջխաղացումն է: Կը հաւատամ՝ որ ասիկա տակաւին ճիշդ է, հակառակ յաճախ կրկնուող մեղադրանքին՝ թէ «ազատագրութեան եւ լուսաւորութեան մեծ պատմողականութիւնները» (որոնց հերոսական տենչերը ժամանակակից ֆրանսացի փիլիսոփայ Լիոթար կը վերագրէ նախորդ «արդի» շրջանին) յետարդիական շրջանին դարձած են արժեքազուրկ: Ըստ այս տեսակէտին, մեծ պատմողականութիւնները փոխարինուած են տեղական կացութիւններով եւ լեզուական խաղերով, եւ ոչ թէ ճշմարտութեան ու ազատութեան նման տիեզերական արժէքներով: Ես միշտ կարծած եմ՝ թէ այսպիսով Լիոթար եւ իր հետեւորդները ընդունած են իրենց սեփական ծոյլ անկարողութիւնները, հաւանաբար նաեւ իրենց անտարբերութիւնը, փոխանակ ճշգրիտ գնահատում մը տուած ըլլալու մտաւորականի մը ունեցած հնարաւորութիւններու իրապէս ընդարձակ շարքին, անկախ յետարդիականութեան գոյութենէն: Քանզի իրականութեան մէջ կառավարութիւնները բացայայտօրէն կը ճնշեն մարդոց, տակաւին գոյութիւն ունին արդարութեան ծանր վիժումներ, ուժի գործադրութեամբ մտաւորականներու յարմարեցումը եւ ներառումը տակաւին կրնան մեղմացնել անոնց ձայները, եւ տակաւին յաճախակի կրկնուող երեւոյթներ են մտաւորականներու շեղումը իրենց կոչումէն:»(2)

Սայիտ յստակօրէն կը բացատրէ, թէ տակաւին գոյութիւն ունեցող (պիտի ըսէի՝ յաւերժ գոյութիւն ունենալիք) անարդարութիւններն ու ճնշումները դիմադրելու համար անհրաժեշտ են համընդհանուր մարդկային պատմողականութիւններ, եւ մանաւանդ անխուսափելի է մտաւորականութեան մասնակցութիւնը այս պատմողականութիւններու կերտումին եւ գործադրութեան:

Արդարեւ, Լիոթարի եւ Սայիտի երկու պատմողականութիւնները կարելի է ընթերցել տարբեր անկիւնէ մը՝ ըստ վերոյիշեալ մասնատում-ապաբնաբանումի դրոյթին: Լիոթար կը գրէ մասնատուած գիտելիքի պատմողականութեան մասին, Սայիտ՝ բնաբանի պատմողականութեան: Առաջինը՝ բացասական, հետեւաբար վերացման արժանի, երկրորդը՝ դրական, հետեւաբար հաստատման արժանի:

Արդի շրջանին, կատարեալ հսկողութեան տակ գտնուող հաղորդակցական միջոցներուն շնորհիւ, հիմնահոսանքը կարող է ընտրել որեւէ մկրատուած-առարկայացուած (objectified) տեղեկութիւն եւ անոր փոխանցել օտարացած, բազմապատկուած, գրգռիչ իմաստ, եւ այդ իմաստին տալ բնաբանի կեղծ տարազաւորում՝ ըլլայ դրական կամ բացասական, ըստ իշխանական հրամանին: Առարկայականն ու օտարականը ազգակիցներ են, քանի որ երկուքն ալ երեւոյթներ են որոնք այնտեղ են, դուրսն են: Յօդուածիս սկիզբը նշուած բոլոր օրինակները (փրոլեթարիա, Օպամա, Սուրիայի քիմիական զէնք, եւլն.) ենթակայ են դառնալու պատմողական: Այս տեսակ պատմողականութիւնները վճռական են, հաստատական, վերջնական, անվիճելի ու անխոցելի, անոնք կը դառնան ամբոխի խօսակցութեան ամենօրեայ նիւթը՝ առանց առարկութեան, առանց խնդրականացման: Ասիկա մտածողութեան ծայրայեղականութեան (extremism) հիմքն է:

Մանրամասնեմ եգիպտական ու հայկական կեանքէ քաղուած երկու այժմէական օրինակներով:

Այս տարուայ Մայիսին Եգիպտոսի մէջ հսկայ աղմուկ բարձրացաւ Նեղոս գետի վրայ Եթովպիայի ջրամբարի կառուցման գործնական սկզբնաւորութեան առիթով: Խօսակցութեան եւ տեղեկութեան սեւեռումը այդ ջրամբարին վրայ էր՝ որուն պատճառով ծարաւն ու սովը պիտի տարածուէին Եգիպտոսի մէջ, իսկ միակ յանցաւորը այդ ժամանակուայ իսլամիստ նախագահ Մոհամմէտ Մորսին էր՝ որուն անկարողութեան պատճառով Եթովպիան յաջողեցաւ գլուխ հանել ծրագիրը: Ջրամբարը՝ իբրեւ մահուան աղբիւր, եւ Մորսին՝ իբրեւ կատարելապէս ձախող ղեկավար, դարձան մեծ պատմողականութիւններ՝ շնորհիւ յատկապէս նէօլիպերալ գերհարուստներուն պատկանող եգիպտական արբանեակային (satellite) հիմնահոսանքային հեռատեսիլի կայաններուն եւ անոնցմէ սնուող սնկանման ցանցերուն: Որեւէ այլ կարծիք, որեւէ այլ մօտեցում, «յանցաւոր»-ներու աւելի լայն խմբաւորումներու որոնում ոչ թէ արգիլուած էր, այլ պարզապէս գոյութիւն չունէր: Մինչդեռ Եթովպիայի ջրամբարը ունէր (եւ ունի) բնաբան մը՝ որ կը կոչուի «ջուրի սեփականացում» (water privatization): Ասիկա Միջազգային Պանքին (World Bank) կողմէ թելադրուած յայտնի քաղաքականութիւն մըն է: Աշխարհի խմելիք ջուրերը սեփականացնելու համար Միջազգային Պանքը հետեւողականօրէն կը ֆինանսաւորէ մեծ եւ բազմազգ ընկերութիւնները՝ զանազան մարդասիրական անուններու տակ:

Մուպարաքեան Եգիպտոսը 1990-ականներէն սկսեալ ուրախութեամբ հետեւեցաւ ջուրի սեփականացման Միջազգային Պանքի խորհուրդներուն: Եգիպտոսի մէջ հանգային ջուրի սեփականացումը Փեփսի-Քոլայի (Տազանի անունով), Նեսթլէի, բանակի զօրավարի (Սաֆի անունով) եւ բազմաթիւ այլոց կողմէ Միջազգային Պանքին համար միջոց մըն էր ընկերութիւններու եւ իմփերիալիստներուն համակիր անհատներու ընդմէջէն տիրելու եգիպտական ջուրին, եւ անկէ ալ բուն երկիրին:

Մուպարաքի վերջին շրջանին, Կամալ Մուպարաքի բացայայտ երկիշխանութեան ժամանակ, ջուրի ընկերութեան վերածումը բաժնետիրական ընկերութեան յաւելեալ փաստ մըն է կառավարութեան նէօլիպերալ քաղաքականութեան:

Բացի այդ, Եգիպտոսի մէջ արտահանման համար սեփական ընկերութիւնները կ'արտադրեն մեծ քանակութեամբ բանջարեղէն եւ պտուղ, որոնց մշակման համար նշանակալի քանակութեամբ ջուր կը սպառի: Այսինքն՝ կ'արտահանուի ջուրը: Իսկ դրամական շահը կը պատկանի արտահանող դրամատէրերուն: Ջուրի սեփականացում՝ բանջարեղէնի միջոցով:

Բարեբախտաբար, տակաւին գիւղատնտեսութեան ջուրը կը մնայ հանրային եւ Ասուանի ջրամբարը՝ պետական:

Միջազգային Պանքի «մտաւորականներ»՝ որոնք նպաստած էին Եգիպտոսի մխրճումը այս անվերադարձ ուղիին մէջ, թէ՛ Մուպարաքի, թէ՛ բանակի իշխանութեան, թէ՛ Մորսիի ժամանակ եւ թէ՛ այսօր, առանցքային պաշտօններ կը գրաւեն կարեւոր եգիպտական հիմնարկներու մէջ, յաճախ մտաւորականի «պաշտօնական» յորջորջումով:

Ասկէ ելլելով, մեծ պատմողականութիւն մը ջուրի սեփականացման դէմ/մասին կրնայ քանդել սեփականատէրերուն եւ Միջազգային Պանքին մենատիրութիւնը եգիպտական ջուրին նկատմամբ, եւ սեփականացնելով իր ապասեփականացուածը Եգիպտոս ինքնավստահութեամբ կրնայ դիմադրել Եթովպիայի ջրամբարին կառուցումը: Դիմադրութիւն՝ սեփականութեան դէմ: Բայց, եթէ վերանայ ջրային սեփականացումը, դիրք գրաւած պաշտօնեաներ, պաշտօնեայ մտաւորականներ եւ ամբողջ խաւ մը շահագործողներ եւս պիտի վերանան: Եւ քանի որ անոնց ձեռքն է խօսքի վերջնականութիւնը, անոնք են որոնք կը ստեղծեն խօսքի հասանելիութեան խողովակները, անկասկած պիտի արգիլեն նման պատմողականութեան մը յաջառացումը:

Մասնակի ու մկրատուած պատմողականութեան ստեղծումը եւ լայն հարցին առարկայացումը Մորսիին շուրջ (իր նախորդներն ու յաջորդները զերծ մնացին այս պատմողականութենէն, թէեւ ջրամբարի ծրագիրը սկսած էր Մուպարաքի ժամանակ ու անոր կառուցումը մեծ թափով կը շարունակուի այսօր) յաջողեցաւ ստեղծել ամենաբացասական տիպարը իսլամիստ նախագահին շուրջ: Այս տեսակ պատմողականութիւնը (այս պարագային՝ ջրամբար, Մորսի) պէտք է նկատի ունեցած ըլլար Լիոթար՝ իր «յետարդիական» պատմողականութեան նկատմամբ ունեցած բացասական տեսակէտին համար: Մինչդեռ բնաբանային պատմողականութիւնը նկատի ունէր Սայիտ (այս պարագային՝ ջուրի սեփականացումը), երբ կը շեշտէր պատմողականութեան անհրաժեշտութիւնը իբրեւ անօրինութիւնը դիմադրելու միջոց: Առաջին պատմողականութիւնը առարկութիւն չ'ընդունիր, տրուած հարցը կամ լաւ է կամ վատ, կը ստեղծէ բացարձակ տիպարներ՝ լաւ կամ վատ, անկարող է տեսնել հարցին շերտաւորումները, քանի որ ան ներկայացուած է առանց շերտաւորման: Իսկ բացարձակութիւնն ու ծայրայեղականութիւնը քոյր ու եղբայրներ են: Երկրորդի պարագային տիպարներ չեն յառաջանար, այլ կը ստեղծուին տարբերակումի եւ հանրային դիմադրութեան հարթակներ: Մորսին իշխանութենէն հեռանալով ջրամբարին հարցը չի լուծուիր, սեփականութեան վերացման պարագային՝ հիմնական եւ այլընտրանքային լուծումները մեծապէս կարելի կը դառնան: Օրինակ, Եթովպիայի մէջ մէկ, տիրական ու անփոխարինելի ջրամբարի փոխարէն կարելի էր կառուցել բազում փոքր ջրամբարներ, որոնք, ըստ մասնագէտներու, կրնային տուեալ երկրին նոյնիսկ աւելի օգտակար ըլլալ, առանց դրացի երկիրներուն էական վնաս պատճառելու: Եւ ճիշդ այս պարագային էր որ Միջազգային Պանքին ազդեցութիւնը պիտի տկարանար (մէկ մեծ ջրամբարի փոխարէն բազում տեղական ու պետականօրէն գործող փոքրեր՝ զերծ իշխանական հսկողութենէ) եւ կառուցող ընկերութիւնը պիտի կորսնցնէր Նեղոսին ուղղութիւնը որոշելու իր

➪ 4

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ԽՈՀԵՐ

## ՄԿՐԱՏՈՒՄ, ԱՌԱՐԿԱՅԱՑՈՒՄ, ՊԱՏՄՈՂԱԿԱՆԱՑՈՒՄ

### Մտածողութեան ծայրայեղականութեան ճամբուն վրայ

3 ➩

մենատիրութիւնը:

Օրինակ մըն ալ հայկական կեանքէն, բոլորովին տարբեր՝ «ազգային» հարթութեան վրայ:

Հայկական բանաւորութեան (orality) մեծ պատմողականութիւն մըն է (էր) *Սասնայ ծռեր* (Սասունցի Դաւիթ) վիպերգութիւնը: Արաբական արշաւանքներու ժամանակ հիւսուած այս գրական-երաժշտական յօրինուածքը տարբերակային փոխանցումով հասաւ մինչեւ Ի. դարու սկիզբը:

*Սասնայ ծռերը* վերուստ դիտուած հերոսականութեան պատում մը չէ երբեք, անոր գիտելիքային բովանդակութիւնը անսահմանագատելի խառնուրդ մըն է ժողովրդական առասպելի, հաւատամքի, ծիսակատարութեան, տեղական բարքերու, ֆոլքլորի, իսկ թեքնիքական առումով՝ բանաւոր բանաձեւերու (formulas) եւ ժողովրդական տաղաչափութիւններու, բոլորն ալ կապուած յարատեւօրէն նորոգուող փորձառութեան եւ մշտաթարմ յիշողութեան հետ: Այս կենդանի փորձառութիւնն ու յիշողութիւնն են որոնք ապահովեցին անոր երկարակեցութիւնը: Այնտեղ չկան կայուն, «աքատեմիք» դէպքեր, այլ ամէն ինչ կապուած է չարժուն իրադարձութիւններու հետ: Յիշենք, որ միջնադարեան վիպասացները արդի հասկացութեամբ բանաստեղծ-երաժշտահաններ չէին՝ որոնք դասաւորուած-հանգստաւէտ պայմաններու մէջ յօրինել-յղկելով իրենց «ստեղծագործութիւնը» կը սպասէին կատարողին, ունկնդիրին եւ դրամին, այլ անոնց երեւակայութիւնը կը գործէր բնական միջավայրի մէջ, իսկ ստեղծագործութիւնը «կը յղկուէր» բանաւոր փոխանցման միջոցով:

*Սասնայ ծռերը* մեծ պատմողականութիւն մըն է, ունենալով տարբեր բնաբաններ՝ յիշողութիւն, փորձառութիւն, բանաւորութիւն: Այս պատմողականութեան մասին առարկութիւն չունի Լիոթար՝ քանի որ ան նախա-յետարդիական է, իսկ Սայիտի դիմադրողական պատմողականութիւնը այստեղ եւս կը գործէ՝ քանի որ *Սասնայ ծռերը* դիմադրութիւն մըն է պահպանելու տեղականը, բնական տարածութիւնը եւ ինքնակառավարումը, գործող անձինք ունենալով սիրելի՝ բայց ոչ բացարձակացուած, դէմքեր:

ԻԱ. դարու մուտքով, Հայաստանի իշխանութիւնները որոշեցին ունենալ *իրենց* հերոսական պատումը, իրենց սեփական դէմքն ու գրասենեակային հերոսութիւնները դիտել ուրիշի մարմնաւորումով: Այդ ուրիշը կրնար ըլլալ Անդրանիկ, որ՝ ինչպէս Խորհրդային Հայաստանի իմ ուսանողական տարիներուն քիչ մը վախով կը պատմէր ժողովրդական բանահիւսութեան մասնագէտ դասախօսուհին, եթէ գիւղացի ժողովուրդը վախ չունենար խորհրդային իշխանութենէն, Անդրանիկի մասին հիւսած պիտի ըլլար բազում ֆոլքլորային պատումներ, քանի որ անոր համար Անդրանիկ կը ներկայանար իբրեւ *կենդանի* յիշողութիւն: Սասունցի Դաւիթ մը արդի շրջանին մէջ: Բայց Քոչարեան-Սարգսեան ընտրեցին ուրիշ հերոս մը, *իրենց* հերոսը՝ Գարեգին Նժդեհ, քաջ գիտնալով՝ որ համատարած (թիւրիմացութենէ խուսափելու համար կը շեշտեմ «համատարած» բառը) ժողովրդային յիշողութիւն Նժդեհի մասին չէ գոյացած: Արդարեւ, այսօր Նժդեհը եւ իր ցեղակրօնութիւնը ամէն տեղ են՝ հեռատեսիլի եւ մամուլի մէջ, աքատեմիք հրատարակութիւններու մէջ, եւ, ամենազարմանալին, իր գրական միջակութիւնները կը ներկայացուին իբրեւ գաղափարական նմոյշներ եւ անոնցմէ քաղուածքներ կը դառնան գիրքերու բնաբաններ:

Կը մտածես՝ արդեօք նժդեհեան ցեղակրօնութիւնը կրնա՞յ կապ ունենալ ներկայ իշխանութիւններու (ոչ-)քաղաքականութեան հետ:

Վտանգաւոր է ցեղակրօնութիւնը դարձնել մեծ պատմողականութիւն: Ցեղակրօնութեան պատմողականացումը, եւ ոչ թէ նոյն ինքը ցեղակրօնութիւնը (հեռու լաւ-վատ երկուութեան անձեռնմխելութենէն եւ յանուն մեկնաբանութեան եւ խնդրականացման՝ ցեղակրօնութիւնն իբրեւ այդպիսին կարելի է քննարկել, վիճել, փնտռել անոր արմատները եւ գոյութեան պայմանները, ըստ պահանջին դիմադրել զայն), հիմքն է գիտելիքի ծայրայեղականութեան, քանի որ, նախ, ան մկրատում-առարկայացումն է Ի. դարու առաջին կէսի քաղաքական-մշակութային-կուսակցական-գաղափարախօսական ընդարձակ շարժումներու, եւ ապա այս մասնակիին (Նժդեհ, ցեղակրօնութիւն) ամբողջատիրացումը, այսինքն՝ այլընտրանքներու անտեսումը: Այս տեսակ պատմողականութեան դէմ էր Լիոթար, իսկ Սայիտի համար անիկա նոյնիսկ աւելորդ բեռ մըն էր կարծիք յայտնելու համար:

Իշխանութիւններ (տեմոքրաթիք, բռնապետական), կուսակցութիւններ (աջակողմեայ, ձախակողմեայ, ազգային, ապազգային, հակազգային) կը խուսափին *իրական* բնաբաններէ, որոնց պատմողականացումը սկիզբն է անոնց տարրալուծման եւ մասնակցողական ընկերվարութեան (participatory democracy) գոյացման...:

(Վերջ 2)

1.-Jean-François Lyotard, *The Postmodern Condition: A Report on Knowledge*, Translation from the French by Geoff Bennington and Brian Massumi, University of Minnesota, 1984, p. xxiv

2.-Edward W. Said, *Representations of the Intellectual*, Vintage Books, 1996, p. 17-18

## ԼԵՌՆԱՅԻՆ ՂԱՐԱԲԱՂԻ ԴԷՄ ԿՌՈՒԱԾ ԱՏՐՊԷՅՃԱՆՑԻ ՆԱԽԿԻՆ ՓՈԽ-ՆԱԽԱՐԱՐԸ ԱՅՑԵԼԵՑ ՍՏԵՓԱՆԱԿԵՐՏ

1 ➩

*Տարիներ առաջ Ատրպէյճանի իշխանութիւնները բազմաթիւ ձերբակալութիւններէ յետոյ զինք արտաքսած էին՝ զրկելով Ատրպէյճանի քաղաքացիութենէն:*

*Ան իր խօսքին մէջ բազմիցս քննադատեց Ատրպէյճանի իշխանութիւններուն՝ երկրէն ներս վարուող քաղաքականութեան եւ մասնաւորապէս, թալիշներու նկատմամբ անհանդուրժող վերաբերմունքի համար: Անոր կարծիքով, այդ ամենուն միջազգային հանրութիւնը ուշադիր կը հետեւի, սակայն «անհատ ներկայացուցիչներ կը դառնան կաշառակերութեան մասնակից՝ այդպիսով աչք փակելով տեղի ունեցող իրադարձութիւններուն վրայ»:*

*Ինչ կը վերաբերի Լեռնային Ղարաբաղին, ապա նախկին փոխ-նախարարը չպահեց իր հիացմունքը:*

*Ան ըսաւ, որ յուզուած է ջերմ ընդունելութեան առթիւ եւ յոյսով է, որ այս իր վերջին այցելութիւնը չ'ըլլար:*

*«Ինծի համար հաճելի է գտնուիլ Արցախի մէջ: Մենք պէտք է ընենք ամէն ինչ, որպէսզի մեր տարածաշրջանէն ներս խաղաղութիւն տիրէ, որպէսզի մեր թանկագին երեխաները ապրին, ուսում ստանան խաղաղ պայմաններու մէջ», - ըսաւ Գումմաթով:*

## Ս.Դ.Հ.Կ.-Ն ԸՆԴԴԻՄԱԴԻՐ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԻՒՆ Է ՊՆԴՈՒՄ Է ՆՈՐԸՆՏԻՐ ԱՏԵՆԱՊԵՏԸ

2 ➩

*արդեօ՞ք պատրաստւում էք տեղափոխուել Հայաստան: Ի դէպ, այս տեղեկութիւնը տիկին Լիւդմիլա Սարգսեանն է պնդում:*

– Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան Կուսակցութեան 20-րդ համագումարը վերահաստատեց Հայաստանակեդրոն լինելու հանգամանքը: Հետեւաբար երբեք բացառուած չէ մօտ ապագայում կեդրոնի ատենապետի տեղափոխութիւնը Հայաստան: Վստահեցնում եմ, որ գալիք օրերին քննարկման կեդրոնում հենց այդ հարցն է լինելու:

ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆ.-

## «ՀԱՅԱՍՏԱՆԸ ՄՇՏԱՊԷՍ ՀԱՒԱՏԱՐԻՄ Է ՀԱՄԸՆԴՀԱՆՈՒՐ ԵՒՐՈՊԱԿԱՆ ԱՐԺԷՔՆԵՐՈՒՆ»

1 ➩

*մարդու իրաւունքներու ամրապնդումն ու կայացումը այն արժէքային համակարգն է, որուն վրայ խարսխուած է մեր երկրի զարգացման տեսլականը»,- ըսած է Հայաստանի նախագահը:*

*Հանդիպման ընթացքին անդրադարձ եղած է նաեւ Լեռնային Ղարաբաղի խնդրին, որուն գծով կողմերը վերահաստատած են Մինսքի խումբի համանախագահներու ձեւաչափի նկատմամբ բարձր վստահութիւնը:*





## ԵՊԻՍԿՈՊՈՍԱԿԱՆ ԺՈՂՈՎԸ ՈՂՋՈՒՆԱԾ Է ՀԱՅՈՑ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԵԱՆ ՆԱՀԱՏԱԿՆԵՐՈՒ ՀԱՒԱՔԱԿԱՆ ՍՐԲԱԴԱՍՄԱՆ ՍԿԶԲՈՒՆՔԸ

1 ➩

*որոշեցին դրանք առաջնահերթութեան սկզբունքով համապարփակ քննութեան առարկայ դարձնել առաջիկայ Եպիսկոպոսաց ժողովներին», -ըսուած է հաղորդագրութեան մէջ:*

*«Եպիսկոպոսաց ժողովը արդիւնքների ամփոփման հանգրուանին մտահոգութեամբ անդրադարձ աւ նաեւ մեր ժողովրդի ազգային, եկեղեցական կեանքում առկայ ընկերային, տնտեսական, ժողովրդագրական եւ տարաբնոյթ այլ մարտահրաւէրներին ու դժուարութիւններին: Նշեալ մարտահրաւէրներին ու հիմնախնդիրներին ընդառաջ, եպիսկոպոսաց դասը, ելնելով Հայ Առաքելական Եկեղեցու ծառայական ոգուց, օրհնութեամբ Ամենայն Հայոց Կաթողիկոսի եւ Մեծի Տանն Կիլիկիոյ Կաթողիկոսի, որոշեց հաստատել հիմնադրամ՝ Հայաստանի ու Արցախի եւ սփիւռքահայութեան կարիքաւոր զաւակներին աջակցութիւն ցուցաբերելու համար: Հիմնադրամի գործունէութեան մեկնարկի համար հաստատուեց երկու միլիոն ԱՄՆ դոլարի նախնական դրամագլուխ, իսկ հիմնադրամի ընթացիկ աշխատանքների կազմակերպման համար ստեղծուեց յատուկ յանձնախումբ»:*

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: 24530327, Fax: (202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1711 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 24 ՀՈԿՏԵՄԲԵՐ 2013 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٧١١ الخميس ٢٤ أكتوبر ٢٠١٣


## ՄԻ՛ ՀԵԳՆԷՔ ՄԵՐ ՆԱՀԱՏԱԿՆԵՐԸ

Հիմա ալ Եգիպտոսին կարգն է:

Մեզմէ շատեր հրճուանքով ողջունեցին այն տեղեկութիւնը, թէ Եգիպտոսի այժմու իշխանութիւնները մտադիր են ճանչնալու Հայոց Ցեղասպանութիւնը: Ոմանք ուրախութեամբ ընդգծեցին, որ եգիպտական կարեւոր հեռուստակայան մը արծարծած է Հայոց Ցեղասպանութեան պատմութիւնը եւ հոն խօսքեր հնչած՝ թէ պէտք է Եգիպտոս ճանչնայ հայոց կրած տառապանքը: Այս առիթով նշուեցաւ, որ Եգիպտոս կրնայ ըլլալ առաջին իսլամական երկիրը, որ պիտի ճանչնայ ցեղասպանութիւնը: Աւելին, վերջերս եգիպտացի մտաւորականներու խումբ մը այցելեցին Երեւան, ուր մամլոյ ասուլիսի մը ընթացքին անոնք հաստատեցին եգիպտական կողմին տրամադրութիւնները՝ ցեղասպանութեան առնչութեամբ, յաւելելով՝ որ եգիպտաթրքական յարաբերութեանց առաւել սրման պարագային, Եգիպտոս մինչեւ իսկ ի պահանջել հարկին պէտք է ճանչնայ Լեռնային Ղարաբաղի Հանրապետութեան անկախութիւնը:

Ինչո՞ւ հիմա, 98 տարիներ ետք, եգիպտացիք յիշեցին Հայոց Ցեղասպանութեան մասին. ինչպէ՞ս մէկ օրէն միւսը եգիպտացիք դարձան հայասէրներ:

Այս դիմաշրջութիւնը անմիջականօրէն կապուած է Թուրքիոյ վարչապետ Ռեճեփ Թայիպ Էրտողանի դիրքորոշման հետ: Ան, որպէս իսլամական հոսանքի կարկառուն ղեկավար, իր զայրոյթը չթաքցուց իրեն գաղափարակից նախագահ Մուհամմետ Մուրսիի պաշտօնանկութեան նկատմամբ: Ան քննադատական խօսքեր ուղղեց Եգիպտոսի զինուորական իշխանութեանց հասցէին, որոնք երկիրը փրկելու համար ծայրայեղ իսլամութեան կապանքներէն, դէպի արմատականութիւն ընթացող ուղիէն եւ Իսլամ Եղբայրներու արմատաւորուող գործընթացէն, կտրուկ միջոցառումով մը քաղաքական հրապարակէն չէզոքացուցին իսլամիստ Մ. Մուրսին: Ռ. Էրտողան իր սահմաններէն անցնելով վիրաւորական սլաքներ ուղղեց նաեւ զինուորականութեան քայլերուն զօրակցող Եգիպտոսի հոգեւոր ղեկավարին՝ Ազհարի պետի հասցէին՝ աւելի եւս բորբոքելով Եգիպտոսի նորահաստատ իշխանութիւններուն եւ ժողովուրդին զգացումները: Բնական է, որ Թուրքիոյ վարչապետը համակրէր տապալած նախագահին՝ անոր մէջ տեսնելով գաղափարական իսկական դաշնակից մը՝ տարածաշրջանին մէջ իսլամական հոսանքը ամրապնդելու առումով: Վարչապետին հիասթափութիւնն ու անշպար եւ ոչ պատշաճ արտայայտութիւնները Գահիրէի ուղղութեամբ Եգիպտոսի մէջ թարգմանուեցան որպէս երկրին ներքին գործերուն կոպիտ միջամտութիւն:

Այս զարգացումներուն լոյսին տակ Անգարա-Գահիրէ յարաբերութիւնները արձանագրեցին ուշագրաւ լարուածութիւն:

Ահա այս տագնապէն է որ հրապարակի վրայ յայտնուեցաւ Հայոց Ցեղասպանութեան ճանաչման հարցը:

Ուրեմն, հոս հայասիրութեա՞ն, մարդասիրութեա՞ն, խղճմտանքի՞ թէ զուտ քաղաքական նկատառում պէտք է տեսնել: Ի հարկէ, քաղաքական հաշուարկ՝ մեր նահատակներուն միջոցաւ:

Ակամայից, մարդ այն տպաւորութիւնը կ՚ունենայ, որ Հայոց Ցեղասպանութեան ճանաչման հարցը դարակի մը մէջ պահ դրուած խաղաթուղթ մըն է, որ կարելի է ցանկացած պահու օգտագործել, երբ որեւէ երկիր որեւէ պահու դիւանագիտական կամ քաղաքական հարց մը ունենայ Թուրքիոյ հետ: Մեր նուիրական եւ խնկելի նահատակները վերածուած են գործիքներու՝ Թուրքիոյ հետ հաշիւ մաքրելու, Թուրքիայէն բան մը կորզելու կամ պարզապէս Անգարային ճնշելու համար:

Ո՞վ արտօնած է նման փոլիթիքոսներու շահարկել մեր նահատակներն ու Հայոց Ցեղասպանութեան փաստը: Անշուշտ, ակնարկը չի վերաբերիր մարդասիրական ու հայասիրական զգացումներու. այլ՝ քաղաքական սակարկութեանց եւ անբարոյ առեւտուրին:

⇨ 2

## ԵՐԵՒԱՆԸ՝ 2795 ՏԱՐԵԿԱՆ

*Էրեբունի-Երեւանը Հոկտեմբեր 12-ին տօնեց իր 2795 ամեակը:*

*Երեւանի տօնին առիթով, Հոկտեմբեր 13-ին մայրաքաղաքին մէջ տեղի ունեցան տօնական հանդիսութիւններ: Այս առիթով տեղի ունեցան տօնական շարք մը ձեռնարկներ՝ Երեւանի վարչական տարբեր շրջաններուն մէջ:*

*«Էրեբունի-Երեւան-2795» տօնակատարութիւններու բազմազան միջոցառումներու մեկնարկէն առաջ մայրաքաղաքի տարբեր ուսումնական հաստատութիւններէն կամաւոր հաւաքագրուած պատանիներն ու երիտասարդները լուացին մայրաքաղաքի արձանները՝ երեւանեան-տօնական տրամադրութեամբ, Երեւանի մասին երգեր երգելով:*

*Կամաւորներէ կազմուած երեք խումբերը ժամը 11:00-էն սկսեալ լուացին Երեւանի կեդրոնական զբօսայգիներու ու փողոցներու վրայ տեղադրուած արձանները՝ հրշէջներու աջակցութեամբ:Աւետիք Իսահակեանի, Վահան Տէրեանի, Ալեքսանդր Թամանեանի, Սայաթ-Նովայի, Արամ Խաչատրեանի, Մարտիրոս Սարեանի, Յովհաննէս Բաղրամեանի, Անտրէյ Սախարովի եւ այլ մեծերու յուշարձանները, ինչպէս նաեւ Մանկական երկաթուղիի մուտքի Յովագի քանդակը լուալէ ետք բոլոր երեք խումբերը հաւաքուեցան Միասնիկեանի արձանին մօտ եւ միաւորուած ուժերով, Երեւան քաղաքի ջրային կառոյցներու աջակցութեամբ, լուացին նաեւ Սասունցի Դաւիթի, Վարդան Մամիկոնեանի, Գայի եւ Հայկ Նահապետի բարձրադիր արձանները, որպէսզի տօնական զարդարուած մայրաքաղաքը լիարժէքօրէն պատրաստ ըլլայ տօնին:*

*Նշենք որ յոբելենական յայտագրին մաս կազմեցին Մաշտոցի պուրակի մէջ Քաղաքային տնտեսութեան էքսփօ-ցուցահանդէս «Աւելի Լաւ Երեւան» խորագրով, ինչպէս նաեւ Ռեթրօ ոճի մեքենաներու ցուցադրութիւն: Մեթրոյի Բարեկամութիւն, Մարշալ Բաղրամեան, Հանրապետութեան հրապարակ, Զօրավար Անդրանիկ կայարաններու մէջ՝ «Հին Երեւանը. Հայեացք ապագայից» լուսանկարներու ցուցադրութիւն: Կիրովի անուան մանկական զբօսայգիին մէջ մանկական ծրագիրներու հարթակ, տիկնիկային ներկայացումներ, Սիրահարներու այգիին մէջ՝ «Երեւան» Facebookեան լուսանկարներու ցուցադրութիւն:*

*Մանկապատանեկան ստեղծագործութիւններու բացօթեայ ցուցադրութիւն՝ Իգիթեանի անուան ազգային կեդրոնին յարակից տարածքին, տօնական չքերթ (Քաղաքապետարանէն՝ Հանրապետութեան հրապարակ):*

⇨ 4

## «ՀԱՒԱՍԱՐԱԿՇՌՈՒԹԵԱՆ ՀԱՇԻՒՆԵՐԸ»

*Հաւաքական Անվտանգութեան Պայմանագրի Կազմակերպութեան (ՀԱՊԿ) ընդհանուր քարտուղար Նիքոլայ Պորտիւժա յայտարարեց, որ Ռուսիան միշտ հաշուի կ'առնէ Հայաստանի ունեցած զինամթերքի նկատմամբ հաւասարակշռութիւն պահելու անհրաժեշտութիւնը, երբ զէնք կը վաճառէ Հայաստանի մօտ գտնուող երկիրներուն:*

*«Մենք հաւասարակշռութիւնը միշտ հաշուի կ'առնենք: Այն ինչ կը վերաբերի ռուսական բանակի արդիականացումին, ապա այդ միշտ կը կատարուի Հայաստանի տարածքին: Նաեւ կը կատարելագործուին զինատեսակները», ըսաւ Պորտիւժա: Ան նաեւ վստահեցուց, որ ՀԱՊԿ-ի ուժերը Լեռնային Ղարաբաղ ուղարկելու հարցը քննարկումի առարկայ չէ: Պորտիւժա կարծիք յայտնեց, որ Վիլնիւսի մէջ համաձայնագիր պիտի չկընքըւի Հայաստանի ու Եւրոմիութեան միջեւ, որովհետեւ Երեւան արդէն յայտարարած է Մաքսային միութեան անդամակցելու որոշումին մասին:*

*Նոյն հարցով, Պելառուսիոյ նախագահ Ալեքսանտրը Լուքաշէնքօ յայտարարեց, որ Մաքսային միութեան անդամակցելու գծով Հայաստան համաձայնագիր կրնայ ստորագրել Մինսքի մէջ, Անկախ պետութիւններու համարակապետութեան ղեկավարներու գագաթնաժողովէն առաջ, այսինքն՝ յառաջիկայ քանի մը օրերուն ընթացքին:*

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ՆԱԹՕ-Ի ՀԵՏ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐ



*Հայաստանի Հանրապետութեան Նախագահ Սերժ Սարգսեան Հոկտեմբեր 18-ին, Երեւանի մէջ տեսակցեցաւ Հարաւային Կովկասի եւ Կեդրոնական Ասիոյ մէջ ՆԱԹՕ-ի ընդհանուր քարտուղարի յատուկ ներկայացուցիչ Ճէյմզ Ափաթուրայի հետ: Հանդիպումին ընթացքին բարձր գնահատուեցաւ ՆԱԹՕ-ի հետ Երեւանի համագործակցութիւնը: Զրուցակիցները գոհունակութեամբ նշեցին, որ դաշինքի հետ քաղաքական երկխօսութիւնը կը կրէ շարունակական բնոյթ:*

*Ափաթուրա բարձր գնահատեց Հայաստանի մասնակցութիւնը Կովկասի եւ Աֆղանիստանի մէջ ՆԱԹՕ-ի միջազգային խաղաղապահ գործողութիւններուն:*

### ԸՆԴԱՐՁԱԿՈՒԵԼՈՒ ԾՐԱԳԻՐ ՉԿԱՅ

*Հարաւային Կովկասի եւ Կեդրոնական Ասիոյ մէջ ՆԱԹՕ-ի ընդհանուր քարտուղարի յատուկ ներկայացուցիչ Ճէյմզ Ափաթուրայ յայտարարեց, որ իրենք նախկին խորհրդային տարածքին մէջ ընդլայնուելու ծրագիր չեն հետապնդեր: «Դաշինքի դռները բաց են եւրոպական ժողովրդավարական երկիրներուն համար: Այս քաղաքական ծրագիր չէ, այլ սկզբունք:*

*Մենք նաեւ կը յարգենք այլ երկիրներու ընտրութիւնը, որոնք չեն ուզեր մաս կազմել ՆԱԹՕ-ին», ըսաւ Ափաթուրայ: Ան վերահաստատեց, որ ղարաբաղեան հակամարտութիւնը կը լուծուի բացառաբար խաղաղ միջոցներով, փոխզիջումներու եւ բանակցութիւններու հիման վրայ: «Մենք կ'աջակցինք ԵԱՀԿ-ի Մինսքի խմբակին եւ անոր մշակած հոլովոյթին: Պաքուի ու Երեւանի հետ ՆԱԹՕ-ն քաղաքական երկխօսութիւն կը վարէ ու կը համագործակցի: Կը մաղթենք, որ շուտով լուծում գտնուի հակամարտութեան», ըսաւ ՆԱԹՕ-ի ներկայացուցիչը:*

ԶԱՀԱԿԻՐ

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԷՏՈՒԱՐՏ ՄԻԼԻՏՈՆԵԱՆ ԳՐՈՂՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ ՆԱԽԱԳԱՀ



*Կիրակի Հոկտեմբեր 19-ի երեկոյեան աւարտեցան Հայաստանի Գրողներու Միութեան նախագահի ընտրութիւնները: Փակ եւ գաղտնի ընտրութեամբ, քննիչ յանձնախումբի տուեալներով՝ միութեան նախագահ ընտրուած է Էտուարտ Միլիտոնեանը: Վերջինս, Գրողներու Միութեան նախագահ Լեւոն Անանեանի անակնկալ մահէն ետք, ընտրուած էր Գրողներու Միութեան ժամանակաւոր պաշտօնակատար:*

*Համագումարի սկիզբը, ներկաները մէկ վայրկեան յոտնկայս յարգած են յաւերժ մեկնած գրողներու յիշատակը, իսկ Արտակ Վարդանեան ընթերցած է համագումարին ուղղուած հանրապետութեան նախագահ Սերժ Սարգսեանի ուղերձը:*

*Ընտրական յանձնաժողովի տուեալներով՝ Էտուարտ Միլիտոնեան ստացած է 199 ձայն: Յովիկ Հովէյեան՝ 100, Դաւիթ Սարգսեան՝ 24, Ռոմիկ Սարդարեան՝4: Եօթ քուէթերթիկ ճանչցուած է անվաւեր:*

*Պէտք է ըսել, որ Գրողներու Միութեան արտահերթ համագումարը կայացած է բուռն եւ թէժ մթնոլորտի մէջ: Գրողները վիճած են թեկնածուներուն խօսք առնելու համար սահմանուած ժամանակին շուրջ:*

*Դժբախտաբար գրականութեան անյարիր վէճեր ալ տեղի ունեցած են համագումարի ընթացքին, երբ կարգ մը գրողներ զիրար մեղադրած են պետական անվտանգութեան գործակալ ըլլալու ամբաստանութեամբ:*

*Հայաստանի Գրողներու Միութիւնը սկզբունքով կը հաշուէ 520 անդամ:*

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՇՈՒՐՋ 100 ՀԱԶԱՐ ՀԱՅԱՍՏԱՆՑԻՆԵՐ GREEN CARD ՏԻՐԱՆԱԼՈՒ ԴԻՄՈՒՄ ԿԱՏԱՐԱԾ ԵՆ

*Հոկտեմբեր 1-ին սկսած է Միացեալ Նահանգներ ներգաղթի «Տի. Վի.-2015 (Տայվըրսիթի վիզա՝ բազմազանութեան վիզա կամ Կրին Քարտ) վիճակախաղի մասնակցութեան դիմումներու ընդունումը, որ պիտի աւարտի 2 Նոյեմբերին: Այս մասին կը հաղորդէ Միացեալ Նահանգներու արտաքին գործոց նախարարութեան պաշտօնական կայքը:*

*«Ներգաղթի եւ քաղաքացիութեան վերաբերող Միացեալ Նահանգներու օրէնքի 203 (գ) յօդուածով կը նախատեսուի ընդունիլ ներգաղթողներու նոր տեսակ, որ ծանօթ է «ներգաղթողներ բազմազանութեան ապահովման համար» անունով: 2015 տարուան համար կը նախատեսուի միայն բնակութեան 50,000 վիզա շնորհել», նշուած է յայտարարութեան մէջ:*

*Նախորդ տարուան ցուցանիշները կը յուշեն, թէ Հայաստանի քանի՛ քաղաքացի կրնայ արժանանալ այս վիզային: 2013-ին միայն բնակութեան վիզա շահած է 1174 Հայաստանի քաղաքացի:*

*2014-ի բազմազնութեան վիզայի վիճակախաղը աւարտած է, արդիւնքները յստակացած են, սակայն տակաւին չեն հրապարակուած: Արտագաղթի 2015-ի վիճակախաղին արդիւնքները պիտի հրապարակուին 2014-ի Մայիս 31-էն մինչեւ 2015-ի Յունիս 30:*

*2010-ին դիմում կատարած է 62,051 Հայաստանի քաղաքացի, 2011-ին՝ 72,876, 2012-ին՝ 92,352, 2013-ին՝ 97,679: Ամէն տարի դիմումներուն թիւը կ'աւելնայ նուազագոյնը 5000-ով: Ասիկա միայն մէկ երկրի օրինակ է: Եթէ բոլոր դիմումները ընդունուին, Հայաստանի մէջ գրեթէ մարդ չի մնար:*

ԷՋՄԻԱԾԻՆ

## ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԳԻՏԱԺՈՂՈՎ «ԵԿԵՂԵՑԻ ԵՒ ՊԵՏՈՒԹԻՒՆ ՓՈԽՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐ, ՀՐԱՄԱՅԱԿԱՆՆԵՐ ԵՒ ՄԱՐՏԱՀՐԱՒԷՐՆԵՐ» ԹԵՄԱՅՈՎ

Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Բ. Ծայրագոյն Պատրիարք եւ Ամենայն Հայոց Կաթողիկոսի օրհնութեամբ Մայր Աթոռ Սուրբ Էջմիածնում գումարուած «Եկեղեցի եւ պետութիւն փոխյարաբերութիւններ. հրամայականներ եւ մարտահրաւէրներ» խորագրով միջազգային գիտաժողովը Հոկտեմբեր 19-ին աւարտեց իր աշխատանքները:

Երկօրեայ գիտաժողովի ընթացքում «Եկեղեցի եւ պետութիւն փոխյարաբերութիւնների տարբեր մոդելներն այսօր» թեմայի շուրջ բանախօսեցին Սերգէյ քահանայ Մատիւշինը (Ռուս Ուղղափառ եկեղեցի) եւ Աստուր Նահապետեանը (Երեւանի Հայ աւետարանական-մկրտական քրիստոնեաների եկեղեցի): «Կրօնական ազատութեան բնագաւառում միջազգային օրէնքներն ու չափորոշիչները» թեմայի շուրջ զեկոյցներով հանդէս եկան դոկտոր Պետեր Կրոմերը (Աւստրիայի Աւետարանական եկեղեցու ղեկավար), մագ. Էլիզաբետայ Կիտանովիչը (Եւրոպական եկեղեցիների կոնֆերանս, Եկեղեցի եւ հասարակութիւն յանձնաժողովի մարդու իրաւունքների

4

## ՖԻՖԱ-Ի ՆՈՐ ԴԱՍԱՒՈՐՈՒՄ ՀԱՅԱՍՏԱՆ 38-ՐԴ ԴԻՐՔԻ ՎՐԱՅ




*ՖԻՖԱ-ի հրապարակած աշխարհի հաւաքականներու նոր դասաւորման մէջ Հայաստան իր արձանագրած վերջին երկու արդիւնքներէն ետք յառաջացաւ 17 դիրք եւ գրաւեց մրցանիշային 38-րդ դիրքը:*

*Ստորեւ տեսնել առաջին տաս հաւաքականներուն, Հայաստանի, Թուրքիոյ, Եգիպտոսի եւ Լիբանանի դասաւորումները:*

*1-Սպանիա 1513 կէտ,*
*2-Գերմանիա 1311 կէտ,*
*3-Արժանթին 1266 կէտ,*
*4-Քոլոմպիա 1178 կէտ,*
*5-Պելճիքա 1175 կէտ,*
*6-Ուրուկուէյ 1164 կէտ,*
*7-Զուիցերիա 1138 կէտ,*
*8-Հոլանտա 1136կէտ,*
*9-Իտալիա 1136 կէտ,*
*10-Անգլիա 1080կէտ....*
*38-Հայաստան 687 կէտ...*
*40-Թուրքիա 670 կէտ...*
*51-Եգիպտոս 610 կէտ*
*121-Լիբանան 267 կէտ:*

## ՆԻՒ ԵՈՐՔԻ ՄԷՋ ԱՃՈՒՐԴԻ ՀԱՆՈՒԱԾ ԵՆ ՀԱՅԿԱԿԱՆ ՁԵՌԱԳԻՐ ՄԱՏԵԱՆՆԵՐ

*Աշխարհի երրորդ մեծագոյն աճուրդի տունը հանդիսացող «Heritage Auctions»-ը Հոկտեմբեր 17-ին վաճառքի կը հանէր հայկական եզակի ձեռագիր մատեաններ ու տպագիր հատորներ Նիւ Եորքի մէջ:*

*Ձեռագիրներէն մէկը մագաղաթի վրայ մանրանկարչութեամբ զարդարուն 1659-ի աւետարան մըն է (637 էջ), ընդօրինակուած Գանձակի Գրիգոր Վարդապետի կողմէ: Աւետարանին վերջնական արժէքը, աճուրդի կազմակերպիչներուն կարծիքով, կրնայ հասնիլ մինչեւ 25 հազար տոլարի:*

*Միւս ձեռագիրը 16-րդ դարուն (1584) ընդօրինակուած 571 էջնոց աւետարան մըն է՝ կազմուած Յովհաննէս Վարդապետի կողմէ: Աւետարանի էջերէն 15-ը զարդարուած են Ներսէս անուն հոգեւորականի մը մանրանկարներով: Աճուրդի տան հաղորդագրութեան մէջ կը նշուի, որ աշխատանքը կատարուած է Բարձր Հայքի Խնդրակատար Ս. Աստուածածին վանքին մէջ: Այս Աւետարանին սկզբնական գինը աւելի քան 20 հազար տոլար է:*

*Այլ անթուակիր ձեռագիր մը գրուած է «Բոլորգիր» տառատեսակով՝ Բարսեղ անունով գրիչի մը կողմէ:*

4

## ՊԵՊՕ ՍԻՄՈՆԵԱՆ ՊԱՐԳԵՒԱՏՐՈՒԱԾ՝ «ՄՈՎՍԷՍ ԽՈՐԵՆԱՑԻ»Ի ԱՆՈՒԱՆ ԱՌԱՋՆԱԿԱՐԳ ՄՐՑԱՆԱԿՈՎ

*Յատուկ գոհունակութեամբ կը տեղեկացնենք, որ «Արարատ» օրաթերթի տարիներու աշխատակից եւ խմբագրական կազմի անդամներէն գրագէտ Պեպօ Սիմոնեան արժանացած է Հայաստանի նախագահական «Մովսէս Խորենացի»ի անուան մրցանակին:*

*Արդարեւ, Պեպօ Սիմոնեան տէր է գրական, ստեղծագործական, մշակութային, հասարակական եւ կրթական երկարամեայ վաստակի:*

*«Զահակիր»ի տնօրէնութիւնն ու խմբագրութիւնը ջերմօրէն կը շնորհաւորեն պարգեւատրեալը:*

1 

## ՄԻ՛ ՀԵԳՆԷՔ ՄԵՐ ՆԱՀԱՏԱԿՆԵՐԸ

Այլապէս՝ ինչո՞ւ եւ ինչէ՞ մղուած եգիպտացիք 98 տարիներ ետք պիտի յիշէին մեր նահատակները: Մանաւանդ որ նախապէս Անգարա-Գահիրէ յարաբերութիւնները եղած են ջերմ ու սիրալիր:

Դժբախտաբար, այս յանկերգը նորութիւն մը չէ, այլ յաճախ կրկնուող երեւոյթ, որ հայկական կողմէն փոխանակ ստանալու խիստ հակազդեցութիւն, արժանանայ մեր արդար ցասումին եւ զգուշացման, ցաւ ի սիրտ՝ ոմանք կը հրճուին եւ կը ցնծան:

1987-ի Յունիսին նոյնը չեղա՞ւ, երբ Եւրոխորհրդարանը կ'ուզէր խոչընդոտել Թուրքիոյ անդամակցութիւնը Եւրոպային, հրապարակ նետեց ցեղասպանութեան օրակարգը: Եթէ եւրոպացիք այդքա՜ն հայասէր են ու ցեղասպանութեան ճանաչումով շահագրգիռ՝ թող փոխհատուցում պարտադրեն Թուրքիոյ: Ֆրանսայի պարագան ալ նոյնը չէ՞ միթէ. երբ Փարիզ քաղաքական կամ տնտեսական ինչ որ տարակարծութեան մէջ գտնուի Անգարայի հետ, պատժիչ գաւազանի նման կը ճօճէ Հայոց Ցեղասպանութեան հարցը: Ֆրանսա եթէ այդքա՜ն մտահոգ է Թուրքիոյ Հայոց Ցեղասպանութեան ճանաչմամբ, թող նախ իր մեղքը քաւէ հայկական Կիլիկիոյ սադրանքին եւ Թուրքիոյ նուիրելու առնչութեամբ: Իսրայէլի պարագան ալ համարեա կրկնօրինակն է միւսներուն. Թուրքիա-Իսրայէլ տասնամեակներու զինակիցներ, երբ յայտնուին տարակարծութեան մը մէջ, Քնեսեթի օրակարգին կը դրուի մեր նահատակներուն սուրբ յիշատակը:

Մինչեւ հիմա կը զարմանամ ամերիկահայ մեր եղբայրներուն եւ քոյրերուն վրայ, որոնք ամէն տարի Ապրիլ 24-ին ականկառոյց կը սպասեն թէ ԱՄՆ-ի նախագահը «ցեղասպանութիւն» բառը պիտի գործածէ՞ թէ ոչ: Անոնք յուսախաբ ըլլալէ ալ չեն ձանձրանար: Ճ. Պուշէն ետք անոնք յոյս դրին Պարաք Օպամային վրայ, որ նոյնպէս կը շրջանցէ այդ եզրը: Քարոզչական, քաղաքական, հոգեբանական մեծ ջանքեր թափելէ ետք, Օպաման դարձեալ չսպրդեցուց «ցեղասպանութիւն» բառը: Ինչպիսի՜ ողբերգութեան կը վերածեն հերթական հիասթափութիւնը: Բայց ինչո՞ւ անոնք այնքա՜ն միամտօրէն կը մօտենան հարցին, երբ ԱՄՆ-Թուրքիա զինակցութիւնը կ'երկարի տասնամեակներու վրայ: Ինչո՞ւ կ'անգիտանան որ Ցուրտ Պատերազմի ողջ ընթացքին ԱՄՆ-ը զօրակցեցաւ, զինեց եւ պահպանեց Թուրքիան: Եւ սպասենք որ թխամորթ նախագահ մը ցեղասպանութիւն ըսէ կամ ոչ, երբ փաստը կայ, եղելութիւնը յստակ է բոլորին: Միթէ՞ ան պիտի որոշէ մեր նահատակներուն ինչպիսի՞ զոհեր ըլլալու հանգամանքը: ԱՄՆ-ի նախագահներուն չափն ու կշիռը որքա՜ն փոքր է մեր նուիրական նահատակներուն ոսկրտիքներուն եւ աղաղակող ցաւին դիմաց...:

Մենք ցեղասպանութիւն բառը չենք մուրար ասկէ կամ անկէ: Մենք արդարութիւն կը պահանջենք. մենք մեր զոհերուն անմեղ արեան վարձահատոյց քայլերն ու իրաւունքը կը պահանջենք. ցեղասպանութեան համամարդկային ողբերգութիւն ըլլալու ճանաչումն ու փոխհատուցման միջոցները կ'ուզենք տեսնել. եւ ոչ թէ մեր նահատակներուն այս կամ այն երկրին, այս կամ այն անձին կողմէ օգտագործումը կ'ուզենք տեսնել. քանզի՝ սա հեգնանք է մեր նահատակներուն:

Եթէ ցեղասպանութեան ճանաչումը պիտի ըլլայ քաղաքական շիլ հաշիւներէ մղուած, եթէ այդ պիտի ըլլայ Թուրքիոյ ճնշելու կամ Թուրքիան անհանգստացնելու համար, ապա թքած ունինք մեր սրբութիւն սրբոց նահատակները հեգնող եւ քաղաքական մտամարզանք կատարող խաբեբաներու վրայ:

Ողջ ազգութեամբ ցասումնալից կերպով պարտինք բարկանալ՝ մի՛ հեգնէք մեր նահատակները դիմակաւոր հայասէրներ:

*«ԱՐԱՐԱՏ»* **ԱՒԵՏԻՍ ՌԱԶՄԻԿ**

# ԱՆՈՒԱՆԻ ՄՇԱԿՈՒԹԱԲԱՆ-ՄԱՏԵՆԱԳԷՏ ՅՈՎՍԷՓ ՆԱԼՊԱՆՏԵԱՆԻ ՀԵՐԹԱԿԱՆ ԱՆԱԿՆԿԱԼԸ

Ինչպէս միշտ, մի անգամ եւս վաստակաշատ մշակութաբան-մատենագէտ, թարգմանիչ եւ հրապարակախօս Յովսէփ Նալպանտեանը հերթական անակնկալն է մատուցել հայ գրասէր հանրութեանը: Թիկունքում ունենալով վիթխարի հանրագիտական փորձ, նա իր տասնեակ գիրքերին գումարել է եւս մէկը «Մեսրոպ Մաշտոց Մեծասքանչը» (Լոս Անճելըս, 2013, 687 էջ), ես կասէի, կոթողային եւ իւրայատուկ ուսումնասիրութիւնը: Արտաքուստ կարող է թուալ, թէ նա կազմել եւ խմբագրել է ինչպէս արեւմտահայ, այնպէս էլ արեւելահայ բանաստեղծների, գրողների, գիտնականների աչքի ընկած երկերից հատուածներ՝ նուիրուած Մեծն Մաշտոցին եւ մեր ոսկեղնիկին:

Իրականում Յովսէփը հսկայական ջանքեր է գործադրել, ճաշակով ընտրել է 334 յայտնի գրողների այն երկերը, որոնք ոչ թէ սովորական նուիրում են մաշտոցեան հանճարեղ գործին, այլեւ խոնարհում արդէն հազարամեակներ գործող եւ իր կատարելութեան պատճառով փոփոխութեան չենթարկուող հայոց այբուբենին: Առաւել կարեւոր է, որ Յովսէփը ճիշդ ժամանակին է մատը դրել կենսական զարկերակի վրայ, այսինքն՝ զգալով ժամանակի շունչը, իր տքնաջան աշխատանքով ասպարէզ է բերել հերթական ազգանուէր գիրքը: Իրօք, այսօր երախտապարտ հայ ժողովուրդը իր յարգանքի տուրքն է մատուցում սքանչելագոյն Մեսրոպ Մաշտոցի ծննդեան 1650-ամեակին՝ սրտի խորքում փայփայելով իր հեռահար իղձերը՝ ազգահաւաքութեան միջոցով փրկել դեռեւս իրենց հայ համարող սերունդներին ուծացումից: Առաւել եւս, որ Յովսէփը հրատարակել է սոյն արժէքաւոր գիրքը ոչ միայն նկատի ունենալով Մաշտոցի յոբելեանը, այլեւ հայ գրատպութեան 500-ամեակը: Յովսէփը այս գրքով մեծ նպաստ է բերում նշուած յոբելեաններին: Չէ՞ որ, ինչպէս Պ. Սեւակն է ընդգծել, հայը ոչ միայն չի ուշացել պատմութեան ընթացքից, այլեւ ձգտել է բազում ազգերի մէջ լինել առաջինը: Գերմանացի Կիւթենպերկի ստեղծած առաջին տպագրական մեքենայի գիւտը դեռեւս նոր էր ճանաչում գտնում, երբ Յակոբ Մեղապարտը 1512 թ. Վենետիկում տպագրեց իր յայտնի «Ուրբաթագիրքը», «Աղթարքը» եւ այլն: Գուցէ այս առիթով նշեմ, որ իտալացի յայտնի ճարտարապետ, Միլանի համալսարանի ամբիոնի վարիչ Ալպագօ Նովելլայի (ինքս Արմէն Զարեանի միջնորդութեամբ զրուցել եմ նրա հետ) գտնում էր, որ Մեղապարտը ոչ միայն հայերէն, այլեւ իտալերէն լեզուով գիրքեր է տպագրել դեռեւս 1438 թուականին: Անշուշտ, սա մեր հպարտութիւնն է:

Վերադառնանք Յովսէփի հրաշալի հատորին: Ուշագրաւ է, որ Յովսէփն այնքան ասելու բան ունի, որ նրա ուսումնասիրութիւնները ստացւում են շղթայական եւ հեռանկարային: Թւում է՝ ծով գրականութիւն կայ Մաշտոցի եւ մեր լեզուի մասին: Սակայն Յովսէփը նրբաճաշակութիւն է հանդէս բերել ստեղծագործութիւններն ընտրելու խնդրում: Ի դէպ, նա իր խոնարհումն է բերում նաեւ այն երախտաւորներին, ովքեր իրենից առաջ նման գիրքեր են կազմել. Գուրգէն Յովնան, Մաթիկ Էպլիղաթեան, Րաֆֆի Պէրպէրեան, Սարգիս Կիրակոսեան, Լեւոն Անեանեան: Նշենք նաեւ, որ 2012 թուականին իր կազմած եւ խմբագրած «Հայոց լեզու» գիրքի 377 էջերը ամբողջութեամբ ներառել է սոյն հատորում: Սրանց զուգահեռ նա երախտագիտութեամբ է նշում տասնեակ աղբիւրներ, որոնցից օգտուել է: Սա ինքնին մեծ սէր է հայ մշակոյթի երախտաւոր գործիչների նկատմամբ:

Գիրքի երկրորդ հատուածում տպագրուած նիւթերով, վկայութիւններով, յօդուածներով, տարբեր գրողների ու գիտնականների գիրքերից վերցրած նպատակամէտ հատուածներով Յովսէփը մի անգամ եւս ապացուցում է, որ ոչ միայն չի հրաժարուել փաստերի նկատմամբ խորազնին մօտեցումներից, այլեւ որ այս անգամ էլ ամէն ինչ ընթերցողին մատուցում է հանրագիտական նպատակաղմամբ ու չափանիշներով: Այդ են վկայում գիրքի բաժինները. «Հայերը հայերէն լեզուի մասին» (արձակ էջ 412-614), «Օտարները հայերէն լեզուի մասին» (բանաստեղծութիւն, արձակ, էջ 615-629), «Վկայութիւններ» (գրախօսութիւն, էջ 630-662):

Եթէ 412-604 էջերում անուանի պատմաբանների, ազգագրագէտների, գրագէտների եւ այլոց ուշագրաւ մտքերն են հայոց լեզուի մասին, ապա դրանց յաջորդող էջերում Յովսէփն ընտրել է անուանի լեզուաբանների, գրողների, գիտնականների հայոց լեզուին նուիրուած շռայլ ու կողմնորոշիչ մտքերը, որոնք ընթերցողի մէջ ազգային հպարտութեան եւ արժանապատուութեան զգացումներ են արթնացնում:

Իսկ իր խմբագրած եւ կազմած թէ «Հայոց լեզու» հատորը, եւ թէ այլ գրքերու մասին մամուլում լոյս տեսած գրախօսութիւնները այս հանրագիտական գրքում տեղադրելը ամենեւին էլ իր գիրքերի ինքնագովազդը չէ, այլեւ անուանի գործիչների եւ գիտնականների նախանձախնդիր մօտեցումը նշուած գիրքերի վերաբերեալ, ինչը, մի կողմից այդ գիրքերի արժեւորման փաստերն են ներկայացնում, միւս կողմից, ապացուցում, որ այդ գիրքերու վրայ հեղինակը տքնաջան աշխատանք է ներդրել (ժողովրդական լեզուով ասած՝ «տաշած քարը գետնին չի մնայ»), եւ որ այդ կարծիքները ե՛ւ Յովսէփ Նալպանտեանի աշխատանքներն են գնահատում, ե՛ւ ձեւաւորում ազգային ինքնագիտակցութիւն՝ անձնուիրաբար սիրելու եւ պահպանելու մեր մեծասքանչը, հազարամեակների ճանապարհի կտրած ադամանդակուռ հայոց լեզուն: Իսկ այդ բոլոր կարծիքները, վկայութիւնները յստակ կողմնորոշում են հայոց լեզուի նուիրեալներին, եւ որ այս հիմնախնդիրը միշտ էլ արդիական նշանակութիւն ունի:

413 էջից սկսած հեռահար ու նպատակային հատուածներ են ընտրուած Մաշտոցի վարքագիր Կորիւնից, Ղազար Փարպեցու «Հայոց պատմութիւնից», հատուած «Յայսմաւուրքից», ապա հետեւում են Խ. Աբովեանի, Մ. Նալպանտեանի, Եղիշէ Արք. Դուրեանի, Արշակ Չօպանեանի, Դ. Վարուժանի, Վազգէն Շուշանեանի, Ա. Ահարոնեանի, Գ. Զօհրապի, Ա. Իսահակեանի, Ինտրայի, Ռ. Զարեանի, Լէօյի, Ն. Աղբալեանի, Թէոդիկի, Համաստեղի, Հր. Աճառեանի, Մուշեղ Իշխանի, Մ. Աբեղեանի, Պ. Սեւակի, Ռ. Հատտէճեանի, Ռ. Իշխանեանի, Էդ. Աղայեանի եւ այլ նշանաւոր մեծ հայորդիների ազդու, ծանրակշիռ մտքերը՝ նուիրուած եւ հայոց լեզուին, եւ մեծագոյն հայ Մեսրոպ Մաշտոցի ազգանուէր գործունէութեանը:

Յատկանշական է ու օրինակելի Յովսէփ Նալպանտեանի կենսագրութեան բաժնում (էջ 663-664) կարդալ հետեւեալը. «Չափազանց մտահոգուած հայ գիրքերու տարածման հարցով, ընթերցանութեան զարգացման խնդիրներով, իր եւ կնոջ անունով 2005-2012 թուականներուն, Սփիւռքի, Հայաստանի եւ Արցախի տարածքին գործող 1762 ամէնօրեայ դպրոցներուն, բարձրագոյն կրթական հաստատութիւններուն եւ շաբաթօրեայ վարժարաններուն, բազմաթիւ գրադարաններուն, գրողներուն եւ մանկավարժներուն կը նուիրէ աւելի քան 5540 գիրք»: Նաեւ հովանաւորների միջոցով ուղարկել է հազարաւոր գիրքեր ամէնօրեայ եւ շաբաթօրեայ հայկական դպրոցներին:

Իսկ իր անհատնում սէրն ու երախտիքը Մեսրոպ Մաշտոցի նկատմամբ յայտնում է հետեւեալ տողերում, Երկու ուխտ (էջ 5).

**Մեսրոպ Մաշտոց**

Դուն Արեւի պէս շողարձակ,
անվատնելի եւ հրավառ,
Դուն Էվէրէստի գագաթին նման
բարձրաբերձ եւ հզօր,
Դուն Խաղաղական ովկիանոսի պէս
հուժկու եւ խորունկ,
Դուն Ամազոնի նման վսեմ, ջրառատ
եւ յուռթի,
Դուն հրաշագործ ոսկեղնիկ տառեր
պարգեւող,
Դուն իմաստաշատ ուսուցչապետ
դպրութեան եւ լոյսի գագաթ,
Դուն հայութեան ինքնութիւն շնորհած
յաւերժական աղբիւր,
Դուն լուսաշող, գիտարար, պանծալի,
գթասիրտ ու մտածող,
Դուն մեր հոգու կերտիչ, յաղթերգ
պանծալի, մտքի դարբին,
Դուն արժանի բոլոր փառքերով
գովաբանութեան,
Դուն Մեծասքանչ, Մեծագոյն **ՀԱՅ**,
մեր երկրորդ Աստուած,
Հրակէզ ողջոյն քեզ, յաւերժ պաշտելի՛,
անկրկնելի Մաշտո՛ց:

**Ամփոփենք**: Յովսէփ Նալպանտեանը շարունակում է իր ոսկեբեղուն ծիրը հայրենի անդաստանում եւ ուրախացնում բոլորիս իր նորօրեայ նուաճումներով: Հազար ապրես:

Վարձքդ կատար, վաստակդ արդար, Յովսէփ, եւ թող բեղուն լինի «ցորեանի ծովերի» հունձքդ:

**Ռոմանոս Սահակեան**
Բանաստեղծ, Մշակութաբանութեան
Փրոֆէսոր,
*31 Յուլիս, 2013, ի քաղաքամայր Երեւան*

## ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ԽՈՀԵՐ

# ՕՏԱՐԸ

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

*Մեր* մշակոյթը ներկայացնենք *օտարին*, *մեր* տաղանդը ծանօթացնենք *օտարին*, բայց *մեր* զաւակները չամուսնացնենք *օտարի* հետ: Երկու «օտար», մէկը՝ լաւ, միւսը՝ վատ: Լաւ օտարը այն է՝ որ հեռաւորութիւն ու տարածութիւն մը կը պահէ *մեր*ին եւ *օտար*ին միջեւ, վատ օտարը այն է՝ որ կը ջնջէ այդ տարածութիւնը:

Ո՞վ է այս լաւ օտարը՝ որուն կ'ուզենք ներկայանալ: Հայերուն օտարացած ե՞սն է (alienated self) արդեօք: Անկասկած, անիկա «միջազգային» կոչուած ուժի կեդրոններուն խտացումն է՝ ԱՄՆ, Ֆրանսա, Ռուսաստան, եւլն.: Ջենք մտահոգուած, օրինակ, *մեզի* ծանօթացնել մոզամպիքցիներուն կամ փաքիսթանցիներուն, քանի որ անոնք ոչ թէ ուժային կեդրոններ են «միջազգային համայնք»-ին համար, այլ՝ ուժային խաղաթուղթերու ենթականեր, նոյնիսկ ի հարկին՝ Նոամ Չոմսքիի ոչ-մարդիկը (no-peoples): Իսկ ենթակաները մեզի չեն հետաքրքրեր, մինչդեռ *մենք* ենթակայ ըլլալու միտումներ ցոյց կու տանք:

Առնչուելով ուժային կեդրոններուն հետ, մենք այնտեղ կը ստեղծենք պահեր (անցաւոր), կէտեր (ոչ տարածութիւններ) ու դէպքեր (ոչ իրադարձութիւններ): Օրինակ, *Անուշ* օփերայի բեմադրութիւնները Տիթրոյթի (1981 եւ 2001) եւ Մարսէյի (1988) մէջ, կամ *Արշակ Բ.* օփերայի բեմադրութիւնը Սան Ֆրանսիսքոյի մէջ (2001)՝ բոլորն ալ տեղի ունեցած «աշխարհի լաւագոյն», «աշխարհի խոշորագոյն», «մեծահռչակ» օփերայի թատրոններու մէջ, բացառիկօրէն լաւի կամ բացառիկօրէն վատի սահմաններէն անդին չէին կրնար անցնիլ: Անոնք իրաւունք անգամ չունէին մօտենալու *Aida*-ի կամ *Tosca*-ի դրութեան, այսինքն՝ դառնալ ներքնականացուած (interiorized) գիտելիք այդ տարածութիւններուն համար: Ինչո՞ւ: Որովհետեւ *օտարը* որոշեց (բարեհաճութեամբ, հայկական լոպպիներու ազդեցութեամբ կամ որեւէ այլ պատճառով) բեմադրել այդ օփերաները, *օտարի* հովանաւորութեամբ, *օտարի* հսկողութեամբ եւ *օտարի* կարգադրութեամբ, ի դէմս մեզի՝ որ նպատակ ունեցանք *մեր* մշակոյթը ծանօթացնել կամ ծախել *օտարին*: Յստակօրէն բաժնուած երկու Այլեր (Other) (*մենք*՝ իբրեւ օտարին Այլը, *օտարը*՝ իբրեւ մեր Այլը): *Անուշ*ի եւ *Արշակ Բ.*ի նման բազմաթիւ օրինակներ կարելի է թուել:

Այլընտրանքային մօտեցում մը նախ եւ առաջ պիտի սկսի մեզմէ՝ մասնաւորապէս վերացնելով կամ նուազագոյնին հասցնելով «օտար»-ի գաղափարը: Այսինքն՝ կատարելով ու գործադրելով «մեր» գիտելիքային պաշարը իբրեւ այդպիսին՝ *իր* (գիտելիքի) իմաստային բովանդակութեամբ (կամ բովանդակային չերտերով), առանց «օտար»-ի վերադիր պարտադրանքին եւ արտագիտելիքային յաւելագրութեան: Ասոր համար անխուսափելի է հեռանալ ուժի կեդրոններէն (աշխարհի լաւագոյն օփերայի թատրոններ, եւլն.) եւ մօտենալ ժողովրդային ընկալողական տարածութիւններու: Մէկ «մեծ» ներկայացման փոխարէն կատարել անթիւ «ոչ-մեծ» ներկայացումներ՝ տարբեր վայրերու մէջ, տարբեր մակարդակներով եւ գիտելիքային-կատարողական բազմազան ու տարբերակուած լուծումներով ու մօտեցումներով: Ուժի կեդրոնները չեն տարածեր գիտելիքը, անոնք կամ կ'ընդունին արդէն տարածուածը (*Aida*-ն ու *Tosca*-ն ուժի կեդրոններուն արտադրանքը չեն), եւ կամ կը ձգտին իրենք իրենց թուանշան մը աւելցնել Այլերու գիտելիքին մէկ կէտը ընդունած ըլլալնուն համար:

*Անուշ*ի եւ *Արշակ Բ.*ի մասին շատ բան գրեց «միջազգային» մամուլը՝ թէ՛ լաւ, թէ՛ վատ, թէ՛ բացառիկօրէն լաւ, թէ՛ բացառիկօրէն վատ, որմէ ետք նոյն այդ մամուլը մոռցաւ իր գրածը: Այդ գրութիւններուն մէջ վատ քննադատութիւնը կը մնար հանգստաւէտօրէն վատ՝ այնտեղ դիւրութեամբ կարելի էր ընթերցել գրողի մտածելակերպին ուղղակի նպատակները: Վտանգաւորը լաւն էր: Մեծ մասամբ անգիտակցաբար օգտագործուած բառերն ու արտայայտութիւնները միշտ տարածութիւն մը կը պահէին *իրենց* եւ *մեր* արուեստներուն միջեւ, ինչպէս՝ էթնիք (ethnic) եւ տարաշխարհիկ (exotic) բառերը: Էթնիք տարրերու գոյութիւնը կամ էթնիք երաժշտութիւնը «արեւմուտք»-ին համար կը ներկայանայ իբրեւ Այլի երաժշտութիւն: «Արեւմուտք»-ի հնարած էթնօ-երաժշտագիտութիւնը (ethnomusicology) կ'առընչուի բացառապէս ոչ-իրենց ֆոլքլորով: Իսկ տարաշխարհիկը գոյութիւն կրնայ ունենալ միայն հեռուն: Ան կը ներկայացնէ մտացածին ու անմատչելի գեղեցկութեան աշխարհ մը, որ կրնայ գործել միայն «արեւմուտք»-ի երեւակայութեան մէջ, ինչպէս դիտել պիտի տար Արեւելապաշտութեան (Orientalism) քննադատ Էտուարտ Սայիտ: *Մեր* գիտելիքը պէտք չէ անցնէր պահու, կէտի եւ դէպքի սահմանները, եւ մենք պէտք էր ուրախանայինք այս սահմանով: «Օտար»-ին համար վտանգը կը սկսի՝ երբ չըջանցուին այս սահմանները:

Հրանդ Տինքին սպաննեցին ո՛չ թէ որովհետեւ ցեղասպանութեան պահաջատէր մըն էր կաշառակեր (corrupted) իշխանութիւններէն (ըլլան անոնք Թուրքիոյ, Ֆրանսայի կամ ԱՄՆ-ի), այլ պարզապէս որովհետեւ յաջողեցաւ անցնիլ յիշեալ սահմանները՝ ցեղասպանութեան գիտելիքային բովանդակութիւնը փորձելով դարձնել գործադրողի (Թուրքի) ինքնութեան եւ յիշողութեան կենդանի մասը, առանց բախումնային բարձրախօսութիւններու: Իշխանութիւններէն պահանջէ՛ որքան կ'ուզես, բայց չդպչիս

➪ 4

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ՃԱՏՐԱԿ

## ԼԵՒՈՆ ԱՐՈՆԵԱՆԸ՝ «ՄԵԾ ՍԱՂԱՒԱՐՏ»Ի ԵԶՐԱՓԱԿԻՉ ՄՐՑԱՇԱՐԻ ՅԱՂԹՈՂ



*Սպանիայի Պիլպաօ քաղաքում ընթացող շախմատային «Մեծ Սաղաւարտ»ի եզրափակիչ մրցաշարի վերջին՝ 6-րդ տուրում Լեւոն Արոնեանը սպիտակներով մրցեց ատրպէյճանցի Շաքրիար Մամեդիարովի հետ: Պարտիան 38-րդ քայլում աւարտուեց ոչ ոքի: Լեւոն Արոնեանը վաստակեց 10 միաւոր եւ անհասանելի դարձաւ վերջին տուրից առաջ 6 միաւորով երկրորդ տեղում ընթացող անգլիացի Մայքըլ Ադամսի համար, որը խաղում էր ֆրանսիացի Մաքսիմ Վաշիէ-Լագրաւի հետ: Մամեդիարովը մրցաշարն աւարտեց 5 միաւորով:*

*«Մեծ Սաղաւարտ» եզրափակիչ մրցաշարում յաղթանակի համար տրւում է 3 միաւոր, ոչ ոքիի համար՝ 1 միաւոր:*

### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Այսու կը ծանուցանենք եգիպտահայ յարգոյ մեր հասարակութեան, որ Առաջնորդարանին մօտ տրամադրելի են արեւմտահայերէն «Նոր Կտակարան»-ներ:

Փափաքողները, ունենալու համար, կրնան դիմել Ազգային Առաջնորդարան:

Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ

ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ԽՈՀԵՐ

## ՕՏԱՐԸ

3 ⇨

ժողովուրդին: Ժողովուրդը երբ չարժի *իր* որոշումով՝ իշխանութիւնը կը դադրի իշխելէ:

Ցեղասպանութեան ճանաչում կը պահանջենք ԱՄՆ-էն՝ որ բնաջնջած է իր բնիկ ժողովուրդին (նախա-ամերիկեան բնակիչներուն) 90 տոկոսը, կամ Ֆրանսայէն՝ որուն խեղկատակութիւնները հայկական Կիլիկիայի մասին քաջ յայտնի է բոլորին եւ որ ինքը բնաջնջած է Ալժերիի ժողովուրդէն նշանակալի զանգուած մը: Իսկ իրաւունք ունի՞նք արդեօք կացութիւնը շրջել: Ինչո՞ւ անբնական պիտի թուի նոյնիսկ մտածել՝ որ Հայաստանի Խորհրդարանը ընդունի, օրինակ, Ռուանտայի ցեղասպանութիւնը: Որո՞ւն տրուած է ընդունելու իրաւունքը եւ ո՞վ է ընդունուողը: Ընդունողը ուժեղն է, իսկ ընդունուողը՝ նուազ ուժով ենթական: Եւ այս է «ուժեղ»-ին ցանկութիւնը: Ան ընդունած ըլլալով իր Այլի մէկ կէտը, ցոյց տուած կ'ըլլայ ընդունելու կամ չընդունելու իր կարողութիւն-առաւելութիւնը: *Ինք*ն է որոշողը:

Բաւարար չէ՞ Զապէլ Եսայեանի (Ատանայի կոտորածները), Յակոբ Օշականի, Զարեհ Որբունիի, Հրանդ Տինքի, Արա Սարաֆեանի, Մարք Նշանեանի, Սերժ Աւետիքեանի, Էլիֆ Շաֆաքի, Հրանդ Տինքի Յիշատակի Աշխատաժողովի (Hrant Dink Memorial Workshop) մասնակցողներուն եւ բազմաթիւ նմաններու գրական, գրականագիտական, փիլիսոփայական ու շարժանկարային արտադրութիւնները՝ իրենց բովանդակած գիտելիքային անսահմանութեամբ հանդերձ (անսահման՝ քանի որ անոնց անծանօթ է ցեղասպանութեան գիտելիքային շարժումը կազմակերպող ու կաշկանդող դատարանական օրէնքներու կէտային դրութիւնը եւ իրադարձութիւններու տարակայացումը), յառաջացնելու ցեղասպանական պատմողականութիւն մը՝ բառիս դրական ու ստեղծագործական իմաստով:

Իրականութեան մէջ կա՞ն արդեօք ուժեղ եւ տկար կողմեր: Տկարը, կամ տկարին գաղափարը, ուժեղին հնարանքն է՝ յանուն երկուութեան «բարձր» կողմի ամրապնդման: Ինքնասահմանեալ ուժեղը իր գոյութեան համար պէտք ունի տկարին, առանց տկարին չկայ ուժեղը: Իսկ ուժը մտաւոր-բարոյական յատկութիւն մը չէ, ան կու գայ բռնութեամբ եւ ազդեցութեամբ: Մտաւոր-բարոյական գիտելիքը պէտք չունի ուժի: Մենք՝ հայերս, պէտք ունի՞նք ձգտելու այդ ուժին, երբ «մեր» բանաւոր ու գրաւոր գիտելիքային համաստեղութիւնը կայ, կը գործէ ու կը գործադրուի: Գիտելիքի չարժունակութիւնը կու գայ ոչ թէ ազդեցութեամբ (ազդել օտարին վրայ, չազդուիլ ուրիշէն, ունենալ ազդեցիկ մշակոյթ) այլ ներթափանցումով եւ ներքին ու արտաքին ներդաշնակութեամբ: Ներթափանցում-ներդաշնակութեան միջոցով պահերը կրնան վերածուիլ ժամանակներու, կէտերը՝ տարածութիւններու, եւ դէպքերը՝ իրադարձութիւններու:

Բայց տակաւին *մեր* մշակոյթը *օտար*ին ներկայացնողը ունի առաւելութիւններ *մեր* մշակոյթը ստեղծողներէն...:

### ԱՊԱՔԻՆՈՒՄԻ ՄԱՂԹԱՆՔ

Կը տեղեկանանք որ եգիպտահայութեան ծանօթ եւ սիրուած դէմքերէն ու Եգիպտոսի «ՌԱԿ» Շրջանակի Պատուոյ ատենապետ՝ Տիար Նորայր Տէօվլէթեան, վերջերս երկրորդ վերահատումի մը ենթարկուած է եւ այժմ իր բնակարանը վերադառնալով, ապաքինման շրջան մը կը բոլորէ:

«Ջահակիր»ի Շրջանակը չուտափոյթ եւ կատարեալ ապաքինում կը մաղթէ սիրելի Նորայր Տէօվլէթեանին:

### ՍՏԱՑԱՆՔ

Շնորհակալութեամբ ստացանք Տոքթ. Սուրէն Ն. Պայրամեանի պատրաստած «Հայ մամուլն ու գրատպութիւնը Եգիպտոսի մէջ եւ հայ գրատպութեան 500-ամեակի (1512-2012) ոգեկոչումը Գահիրէի մէջ» գրքոյկը (Գահիրէ, Տպարան Նուպար, 2013, 48 էջ):

## ԵՐԵՒԱՆԸ՝ 2795...

1 ⇨

*Վարպետաց քաղաք, խեցեգործութիւն, գորգագործութիւն, ասեղնագործութիւն, փայտագործութիւն, Մարաթոնեան վազք 2795 մեթր (Մատենադարանէն՝ Հանրապետութեան հրապարակ), թատերական եւ կրկէսային ներկայացումներ (Հիւսիսային պողոտայ), «Ողջոյն աշխարհի ազգերից» խորագրով, Հայաստան բնակող ազգային փոքրամասնութիւններու էթնիկ համոյթներու կատարումներ:*

*Երեւանի մասին տեսահոլովակի նկարահանում, Երեւանեան բակային խաղերի մրցոյթներ, Ուինտսըրֆինկի ցուցադրական մրցումներ (Կարապի լիճ), Թարգմանչաց տօն, Հեծելարշաւ, Շախմատի մրցոյթ անուանի շախմատիստներու մասնակցութեամբ, էսթրատային համերգ եւ տխքոթէք, Ռոք համերգ, Ծազմենները Երեւանին, Դասական երաժշտութեան համերգ, Հեղինակային երգի հարթակ, «Իմ Սրտի ուղեկից» կալա-համերգ, «Իմ Սրտի ուղեկից» երիտասարդական տիսքոթէք (Հանրապետութեան հրապարակ):*

*Այս առթիւ տեղի ունեցած միջոցառումներու շրջագիծին մէջ, էրեբունի պատմա-հնագիտական արգելոց-թանգարանի շրջակայքը եւս տեղի ունեցան Երեւանի ծննդեան 2795-ամեակին նուիրուած միջոցառումներ: Կազմակերպուած գեղեցիկ ցուցահանդէսին զուգահեռ թանգարանին դիմաց հաստատուած բեմահարթակին վրայ իրենց գեղեցիկ կատարումներով ներկաները ու մայրաքաղաքի բազմահազար հիւրերը ողջունեցին վարչական շրջաններու գեղարուեստական խումբերը:*

*Նշենք որ հանդիսութիւնները արդէն իսկ սկսած էին նախօրէին՝ «Երեւանի մէջ տօն է» խորագիրը կրող համերգով:*

### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Կիրակի, 3 Նոյեմբեր 2013

**Չորեքտասաներորդ տարեդարձ օծման**

**Ն.Ս.Օ.Տ.Տ. ԳԱՐԵԳՆԻ ԵՐԿՐՈՐԴԻ**

Ծայրագոյն Պատրիարքի
եւ Սրբազնագոյն Կաթողիկոսի
Ամենայն Հայոց
Յաւարտ Սուրբ եւ Անմահ Պատարագի
պիտի կատարուի Հայրապետական մաղթանք

Սկիզբ Ս. Պատարագի առաւօտեան ժամը 10:00-ին

Երթ ու դարձը դիւրացնելու համար հաստատուած է հանրաշարժի սպասարկութիւն:

Սալահ Էլ-տին Հրապարակ (ծաղկավաճառին առջեւէն) ժամը 8:45-ին

Այծեմնիկ Հանգստեան Տան շէնքին առջեւէն ժամը 9:00-ին

Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ

## ՆԻՒ ԵՈՐՔԻ ՄԷՋ ԱՃՈՒՐԴԻ ՀԱՆՈՒԱԾ ԵՆ ՀԱՅԿԱԿԱՆ ՁԵՌԱԳԻՐ ՄԱՏԵԱՆՆԵՐ

2 ⇨

*Թուագրուած է 13-16-րդ դարերուն: Այս մէկը եւս կը գնահատուի աւելի քան 20 հազար տոլար:*

*Նշեալ երեքին պարագային աճուրդին մասնակցելու նուազագոյն գումարը 5000-6250 տոլարի միջեւ էր:*

*Աճուրդի դրուած են նաեւ Ամսթերտամի մէջ 1714-1715-ին տպուած 838 էջնոց «Գիրք Սաղմոսաց»էն օրինակ մը, «Խորհրդատետր Պատարագին Հայոց» (1677) հատորէն օրինակ մը, ինչպէս նաեւ՝ «Ժամագիրք» մը (մօտաւորապէս 1837) եւ Յովսէփ Էմինի կողմէ անգլերէնով գրուած ինքնակենսագրական գործէն օրինակ մը, որ Լոնտոնի մէջ լոյս տեսած է 1792-ին (640 էջ):*

## ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԳԻՏԱԺՈՂՈՎ «ԵԿԵՂԵՑԻ ԵՒ ՊԵՏՈՒԹԻՒՆ ՓՈԽՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐ, ՀՐԱՄԱՅԱԿԱՆՆԵՐ ԵՒ ՄԱՐՏԱՀՐԱՒԷՐՆԵՐ» ԹԵՄԱՅՈՎ

2 ⇨

գծով գործադիր քարտուղար), Եւրոպական կառոյցներում Կիպրոսի Ուղղափառ Եկեղեցու ներկայացուցիչ Հայր Նեկտարիուս Իոանիուն եւ Խօսէ Լուիս Բազան (Միգրացիայի գծով իրաւական խորհրդատու, Կաթոլիկ եպիսկոպոսների Եւրոպական յանձնաժողով):

«Եկեղեցի եւ պետութիւն փոխյարաբերութիւնները Հայաստանում. հնարաւորութիւններ եւ մարտահրաւէրներ» խորագրով չորրորդ նիստը սկսուեց ՀՀ Արդարադատութեան նախարարի առաջին տեղակալ Գրիգոր Մուրադեանի զեկոյցով: Այնուհետեւ բանախօսութիւններով հանդէս եկան նաեւ դոկտոր Թոմաս Սամուէլեանը (Հայաստանում Ամերիկեան համալսարանի իրաւաբանական ֆակուլտետի դեկան), Արտակ Զաքարեանը (ՀՀ ԱԺ Արտաքին հարցերով մշտական յանձնաժողովի նախագահ) եւ Տիգրան Մեսրոպեանը (ՀՀ Կառավարման ակադեմիայ, քաղաքագէտ):

Գիտաժողովի եզրափակիչ նիստի ընթացքում տեղի ունեցաւ քննարկում «Եկեղեցու դերը ՀՀ հասարակական կեանքում. մարտահրաւէրներ եւ հեռանկարներ» թեմայի շուրջ: Թեմայի քննարկման շրջանակներում անդրադարձ կատարուեց կրօնական փոքրամասնութիւնների հետ յարաբերութիւններին, համատեղ ջանքերով փորձառութիւնների, մօտեցումների եւ տեսակէտների փոխանակման անհրաժեշտութեանը, ինչպէս նաեւ Մայր Եկեղեցու իրաւունքները ոտնահարող գործընթացների կանխարգելմանը վերաբերող հարցերի:

Գիտաժողովի աւարտին Մայր Աթոռ Ս. Էջմիածնի Միջեկեղեցական յարաբերութիւնների բաժնի տնօրէն, Արթիկի թեմի առաջնորդ Տ. Յովակիմ եպիսկոպոս Մանուկեանը երախտագիտութիւն յայտնեց ներկաներին գիտաժողովին մասնակցութեան համար՝ ընդգծելով, որ նման միջոցառումները համատեղ փորձի փոխանակման միջոցով առաւել պիտի նպաստեն երկխօսութիւնների զօրացմանը: Դրական գնահատելով եւ ամփոփելով երկօրեայ գիտաժողովի արդիւնքները՝ մասնակիցները կարեւորեցին նման գիտաժողովների գումարման շարունակական լինելը:

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR

Armenian Weekly


P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com


Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1712 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 31 ՀՈԿՏԵՄԲԵՐ 2013 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٧١٢ الخميس ٣١ أكتوبر ٢٠١٣


ՀԱՅԱՍՏԱՆ

## ԵՐԵՒԱՆԻ ՄԷՋ ՅԱՐԳԱՆՔ՝ 27 ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ՆԱՀԱՏԱԿՆԵՐՈՒ ՅԻՇԱՏԱԿԻՆ



*«Արարատ» օրաթերթի Երեւանի թղթակիցը կը հաղորդէ, թէ Կիրակի օր Հայաստանի քաղաքական դաշտի տարբեր ներկայացուցիչներ յարգած են 27 Հոկտեմբեր 1999 թուականին ինկած զոհերուն յիշատակը: Այս առթիւ թերթին ներկայացուցիչը զրուցած է ընդդիմութեան դաշտի շարք մը գործիչներու եւ յատկապէս ՀԱԿ-ի փոխ-նախագահ Արամ Մանուկեանի եւ նահատակ սպարապետ Վազգէն Սարգսեանի եղբօր՝ Արամ Սարգսեանի հետ: Այս առթիւ յարգանքի իր տուրքը մատուցած է նաեւ ՀՀ առաջին նախագահ Լեւոն Տէր Պետրոսեան:*

*Արամ Մանուկեան պատասխանելով թղթակիցին հարցերուն ըսաւ. «Իմ կարծիքով, 27 Հոկտեմբերը ոչ միայն Հայաստանի, այլ՝ ամբողջ հայութեան համար մեծ ամօթ է: Այդ դէպքը Հայաստանի պետականութեան համար լուրջ կորուստ եւ մեծ ձախողում եղաւ: Իմ կարծիքով, այդ դէպքին շարունակութիւնը Մարտի 1-ի դէպքերը եղան»: Մանուկեան նաեւ աւելցուց, որ տխուր փաստ է որ 27 Հոկտեմբերի ցնցիչ դէպքը մինչեւ օրս չէ բացայայտուած ու այդ դէպքին իրական կազմակերպիչները կը գտնուին ազատութեան մէջ: Ան դիտել տուաւ, որ այդ զազրելի դէպքով ոչ միայն մեր ժողովուրդի ազնուագոյն զաւակները սպաննուեցան, այլ ՀՀ Ազգային Ժողովի շէնք մուտք գործող ոճրագործներուն ձեռքով սպաննուեցաւ Հայաստանի յոյսը, հաւատքն ու վստահութիւնը եւ յատկապէս զարգացումի հեռանկարն ու տեսիլքը: Անոր կարծիքով՝ 27 Հոկտեմբերը աղաբեկչութիւն էր ամբողջ երկրին, ժողովուրդին ու պետութեան նկատմամբ, եւ դէպքին չբացայայտուիլը դարձաւ դէպքէն աւելի վնասակար ու վտանգաւոր, ու վախ տարածեց ամբողջ երկրին մէջ: Արամ Մանուկեան իր խօսքը եզրակացնելով դիտել տուաւ, որ 27 Հոկտեմբերի ոճրային արարքին բացայայտումը կարելի կ'ըլլայ միայն իշխանափոխութեամբ: Աւարտին՝ Արամ Մանուկեան արձանագրեց այն տխուր փաստը, որ այս իշխանութիւնները մինչեւ օրս խուսափած են 27 Հոկտեմբերի զոհերուն յատկացուած յատուկ յուշակոթող մը կանգնեցնելու իրենց խոստումը կատարելէ:*

*Իր կարգին սպարապետ Վազգէն Սարգսեանի եղբայրը՝ Արամ Սարգսեան, որ Եռաբլուր այցելելով յարգանքի տուրք մատուցանեց 27 Հոկտեմբերի զոհերու յիշատակին, «Արարատ»ի թղթակիցին ըսաւ.*

*«Ինչ ալ ըլլան դրոյթները, ինծի համար անհանդուրժելի է այս իրավիճակը ու իմ մէջ ներքին կռիւ մը գոյութիւն ունի, այնքան ատեն որ 27 Հոկտեմբերի ոճրային արարքին իրական կազմակերպիչները չեն բացայայտուած»: Ան իր խօսքը շարունակելով ըսաւ. «Իմ կարծիքով Հայաստանի Հանրապետութեան պատմութիւնը կը բաժնուի երկու մասի: Առաջին շրջանը՝ մինչեւ 27 Հոկտեմբեր եւ երկրորդ հանգրուանը՝ 27 Հոկտեմբերէն ետք եկող շրջանը: Ճիշդ է, մինչեւ 27 Հոկտեմբեր Հայաստանի Հանրապետութիւնը որպէս նորանկախ պետութիւն կատարեալ չէր, ունէր լուրջ խնդիրներ, բայց այդ ժամանակ պետութեան ապագային հանդէպ ժողովուրդին մօտ ինչ որ յոյս կար, յոյս կար որ ինչ որ բան պիտի փոխուի ու պետութիւնը անպայման պիտի կայանայ: Այն ատեն,*

↳ 4

ԳԵՐՄԱՆԻԱ

## ԵՐԵՒԱՆ-ՊԵՌԼԻՆ ԿԱՊԵՐ



*Հայաստանի արտաքին գործոց նախարար Էտուարտ Նալպանտեան այցելեց Պեռլին, ուր տեսակցեցաւ իր գերմանացի պաշտօնակից Կիտօ Ուեսթըրուելլէի հետ:*

*Վերջինս ողջունեց Երեւանի հետ Գերմանիոյ գերազանց յարաբերութիւնները եւ ընդգծեց, որ համագործակցութիւնը կը գտնուի բարձր մակարդակի վրայ: Նալպանտեան գոհունակութիւն յայտնեց քաղաքական երկխօսութեան համար, որ վերջին տարիներուն ստացած է նոր թափ: Զրուցակիցները հաստատեցին, որ կապերը յառաջիկայ տարիներուն պիտի զարգանան: Նալպանտեան ներկայացուց ղարաբաղեան հակամարտութեան վերջին զարգացումները եւ բանակցութիւններու ուղեգիծը: Նախարարները անդրադարձան Հայաստան-Եւրոմիութիւն յարաբերութիւններուն եւ Վիլնիւսի գագաթնաժողովի քննարկումներուն:*

*Նալպանտեան տեսակցեցաւ նաեւ վարչապետ Անկելա Մըրքըլի արտաքին քաղաքականութեան եւ անվտանգութեան հարցերով խորհրդական Քրիստոֆ Հոյսկէնի հետ, քննարկելու համար Եւրոմիութեան հետ Երեւանի յարաբերութիւններու թղթածրարը:*

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՍԱՀՄԱՆԻ ՊԱՇՏՊԱՆՆԵՐՈՒՆ ՍՈՒՐԲ ԳՈՐԾ

*Հայաստանի վարչապետ Տիգրան Սարգսեան այցելեց Հայաստանի հիւսիս-արեւելեան սահմանային Տաւուշ մարզի Ոսկեպար գիւղ ուր յայտարարեց, թէ սահմաններու պահպանութեան սուրբ գործը միասին պէտք է կատարել: Սարգսեան մասնակցեցաւ համայնքի երկյարկանի կեդրոնի բացման հանդիսութեան:*

*«Դուք կ'ապրիք այնպիսի տարածքի մէջ, ուր գոյութիւն ունի վտանգ: Մեր բանակին հետ միասին առաջին ճակատին վրայ կը գտնուիք: Դուք վստահ պէտք է ըլլաք, որ ձեր բոլոր հարցերը կը գտնուին մեր ուշադրութեան կեդրոնին: Պէտք է ըլլաք ամուր եւ մենք ձեր հետ միասին պիտի լուծենք մեր ժողովուրդը յուզող բոլոր հարցերը: Դուք հերոսներ էք», ըսաւ Սարգսեան, իր խօսքը ուղղելով Ոսկեպարի բնակիչներուն:*

## ՀԱԿԱՌԱԿՈՐԴԸ ՊԱՏԱՍԽԱՆ ՍՏԱՑԱՒ

*Հայաստանի պաշտպանութեան նախարար Սէյրան Օհանեան յայտարարեց, որ ատրպէյճանցիները ստացած են սահմանային խախտումներու արժանի եւ ծանր պատասխան: Օհանեանի համաձայն, ատրպէյճանական խախտումները միշտ կ'ընկերակցին քաղաքական զարգացումներուն:*

*Նախարարը խոստացաւ տուն վերադարձնել ատրպէյճանցիներուն մօտ գերի ինկած Յակոբ Ինճիղուլեանը: Խօսելով Մաքսային միութեան միանալու որոշումին մասին Օհանեան նշեց, որ իր տարածաշրջանին մէջ, Հայաստան այլ տեղ չունի երթալու:*

## ՌՈՒՍԵՐԸ ԿՐՆԱՆ ՄԻՋԱՄՏԵԼ

*Հաւաքական անվտանգութեան պայմանագրի կազմակերպութեան (ՀԱՊԿ) խորհրդարանական վեհաժողովի պաշտպանութեան եւ անվտանգութեան հարցերով յանձնախումբի անդամները երէկ այցելեցին հայ-ատրպէյճանական սահման: Անոնք ծանօթացան շփման գիծին վրայ տիրող կացութեան, զինուորներու ապրուստային վիճակին:*

*Նոյն ծիրին մէջ, Հայաստանի մէջ գործող ռուսական 102-րդ զօրամասի ղեկավար, գնդապետ Անտրէյ Ռուզինսքի յայտարարեց, որ եթէ Ատրպէյճան որոշէ զինուորական յարձակում գործել Արցախի վրայ, ապա իրենք կրնան միջամտել,*

↳ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՍՈՒՐԻԱՀԱՅԵՐՈՒ ՀՈՍՔԸ ՎԵՐՍԿՍԱԾ Է

*Հայաստանի Սփիւռքի նախարար Հրանուշ Յակոբեան յայտարարեց, որ վերսկսած է սուրիահայերու Հայաստան հոսքը:*

*Յակոբեանի համաձայն, շաբաթական դրութեամբ մօտ 200 սուրիահայ կը հասնի Հայաստան, ընդհանուր թիւը բարձրացնելով աւելի քան 10 հազարի: Նախարարին կարծիքով, հոսքի վերսկսումին գլխաւոր պատճառը՝ Հալէպ-Պէյրութ ցամաքային փոխադրութեան ուղիներու վերաբացումն է:*

*«Հայաստան ժամանած սուրիահայերէն շատ քիչերը կը տեղափոխուին երրորդ երկիր: Շատերը Հայաստանը կը նախընտրեն Լիբանանէն այն պատճառով, որ այստեղ ձրի կրթութիւն ստանալու հնարաւորութիւն ունին ու պետական աջակցութիւն կայ», ըսաւ Յակոբեան:*

*Այլ հարցով, նախարարը կարծիք յայտնեց, որ Սփիւռքահայերը Հայաստանի ու Արցախի անվտանգութիւնը կը դասեն ամէն բանէ վեր:*

*Խօսելով Մաքսային միութեան միանալու որոշումին մասին Յակոբեան դիտել տուաւ, որ եւրոպական եւ ամերիկեան վաճառականներու համար մեծ շուկայ կը բացուի դէպի ԱՊՀ երկիրներ՝ Հայաստանի միջոցաւ:*

## ՕԳՆՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ ՀՈՍՔ՝ ՍՈՒՐԻԱՀԱՅԵՐՈՒՆ

*Հայաստանի Սփիւռքի նախարար Հրանուշ Յակոբեան յայտարարեց, որ Հայաստան հաստատուած սուրիահայերու խնդիրներու լուծումին համար պիտի ապահովուին բարեգործական միջոցներ: «Աւստրիան 600 հազար եւրոյի օգնութիւն տրամադրեց, որուն միջոցաւ հագուստ, կօշիկ եւ տաք պարագաներ պիտի ապահովուին: ՄԱԿ-ի պարէնի ծրագրերուն միջոցաւ Ռուսիա կէս միլիոն տոլարի արժողութեամբ սնունդ պիտի բաժնէ սուրիահայերուն» ըսաւ նախարարը:*

*Անոր խօսքով, Երեւանի իշխանութիւնները ամէն ինչ կ'ընեն, սուրիահայերուն համար ապրելու յարմար*

↳ 4

ՋԱՀԱԿԻՐ

ԼԻԲԱՆԱՆ

# ՍԴՀԿ ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ ՀԱՆԴԻՊՈՒՄՆԵՐ

## Երեք Յարանուանութիւններու Հոգեւոր Պետերուն Հետ

*Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան Կուսակցութեան նորընտիր Կեդրոնական Վարչութիւնը ներկայացնող պատուիրակութիւն մը, գլխաւորութեամբ վարչութեան ատենապետ՝ Ընկ. Յակոբ Տիգրանեանին անցեալ Երկուշաբթի օր այցելեց Մեծի Տանն Կիլիկիոյ Արամ Ա. Կաթողիկոսին, Տանն Կիլիկիոյ Կաթողիկէ Հայոց՝ Ներսէս Պետրոս ԺԹ. Կաթողիկոս-պատրիարքին եւ Մերձաւոր Արեւելքի Հայ Աւետարանական եկեղեցիներու միութեան նախագահ՝ Վեր. Մկրտիչ Գարակէօզեանին, քննարկելու համար տեղական, շրջանային ու ազգային վերջին զարգացումները: Պատուիրակութեան մաս կազմեցին Կեդրոնական Վարչութեան փոխատենապետ պետական երեսփոխան Ընկ. Սեպուհ Գալփաքեան, Ընկ. Տոքթ. Եղիկ Ճէրէճեան եւ Ընկ. Շաւարշ Ակինեան, ընկերակցութեամբ ՍԴՀԿ Լիբանանի շրջանի Վարիչ Մարմնի ատենապետ՝ Ընկ. Ալեքսան Քէօշկէրեանի:*







*Կուսակցութեան պատուիրակութիւնը հոգեւոր պետերուն ներկայացուց Հայաստանի մէջ կայացած ՍԴՀԿ Ընդհանուր համագումարի արդիւնքները եւ ընտրուած վարչութեան անդամները: Հանդիպումներուն ընթացքին քննարկուեցան գլխաւոր երեք նիւթերը՝ Ցեղասպանութեան 100 ամեակի ոգեկոչումը, Հայաստանի իրավիճակը եւ սուրիահայութեան խնդիրները: Կուսակցութեան պատուիրակութիւնը շեշտեց Մեծ Եղեռնի յիշատակի ոգեկոչման ձեռնարկները կազմակերպուած միջոցներով մշակելու եւ համագործակցութեան վրայ հիմնուելու կարեւորութիւնը՝ հասնելու համար ցանկալի արդիւնքներու:*

*Խօսելով Հայաստանի կացութեան մասին, Կեդրոնական վարչութեան անդամ ընկերները արծարծեցին երկրի տնտեսական կացութիւնը, ժողովուրդին առջեւ ցցուած մարտահրաւէրները եւ զանոնք լուծելու միջոցները, հիմնուելով Հայաստան-Սփիւռք համագործակցութեան վրայ: Այն ինչ կը վերաբերի սուրիահայութեան խնդիրներուն, ապա զրուցակիցները համակարծիք էին սուրիահայ գաւակներուն օգնութիւններ փոխանցելու եւ գաղութը ամէն միջոցներով կանգուն պահելու անհրաժեշտութեան շուրջ: Հանդիպումներուն ընթացքին շեշտուեցաւ երեք յարանուանութիւններու ղեկավարութեան հետ համագործակցութիւնն ու խորհրդակցութիւնը շարունակելու կարեւորութիւնը:*

ՀԱՅԱՍՏԱՆ

# ՉԻՆԱՐԷՆԻ ՈՒՍՈՒՑՄԱՆ ԱՌԱՋԻՆ ԴԱՍԱՐԱՆ ԳԻՒՄՐԻԻ ՄԷՋ

*Գիւմրիի «Վահան Թեքէյեան» թիւ 2 դպրոցին մէջ պիտի սկսի գործել չինարէնի ուսուցման դասարան: Այդ նպատակով պայմանագիր ստորագրուած է դպրոցին եւ Երեւանի Պրիւսովի լեզուաբանական համալսարանին մէջ հինգ տարիներէ ի վեր գործող «Գոնֆիուշըս» հաստատութեան միջեւ:*

*Դասարանի բացման հանդիսաւոր արարողութիւնը կայացած է Հոկտեմբեր 7-ին եւ հոն կրնան յաճախել աշակերտներ, ուսանողներ եւ պարզապէս լեզուն սորվիլ փափաքող անձեր՝ առանց տարիքի սահմանափակումի:*

*Ուսուցումը վճարովի է, աշակերտներուն համար ամսական 10 հազար, ուսանողներուն՝ 12 հազար եւ քաղաքացիներուն՝ 15 հազար դրամ: Ներկայիս միայն եօթը աշակերտ արձանագրուած է, սակայն դպրոցի տնօրէնը վստահ է որ այդ թիւը պիտի աւելնայ:*

# ՆԱՐԵԿԱՑԻԻ ՁԵՌԱԳԻՐԸ ՇՈՒՏՈՎ ԿԸ ՀԱՍՆԻ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ



*eBay առցանց աճուրդին վաճառքի հանուած Նարեկացիի ձեռագիրը 10-15 օրէն կը հասնի Մատենադարան: Այս մասին PanArmenian.net թղթակիցին յայտնած է «Մատենադարան» Մաշտոցի անուան հին ձեռագրերու գիտահետազօտական ուսումնարանի տնօրէն Հրաչեայ Թամրազեան:*

*«Պայմանաւորուածութիւն կայ, ամենաուշը 10-15 օրից հանդիսաւոր միջոցառում կը լինի եւ այն կը փոխանցուի Մատենադարանին: Կարեւորն այն է, որ ձեռագիրը փրկուել է»,- ըսած է ան:*

*Նարեկացի ձեռագիրը գընած է Ռուսաստանի մէջ Comedy Club Production (CCP) ընկերութեան գլխաւոր սեփականատէր Արթուր Ջանիբեկեանը: Ինչպէս կը փոխանցէ «Հրապարակ» օրաթերթը, իմանալով, որ eBay-ի մէջ վաճառքի հանուած է Նարեկացիի ձեռագիրը, որուն մեկնարկային գինը սահմանուած էր 30,000 ԱՄՆ տոլար, Ջանիբեկեանը անմիջապէս կապուած է ձեռագիրի սեփականատէրերուն հետ ու համաձայնած դադրեցնել աճուրդը:*

# ՈՉ ԵՒՍ Է ԲԱՐԵՇ. ՕՆՆԻԿ ՍՐԿ. ԳԱԼՈՒՍՏԵԱՆ



*Սրտի խոր կսկիծով կը գուժենք Բարեշ. Օննիկ Սրկ. Գալուստեանի մահը, որ պատահեցաւ 3 Սեպտեմբեր 2013-ին, յետ երկարատեւ հիւանդութեան:*

*Ողբացեալին յուղարկաւորութիւնը տեղի ունեցաւ Ուրբաթ, 6 Սեպտեմբերին, Մոնթրէալի Ս. Գրիգոր Լուսաւորիչ Առաջնորդարանիստ Մայր Եկեղեցւոյ մէջ եւ մարմինը ամփոփուեցաւ Սէն Լորանի գերեզմանատան մէջ:*

*Այս տխուր առիթով, «Ջահակիր»ի Շրջանակը իր խորազգաց ցաւակցութիւններ կը յայտնէ Այրի Տիկին Էմմա Գալուստեանին եւ ընտանեկան հարազատներուն:*

## ԲԱՐԵՇ. ՕՆՆԻԿ ՍՐԿ. ԳԱԼՈՒՍՏԵԱՆ (1931-2013)

Ծնած է 1931-ին, Աղեքսանդրիա (Եգիպտոս): Նախապատրաստական ուսումը ստացած է Կիզէի Հայկազեան կրթարանին մէջ: Ապա, Գահիրէի Գալուստեան Ազգային Վարժարանին մէջ ստացած է նախակրթարանի եւ բարձրագոյն նախակրթարանի ուսումը: Վարժարանի տնօրէնութեան եւ Ազգային Իշխանութեան որոշումով մեկնած է Լիբանան, ուր յաճախած է Անթիլիասի Աստուածաբանական դպրեվանքը մինչեւ Ընծայարանի Երկրորդ Կարգը, Մեծի Տանն Կիլիկիոյ Գարեգին Ա. Յովսէփեանց Կաթողիկոսի օրով եւ իբրեւ ուսուցիչ ունենալով Բիւզանդ Եղիաեանը, Սիմոն Սիմոնեանը, Շահան Պէրպէրեանը եւ այլ հմուտ դաստիարակներ: Իր ուսման շրջանի վերջին երկու տարիներուն նախապատրաստուած է ուսուցչական ասպարէզին:

1953-ին վերադառնալով Եգիպտոս, չորս տարի պաշտօնավարած է Գահիրէի Ազգային Առաջնորդարանին մէջ: Առաջնորդարանին մէջ, Առաջնորդ Մամբրէ Արք. Սիրունեանի օրով, նոյն ժամանակ պաշտօնավարելով որպէս Կիրակնօրեայ վարժարանի ուսուցիչ, տեսուչ ու դպրապետ Հէլիոպոլսոյ, Շուպրայի եւ Կիզէի մէջ:

1961-ին աւարտելով իր զինուորական ծառայութիւնը, կ'ամուսնանայ Էմմա Գալաճեանի հետ, ու տարի մը ետք, Տէր Մամբրէ Սրբազանի հրահանգով անոնք կը փոխադրուին Սուտանի մայրաքաղաք Խարթում, ուր տեղւոյն հայկական դպրոցին մէջ կը պաշտօնավարէ իբրեւ տնօրէն, դաստիարակ, ինչպէս նաեւ դպրապետ, Կիրակնօրեայի վարիչ եւ օտար բարձրագոյն վարժարանի հայագիտութեան ուսուցիչ: Ան նոյնպէս կը նշանակուի Ընդհանուր Եկեղեցիներու Միութեան անդամ:

1971-ին կը վերադառնայ Եգիպտոս, ուր կը ստանձնէ Աղեքսանդրիոյ Պօղոսեան Ազգային Վարժարանի տնօրէնի եւ հայագիտութեան ուսուցիչի պաշտօնները: Այդ տարիներուն էր որ վարժարանը կը դառնայ Բարձրագոյն Նախակրթարան: Նոյն շրջանին, ձեռամբ Առաջնորդ Տ. Զաւէն Արք. Չինչինեանի ան կը ձեռնադրուի աւագ սարկաւագ եւ կը ստանձնէ եկեղեցւոյ դպրապետութիւնը: 1969-ին Ամենայն Հայոց Կաթողիկոս Վազգէն Ա.-ի հրաւէրով ան առաջին անգամ ըլլալով կ'այցելէ Հայաստան, իսկ երկրորդ անգամ՝ որպէս ուսուցիչ 1975-ին կը հրաւիրուի Մշակութային Կապի Կոմիտէին կողմէ, մաս կազմելու ուսուցիչներու վերապատրաստման միամսեայ ծրագրին:

1976-ին ընտանեօք կը տեղափոխուի Գանատա, ուր ան կը հաստատուի Մոնթրէալ ու կը բերէ իր գործօն մասնակցութիւնը նորակազմ այս գաղութի կրթական, մշակութային, ազգային եւ եկեղեցական կեանքին: 1977-էն սկսեալ վարած է ուսուցչական պաշտօն ՀԲԸՄ Արմէն Քէպլէք Ալեք Մանուկեան վարժարանին եւ Կիրակնօրեայ վարժարաններու մէջ, մասնակցած է թատերական ներկայացումներու եւ ունեցած է բազմաթիւ ելոյթներ իբրեւ ասմունքող: Երկար տարիներ հաւատարմօրէն ծառայած է Ս. Գրիգոր Լուսաւորիչ Առաջնորդանիստ Մայր Տաճարին մէջ, Սարկաւագի իր դերով, մինչեւ առողջապահական պատճառներով անկարող դարձած է տունէն դուրս գալու: Աշխատակցած է Գահիրէի «Ջահակիր», «Արեւ» եւ «Յուսաբեր» թերթերուն, Լիբանանի «Սփիւռք» եւ «Նայիրի» ու Մոնթրէալի «Ապագայ» թերթերուն: Հրատարակած է գրքոյկ մը Սուտանի հայ համայնքի մասին, եւ անգլերէնով՝ Հայց. Առաքելական Եկեղեցւոյ մասին, իսկ 2009-ին հրատարակած է իր կեանքի յուշերուն գրքոյկ մը՝ «Ծով Կենցաղոյս Ալեկոծ Յուշեր» խորագրով:

Հանգիստ իր յոգնաբեկ ոսկորներուն:

«ԱՊԱԳԱՅ»

**ԼԻԲԱՆԱՆ**

## ՍԴՀԿ-ՌԱԿ ՏԵՍԱԿՑՈՒԹԻՒՆ

*Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան Կուսակցութեան Կեդրոնական վարչութիւնը ներկայացընող պատուիրակութիւնը, գլխաւորութեամբ վարչութեան ատենապետ Ընկ. Յակոբ Տիգրանեանին, Ժամէյզէի «Թէքէեան» կեդրոնին մէջ տեսակցեցաւ Ռամկավար Ազատական Կուսակցութեան Կեդրոնական վարչութեան պատուիրակութեան հետ, գլխաւորութեամբ վարչութեան ատենապետ Մայք Խարապեանին: Ժողովին ներկայ էին նաեւ ՌԱԿ Կեդրոնական վարչութեան անդամներ Յովսէփ Էմիրեան, Փրոֆ. Հրայր Հովիւեան եւ Յարութ Երկանեան:*



*Ժողովակիցները արծարծեցին հայ ժողովուրդը յուզող եւ համատեղ հետաքրքրութիւն ներկայացնող նիւթերը: Մասնաւոր անդրադարձ կատարուեցաւ Հայոց ցեղասպանութեան 100 ամեակի ոգեկոչումի նախապատրաստութիւններուն, ձեռնարկները համազգային մակարդակի վրայ եւ համագործակցաբար կազմակերպելու հրամայականին, Հայաստան-Սփիւռք յարաբերութիւնները ամրապնդելու անհրաժեշտութեան եւ ղարաբաղեան հակամարտութեան հայանպաստ լուծում գտնելու հեռանկարներուն:*

*Կեդրոնական վարչութիւններու պատուիրակութիւնները քննարկեցին Հայաստանի ներքին կացութիւնը, մասնաւորապէս կեդրոնանալով Հանրապետութեան տնտեսական իրավիճակին եւ ժողովուրդի դիմագրաւած մարտահրաւէրներուն վրայ: Փոխանակուեցան կացութիւնը բարելաւելու ուղղութեամբ առաջարկուած միտքեր:*

*Ժողովակիցները նաեւ արծարծեցին սուրիահայութեան դիմագրաւած խնդիրները, Սուրիահայ գաղութը կանգուն պահելու եւ հայորդիներուն հրատապ օգնութիւններ ապահովելու անհրաժեշտութիւնը:*

*Որոշուեցաւ նմանօրինակ նիւթերու շուրջ քննարկումները շարունակել եւ համագործակցութեան խողովակները բաց պահել:*

## ԻՍՐԱՅԷԼԵԱՆ ԼՈՊՊԻՆ ԿԸ ՆԱԽԱԶԳՈՒՇԱՑՆԷ ԹՈՒՐՔԻԱՅԻՆ՝ ՔԱՆԻ ԴԵՌ ՉԵՔ ԿԱՐԳԱՒՈՐԱԾ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ, ՀԱՅՈՑ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԵԱՆ ՀԱՐՑԻՆ ՉԵՆՔ ԱՋԱԿՑԻՐ

*Անգարան պէտք է աքթիւացնի ջանքերը Իսրայէլի հետ յարաբերութիւնների կարգաւորման ուղղութեամբ մինչեւ 2015թ.-ը՝ Հայոց Ցեղասպանութեան 100-ամեակը, քանի որ իսրայէլական լոպպին ամբողջ աշխարհում էապէս մեղմացրել է այդ հարցում Թուրքիայի ցուցաբերուող աջակցութիւնը: Այս մասին յայտարարել է Իսրայէլում թուրքական հրեաների միաւորման նախագահ Ջալի տէ Թոլետօն: Նրա խօսքով՝ Թուրքիան պէտք է հաշուի առնի իր շահերն ու կարգաւորի յարաբերութիւնները Թուրքիայի հետ ու Թել-Աւիւում որքան հնարաւոր է շուտ դեսպան նշանակի:*

*«Եթէ երկու երկրները բաց թողեն իրենց կապերը կարգաւորելու առիթը, իսրայէլական լոպպին, ամենայն հաւանականութեամբ, 2015թ.-ին չէզոք դիրք կը գրաւի»,- յայտարարել է նա «Today's Zaman»-ի հետ զրոյցում: Ջալի տէ Թոլետօն խոստովանել է, որ ամէն հնարաւոր բան արել է ԱՄՆ-ում իսրայէլական լոպպիի վրայ ազդելու համար ձեռնպահ մնալ Օսմանեան Կայսրութիւնում հայերի զանգուածային սպանութիւնները ցեղասպանութիւն որակելուց: «Ես Թուրքիայի դիրքորոշման կողմնակից էի»,- նշել է նա՝ ընդգծելով, որ հիասթափուած է թուրք-իսրայէլական յարաբերութիւնների ներկայ վիճակից:*

<u>ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ԽՈՀԵՐ</u>

## ԱՅԼԸ

### ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

ԺԹ. դարէն սկսեալ դրամատիրութիւնը կամաց-կամաց յաջողեցաւ տարանջատել իրերը իրարմէ, իւրաքանչիւր անջատուած իրին տալով իր սեփական ինքնութիւնը, այնքան սեփական ու ինքնուրոյն՝ որ անկարելի ըլլայ անոնց յետագայ վերամիաւորումը:

Ինքնութիւնը մտաւ ամէն տեղ: Մերսետէսն ու Ռոլս-Ռոյսը, Փեփսի-Քոլան ու Քոքա-Քոլան, Քենթն ու Մարլպորօն, Պիքն ու Ռէյնոլտսը պէտք է անպայմանօրէն ու պարտադրաբար տարբերին իրարմէ՝ իրենց վրայ արհեստականօրէն բարդուած տարբեր ինքնութիւններով:

Այս ինքնութիւնները արդիականութեան (modernism) ժամանակ այնքան արմատացան որ պէտք եղաւ դիմացի, միւս կողմի ինքնութիւնը սահմանել «գիտական» եզրով: Յետարդիականութիւնը (postmodernism) այս ծառայութիւնը մատուցեց ստեղծելով գլխագիր Այլը (Other):

Ստեղծուեցաւ ամբողջ փիլիսոփայութիւն մը Այլի դրականացումին եւ հաստատագրումին համար: Ասոր դասական նմոյշն է Եուլիա Քրիսթեւայի՝ *Օտարականներ մենք զմեզ* (Étrangers à nous-mêmes) ֆրանսերէն գիրքը, առաջին անգամ հրապարակուած յետարդիականութեան բաձրակէտային շրջանին՝ 1988-ին: Այստեղ անվերջանալիօրէն ու յամառօրէն օգտագործած «օտար» (foreigner), «օտարական» (stranger), ոչ-գլխագիր «այլ» (other) բառերը անխուսափելիօրէն կը տանին դէպի Այլը:

Քրիսթեւա նոյնիսկ կ'առաջարկէ հոգեբանական լուծում մը. «Ճանչնալով *մեր* անսովոր օտարականութիւնը [strangeness], մենք ո՛չ պիտի տառապինք անկէ եւ ո՛չ ալ դուրսէն հաճոյք ստանանք: Օտարը [the foreigner] իմ մէջս է, հետեւաբար մենք բոլորս օտարներ ենք: Իսկ եթէ ես օտար եմ, ուրեմն չկան օտարներ:»(1) Խնդրահարոյց եզրակացութիւն մըն է: Քրիսթեւա մարդու մէջ կը գտնէ օտարութիւններ, կ'առաջարկէ մարդուն ճանչնալ այդ ներքին օտարութիւնները, եւ ճանչնալով յաղթահարած ըլլալ արտաքին օտարութիւնները: Ըստ իրեն, Այլը թէ՛ մեր մէջն է եւ թէ՛ մեզմէ դուրս: Այս «բուժում»-ին կարելի է ձեւով մը համոզուիլ, եթէ իրապէս ընդունինք Այլին կամ օտարին իրական ու պատմական գոյութիւնը: Արդարեւ, մարդ էակը իր մէջ ընդունելով Այլը, հաստատած կ'ըլլայ նոյն ինքը Այլին գոյութիւնը, եւ որքան ձգտի ճանչնալ Այլը, որքան աւելի ամրացնէ Այլն ու իր յարակից հոմանիշները, այնքան աւելի արտադրած կ'ըլլայ Այլը:

Նախադրամատիրական հասարակարգերը չունէին Այլը: Անոնք գիտէին դրացին, միւս ցեղախումբը, թշնամին, որոնք երբեք չէին ստացած Այլի դրութիւն: Ի՞նչ էր տարբերութիւնը:

Նախ եւ առաջ, ուրիշը կը կազմուէր *ճանչնալով* այդ ուրիշը՝ նոյնիսկ ամենաբացասական վիճակին մէջ: Ահաւասիկ քանի մը օրինակ.

1. Հայերը պէտք չունէին ատելու մոնղոլները, մինչեւ չկատարուէր մոնղոլական արշաւանքները Հայաստանի վրայ: Այսօր, Հայաստանի մէջ նստած հայը կրնայ ատել թալիպաններուն՝ առանց որ անոնք վնասած ըլլան Հայաստանին, լոկ այն պատճառով որ հեռատեսիլէն ատելութիւն կը սփռուի անոնց դէմ:

2. Երբ ԺԲ. դարուն իսլամ ծայրայեղականները կը հրկիզէին իսլամական փիլիսոփայութեան առաջամարտիկներէն Իպն Ռուշտի (Averroes) մատեանները, անոնք իրենց գաղափարախօսութիւնը կը հիմնէին Քորանի եւ Ռուշտիի բնագիրներուն իրական՝ թէեւ խիստ բառային ու ծայրայեղ, ընթերցուածքի վրայ: Երբ 2000 Մայիսին, Ազհարի տնօրէնը Հայտար Հայտարի *Խնճոյք Ջրիմուռի Համար* (Ուալիմա լը ա'աշապ ալ-պահր) արաբերէն վէպը պաշտօնապէս կը յայտարարէր իբրեւ անարգական ստեղծագործութիւն (երկու ամիս տեւած լրագրական ու հաղորդակցական միջոցներու կուտակումներէ ետք), մեծ թիւով ուսանողներ ցոյցի կ'իջնէին ընդդիմախօսելու գիրքին դէմ, առանց անձամբ կարդացած ըլլալու հաստափոր վէպը: Գրականագէտ Սապրի Հաֆեզ կը գրէ՝ թէ «երբ հարցուցին ուսանողներուն եթէ երբեւէ կարդացած են գիրքը, պատասխանը եղաւ՝ «Ոչ, բայց մեր ուսուցիչները ըսին թէ ան անարգական է»»(2) Ասիկա միայն իսլամական յատկանիշ մը չէ: Եգիպտոսի քրիստոնէութեան եւ յատկապէս ղպտիներուն զգալի մաս մը կ'ատէ եգիպտացի վիպասան Եուսէֆ Զէյտանին՝ իր *'Ազազիլ* հատորին համար, որ իբր կը պարունակէ հակաքրիստոնէական բնագիր մը: Այս հարցով ես անձամբ պատահական ընտրութեամբ հարցափորձած եմ յիսունէ աւելի ղպտիներ: Անոնց մեծամասնութիւնը բացասական կարծիք յայտնած է գիրքին մասին՝ առանց մէկ բառ մը կարդացած ըլլալու: «Մենք այսպիսի վէպեր չենք կարդար», կ'ըլլար ընդհանուր պատասխանը, կարծես որոշուած էր նոյնիսկ ինչ պատասխան տալ: (Աշխարհի առաջին քրիստոնեայ ազգի պատկանելութեամբ հպարտացող հայութենէն արդեօք քանի՞ հոգի անձամբ ու իրապէս կարդացած է Հին ու Նոր Կտակարանները՝ որոնց պարունակած գաղափարական-ընկերային-մարդասիրական բազմակողմ իմաստներն ու ենթաիմաստները, անվերջ շարժումը եւ իրական կեանքի օրինակները շարունակ մտածելու, գիտելիքը վերանորոգելու եւ ներառական գաղափարախօսութիւններ կազմելու լայն առիթներ կրնան ընձեռել:)

3. Հնագոյն (antique) եւ աւատատիրական (feudal) շրջաններու պատերազմներուն ժամանակ, բանակի ղեկավարները կը գտնուէին դաշտի մէջ եւ պարտութեան ժամանակ յաճախ իրենք եւս կրնային սպաննուիլ: Անոնք պատերազմական վիճակին կը տեղեկանային եւլելով գործադրութեան անմիջական փորձառութենէն: Արդի դարաշրջանի բանակի ղեկավարները պատերազմելու եւ սպաննելու հրամանները կ'արձակեն չքեղօրէն պատրաստուած հովահարեալ գրասենեակներու մէջ բազմած, շրջապատուած մարդկային ու թեքնիքական բազմածախս պաշտպանական միջոցներով, իսկ պատերազմական լուրերը կը ստանան վստահելի միջնորդներու շնորհիւ: Եւ տակաւին այս վախկոտ պատսպարեալներն են որոնք կը դառնան հերոսներ ու ժողովուրդի ղեկավարներ՝ «տեմոքրաթիք» ճանապարհով:

4. Ե. դարու հայկական հիմնահոսանքային գիտելիքի կերտման նպաստած Եղիշէն՝ իր *Վասն Վարդանայ եւ Հայոց պատերազմին* հիմնաքարային գիրքին մէջ խիստ արտայայտութիւններով կը մեղադրէր Վասակ Սիւնին, որուն քաղաքական կողմնորոշումը հակառակ էր Եղիշէի պատուիրատու Դաւիթ երէց Մամիկոնեանի ուղղութեան եւ մանաւանդ անհամապատասխան էր Եղիշէի *անձամբ* մասնակցած Վարդանանց Պատերազմի նպատակներուն: Հայերէն litopedia-ն կու տայ միտք շարժող բացատրութիւն մը. «[Եղիշէի *Վարդանանց պատմութիւնը*] խիկապէս պատմական վստահելի աղբիւր լինելով հանդերձ, վկայաբանական գունաւորում ստացած մի դիւցազներգութիւն է, պատմական նիւթ ունենալով՝ մի բանաստեղծական քերթուած, ո՛չ թէ սոսկ պատմաբանի, այլ հոգով բանաստեղծի գործ, որ գրուած է խիստ որոշ նպատակով՝ «Որպէսզի շարունակ կարդաս, լսելով առաքինի անձերի քաջութիւնը եւ յետ կացածների վատթարութիւնը»: Եղիշէն ինքը եղել է 5-րդ դարի հայրենական այս մեծ դիւցազներգութիւնը նախապատրաստողներից մէկը եւ, ինչպէս ինքը վկայում է, ականատես ու մասնակից է եղել սարսափելի դէպքերին: Եւ ահա նա, այդ բանաստեղծական հոգի ունեցող մարդը պատերազմը վերջանալուց յետոյ մի խուլ անկեան քաշուած, դէպքերի թարմ տպաւորութեան տակ, վէրքերը դեռեւս լիովին չսպիացած գրի է առել իր տեսածն ու լսածը:»(3)

Ի. դարու հայկական հիմնահոսանքային գիտելիքի կերտման նպաստած պաշտօնական հայ մամուլը՝ բաժնուած կուսակցութիւններու միջեւ, 50-60-ականներուն այսպէս կը կատարէր փոխադարձ քննադատութիւնը. «Սիրելի հայրենակից, մի՛ տար քուէդ անոնց, որոնք սուտ եւ քանդիչ պայքարով կը ջլատեն քու կենսունակութիւնդ եւ եղբօրդ դէմ ատելութեամբ կը զինեն քեզ:» Կամ՝ «[X կուսակցութեան թերթը] կը խօսի սուտին մեծը, կը կատարէ զրպարտութեան մեծը, կը դառնայ խաֆիէներուն մեծը, կ'ընէ չարափոխութեանց մեծը, եւ կը կատարէ դիմափոխութեանց մեծը:»(4)

Հարիւրաւոր նման արտայայտութիւններ կարելի է հաւաքել այդ շրջանի պաշտօնական մամուլէն: Անոնց հեղինակները, ի տարբերութիւն Եղիշէէն, պատերազմի չէին մասնակցած՝ թէեւ գործածած են առաւելագոյն կերպով մարտական լեզու մը: Անոնք, ի տարբերութիւն Եղիշէի բանաստեղծական-դիւցազներգական պատմողականութենէն՝ ուր կարելի է գտնել ենթաբնագրային անվերջանալի ընթերցուածքներ, իրենց ընդդիմութիւնը գրանցած են ուղղակի, անվիճելի ու անառարկելի ոճով: Ի տարբերութիւն Եղիշէէն, այստեղ ո՛չ բանաստեղծական ոգի կայ, ո՛չ ալ շարունակ կարդալու նիւթ: Ի՞նչ ենթաբնագիր ու բանաստեղծականութիւն կարելի է գտնել «խաֆիէներուն» ետեւը...:

Այս չորս օրինակներուն մէջ յիշատակուած փոփոխութիւնները անկարելի պիտի ըլլային առանց Այլի կամակոր գոյացումին: Ատել թալիպաններուն առանց առնչուած ըլլալու անոնց հետ, կը նշանակէ զանոնք ընդունիլ իբրեւ Այլ: Առանց կարդալու բողոքել գիրքի մը բովանդակութեան դէմ, կը նշանակէ զայն ընդունիլ իբրեւ Այլ: Սպանութեան հրաման արձակել առանց ներկայ գտնուելու սպանութեան վայրը, կը նշանակէ սպանուողը ընդունիլ իբրեւ Այլ: Ձես կրնար դիմացինիդ համարել «սուտին մեծը», «զրպարտութեան մեծը», «խաֆիէներուն մեծը», «չարափոխութեանց մեծը» եւ «դիմափոխութեանց

→ 4

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ԽՈՀԵՐ

## ԱՅԼԸ

3

մեծը», առանց այդ դիմացինը ընդունելու իբրեւ Այլ:

Այլը հրամայականօրէն կազմուած ուրիշի մը բռնազբօսիկ օտարացումն է, որ կը կատարուի այդ ուրիշին յաւելագրելով բացարձակ, անչարժ ու ամբողջատիրական իմաստ մը՝ անհարազատ իր էութեան ու բովանդակութեան, բայց ինքնապարտադրաբար ընդունելի զայն հնարողին համար:

Այլը կրնայ դիտուիլ իբրեւ Թապուի (taboo) միւս երեսակը: Թապուն գոյութիւն ունեցող այն երեւոյթն է՝ որ պարտադրաբար պէտք չէ գոյութիւն ունեցած ըլլայ: Գոյութեան բացակայութեամբ կը խնայուի Այլը կազմելու եւ ապա ըստ այնմ գործելու ամբողջ ձանձրոյթը: Մինչդեռ Այլը գոյութիւն ունեցող այն երեւոյթն է՝ որ պարտադրաբար պէտք է ստանայ օտարոտի ու վերադիր իմաստ: Պարտադրաբար, որովհետեւ Այլը ոչ մէկ դրական կամ բացասական ենթակայական հաղորդակնութիւն պէտք է ունենայ զայն հնարողին հետ, այլ պէտք է ըլլայ առարկայացուած կէտ մը՝ մշտապէս մատչելի իրական կամ երեւակայական թիրախի համար:

Ենթակայութիւնը բնազդաբար պիտի կազմալուծէ Այլը: Իսկ ենթակայութիւնը կու գայ ուղղակի չփումէ, ուղղակի փորձառութենէ: Աւելի դիւրին է հազարաւոր ու միլիոնաւոր մարդոց սպանութեան հրամանը արձակել առանց տեսնելու անոնց, քան բուն դաշտին մէջ անձամբ մասնակցիլ սպանութեան, ուր ենթակայական՝ հոգ չէ թէ բացասական, կապ մը պիտի գոյանայ երկու կողմերուն միջեւ: Սպանութեան քանակը, որակը եւ տարողութիւնը սաստկացնելու համար այս ենթակայութիւնը պէտք չէ գոյանայ: Իսկ ո՞վ պիտի ըլլայ սպաննիչ ձեռքը: Ասիկա հարցին ամենադիւրին կողմն է, քանզի բնաւ ալ դժուար չէ զինուորագրել ամբոխներ, որոնք եթէ չենթարկուին հրամաններուն կը կորսնցնեն իրենց ապրուստի եկամուտն ու ամբողջ ապագան: Աւելորդ է յիշեցնել, թէ սպանութիւնն ու պատերազմն իրենք անբարոյական երեւոյթներ են, բայց այս օրինակը ցոյց կու տայ թէ ինչպէս արդիականացման (modernization) եւ «աննախադէպ» զարգացման մեր դարաշրջանին գաղափարական ու գործադրական մեքանիզմները «մշակուած» են «բարձրացնելու» անբարոյականութեան «մակարդակ»-ը՝ փոխանակ մտածելու ջնջել զայն: Նոյնը կը վերաբերի նաեւ վերը յիշուած միւս օրինակներուն: Նորին սաստկութիւնը չ'արդարացներ հինին նուազութիւնը:

Մարդու մէջ գտնուող օտարը կամ Այլը անհանգստութեան ու անհամերաշխութեան աղբիւր մըն է կրողին համար: Կարելի չէ Քրիսթեւայի հետեւութեամբ ճանչնալ ներքին Այլը եւ միաժամանակ դառնալ համերաշխ ինքն իր հետ, քանի որ Այլը ինքնին հեռացում եւ օտարացում մըն է: Կարելի է ընդունիլ ներքին հակասութիւնները, մտաւոր ու հոգեւոր անհանգստութիւնները՝ որոնք ներյատուկ են մարդկային էութեան, բայց օտարացած ուրիշը կամ եզրափակուած Այլը տարբեր բաներ են: Իսկ ներքին հակասութիւնը կարելի է լուծել ինքնահայեցողութեամբ, վերանցնականութեամբ, մարմնական, մտային եւ հոգեւոր կողմերու կարգապահութեամբ եւ տիրապետութեամբ: Ի՞նչ է եոկան (yoga) եթէ ոչ մարդուս համաձայնեցումը ինքն իր հետ:

Կայ նաեւ ընկերային լուծումը: Քակել Եսին եւ Այլին միջեւ եղած պատնէշը, երկու կողմերը միասին նետել հասարակային նոյն միջավայրին մէջ, երկու Այլերու եսասիրական պայքարին փոխարէն մասնակցիլ համընդհանուր մարդասիրական հարցերու հետ առնչուող աքթիվիսթական շարժումներու, դիմադրել մարդկային դժբախտութիւններուն, սպանութիւններուն ու հիւանդութիւններուն պատճառ հանդիսացող երեւոյթները, դիմադրել բոլոր իշխանական նկրտումները կերտելու ու վերակերտելու Այլը՝ որ պիտի ծառայէ միայն ու միայն այդ նոյն իշխանականներու շահերուն: Աքթիվիզմը համընդհանուր ենթակայութեան յառաջացման էական միջոց մըն է:

Այս ուղիները կրնան առաջնորդել դէպի Այլին տարրալուծութիւնը (de-othering):

Յաջորդ թիւով, Այլը՝ ճշգրիտ օրինակի մը ընդմէջէն:

(Տար. 1/2)

1. Julia Kristeva, *Strangers to Ourselves*, translated by Leon Roudiez, Columbia University Press, 1991, էջ 192

2. Sabry Hafez, 'The Novel, Politics and Islam', *New Left Review*, September-October 2000, էջ 135

3. «Եղիշէ», www.litopedia.org/index.php?title=Եղիշէ (առբերուած 28 Հոկտեմբեր 2013-ին)

4. Ասոնք քաղուած են 1955-ի եգիպտահայ պաշտօնական մամուլէն: Պիտի խուսափիմ ճշգրիտ աղբիւրները նշելէ:

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

Իրենց շատ սիրելի հօր եւ մեծ հօր՝ Ողբ. Յովհաննէս Ճէպէճեանի 12-րդ, ինչպէս նաեւ մօր եւ մեծ մօր՝ Շաքէ Ճէպէճեանի մահուան Ա. տարելիցներուն տխուր առիթներով եւ անոնց քաղցր ու խնկելի յիշատակներուն, Տոքթ. եւ Տիկին Յարութիւն եւ Մարօ Ճէպէճեան եւ զաւակները (Աւստրալիա), Դոկտ.-փրօֆ. Ճարտարագէտ Պերճ Ճէպէճեան կը նուիրեն՝

| | |
|---|---|
| Ս. Պօղոս-Պետրոս Եկեղեցւոյ Պայծառութեան | 900 |
| Պօղոսեան Ազգային Վարժարանին | 300 |
| «Տիգրան Երկաթ» Հայ Մշակութային Միութեան | 300 |
| «Յառաջդիմասէր» Մշակ. Ընկերակցութեան | 300 |
| Աղեքսանդրիոյ ՀՄԸՄ-ՆՈՒՊԱՐԻՆ | 300 |
| «Արեւ»ին | 300 |
| «Յուսաբեր»ին | 300 |
| «Ջահակիր» | 300 |

*(Բոլոր նուիրատուութիւնները ստանալ Աղեքս. Ազգային Առաջնորդարանէն)*



## ՌՈՒՍԵՐԸ ԿՐՆԱՆ ՄԻՋԱՄՏԵԼ

1

*հիմնուելով ՀԱՊԿ-ի շրջագիծին մէջ հաստատուած համաձայնութիւններուն վրայ: Նշենք, որ ռուսական զումարտակը օժտուած է ՄԻԿ-29 ռազմական օդանաւերով եւ «SS-300» եւ «Սմերչ» հակաօդային պաշտպանութեան հակամարգերով:*

## ՕԳՆՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ ՀՈՍՔ՝ ՍՈՒՐԻԱՀԱՅԵՐՈՒՆ

1

*պայմաններ ստեղծելու համար, որպէսզի անոնք գործեն Հայաստանի մէջ:*

*«Սուրիահայերու մօտ 30 առ հարիւրը ապահովուած է սեփական բնակարանով ու մէկ մասը կարողութիւն ունի վճարելու տան վարձքը», ըսաւ նախարարը: Անոր տուեալներով, Հայաստան հաստատուած են մօտ 11 հազար սուրիահայեր: ՄԱԿի փախստականներու գրասենեակը վերջերս հաղորդեց, որ սուրիահայ 500 ընտանիքի պիտի տրամադրէ ձմեռնային աջակցութիւն՝ 100 հազարական դրամի չափով:*







## ԵՐԵՒԱՆԻ ՄԷՋ ՅԱՐԳԱՆՔ՝ 27 ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ՆԱՀԱՏԱԿՆԵՐՈՒ ՅԻՇԱՏԱԿԻՆ

1

*ինչպէս Սպարապետ Վազգէն Սարգսեանը ըսած է, «Հայաստան պետութիւնը որբի գլուխ չէր, որ ով որ ուզէր մօտենար ու որբի գլուխը խուզէր»»:*

*Եզրակացնելով, Սարգսեան այսօրուան քաղաքական իրավիճակին ակնարկելով նկատել տուաւ, թէ «Այսօր երեւելի է, որ նոր խմորումներ կան ու Հայաստանի Մաքսային Միութեան միանալու որոշումը լուրջ մարտահրաւէր է ընդդիմադիր դաշտի բոլոր լուրջ կողմերուն համար: Զմոռնանք, որ Մաքսային Միութեան միանալու հարցը մեզի համար գերխնդիր է ու վստահ եմ որ բոլոր քաղաքական ուժերը մէկդի պիտի դնեն իրենց միջեւ առկայ տարակարծութիւնները եւ պիտի պայքարին այս գործընթացին դէմ, որովհետեւ Հայաստանի իշխանութիւններուն առած այս քայլը իրապէս որ մեր հայրենիքը կրնայ տանիլ կործանումի»:*

*Յիշատակի այս միջոցառման ներկայ էին նաեւ ՀՀ առաջին նախագահ Լեւոն Տէր Պետրոսեան, Կարէն Դէմիրճեանի որդին՝ Ստեփան Դէմիրճեան, «Ղարաբաղ Կոմիտէ»-ի անդամ Աշոտ Մանուչարեան, Ազգային Ժողովի անդամ Նիկոլ Փաշինեան եւ ՀԱԿ-ի վարչութեան այլ անդամներ:*

# ՋԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1713 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 14 ՆՈՅԵՄԲԵՐ 2013 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. ԴՀԿ. عدد رقم ١٧١٣ الخميس ١٤ نوفمبر ٢٠١٣


## «ՋԱՀԱԿԻՐ» ԱՒԱՐՏԵՑ ԻՐ 65-ՐԴ ՏԱՐԻՆ

65 տարի առաջ՝ 1948-ին, լոյս կը տեսնէր «Ջահակիր» շաբաթաթերթի առաջին թիւը: Այդ ժամանակ հաւանաբար ոչ ոք կրնար գիտակցիլ՝ որ ան իր գոյութիւնը պիտի պահպանէր մինչեւ այսօր: Բայց անոր ճանապարհը միշտ չէ որ հարթ ընթացաւ, յաղթահարեց բազում դժուարութիւններ եւ երբեմն նոյնիսկ կանգնեցաւ փակման վտանգին առջեւ: Աւելորդ չէ անգամ մը եւս շեշտել՝ թէ նիւթական ու բարոյական որքան զոհողութիւններու հետ է կապուած Սփիւռքի մէջ հայատառ թերթի հրատարակութիւնը:

Ժամանակն ու ընթերցողը պիտի տան շաբաթաթերթի առաքելութեան գնահատականը, բայց կրնանք ըսել, թէ այն ինչ որ կատարուեցաւ ամբողջ 65 տարիներուն՝ կատարուեցաւ անկեղծ սիրով ու համոզուածութեամբ:

«Ջահակիր»-ի առաջին թիւին առաջին տողերը կը սկսէին այսպէս.

«Ծայրայեղութիւններու ժողովուրդը դառնալու վրայ է հայութիւնը: Կա՛մ ստորադասութեան զգացումով կը տառապի, կա՛մ յոխորտանքով կը սնանի: Մեր իրական կարողութիւններն ու կարելիութիւնները չափելու ընդունակութիւնը կորսնցնելու վրայ ենք կարծես:

«Ճի՛շդ է՝ որ մենք ալ յառաջադէմ ազգ մըն ենք, առանց ջատագովելու՝ որ մեր «արուեստի գործք»-երը մեծխօսիկութեան եւ սնափառութեան առիթներ ըլլան մեզի համար: Պէտք է սակայն պարկեշտ ըլլանք՝ անխորտակելի բայց իրական չափերով հպարտանք եւ խանդավառութիւն քաղելու մեր փառաւոր անցեալէն, մեր հայրենիքին յարութենէն եւ ապրող իրականութենէն:»

Այսինքն, կը քարոզուէր չափաւորութիւն:

«Ջահակիր»-ի բոլոր խմբագիրները փորձեցին մնալ չափաւորութեան սահմաններուն մէջ:

«Ջահակիր»-ի հիմնադիրն ու առաջին արտօնատէր-խմբագիրն էր Հայկ Ժամկոչեան, իր հետ ունենալով Արշամ Տատրեան իբրեւ գրական խմբագիր: 1955-էն սկսեալ Հայկ Ժամկոչեան կը դառնար շաբաթաթերթին սեփականատէր-խմբագիրը, իսկ Հրանդ Տատրեան՝ խմբագիր-տնօրէնը:

1963 Նոյեմբեր 7-ին կը սկսի «Ջահակիր»-ի «Նոր Շրջան»-ը. սեփականատէր-խմբագիր՝ Սարգիս Պալաեան, տնօրէն՝ Զաւէն Պալաեան, արտօնատէր՝ Այտա Սերոբեան-Պալաեան: Սարգիս Պալաեանի Քանատա մեկնումէն ետք, 1979-ին խմբագիր-տնօրէնի պաշտօնը կը ստանձնէ իր եղբայրը՝ Զաւէն Պալաեան: Տաս տարի շարունակելով շաբաթաթերթին հրատարակութիւնը, 1989-ին ինք եւս կը մեկնի միանալու եղբօրը: 1989 Հոկտեմբեր 1-էն սկսեալ «Ջահակիր»-ի պատասխանատուութիւնը կ'անցնի Գահիրէի Հայկական Ընթերցասրահի վարչութեան, խմբագիր-տնօրէն ունենալով Աւետիս Մովսէսեան: 1993 Հոկտեմբեր 15-ին տնօրինութիւնը կը ստանձնէ Մարտիկ Պալաեան, իսկ խմբագրութիւնը՝ Աւետիս Մովսէսեան: 2012-ին Ա. Մովսէսեան ենթարկուելով ուղեղային արիւնահոսութեան եւ ապա կաթուածի, անկարող կ'ըլլայ շարունակել իր աշխատանքը: 2012 Մարտ 8-էն սկսեալ խմբագիր-տնօրէնի պարտականութիւնը կ'անցնի Մարտիկ Պալաեանին:

«Ջահակիր» յարատեւած է նաեւ շնորհիւ ընթերցասէր հասարակութեան: Առանց ընթերցողի չկայ հայ մամուլ: Հետեւաբար, խմբագրութիւնս իր խորին շնորհակալութիւնները կը յայտնէ սիրելի ընթերցողներուն, որոնց բարոյական նեցուկը անփոխարինելի խթան մը եղաւ պահպանելու թերթիս գոյութիւնը:

**ԱՐՑԱԽ**

## ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԸ ԾԱՆՕԹԱՑԱԾ Է ԼՂՀ ՄԷՋ ԲԱՆԱԿԱՇԻՆՈՒԹԵԱՆ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐՈՒՆ ՆԵՐԿԱՅ ՎԻՃԱԿԻՆ



*Հայկական երկու հանրապետութիւնների միջեւ առկայ փոխգործակցութեան ծրագրի շրջանակներում աշխատանքային այցով Արցախում գտնուող ՀՀ նախագահ Սերժ Սարգսեանը ԼՂՀ Նախագահ Բակօ Սահակեանի, ՀՀ պաշտպանութեան նախարար Սէյրան Օհանեանի, ԼՂՀ պաշտպանութեան բանակի հրամանատար, գեներալ լեյտենանտ Մովսէս Յակոբեանի եւ բանակի հրամանատարական կազմի հետ միասին եղել է հանրապետութեան հիւսիսային հատուածի ՊԲ մի շարք զօրամասերում ու զօրամասերի պահպանութեան տակ գտնուող առաջնագծում:*

➪ 2

## ԵՐԵՒԱՆԻ ԿԵԴՐՈՆԸ ՏԵՂԻ ՈՒՆԵՑԱԾ ԲԱԽՈՒՄՆԵՐՈՒՆ ՀԵՏԵՒԱՆՔՈՎ ՁԵՐԲԱԿԱԼՈՒԱԾ Է 20 ՀՈԳԻ



Շանթ Յարութիւնեանի կողմնակիցներուն եւ ոստիկաններուն միջեւ բախումներ Երեւանի կեդրոնը:

*Երեւանի կեդրոնը տեղի ունեցած բախումներու հետեւանքով ձերբակալուած է 20 հոգի: Ձերբակալուածներու շարքին է «Ցեղակրօն» կուսակցութեան ղեկավար Շանթ Յարութիւնեանը, որ նստացոյց սկսած էր «Ես յեղափոխութիւն եմ սկսում» պաստառի ներքեւ:*

*Նոյեմբեր 5-ին Յարութիւնեան փորձեց մի քանի տասնեակ աջակիցներու հետ երթով շարժուիլ դէպի Մաշտոցի պողոտայ, ուր սկսաւ ծեծկռտուք եւ օգտագործուեցան պայթուցիկներ:*

*Ըստ ոստիկանութեան պաշտօնական հաղորդագրութեան, ձերբակալուած են 38 հոգի, որոնցմէ 18-ը հետագային ազատ արձակուած են:*

*«Ցեղակրօն» կուսակցութեան ղեկավար Շանթ Յարութիւնեանը իր մի խումբ կողմնակիցների հետ մահակներով ու ձողերով զինուած փորձել են երթ կատարել ազատութեան*

➪ 2

## ՀԱՅԱՍՏԱՆԷՆ ԱՐՏԱԳԱՂԹԸ ԿԸ ՇԱՐՈՒՆԱԿՈՒԻ

*Հայաստանի Ազգային Վիճակագրական Ծառայութեան (ԱՎԾ) հրապարակած տուեալներուն համաձայն, 2013-ի Յունուար-Սեպտեմբեր ամիսներուն 122 հազար 191 Հայաստանի քաղաքացի անցած է սահմանային կէտերը եւ չէ վերադարձած: Նախորդ տարի չվերադարձողներու թիւը կազմել էր 109 հազար 405:*

*Այս թիւերը հերթական անգամ անհանգստութիւն յառաջացուցած են հասարակութեան մօտ, քանի որ շատերը այն ուղղակի կը կապեն արտագաղթի հետ: Մինչդեռ պետական պաշտօնեաները կը շարունակեն պնդել, որ այս ընդամէնը սահմանը անցնողներու պատկերն է, իսկ արտագաղթի պատկերը կը յստակացնեն տարեվերջին հրապարակուելիք ուսումնասիրութիւնները:*

*ԱՎԾ-ի Մարդահամարի եւ ժողովրդագրութեան բաժնի պետ Կարինէ Կոյումջեան այս առթիւ ըսած է,- «Մենք ոչ պատճառը գիտենք, ոչ էլ այս ցուցանիշների մէջ ներառուած է, թէ ինչ ժամկէտներով են մարդիկ գնացել, որպէսզի մենք կարողանանք իրենց վերագրել «միգրանտ» կոչումը»:*

➪ 2

**ՍՈՒՐԻԱ**

## ԴԱՄԱՍԿՈՍԱՀԱՅ ԵՐԿՈՒ ԵՐԵԽԱՅ ՀՐԱՍԱՆԴԻ ԶՈՀ



*Սուրիահայութիւնը տուաւ Սուրիոյ հակամարտութեան իր հերթական զոհերը: Երկուշաբթի Նոյեմբեր 11-ի կէսօրին, հրասանդ ինկաւ Դամասկոսի հայաշատ Պապ Շարքի թաղամասի Սուրբ Թարգմանչաց վարժարանին առջեւ, Սուրբ Սարգիս եկեղեցւոյ մօտ: Հրասանդի պայթումին հետեւանքով զոհուեցան 5 անձեր, ներառեալ 4 երեխաներ եւ վարժարանի փոխադրակառքի վարորդը: Զոհերէն երկուքը հայ էին՝ վեցամեայ Յովհաննէս Աթոքեանը եւ ութամեայ Վանեսա Միխո Պետրոսը: 10 երեխաներ վիրաւորուեցան ու փոխադրուեցան հիւանդանոց: Նշենք, որ հրասանդը ինկաւ վարժարանէն աշակերտներու արձակումի պահուն: Գրեթէ նոյն ատեն հրասանդ մը ինկաւ նաեւ Քասսաա թաղամասի վարժարանին վրայ, պատճառելով 4 զոհ եւ առնուազն 15 վիրաւոր:*

*Հալէպի մէջ, երկու ռումբեր ինկան հայաշատ Ազիզիյէ թաղամասին վրայ, հարուածելով բժշկական կեդրոն մը: Ի դէպ, Հալէպի մէջ վերջին 5 օրերուն ամբողջութեամբ ընդհատուած է ջրամատակարարումը, բարդացնելով աւելի կանուխ զարգացած ելեկտրականութեան տագնապը:*

*Հալէպէն հասած տեղեկութիւններուն համաձայն, քաղաքացիներուն ջուր կը բաժնեն եկեղեցիներէն եւ մզկիթներէն, ուր ամիսներ առաջ փորած էին ջրհորներ, կանխատեսելով ջուրի հաւանական տագնապ: Ըստ տեղեկութիւններուն, Հալէպի փողոցներուն վրայ կարելի է տեսնել շիշ եւ թոյլ կրող հազարաւոր քաղաքացիներ, որոնք կը փորձեն ամէն գնով տիրանալ ջուրի: Իշխանութիւններուն համաձայն, ջրամատակարարումը ընդհատուած է ելեկտրականութեան բացակայութեան պատճառով:*

ԼԻԲԱՆԱՆ

# ՆԱՀԱՏԱԿՆԵՐՈՒ ՍՐԲԱԴԱՍՈՒՄԻ ՀՈԼՈՎՈՅԹԻՆ ԱՆՀՐԱԺԵՇՏՈՒԹԻՒՆՆ ՈՒ ԲԱՐԴՈՅԹՆԵՐԸ


Դոկտ. Աբէլ Քհնյ. Մանուկեան

«Յիշողութեանս մէջ կը տողանցեն Սահակ Մեսրոպեան դպրոցի ու Տատրեան մանկապարտէզի ուսուցիչներս: Անոնց դէմքերը կը տեսնեմ սա պահուն, այս նոյն սրահին մէջ: Նաեւ աշակերտներ՝ իրենց ծանր պայուսակներով: 41 տարիներ անցած են, սակայն տակաւին շատ լաւ կը յիշեմ աշակերտի գրասեղաններուն վրայ մեր երգած վարժարանի քայլերգը. կորիւններ ենք Հերոսածին Հաճընին... Պատիւ յարգանք Սահակ-Մեսրոպ սուրբ զոյգին» Այս տողերուն ընկերակցող ակնյայտ յուզումով Դոկտ. Աբէլ Քհնյ. Մանուկեան սկսաւ ներկայացնել իր զեկոյցը: Սակայն այդ՝ բացումի հատուածն էր միայն: Հանդիսութեան ծանրակշիռ մասը նուիրուած էր Մեծ Եղեռնի նահատակներու սրբադասումի հոլովոյթի քննարկումին:

Կազմակերպութեամբ «Արարատ» օրաթերթի, Նոր Հաճնոյ Հ.Կ.Բ.Մ-ի դարմանատան սրահին մէջ Ուրբաթ, 8 Նոյեմբեր 2013-ի երեկոյեան տեղի ունեցաւ դասախօսական հանդիսութիւն, «Ո՞ւր է հայ եկեղեցին այսօր եւ ո՞ւր են անոր յարգած սուրբերը» խորագրին տակ: Հանդիսութեան ներկայ էին ՍԴՀԿ Կեդրոնական վարչութեան փոխ ատենապետ՝ պետական երեսփոխան Ընկ. Սեպուհ Գալփաքեան, Կեդրոնական վարչութեան անդամ Ընկ. Տոքթ Եղիկ Ճէրէճեան, ՍԴՀԿ Լիբանանի շրջանի Վարիչ մարմնի ատենապետ Ընկ. Ալեքսան Քէօշկէրեան, ՌԱԿ Լիբանանի Շրջանային վարչութեան ատենապետ Յարութիւն Երկանեան, ՀԿԲՄ-ի ատենապետ՝ Պէյրութի քաղաքապետարանի անդամ Արամ Մալեան, Սուրբ Գէորգ եւ Սուրբ Յարութիւն եկեղեցիներու հոգեւոր հովիւները, միութենական անձնաւորութիւններ եւ լիբանանահայեր:

«Արարատ»-ի տնօրէն Ընկ.հի Անի Եփրեմեան իր բացման խօսքին մէջ ներկայացուց հիւրին՝ Ժընեւէն ժամանած Դոկտ. Աբէլ Քհնյ. Մանուկեանի կենսագրական գիծերը եւ եկեղեցական գործունէութիւնը: «Հայ եկեղեցին իր նուիրական ու բարոյական բոլոր ուժերով նպաստած է հայ ազգի գոյատեւումին եւ հզօրացումին, ինչպէս նաեւ ազգային պահանջատիրութեան: Հայաստանեայց առաքելական եկեղեցին սրբութիւն-սրբոց է, իր կրօնական, հոգեւորական, բարոյական եւ ազգային առումներով: Սակայն այսօր, արդիական մարտահրաւէրներուն առջեւ, ինչպիսի դիրքորոշում կ՚որդեգրէ մեր եկեղեցին եւ ո՞ւր պէտք է փնտռել լուծումները» ըսաւ Ընկ.հի Եփրեմեան:

Օրուան զեկուցաբերը ապա մանրամասնօրէն անդրադարձաւ Հայոց ցեղասպանութեան նահատակներու սրբադասման հոլովոյթին, անոր դրական եւ ժխտական տեսանկիւններուն, բարդոյթներուն եւ անհրաժեշտութեան: Գլխաւոր հարցերն էին հետեւեալները. արդեօք հայ ժողովուրդը պէտք ունի՞ նոր սուրբերու: Արդեօք եկեղեցական կանոններու առումով կարելի՞ է սրբադասում կատարել: Ի՞նչ հիմքերու վրայ պէտք է մշակուի այդ հոլովոյթը եւ ի՞նչ խոչընդոտներ կան: Ի՞նչ օրինակներ կարելի է քաղել այլ եկեղեցիներէ:

Զեկուցաբերը նախ նշեց, թէ սրբադասումի հարցով վերջնական որոշում տակաւին չէ առնուած, այլ քննարկումները պիտի շարունակուին յառաջիկայ գարնան, ամբողջացնելու համար կարգ մը կարեւոր ուսումնասիրութիւններ: Մէկ ու կէս միլիոն նահատակներու սրբադասումը ակնյայտօրէն որակելով «հաւաքական», Դոկտ. Աբէլ Քհնյ. Մանուկեան նշեց, որ այդ հոլովոյթի յաջող եզրափակումը մեր հոգեւոր եւ բարոյական պարտքն է: «Սուրբերը պէտք է ըլլան հաւատքով վկայուած անձեր: Հասած պէտք է ըլլան հոգեւոր լուսաւորութեան: Արդեօք ժամանակը չէ՞, որ Ցեղասպանութեան ոգեկոչումի աւանդական ձեւերէն անդին անցնելով հասնինք կրօնական ոգեկոչումի աւելի բարձր աստիճանի», հարց տուաւ ան: Զեկուցաբերը տուաւ Կաթողիկէ եկեղեցւոյ օրինակը, որ «..գրեթէ ամէն օր առնուազն մէկ նոր սուրբ կը յայտարարէ»: Թուելով կարգ մը օրէնքներ, որոնք կրնան խոչընդոտել սրբադասումի հոլովոյթի հեզասահ ամբողջացումը ան նշեց, թէ ժողովրդային պահանջքը աւելի ուժեղ է քան օրէնքը: «Գոյութիւն ունի ժողովրդային պահանջք ընդառաջելու սկզբունքը: Ֆրանչիսկոս պապը սուրբ յայտարարեց Օսմանցիներուն դէմ կռուած 800 իտալացիներու խումբ մը, որ զոհուեցաւ մահմետական չդառնալու համար: Արդեօք հայերը եւս այդպիսի պարտադրանքի առջեւ դրուելով չէի՞ն նահատակուած» հարցադրեց Դոկտ. Աբէլ Քհնյ. Մանուկեան: Ան դիտել տուաւ, որ մեր եկեղեցւոյ մէջ յիշուած սուրբերուն մեծ մասը օտարազգի են, իսկ հայազգի սուրբերը թիւով միայն 64 են: «Վերջին ⇨ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

# ՀԱՅԱՍՏԱՆԸ ԱՐԺԱՆԱՑԱՒ «National Geographic Traveler»-Ի «ՏԱՐՈՒԱՆ ՅԱՅՏՆՈՒԹԻՒՆ» ՄՐՑԱՆԱԿԻՆ

*Ամփոփուեցան «National Geographic Traveler» ամսագրի ռուսական տարբերակին կողմէ կազմակերպուած լաւագոյն զբօսաշրջային ուղղութեան մրցոյթի առցանց քուէարկութեան արդիւնքները: «Արմէնփրես»-ը կը հաղորդէ՝ վկայակոչելով Հայաստանի ազգային մրցունակութեան հիմնադրամի հանրային կապերու գրասենեակը, որ մրցոյթի արդիւնքով Հայաստանը յաղթած է «Տարուան յայտնութիւն» անուանակարգին մէջ:*

*Այս տիտղոսը ապացոյցն է Հայաստանի բազմաբնոյթ զբօսաշրջութեան խթանման ուղղութեամբ Հայաստանի ազգային մրցունակութեան հիմնադրամի կողմէ իրականացուող բազմաթիւ քայլերուն: Ան յատկապէս* ⇨ 4

# ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԸ ԾԱՆՕԹԱՑԱԾ Է ԼՂՀ ՄԷՋ ԲԱՆԱԿԱՇԻՆՈՒԹԵԱՆ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐՈՒՆ ՆԵՐԿԱՅ ՎԻՃԱԿԻՆ

1 ⇨

*Նախագահի մամուլի գրասենեակից յայտնում են, որ շրջայցի ընթացքում Սերժ Սարգսեանը ծանօթացել է բանակաշինութեան ուղղութեամբ իրականացուող աշխատանքների ներկայիս վիճակին, որից յետոյ ներկայ է գտնուել բանակային բնագծի հիւսիս-արեւելեան հատուածում առանձին մոտոհրաձգային ստորաբաժանումներից մէկի ներգրաւմամբ անցկացուող զօրավարժութիւնների դիտարկմանը՝ «Գումարտակի անցումը պաշտպանութեանը» թեմայով, որի ժամանակ ներկայացուել են ընթացքից պաշտպանութեան բնագծի գրաւումը եւ պաշտպանական մարտի վարման տարրերը:*

*Հանրապետութեան նախագահը ներկայ է գտնուել նաեւ զինւանում շտաբ-զօրանոցի մասնաշէնքի եւ սպաների համար ժամանցի ու հանգստի մասնաշէնքի բացման արարողութիւններին: Նա ծառայութեան ընթացքում առաւել աչքի ընկած եւ բարեխիղճ սպաներին ու զինուորներին պարգեւատրել է թանկարժէք նուէրներով, զրուցել զինծառայողների եւ նրանց ընտանիքի անդամների հետ:*

*Ցուցադրական պարապմունքից յետոյ, օրուայ աւարտին ՊԲ շտաբում տեղի է ունեցել հայկական երկու պետութիւնների նախագահների, պաշտպանական գերատեսչութիւնների ղեկավարների եւ հրամանատարական կազմի մասնակցութեամբ խորհրդակցութիւն:*

ԳԱՀԻՐԷ

# ՀՄԸՄ ՆՈՒՊԱՐԻ ՖՈՒԹՊՈԼԻ ԴԱՇՏԻ ԲԱՑՈՒՄ



*Շաբաթ, 9 Նոյեմբերին, երեկոյեան ժամը 7.00-ին, տեղի ունեցաւ Գահիրէի ՀՄԸՄ Նուպարի փութպոլի վերանորոգուած դաշտի բացման տօնակատարութիւնը, հովանաւորութեամբ Գերշ. Տ. Աշոտ Եպս. Մնացականեանի եւ նախագահութեամբ Տէր եւ Տիկին Պերճ Թէրզեանի: Պատուոյ հիւրն էր ՀՀ դեսպան Տոքթ. եւ Տիկին Արմէն Մելքոնեան: Կատարուեցաւ պատշաճ յայտագիր մը, որմէ ետք տեղի ունեցաւ ՀՄԸՄ Նուպարի տարբեր տարիքային փութպոլի խումբերու մրցումներ:*

*Դաշտի վերանորոգութեան ծախսերուն իր մասնաւոր օժանդակութիւնը ունեցած է Գահիրէի ՀԲԸՄ-ի «Սաթենիկ Զագըր» հիմնադրամը:*

# ՈՒՐՈՒԿՈՒԷՅԱՀԱՅ ՆԱԽԱՐԱՐԻ ԱՅՑԸ ՀԱՅԱՍՏԱՆ

*Հայաստանի վարչապետ Տիգրան Սարգսեան ընդունեց Ուրուկուէյի զբօսաշրջութեան եւ մարմնակրթութեան հայազգի նախարար Լիլիամ Քէշիշեանի գլխաւորած պատուիրակութիւնը:*

*Վարչապետը գոհունակութեամբ նշեց, որ Հայաստանը եւ Ուրուկուէյը ունին քաղաքական փոխ ըմբռնումի բարձր մակարդակ, կարեւորելով Ուրուկուէյի կողմէ Հայոց ցեղասպանութեան փաստի ճանաչումը: «Ուրախ ենք, որ մեր հայրենակիցը բարձր պաշտօն կը զբաղեցնէ մեր բարեկամ երկրին մէջ եւ յոյս ունինք, որ այցելութիւնը խթան հանդիսանայ յարաբերութիւններու զարգացումին համար: Մարզական ոլորտին մէջ ունինք բաւական լաւ աւանդոյթներ իսկ զբօսաշրջութեան ոլորտին մէջ՝ տակաւին չգործածուած ներուժ», ըսաւ վարչապետը:*

*Զրուցակիցները քննարկեցին տարբեր ոլորտներէ ներս համագործակցութիւնը զարգացնելու միջոցները եւ փորձի փոխանակումի հնարաւորութիւնները, կարեւորելով մուտքի արտօնագիրներու դիւրացման հոլովոյթը:*

*Ուրուկուէյցի նախարարը նաեւ տեսակցեցաւ Հայաստանի Սփիւռքի նախարար Հրանուշ Յակոբեանի հետ: Վերջինս ողջունեց մայրաքաղաք Մոնթէվիտիոյի մէջ Հայոց ցեղասպանութեան նուիրուած թանգարան կառուցելու որոշումը եւ խոստացաւ գիրքեր եւ նիւթեր տրամադրել թանգարանին: Յակոբեան նաեւ ներկայացուց Սփիւռքի նախարարութեան տարբեր ծրագիրները եւ սուրիահայերուն տրամադրուող օգնութիւնները:*



# ՀԱՅԱՍՏԱՆԷՆ ԱՐՏԱԳԱՂԹԸ ԿԸ ՇԱՐՈՒՆԱԿՈՒԻ

1 ⇨

*Հրապարակուած տուեալներու համաձայն, 1 միլիոն 118 հազար 683 մարդ, միայն Հայաստանի քաղաքացիներ, այս տարուայ 9 ամիսներու ընթացքին երկրէն դուրս եկած են: Մինչդեռ, անցեալ տարի նոյն ժամանակաշրջանին այդ թիւը չէր հասած նոյնիսկ 1 միլիոնի, եւ 957 հազար 153 էր: Փաստօրէն այս տարի երկրէն մեկնողներու թիւը աւելցած է 161 հազար 530-ով:*

*Տիկին Կոյումջեան կը վստահեցնէ, որ հիմնականին մէջ վերադարձերը կ՚ըլլան Հոկտեմբեր, Նոյեմբեր, Դեկտեմբեր ամիսներուն՝ օրինակ բերելով, որ անցած տարեվերջին բացասական հաշուեկշիռը 109 հազար 405-ից հասած է 42 հազարի:*

*Ժողովրդագիր Ռուբէն Եգանեանի կարծիքով, մարդկանց հիմնական մասը կը մեկնի արտագնայ աշխատանքի, վերադառնալու մտադրութեամբ: Սակայն, այդ ժամանակաւորը կարող է վերածուիլ մշտականի. – «Հիմա մենք ունենք դրսում ժամանակաւոր միգրանտների մի զանգուած, որը, իմ գնահատմամբ, կազմում է 150-200 հազար մարդ: Ես ուզում եմ օբիեկտիւ լինել. նրանք դեռ չեն խզել կապերը, վերջնական վճիռ չեն կայացրել, բայց, ըստ էութեան, մի տարուց աւելի ժամանակով բնակւում են արտերկրում: Եւ կան այն միգրանտները, որոնց բացակայութիւնը տեւում է վեց ամսից մինչեւ մէկ տարուայ միջակայքում: Բայց այդ մարդիկ էլ, եթէ լինի աշխատանք, ամբողջ ցալը դա է, կը շարունակեն մնալ»:*

**ԹՈՒՐՔԻԱ**

# ՀԱՅ-ԹՈՒՐՔ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԵԱՆ ՆՈՐ ԶԱՐԳԱՑՈՒՄՆԵՐ

*Հինգշաբթի, 7 Նոյեմբեր 2013-ին, Պոլսոյ մէջ «Կանաչներ եւ Ձախ Ապագայ» կուսակցութեան մէկ յանձնախումբը ժողով մը գումարած է մասնակցութեամբ տարբեր կազմակերպութիւններու եւ անհատներու, որոնք ճանչցած են Հայոց Ցեղասպանութիւնը, «Պատմութեան Հետ Առերեսում» վերնագրին տակ, քննարկելու մինչեւ 2015 Թուականը Հայոց Ցեղասպանութեան 100-ամեակին առթիւ տարուելիք աշխատանքներն ու ձեռնարկները: Այս ժողովին մասնակցելու հրաւէր ստացաւ Ս. Դ. Հնչակեան Կուսակցութիւնը:*

***Այս ուղղութեամբ, ՍԴՀԿ Կեդրոնական Վարչութեան արտաքին յարաբերութիւններու մարմինը ժողովականներուն յղեց հետեւեալ նամակը.***

*«Յարգելի բարեկամներ,*

*Իմացանք որ Պոլսոյ մէջ տեղի պիտի ունենայ «Պատմութեան Հետ Առերեսում» վերնագրին տակ ժողով մը, կազմակերպութեամբ «Կանաչներ եւ Ձախ Ապագայ» կուսակցութեան:*

*Այս առիթով մեր կածիքը այն է, որ պատմական դէպքերը մոռացութեան մատնելը կամ զանոնք չճանչնալ ձեւացնելը սխալ բաներ են: Պատմութեան պէտք է նայիլ բաց աչքերով: Մեր ընդհանուր պատմութեան մէջ ամենամեծ ցաւ պատճառած աղէտներէն է Հայոց Ցեղասպանութիւնը, որուն հարիւրամեակին սեմին ենք այսօր:*

*Դատապարտել եւ ընդունիլ սեփական սխալը, զայն լսելի դարձնել հանրութեան՝ յարիր է միայն համամարդկային բարձր գիտակցութեամբ օժտուած մարդոց:*

*Այս եկակէտէն մեկնած, «Պատմութեան Հետ Առերեսում» վերնագրին տակ գումարուող ժողովը, եւ անոր որոշելիք ձեռնարկները, մուտք մըն են դէպի անցեալի սխալները չկրկնելու, ժողովուրդներու բարեկամութեան եւ տարածաշրջանին մէջ արդարութիւն եւ խաղաղութիւն հիմնելու նպատակին:*

*Մենք ձեռք կը մեկնենք Ձեզի եւ կ'ողջունենք Ձեր նախաձեռնութիւնները՝ համագործակցութեան մաղթանքներով»:*

***Ժողովի աւարտին որոշուած է տարբեր ձախ կուսակցութիւններ ընդգրկող Ժողովուրդներու Ժողովրդավարական Կուսակցութեան (HDP) մասնակցութեամբ ընդլայնուած ժողով մը գումարել եւ աւելի զարգացնել աշխատանքներու ծաւալը:*** 4

**ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ԽՈՀԵՐ**

# ԱՅԼԸ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Անցեալ սիւնակը կը կեդրոնանար հետեւեալ գաղափարին շուրջ. յետարդիականութեան (postmodernism) «պաշտօնականացում»-ը Այլին (The Other), Եուլիա Քրիսթեւայի հոգեբուժական բացատրութիւնը ընդունելու Այլը եւ ապա բուժելու անոր բացասական գոյութիւնը՝ առանց փորձելու վերացնել նոյն ինքը Այլը:

Ծչգրիտ օրինակ մը կրնայ յաւելեալ բացատրութիւն տալ:

Երաժշտութեան (ինչպէս նաեւ գրականութեան եւ արուեստի) մէջ քաղուածք-փոխառութիւնները եւ մշակում-փոխադրութիւնները տարածուած եւ ընդունուած երեւոյթներ են: Երաժշտական սեռի (genre) սիրահար-մասնագէտները քաղուածքը կը կապեն հատուածային մէջբերումի հետ, իսկ մշակում-փոխադրութիւնը ամբողջական գործի մը հետ: Տարբերութիւններ կը գտնեն նաեւ մշակումի, փոխադրութեան, գործիքաւորումի միջեւ, ոչ միշտ յաջողելով սահմանել, օրինակ, մշակումի եւ փոխադրութեան (Պախի Վիվալտի Քոնչերթոները, կամ Պախ-Կունոյի Աւէ Մարիան, կամ Վակնէր-Լիսթի դաշնակի գործերը մշակումնե՞ր են թէ փոխադրութիւններ), կամ մշակումի եւ ստեղծագործութեան (Կոմիտաս վարդապետի երգերը մշակումնե՞ր են թէ ստեղծագործութիւններ) միջեւ եղած տարբերութիւնները: Բնականաբար, այս եզրերը ունին իրենց գործնական կարեւորութիւնը: Բայց նիւթիս կը հետաքրքրէ զանոնք միացնող գոյաբանական կողմը՝ երաժշտութեան մը գոյութիւնը *ուրիշ* երաժշտութեան մը մէջ, անկախ անուանումներէն: Հետեւաբար, վերոյիշեալ եզրերը նիւթիս առնչութեամբ պիտի ունենան պայմանական բնոյթ:

Յետարդիական մտածողութեան համակիր երաժշտագէտ Եոնաթան Քրամըր կը համեմատէ արդիական եւ յետարդիական շրջաններու քաղուածք-փոխառութիւնները, արդիականին իբրեւ նմոյշ բերելով Վակնէրի *Tristan und Isolde*-ի երեւումները Տեպիւսիի *Golliwog's Cakewalk*-ի եւ Պերկի Lyric Suite-ի մէջ, իսկ յետարդիականին համար նշելով զանազան մէջբերումները Ճոն Զորնի *Forbidden Fruit*-ի եւ Ուիլիըմ Պոլքոմի Երրորդ Համանուագին մէջ: Երկու ուղղութիւններուն տարբերութիւնները կը բացատրէ այսպէս.

«Հեռանկարային տարբերութիւն մը կայ արդիական [modernist] եւ յետարդիական [postmodernist] քաղուածքներուն միջեւ: Արդիական երաժշտահանները յաճախ կ'ուզեն տիրել, սեփականացնել, ցուցադրել իրենց վարպետութիւնը իրենց կատարած քաղուածքին նկատմամբ՝ զայն տեղադրելով արդիական բնաբաններու մէջ կամ աղճատելով զայն: Յետարդիականները աւելի հակուած են իրենց դիմած կամ քաղած երաժշտութիւնը պարզապէս ձգել այնպէս ինչպէս որ է՝ զայն ներկայացնելով առանց աղճատումի կամ երաժշտական ծանօթագրութեան: Հետեւաբար, յետարդիական երաժշտութիւնը յօժարութեամբ կ'ընդունի երաժշտութեան բազմազանութիւնը աշխարհի մէջ:» (Jonathan D. Kramer, 'The Nature and Origins of Musical Postmodernism', *Postmodern Music/Postmodern Thought*, edited by Judy Lochhead and Joseph Auner, Routledge, 2002, էջ 15):

Այս գաղափարը խնդիրներ կը յառաջացնէ: Խնդիրը չի կայանար մասերու անբաժանելիութիւն, տիալեքթիքական զարգացում, ամբողջականութիւն, անքակտելի կապեր եւ նման գաղափարներու մէջ, որոնց ենթադրեալ գոյութեան կամ բացակայութեան սահմանումները հիմնուած են գեղահնչիւնօրէն առարկայացուած բառ-որոշումներու եւ նախապէս վճռուած բառապաշարներու վրայ՝ կառուցուածք, գրելաոճ, մշակում, միջանցիկ զարգացում, եւլն., բառեր ու եզրեր՝ որոնք թէեւ առանձին վերցուած կը հնչեն «գիտական», կը դժուարանան չինել հաւաքագրելի կազմեր (կամ հաւաքակազմեր) եւ մեկնաբանել իմաստային չերտաւորումները իրենց բնաբաններուն մէջ:

Խնդիրը կը կայանայ քաղուածքի կամ առաջնաղբիւրի վերաիմաստաւորման մէջ: Ահաւասիկ պատմական քանի մը օրինակ:

Ծանօթ է, որ միջնադարի հայ եկեղեցական երաժշտութիւնը քաղուածքներ կատարած է ժամանակային առումով իրմէ առաջ գոյացած ֆոլքլորային երաժշտութենէն, զայն ընդելուզելով իր յատկանիշներուն հետ եւ անկարելի դարձնելով անոր վերատարանջատումը: Որոշ ժամանակ ետք, նոյնիսկ այդ ժամանակային տարբերութիւնը դարձաւ անտեսանելի: Օրինակ, այսօր բոլորին յայտնի *Քրիստոս ի մէջ մեր յայտնեցաւ* (Ներսէս Շնորհալիին վերագրուող) եւ Զէյթունցիներու քայլերգը՝ *Արեւն ելաւ* (ԺԹ. դարու քաղաքային ֆոլքլոր) երգերը՝ երկուքն ալ հայկական Կիլիկիայի տարածութեան ծնունդը, ունին միեւնոյն մեղեդային հիմքը: Իրենց բնաբանները իրարմէ կը զանազանուին տարբերակային (եւ ոչ հակադրային կամ բախումնային) հողի վրայ՝ մէկը եկեղեցական, միւսը քաղաքային, եւ կապուած են տարածական, ընկալողական ու բանահիւսական նմանութիւններով: Տարբերակումը զանազանութիւն է փոխգիտակցութեան, ծանօթութեան եւ ենթակայական կապի հիման վրայ:

Այս իմաստով կ'առաջնորդուէին նաեւ ԺԸ. դարու parody-ները կամ Պախի քոնչերթոներուն ընդմէջէն հնչող Վիվալտիի, Թորելլիի, Թելեմանի եւ Ալպինոնիի երաժշտութիւնները: Քաղող կամ փոխադրող երաժիշտները կը գործածէին կենդանի ու մօտէն ծանօթ եղանակներ եւ խորապէս կը վերապրէին անոնց հետ, այն աստիճան որ «քաղուած» ու «քաղող» երաժշտութիւններուն միջեւ սահմաններ չէին գոյանար:

ԺԹ. դարը ինքնութիւններու վերաիմաստաւորման (ի վերուստ իմաստաւորման), վերանայման ու վերակազմաւորման շրջանի սկիզբն էր: Ինքնութեան գոյութիւնն ինքնին հարց չի յարուցեր, հարցը կը սկսի երբ ինքնութիւնները կը վերածուին կուռքերու եւ իրարու կը բացառեն մրցակցութեան կեղծ անունին տակ: Ասիկա վիպապաշտութեան շրջանն էր երաժշտութեան մէջ: Լիսթի հրաշագեղ փոխադրութիւնները ոչ այլ ինչ են քան բնօրինակի տարբերակուած վերընթերցումները՝ թէ՛ բնագիրի եւ թէ՛ վերընթերցուած տարբերակի գիտակցական ճանաչողութեամբ: Լիսթն ու բնագիր երաժշտահանը (Վակնէր, Պեթհովէն, Շուպերթ) ներկայ են փոխադրութիւններուն մէջ, երկու անունները գոյութիւն ունին իբրեւ ԺԹ. դարուն նորովի ինքնակամութիւն ստացած «երաժշտահան» հասկացողութիւններ: Երկու ինքնութիւնները կան ու կը գործեն՝ առանց տակաւին բաժնուած ըլլալու երկուքի, առանց հասած ըլլալու երկուութեան բեւեռացման: Անոնք փոխներթափանցուած ինքնութիւններ են: Այս երկուութեան գաղափարը եկած է աւելի երկու երաժշտահաններու անուններու գոյութեան *գիտակցութենէն*, քան երկու տարբեր ինքնութիւններու գոյութեան *ճանաչողութենէն*: Լիսթ վստահաբար պիտի չմշակէր կամ փոխադրէր հայկական գեղջկական մեղեդի մը, որուն հետ ոչ մէկ փորձառական կապ ունէր: Բնականաբար, Կոմիտաս վարդապետ պիտի չմշակէր իրեն անծանօթ հունգարական մեղեդի մը:

Կոմիտաս վարդապետի առնչութեամբ հայ երաժշտութեան մէջ յառաջացած է նշանակալի շարժում մը: Անհամար փոխադրութիւններ կատարուած են ու կը կատարուին ուղղակիօրէն կամ անուղղակիօրէն հիմնուելով Կոմիտասի գիտելիքային արտադրութեան վրայ՝ Պատարագի փոխադրութիւն տուտուկներու կամ ջութակահարներու համոյթներու համար, երգերուն ազատ փոխադրութիւններ դասական ու ժողովրդական ամենատարբեր նուագարաններու ու կատարողական կազմերու համար: Կոմիտասէն բխած «փոխադրութիւն»-ը նաեւ ելած է գրաւոր-նոթագրուած շրջանակէն դուրս՝ դէպի ժողովրդային կենդանի յիշողութիւնը, յաւելեալ ցուցանիշ մը ըլլալով փոխադրուողի (Կոմիտասի) եւ փոխադրողի (ժողովուրդին) միջեւ գոյութիւն ունեցող սերտակցութեան եւ երկրորդին մտերմութեան առաջինին հետ (Պեթհովէն կամ Լիսթ գործադրական շատ քիչ տեղ ունին բանաւոր մշակոյթին մէջ եւ դասական երաժշտութեան «զարգացած» խաւէն դուրս): Հակառակ որ «ստեղծագործութիւն» հասկացողութեան աւարտունութեան եւ անձեռնմխելիութեան յաւակնորդները խստօրէն կը պայքարին այս երեւոյթին դէմ, բայց անոնք անկարող են դիմադրել ժողովրդային բնական-անարշիսթական (եւ ոչ թէ ամբոխավարուած ժողովուրդի կամ վերէն թելադրուած ամբոխավարութեան) շարժումը: Այս շարժումը չի փոխեր կամ զարգացներ Կոմիտասին, ինչպէս կը պնդեն երեւոյթին հակառակորդները, այլ տարբերակային շարժումի միջոցով կ'ընդլայնէ անոր գոյութիւնը թէ՛ գրաւոր եւ թէ՛ բանաւոր մշակոյթներուն մէջ: Անիկա իմաստ մըն է ժողովուրդի գոյաբանութեան մէջ եւ անիմաստ է այդ իմաստին ժխտումը: Այս ժողովրդային-անարշիսթական մասնակցութիւնը նաեւ Կոմիտասին դուրս կը հանէ վիպապաշտութիւն, արդիականութիւն, ստեղծագործութիւն, փոխադրութիւն սահմանումներու կաշկանդումներէն:

Հասնինք Քրամըրի յիշատակած ժամանակաշրջանին արեւմտեան արուեստին մէջ:

Արդիականութեան մասին իր կարծիքը՝ քիչ մը այլ դիտանկիւնէ նայելով, ունի իր մեկնաբանական առաւելութիւնը. «Արդիական երաժշտահանները յաճախ կ'ուզեն տիրել, սեփականացնել, ցուցադրել իրենց վարպետութիւնը իրենց կատարած քաղուածքին նկատմամբ՝ զայն տեղադրելով արդիական բնաբաններու մէջ կամ աղճատելով զայն:» Ճիշդ է՝ անոնք «կ'ուզեն տիրել», քանի որ փոխուած են ուժային յարաբերութիւններու օրէնքները՝ ամէնուրեք բացարձակացուած ինքնութիւններ, բազմապատկուած անհատականութիւններ եւ անխոցելի արժէքներ, այնքան որ անկարելի դարձած է տարբերակումը եւ անոր հետ կապուած նրբերանգային շարժումը: Իրերը անվերադարձօրէն բաժնուած են իրարմէ: Կազմուած է Այլը, որ տակաւին անանուն է, տակաւին չէ անուանուած Այլ եզրով:

Նախապատմական կոչուած ժամանակաշրջանին, բանաւոր երաժշտութիւնը կը շարժէր ինքն իր մէջ տարբերակուելով: Հին (antique) շրջանը սկիզբն էր քրմապետութիւններուն եւ թագաւորութիւններուն՝ որոնք քարէ պատերով իրենք իրենց բաժնեցին-պաշտպանեցին դուրսի աշխարհէն, եւ պէտք ունենալով դուրսի աշխարհի երաժշտութեան (եւ դուրսի աշխարհին ընդհանրապէս), անոր երաժշտութիւնը տարբերակային ընկալումով մերեցին իրենց բնաբաններուն մէջ, մինչ «դուրս»-ի երաժշտութիւնը շարունակեց իր նախապատմական շարժումը, յետագային ինք եւս իր մէջ ընդունելով կրօնական-արարողական տարրերը: Ասիկա շարունակուեցաւ աւատատիրութեան շրջանին՝ ուր եկեղեցապետութիւնը փոխարինեց քրմապետութեան: Վերածնունդի շրջանին սկսաւ հիմնուիլ պանքային համակարգն ու դրամական կուտակումներու վրայ հիմնուած նիւթական շահոյթները, ուր անհատի ձուլումը աստուածայնութեան գաղափարին մէջ աստիճանաբար կորսնցուց իր արժէքը եւ սկսաւ գործել մարդու անհատակա-

4

ՃԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## ՆԱՀԱՏԱԿՆԵՐՈՒ ՍՐԲԱԴԱՍՈՒՄԻ ՀՈԼՈՎՈՅԹԻՆ ԱՆՀՐԱԺԵՇՏՈՒԹԻՒՆՆ ՈՒ ԲԱՐԴՈՅԹՆԵՐԸ

2

սրբադասումը տեղի ունեցած է 15-րդ դարուն: 600 տարի անցած է առանց սրբադասումի, հակառակ որ մենք ունեցած ենք բազմաթիւ նահատակներ: Ցեղասպանութեան տարիներուն մեր եկեղեցին եւս մարտիրոսացաւ իր զաւակներուն հետ: Սակայն այսօր արդէն ունինք պետութիւն եւ պէտք ունինք նոր սուրբերու: Երջանկայիշատակ Վազգէն Ա. Կաթողիկոս հետաքրքրուած էր այս հարցով, սակայն օրին Հայաստանի պայմանները չէին ներեր: Այսօր անհրաժեշտ է այդ ուղին ամբողջացնել, որովհետեւ մեր նահատակները իրենց կեանքը տուին հաւատքի եւ համոզումներու համար, իսկ քաղաքական այդ ահաւոր անարդարութիւնը պէտք է ունենայ միջազգային ճանաչում եւ փոխհատուցում», ըսաւ զեկուցաբերը:

Ան ապա թուեց կարգ մը եկեղեցական աստուածաբանական խոչընդոտներ, որոնք կրնան բարդացնել սրբադասումի հոլովոյթը, օրինակ՝ բոլոր նահատակներուն մկրտուած չըլլալը, մէկ ու կէս միլիոն զոհերու շարքին հաւանական անհաւատներու, ոճրագործներու եւ հայ այլ յարանուանութիւններու հետեւորդ մեծաթիւ հայորդիներու ներկայութիւնը: Դոկտ. Աբէլ Քհնյ. Մանուկեան նաեւ ներկաներուն հետ զրուցեց սրբադասումի քաղաքական միտումներուն եւ հաւանական վտանգներուն մասին: Ոմանք մտահոգութիւն յայտնեցին, որ Ցեղասպանութեան զոհերը սրբադասելով, Մեծ Եղեռնի խնդիրը իր մարդկային-քաղաքական տեսադաշտէն կը փոխադրուի զուտ կրօնականի՝ աղաւաղելով իրականութիւնը: Ուրիշներ նշում կատարեցին խլամացած հայերու երեւոյթին, որ նոյնպէս ի մտի պէտք է առնուի Ցեղասպանութեան զոհերը սրբադասելու հանգրուաններուն ընթացքին:

Ընդհանուր եզրակացութիւնը այն էր, որ մեր նահատակները ինկած են՝ պահպանելու համար իրենց ազգային պատկանելիութիւնը ու պահպանելու համար իրենց ինքնութիւնը, որուն մէջ գլխաւոր բաղադրիչն է քրիստոնէական հաւատքը: Հետեւաբար, մէկ ու կէս միլիոն նահատակներու սրբադասումի հոլովոյթը կը կարօտի խոր եւ մանրակրկիտ քննարկումի՝ արծարծուած տարբեր դիտանկիւններէ, առնելու համար այնպիսի որոշումներ, որոնք թէ՛ արժանիօրէն կը յիշատակեն մեր նահատակները, թէ՛ կը պահպանեն մեր ազգային արժէքները, թէ՛ հարցին կը մօտենան իրապաշտօրէն, նկատի առնելով արդի աշխարհի հաւասարակշռութիւնները եւ քաղաքական իրականութիւնները:

Հանդիսութեան աւարտին տեղի ունեցաւ Դոկտ. Աբէլ Քհնյ. Մանուկեանի մշակած «Հայ Եկեղեցին Եւ Մեծ Եղեռնի Զոհերու Սրբադասման Հարցը» գիրքի գինեձօնը: Հեղինակին փափաքով, գիրքի վաճառքի ամբողջական հասոյթը տրամադրուեցաւ «Արարատ» օրաթերթի ապագայի ծրագիրներուն:

<u>ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ԽՈՀԵՐ</u>

## ԱՅԼԸ

3

նացման ընթացքը, հետեւաբար, parody-ներու, փոփոխակներու եւ փոխառութիւններու մէջ առաջին անգամ ըլլալով սկսաւ երեւալ «փոխադրուող»-ը կամ «փոխադրուող»-ի գաղափարին գիտակցութիւնը, առանց երբեք կազմելու ուժային կեդրոն մը կամ ուժային երկրորդային վերագրութիւն մը: Այս յարաբերութեան մէջ էական փոփոխութիւն մտցուց վիպապաշտութիւնը՝ որ սկիզբն էր բուն դրամատիրութեան, ուր Լիսթը կրնար տարբերակել Վակնէրին՝ բայց երկու անուններու գիտակցական գոյութեամբ եւ ուժային յարաբերութիւններու (փոխադրուող-փոխադրող) քողարկուած «մրցակցութեամբ»: Արդիականութիւնը ամրացումն էր դրամատիրական իմփերիալիզմին, ուր Տեպիւսին չէր կրնար տարբերակել Վակնէրին, այլ կրնար ճիգի գործադրութենէ ետք զայն ենթարկել իրեն: Իսկ յետարդիականութիւնը զուգահեռն էր նէօլիպերալիզմին, ուր Լիսթն ու Կոմիտասը կրնային/պէտք էին մէկտեղուիլ նոյն գործին մէջ՝ առանց իրար ճանչցած ըլլալու:

Ըստ Քրամըրին, յետարդիականութիւնը պէտք է ներկայացնէ քաղուածքային երաժշտութեան լաւագոյն պահը, քանի որ Այլը (քաղուածքը) կը գործածէ առանց միջամտութեան: Ուրեմն, երկու ինքնութիւններ այնտեղ են՝ առանց ներթափանցման, առանց ներծծման, առանց ներքնականացման, եւ ամենակարեւորը՝ տարբերակելու անկարողութեամբ: Տարբերակումը կը դադրի՝ երբ տարբերակուողն ու տարբերակողը կը դադրին ունենալ հաւաքական զգացողութիւն եւ իրերը կը դիտեն անջատաբար, նոյնիսկ եթէ կը կանգնին քով քովի: Ինքնութիւններու ցուցադրութիւն, օտարացած ինքնութիւններու շքահանդէս:

Իր գրութենէն երկու ու կէս հազարամեակ ետք, պղատոնեան տրամախօսութիւն-երկխօսութիւնը դարձաւ անկիրառելի: Սոկրատեսի սպանութիւնը մնաց մեղկ ու անպաշտպան...:

(Վերջ 2)

## ՀԱՅԱՍՏԱՆԸ ԱՐԺԱՆԱՑԱՒ «National Geographic Traveler»-Ի «ՏԱՐՈՒԱՆ ՅԱՅՏՆՈՒԹԻՒՆ» ՄՐՑԱՆԱԿԻՆ

2

*կարեւոր է Հայաստանի պատմամշակութային եւ ազգային-հոգեւոր ժառանգութեան՝ ռուսական շուկային մէջ ճանաչելիութեան բարձրացման եւ ներգնայ զբօսաշրջային հոսքերու խթանման տեսանկիւնէն:*

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ**

Այսու կը ծանուցանենք եգիպտահայ յարգոյ մեր հասարակութեան, որ Առաջնորդարանին մօտ տրամադրելի են արեւմտահայերէն «Նոր Կտակարան»-ներ:

Փափաքողները, ունենալու համար, կրնան դիմել Ազգային Առաջնորդարան:

**Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

## ԵՐԵՒԱՆԻ ԿԵԴՐՈՆԸ ՏԵՂԻ ՈՒՆԵՑԱԾ ԲԱԽՈՒՄՆԵՐՈՒՆ ՀԵՏԵՒԱՆՔՈՎ ՁԵՐԲԱԿԱԼՈՒԱԾ Է 20 ՀՈԳԻ

1

*հրապարակից: Ոստիկանութեան ներկայացուցիչները նրանց յորդորել են չխախտել հասարակական կարգը եւ ազատել Մաշտոցի պողոտայի երթեւեկելի հատուածը, սակայն նրանք գրպաններից հանել են ինքնաշէն պայթուցիկներ եւ գետնին հարուածելով՝ սկսել են պայթեցնել, ապա մահակներով յարձակուել են իրենց կարգի հրաւիրող ոստիկանների վրայ», ըսուած է դէպքի առթիւ ոստիկանութեան տարածած յայտարարութեան մէջ:*

*Բողոքի ցոյցի մասնակիցները սակայն, յայտարարեցին որ բախումները հրահրած են սադրիչները:*

## ՀԱՅ-ԹՈՒՐՔ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԵԱՆ ՆՈՐ ԶԱՐԳԱՑՈՒՄՆԵՐ

3

*Միտքեր յայտնուած են Հայաստանի մէջ մասնակցելու Ցեղասպանութեան նուիրուած միջոցառումներուն, իսկ Գերմանիոյ մէջ ձախակողմեան Թուրքերու հետ Ցեղասպանութեան ճանաչման եւ ոգեկոչման ուղղութեամբ աշխատանքներ տանիլ:*

*Իմացանք նաեւ որ Նոյեմբերի 30-ին «Կանաչներ եւ Ձախ Ապագայ» կուսակցութեան համագումարը տեղի պիտի ունենայ Անգարայի մէջ, որուն հրաւիրուած է ՍԴՀԿ-ը:*

*Յիշեցնենք որ այս տարուան Յունիսին Պոլսոյ մէջ տեղի ունեցած 20-ներու ոգեկոչման ձեռնարկներուն իր զգալի մասնակցութիւնը բերած էր «Կանաչներ եւ Ձախ Ապագայ» կուսակցութիւնը*

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Տիար Աւետիս Մովսէսեան, Տիար Ալէն Էմիրզեան , Տիկին Անի Մովսէսեան եւ զաւակը՝ Ալեքս, Տիկին Ալիս Մովսէսեան եւ զաւակունք (Աւստրալիա), Տիկին Զուարթ Մովսէսեան եւ զաւակունք (ԱՄՆ), Տիկին Լիւսի Մովսէսեան, Տէր եւ Տիկին Պետրոս Ա. Մովսէսեան եւ զաւակունք, Տէր եւ Տիկին Վազգէն Մովսէսեան, Տէր եւ Տիկին Յարութիւն Մովսէսեան եւ զաւակը, Տէր եւ Տիկին Խեչօ եւ Սոնա Յակոբեան եւ զաւակունք, ինչպէս նաեւ Մովսէսեան, Էմիրզեան, Գրիգորեան, Ճիզմէճեան, Ղազարեան (Գանատա), Մանիքեան (Գանատա) ընտանիքները եւ համայն սգակիր պարագաները կը ծանուցանեն թէ Կիրակի, 1 Դեկտեմբեր 2013-ին, առաւօտեան ժամը 11-ին, յաւարտ Ս. Պատարագի, Գահիրէի Ս. Գրիգոր Լուսաւորիչ Եկեղեցւոյ մէջ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց եղբօր, մօրեղբօր եւ ազգականին, Ողբ.՝

**ՊԵՏՐՈՍ ՄՈՎՍԷՍԵԱՆԻ**

մահուան Ա. տարելիցին առթիւ:

Հանգուցեալին յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ գտնուիլ:

<u>ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ</u>

**ԳԱՀԻՐԷԻ ԹԵՄԱԿԱՆ ԺՈՂՈՎԻ 2013-Ի Բ. ՆԻՍՏ**

Այսու կը ծանուցենք, թէ Գահիրէի Պատկառելի Թեմական Ժողովի 2013-ի Բ. նիստը պիտի գումարուի Հինգշաբթի, 14 Նոյեմբեր 2013, երեկոյեան ժամը 8:00-ին, Հելիոպոլսոյ Պօղոսեան սրահին մէջ:

ԴԻՒԱՆ

ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

## Հ.Բ.Ը.ՄԻՈՒԹԻՒՆ - ԳԱՀԻՐԷ

## ՍԱԹԵՆԻԿ Ճ. ՉԱԳԸՐ ՀԻՄՆԱԴՐԱՄ

### Առողջապահական Հոգատարութեան Ծրագիր

Գահիրէի ՀԲԸՄ-ի վարչութիւնը կը տեղեկացնէ Աղեքսանդրիոյ եւ Գահիրէի հայութեան, թէ Միութեանս «Սաթենիկ Ճ. Չագըր» Հիմնադրամի Առողջապահական Հոգատարութեան Ծրագիրին 2014 տարեշրջանի անդամագրուիլ փափաքողները պարտին իրենց դիմումնագրերը ներկայացնել յատուկ հարցաթերթիկներու վրայ 1 Նոյեմբերէն 2013-էն մինչեւ 10 Դեկտեմբեր 2013.

<u>ԳԱՀԻՐԷԻ մէջ</u>

15, Էմատ Էլ Տին փողոց, Ա. յարկ Հեռ. 25931555

Ուրբաթ օրերը առաւօտեան ժամը 10-էն յ.մ. ժամը 3

<u>ՀԵԼԻՈՊՈԼՍՈՅ Կեդրոնը</u>

26, Մուրատ Բէկ փողոց – Հելիոպոլիս Հեռ. 22916444 - 24151127

Առաւօտեան ժամը 10-էն յ.մ. 3, բացի Կիրակի եւ արձակուրդի օրերէն:

<u>ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ Գրասենեակը</u>

19, Օմար Լոթֆի փողոց - Ա. յարկ

Կամաա-ի (Համալսարանի) կայարան Հեռ. 5920469

Երկուշաբթիէն Հինգշաբթի յ.մ. ժամը 6-9

<u>ԾԱՆՕԹ.-</u> Ա) Նոր դիմումնագրերուն համար կը խնդրուի ներկայացնել ինքնութեան թուղթին պատճէնը, 2 նկար եւ հայ համայնքին պատկանելու փաստաթուղթ:

Բ) Նորոգութեան համար դիմողներէն կը խնդրուի ներկայացնել 1 նկար եւ 2013-ի ծրագիրին մասնակցութեան քարտին պատճէնը: Առողջապահական Հոգատարութեան Ծրագիրին բարեփոխեալ կանոնագրութիւնը ստանալէ յետոյ, վճարել Ե. Ո. 180 մասնակցութեան սակը:

ՀԲԸՄ-ը ինքզինքին կը վերապահէ, բոլոր կարգի դիմումներուն ընդունումը կամ մերժումը:

ԳԱՀԻՐԷԻ ՀԲԸՄ-Ի ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly


P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com


Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1714 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 28 ՆՈՅԵՄԲԵՐ 2013 ՀԱՏԸ ՉԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٧١٤ الخميس ٢٨ نوفمبر ٢٠١٣


## ՅԱՆՈՒՆ ՃՇՄԱՐՏՈՒԹԵԱՆ (ՀԱՅԱՍՏԱՆԻ ԽՈՐՀՐԴԱՅՆԱՑՄԱՆ 93-ՐԴ ԱՄԵԱԿԻՆ ԱՌԻԹՈՎ)

Նոյեմբեր 29-ը Հայաստանի երկրորդ հանրապետութեան ծննդեան թուականն է:

1920 Նոյեմբեր 29-ին նոր էջ բացուեցաւ մեր նորագոյն պատմութեան մէջ, որ հակառակ հակասական կարծիքներու, չարամիտ պարսաւանքներու եւ անոր թերագնահատման եւ արժեզրկման ջանքերուն՝ կը մնայ նշանակալից՝ բազում առումներով:

Երկրորդ հանրապետութիւնը (Խորհրդային Հայաստանը) գոյատեւեց 71 տարիներ (1920-1991) եւ ինչքան կը հեռանանք անոր աւարտման թուականէն, այդքան աւելի կը զգանք ու կը շօշափենք թէ որքա՜ն էական ու շինիչ դեր խաղացած է այդ ժամանակահատուածը մեր ազգային կեանքէն ներս: 20-րդ դարու ոսկեդար մը՝ որ մշակութային, գիտական, ճարտարարուեստական, կրթական, արդիւնաբերական եւ տնտեսական սրընթաց նուաճումներու կողքին՝ հանդիսացաւ ապահով եւ անյողդողդ կռուան մը ազգին գոյատեւման, հողին վրայ ուռճացման, ազգահաւաքման եւ հայութեան բազմացման: Այսօր, երբ ընկերային շահագործումն ու դասակարգային բախումը լրջօրէն կը սպառնան Հայաստանի ներքին կեանքին, երբ հայրենալքումն ու երախտամոռութիւնը մահացու վարակի նման աւերներ կը գործեն Հայաստանի մէջ, երբ գիտական ու հոգեմտաւոր օճախները, գրական ու մշակութային կեանքը դարձած են նիւթապաշտութեան եւ վաշխառու դրամատիրութեան զոհերը, երբ գիւղեր ու աւաններ կը դատարկուին բանող ու տքնող բազուկներէ եւ երիտասարդ մարդուժէ, երբ այլասերումը՝ միասեռականութենէն մինչեւ աղանդաւորութիւն ու ապաբարոյական քարոզչութիւն դարձած են համատարած, յանուն ճշմարտութեան պէտք է ըսել, որ Հայաստանի երկրորդ հանրապետութիւնը փառքի եւ հպարտութեան շրջան մըն էր անտարակոյս:

1920-ին, երբ քեմալականներ խոյացած էին արեւելեան Հայաստան, երբ վերացման անդունդին հասած էր երկիրը, երբ հոգեվարքի հռնդիւններ սկսած էին լսուիլ ժողովուրդին մօտ ու ազգը կը մաքառէր իր վերջին յուսաբեկ բեկորներով եւ հայութեան մահուան բօթը մօտալուտ կը թուէր ըլլալ, Հայաստանի խորհրդայնացումը կասեցուց այս բոլոր բացասական զարգացումները եւ սկսաւ նոր ու խանդավառ կեանք մը հազիւ փրկուած Հայաստանի մէկ հողաշերտին վրայ: 71 երկար ու ծիգ տարիներ, բազում դժուարութիւններով եւ խոցելի կէտերով հանդերձ, այնպիսի՜ նուաճումներ արձանագրեցին, որ յանուն ճշմարտութեան պէտք է ընդգծել, որ Հայաստանի երկրորդ հանրապետութեան ուրացումն ու նսեմացումը պարզապէս մղուած է չարախնդութենէ եւ ապերախտութենէ: Ինչպիսի՜ կոթողներով հարստացաւ երկիրը, գիտական ինչպիսի՜ օճախներ ասպարէզ կը կարդային միջազգային ոլորտներէ ներս, աշխարհով մէկ սփռուած հայութիւնը ինչպիսի՜ խանդով եւ հայրենասիրական բուռն ոգիով կը դիմաւորէր հայրենական մշակութային միաւորներն ու գրական դէմքերը, հարիւրաւոր սփիւռքահայ ուսանողներ բարձրագոյն կրթութիւն ստանալու հնարաւորութիւն ունեցան եւ շատեր ազգին պիտանի անձեր դարձան: Խորհրդային Հայաստան աւիւն եւ աւիշ ներարկեց աշխարհացրիւ հայութեան: Բարոյական եւ հոգեկան թեւ եւ թիկունք էր ան, որ Խորհրդային Միութեան մեծ ընտանիքէն ներս ամրապինդ՝ լաւատեսութեամբ եւ յաղթական կեցուածքով կը նայէր գալիք հորիզոններու: Հետեւաբար, Նոյեմբեր 29-ով սկիզբ առած ֆիզիքական փրկութեան աւելի ուշ միացաւ կայացման եւ հզօրացման հանգրուանը:

### ՎԵՐՋԱՊԷ՞Ս...

Վերջերս, Հայաստանի Հանրապետութեան նախագահական պալատին մէջ, նախագահ Սերժ Սարգսեանի ձեռամբ, իր 80-ամեայ բեղուն եւ ազգաշէն վաստակին համար բարձր շքանշանով պարգեւատրուեցաւ նախկին պետական գործիչ, նախկին նախարար, քաղաքական ու կուսակցական, հասարակական կարկառուն անձնաւորութիւն՝ Վլատիմիր Մովսիսեանը: Ան խորհրդային օրերուն վարած էր երկրին ամենապատասխանատու պաշտօնը: Միջոցառման ընթացքին, իր ուղերձին մէջ նախագահը ի լուր աշխարհին յայտարարեց, թէ անուրանալի են Խորհրդային Հայաստանի տնտեսական, մշակութային, գիտական, կրթական ձեռքբերումները, որոնց հենքին վրայ կեանքի կոչուեցաւ Հայաստանի անկախութիւնը: Ան բարձր գնահատեց Խ. Հայաստանի պետական ղեկավարները, որոնք անմնացորդ նուիրուած էին ↳ 4

## ՎԻԼՆԻՒՍԻ ԳԱԳԱԹԱԺՈՂՈՎ. «ՑՏԵՍՈՒԹԻՒՆ ԵՒՐՈՊԱ»

*Հայաստանն ու Եւրոմիութիւնը դարձեալ հաստատեցին Արեւելեան գործընկերութեան շրջանակներուն մէջ համագործակցելու անհրաժեշտութիւնը եւ յետագայ զարգացում ապահովելու հրամայականը: Վիլնիւսի մէջ տեղի ունեցաւ Եւրոմիութեան «Արեւելեան գործընկերութեան» գագաթաժողովը, ներկայութեամբ Եւրոմիութեան անդամ 28 երկիրներու ղեկավարներուն, ինչպէս նաեւ Հայաստանի, Վրաստանի, Ուքրանիոյ եւ Ատրպէյճանի նախագահներուն, Մոլտավիոյ վարչապետին եւ Պելառուսիոյ արտաքին գործոց նախարարին: Եզրափակիչ փաստաթուղթին մէջ նշուած է, որ գագաթաժողովի մասնակիցները ողջունած են Հայաստանի հետ վիզաներու պարզեցումը եւ Հայաստանի ու Ատրպէյճանի նախագահներուն վերջին տեսակցութիւնը:*




*Յանձնառութիւն Եւրոպական չափանիշերուն Գագաթաժողովին ընթացքին Հայաստանի Հանրապետութեան նախագահ Սերժ Սարգսեան արտասանեց ուղերձ մը: Ան նշեց, որ Արեւելեան գործընկերութիւնը պէտք է բնական կամուրջ դառնայ: Սարգսեանի համաձայն եւրոպական չափանիշերուն յանձնառու մնալը՝ կանչն է հայ ժողովուրդի հոգեւոր մշակութային, պատմական ու քաղաքական ժառանգութեան:*

*«Արեւելեան գործընկերութիւնը նոր թափ հաղորդեց ժողովրդավարութեան, մարդու իրաւունքներու եւ իրաւունքի գերակայութեան սկզբունքներու հիման վրայ մեր պետութեան եւ հասարակութեան արդիականացման ուղղուած ջանքերուն: Մենք կը վերահաստատենք մեր յանձնառութիւնը շարունակելու նոր թափ հաղորդել մեր յարաբերութիւններու առանցքը կազմող բարեփոխումներուն: Մեր նպատակն է Եւրոմիութեան հետ ձեւաւորել այնպիսի գործուն կառուցուածք, որ մէկ կողմէ* ↳ 2

**ԳԱՀԻՐԷ**

### ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

Այսու կը տեղեկացնենք, թէ 14 Նոյեմբեր 2013-ին, ներկայութեամբ 19 երեսփոխաններու գումարուեցաւ Գահիրէի Պատկ. Թեմական Ժողովի Բ. նիստը:

Սոյն նիստին քննարկուեցան կարգ մը կալուածական հարցեր:

Քննարկուեցաւ նաեւ Հայոց Ցեղասպանութեան 100-ամեակի ծիրէն ներս իրականացնելի ծրագիրներու եւ միջոցառումներու հարցը եւ այս առթիւ Յանձնախումբ մը կազմուեցաւ Թեմականի անդամներէն՝ երկամեայ (2014-2015թ.) ծրագիր մը ներկայացնելու համար:

Յանձնախումբի անդամներն են.

| | |
|---|---|
| Տեարք՝ | Գալընեան Խորէն |
| Տոքթ. | Մազլումեան Արմէն |
| | Պալեան Մարտիկ |
| | Պըլըքտանեան Օննիկ |

Նոյն նիստին տեղի ունեցաւ նաեւ Պատ. Քաղաքական Ժողովի նոր անդամներու ընտրութիւնը, որմէ յետոյ, նորընտիր անդամները Առաջնորդ Գերշ. Տ. Աշոտ Եպիսկոպոս Մնացականեանի նախագահութեամբ ընտրեցին իրենց դիւանը՝ հետեւեալ կազմով.

| | | |
|---|---|---|
| Տեարք՝ | Օննիկ Պըլըքտանեան | Ատենապետ |
| | Շանթ Կապէյեան | Փոխ Ատենապետ |
| | Մարտիկ Պալեան | Ատենադպիր |
| Տոքթ. | Գէորգ Երզնկացեան | Գանձապահ |
| | Նոյրայր Տէօվլէթեան | Խորհրդական |
| | Գառնիկ Կրպոյեան | Խորհրդական |
| Տոքթ. | Լորիս Քէօհնէլեան | Խորհրդական |

ԴԻՒԱՆ
ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

## «ՀԵՌՈՒՍՏԱՄԱՐԱԹՈՆ-2013»Ի ՀԱՆԳԱՆԱԿՈՒԹԵԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԳՈՒՄԱՐԸ՝ $ 22.661.372

*Հայաստան Համահայկական Հիմնադրամի «Հեռուստամարաթոն 2013»-ին հաւաքագրուեցաւ $ 22.661.372:*

Դէպի Արցախ
En Route Artsakh

*«Դէպի Արցախ» խորագիրով 16-րդ հեռուստամարաթոնը մեկնարկեց 28 Նոյեմբերին:*

*Հաւաքագրուած գումարները պիտի փոխանցուին Վարդենիս-Մարտակերտ 116 քմ երկարութիւն ունեցող ճանապարհի կառուցման:*

*Ստորեւ, հեռուստամարաթոն 2013-ի նախնական տուեալները ըստ երկիրներու.-*

*-Ռուսիա $12.350.000*
*-Միացեալ Նահանգներ՝ Արեւմտեան շրջան (Լոս Անճելըս) $ 2.000.000*
*-Ֆրանսա, Գերմանիա, Հոլանտա, Զուիցերիա, Յունաստան, Պելճիքա (Համաեւրոպական հեռախօսամարաթոն) $ 1.918. 626*
*-Հայաստան՝ $ 1.600.000*
*-Զուիցերիա՝ $ 1.200.000*
*-Արցախ՝ $ 1.000. 000*
*-Միացեալ Նահանգներ՝ Արեւելեան շրջան (Նիւ Եորք)՝ $ 1.000.000*
*-Արժանթին՝ $ 700.000*
*-Թորոնթօ՝ (Գանատա) $ 225.000*
*-Պրազիլ՝ $ 170 .000*
*-Մոնրէալ՝ (Գանատա)՝ $ 120. 000*
*Մեծն Բրիտանիա՝ $ 100.000*
*Լիբանան՝ $ 94.000*
*Իրան՝ $ 60.000*
*Աւստրիա՝ $ 10.000*

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ ԱՂՔԱՏՈՒԹԻՒՆԸ ՆՈՒԱԶԱԾ Է ՍԱԿԱՅՆ ՄԷԿ ՄԻԼԻՈՆ ՀՈԳԻ ԿԸ ՄՆԱՅ ՉՔԱՒՈՐ

*Ազգային Վիճակագրական Ծառայութեան հրապարակած զեկոյցին համաձայն՝ 2012-ին Հայաստանի մէջ աղքատութեան ցուցանիշը նուազած է՝ կազմելով 32,4 տոկոս:*

*Այս թիւը աւելի քան 2.5 տոկոսով պակաս է 2011-ի ցուցանիշէն, որ կը կազմէր 35 տոկոս:* ↳ 2

## ՀԱՅԱՍՏԱՆ

## ՍԴՀԿ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԵԱՆ 9-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ



*Նոյեմբեր 24-ին Երեւանի մէջ տեղի ունեցաւ ՍԴՀԿ Հայաստանի կազմակերպութեան 9-րդ Համագումարը, որու աւարտին Հրապարակուեցաւ Հետեւեալ յայտարարութիւնը.*

*1. Ներքին քաղաքական Հարցերում ՍԴՀԿ-ն շարունակում է Համարել, որ կայ աՀռելի ընկերային անարդարութիւններ, օլիգարխիա եւ մենաշնորՀ, որի դէմ պայքարին է կոչուած նաեւ ՍԴՀԿ նորընտիր վարչութիւնը: ՍԴՀԿ-ն որդեգրում է լաւին լաւ, իսկ վատին վատ ասելու քաղաքականութիւնը, ՍԴՀԿ-ն իրեն յայտարարում է բանուորի, գիւղացու, Հալածեալի պաշտպան եւ այսուՀետ լինելու է այնտեղ, որտեղ խախտւում են Հայաստանի քաղաքացիների իրաւունքները: Մեր ուշադրութեան կենտրոնում է լինելու յատկապէս աշխատաւոր մարդու իրաւունքները, որոնց Համատարած խախտումներն ակնառու են:*

*2. Արտաքին քաղաքական առումով ՍԴՀԿ-ն զգուշաւոր լաւատեսութեամբ ողջունում է Մաքսային Միութիւն անդամագրուելու Հայաստանի իշխանութիւնների քաղաքական որոշումը, սակայն նաեւ կոչ անում Եւրոպայի Հետ շարունակել քաղաքական շփումներն ու գործընթացները:*

*3. Արցախի Հարցը անկիւնադարձային է Հնչակեան կուսակցութեան Համար: Մեզ Համար ընդունելի է ցանկացած որոշում, որը ընկալելի կը լինի Արցախի քաղաքացու Համար: ՎստաՀ ենք, որ Հայաստանն էլ եղել եւ մնում է Արցախի անկախութեան ու անվտանգութեան երաշխիքն ու պաՀովողը: Կարծում ենք, որ օր առաջ Արցախի իշխանութիւնները պէտք է մաս կազմեն բանակցային գործընթացին:*

*4. 2015 թ-ի Ցեղասպանութեան 100-ամեակին ընդառաջ ՍԴՀնչակեան կուսակցութիւնն իր ուժերի ներածի չափով աշխարՀով մէկ իր քոյր կառոյցների միջոցով շարունակելու է լոպպիստական քաղաքականութիւնն՝ ուղղուած Թուրքական ժխտողականութեան դէմ: Մենք Հասնելու ենք Հայոց Մեծ Եղեռնի միջազգային ճանաչմանը եւ այդ աղէտի Հետեւանքով Թրքական իշխանութիւնների կողմից Հատուցմանը: Այս առումով ողջունում ենք նաեւ Ցեղասպանութեան 100-ամեակի ՅանձնաժողովԸ, որը Համախմբում է Համայն Հայութեանը:*

*Ս.Դ. Հնչակեան կուսակցութեան 9-րդ Համագումարի պատուիրակները ընտրեցին վարչութեան նոր կազմը:*

1

## ՅԱՆՈՒՆ ՃՇՄԱՐՏՈՒԹԵԱՆ

Հայաստանին ու հայ ժողովուրդին: Իրօք, Խ. Հայաստանի պետական-քաղաքական բազմաթիւ դէմքեր Գրիգոր Յարութիւնեանէն մինչեւ Եակով Զարոբեան, Անտոն Քոչինեանէն մինչեւ Կարէն Դեմիրճեան անզուգական եւ պատկառազդու առաջնորդներ էին, որոնք պետականաշինութեան մէջ զգալի ներդրում ունենալով Հայաստանի կայացման եւ բարգաւաճման գործին՝ բերին իրենց վիթխարի օժանդակութիւնը:

Վերջապէ՛ս Հայաստանի առաջին դէմքը պարզեց իրողութիւնը այնպէս՝ ինչպէս որ կայ: Վերջապէ՛ս Հայաստանի Հանրապետութեան նախագահին պալատէն հնչեց ճշմարտութեան այն հեղինակաւոր խօսքը, որ յաճախ դիտումնաւոր կերպով շրջանցուած էր: Վերջապէ՛ս փաստ մը անգամ մը եւս գրաւեց լուսարձակներուն ուշադրութիւնը՝ երկոտասնեակ տարիներէ ի վեր լուսանցքայնացուելէ յետոյ:

Վերջապէ՛ս մարդիկ լսեցին այն շառաչուն իրականութեան մասին, որ ոմանք կը փորձէին շպրտել պատմութեան զամբիւղը: Բայց՝ յանուն ճշմարտութեան, Նոյեմբեր 29-ով գոյառուած Խորհրդային Հայաստանի Հանրապետութիւնը կը մնայ մեր պատմութեան պանծալի դրուագը սերունդներու յիշողութեան մէջ:

Պատմութեան հոլովոյթին տրամաբանութեամբ եւ անոր շղթային օղակներուն հետեւելով 1920-էն 1991 թուականներու հանրապետութիւնը երկրորդն է, որուն յաջորդեց նորագոյն փուլը՝ երրորդ հանրապետութիւնը՝ 1991 Սեպտեմբեր 21-էն ետք:

Հայութեան բոլոր հատուածները (քաղաքական կուսակցութիւններ, պատմաբաններ, վերլուծաբաններ) կ'ընդունին այս ընկալելի յաջորդականութիւնը: Բայց կան հետեւողական յամառներ, պնդաճակատ եւ կարծրամիտ տեսաբաններ՝ իրենց աչազուրկ հետեւորդներով, որ այժմու հանրապետութիւնը կ'ուրակեն երկրորդ՝ անգօսնելով եւ արհամարհելով 71-ամեայ մեր շքեղ պատմութիւնը:

Ասոնք դժուարութի՞ւն ունին տեսնելու իրականութիւնը. գաղափարախօսական քինախնդրութիւնն ու մաղձոտ դասակարգութիւնը այսքա՞ն կը թունաւորէ սերունդները: Յանուն ճշմարտութեան վերջապէ՛ս օր մը նմաններ պիտի ընդունի՞ն Խ. Հայաստանի վիթխարի ժառանգութեան եւ անժխտելի իրականութեան երեւոյթը: Կ'ենթադրեմ՝ ո՛չ...:

*(ԱՐԱՐԱՏ)* ԱՒԵՏԻՍ ՌԱԶՄԻԿ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ ՀԱԿԱԾԽԱԽՈՏԱՅԻՆ ՊԱՅՔԱՐԻ ԿԸ ՍԿՍԻ



*Հայաստանի կառավարութիւնը մտադիր է խստացնել ծխելու դէմ պայքարի միջոցառումները՝ փոփոխութիւններ կատարելով «Գովազդի մասին» ՀՀ օրէնքում, սաՀմանափակելով ծխախոտի եւ ծխախոտային արտադրատեսակների յետագայ գովազդը:*

*Գործող օրէնքի Համաձայն՝ ծխախոտային արտադրատեսակների գովազդն արգելւում էր Հեռուստատեսութեամբ, ռադիոյով, էլեկտրոնային եւ տպագիր լրատուամիջոցներով:*

*Հինգշաբթի տեղի ունեցած կառավարութեան նիստի ընթացքում վարչապետ Տիգրան Սարգսեանը մեղադրել է Հասարակական կազմակերպութիւնների ծխելու դէմ պայքարում անբաւարար ջանքերի Համար, չնայած Հայաստանում ծխելու պատճառով բարձր մաՀացութեանը: Նրա խօսքով՝ ծխելը լուրջ խնդիր է Հասարակութեան Համար, եւ կոչ է արել կազմակերպութիւններին բարձրացնել իրենց ձայնը:*

4

## ՀԱՅԿԱԿԱՆ ՆՈՐ ԱՒԻԱՓՈԽԱԴՐՈՂ «SKYNET»-Ը ՑԱՆԿԱՆՈՒՄ Է ՓՈՔՐ ԵՒ ՄԻՋԻՆ ՀԵՌԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ ԹՌԻՉՔՆԵՐ ԻՐԱԿԱՆԱՑՆԵԼ




*Հայկական նոր աւիափոխադրող «Skynet»-ը ցանկանում է փոքր եւ միջին Հեռաւորութեամբ թռիչքներ իրականացնել: Լրագրողներին այս մասին Նոյեմբերի 25-ին յայտնել է ընկերութեան ներկայացուցիչ Գրիգորի Վարդանեանը: Ընկերութեան Հիմնադիրը եւ սեփականատէրը «Հայաստանի Քաղաքացիական Օդաչուների Միու-*

3

## ԼԻԲԱՆԱՆ

## ԳՈՅԺ



Ս. Դ. Հնչակեան Կուսակցութեան Կեդրոնական Վարչութիւնը խոր կսկիծով կը գուժէ երբեմնի իր անդամին եւ ատենապետին՝ Ընկ. ԺԻՐԱՅՐ ՆԱՅԻՐԻի մահը, որ պատահեցաւ 27 Նոյեմբեր 2013-ին, սրտի տագնապի հետեւանքով:

Ողբացեալ ընկերը ամբողջ կեանք մը նուիրած է Ս. Դ. Հնչակեան Կուսակցութեան, ստանձնելով կարեւոր ազգային պաշտօններ: Երկար տարիներ անդամ եղած է կուսակցութեանս Լիբանանի Վարիչ Մարմնին, ապա՝ Կեդրոնական Վարչութեան, եւ 1987-1990՝ նոյն մարմնի ատենապետ:

50 տարիներ եղած է «Արարատ» օրաթերթի խմբագիր եւ ապա խմբագրապետ: Ստանձնած է բազմաթիւ պարտականութիւններ եւ իր տարիներու ծառայութեան ընթացքին սատարած է Սփիւռք-Հայրենիք մերձեցման աշխատանքին, որու համար ալ պարգեւատրուած է բազմաթիւ շքանշաններով:

Ողբացեալ ընկերոջ յուղարկաւորութիւնը պիտի կատարուի Շաբաթ, 30 Նոյեմբերին, Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մայր Տաճարին մէջ, Անթիլիաս, Լիբանան:

Ս. Դ. Հ. Կ.
ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

1

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ ԱՂՔԱՏՈՒԹԻՒՆԸ ՆՈՒԱԶԱԾ Է ՍԱԿԱՅՆ ՄԷԿ ՄԻԼԻՈՆ ՀՈԳԻ ԿԸ ՄՆԱՅ ՉՔԱՒՈՐ

*Թէեւ աղքատներու թիւը նուազած է, այդուՀանդերձ Հայաստանի իւրաքանչիւր երրորդ բնակիչը աղքատ է, որոնց մէջ ծայրայեղ աղքատները կը կազմեն 2.8 տոկոս, իսկ շատ աղքատները՝ 13.5 տոկոս:*

*Այս տոկոսներուն Համաձայն, միայն պաշտօնական տուեալներով Հայաստանի մէջ կայ մօտ 1 միլիոն աղքատ:*

*Զեկոյցը Հրապարակելով՝ Ազգային Վիճակագրական Ծառայութեան տնային տնտեսութիւններու Հետազօտութիւններու բաժնի պետ Դիանա Մարտիրոսովան յայտնեց, որ աղքատներու թիւով առաջինը կը շարունակէ մնալ Շիրակի մարզը՝ 46 տոկոս, յաջորդը Կոտայքի մարզն է՝ 42.5 տոկոս աղքատութեամբ:*

## ՎԻԼՆԻՒՍԻ ԳԱԳԱԹԱԺՈՂՈՎ. «ՑՏԵՍՈՒԹԻՒՆ ԵՒՐՈՊԱ»

1

*կ'արտացոլացնէ մեր ընկերաքաղաքական եւ տնտեսական յարաբերութիւնները, միւս կողմէ Համատեղելի կը դարձնէ Համագործակցութեան այլ ձեւաչափերու Հետ», ըսաւ նախագաՀ Սարգսեան:*

### ԹՈՒՐՔԻԱ ԵՒ ԱՐՑԱԽ

*Խօսելով Հայոց ցեղասպանութեան ճանաչման Հոլովոյթին մասին, նախագաՀ Սարգսեան դիտել տուաւ, որ եւրոպական արժէքներու Հետեւողական որդեգրումը կրնայ օգնել Թուրքիոյ սեփական անցեալին Հետ Հաշտուելու Հարցին մէջ: «Այսօր Հազարաւոր Թուրքեր կը դատապարտեն Ցեղասպանութիւնը ու կը կանգնին մեր կողքին: Թուրքիոյ իշխանութիւնները պէտք է կարողանան կամք դրսեւորել եւ Հրաժարիլ ժխտողական քաղաքականութենէն: Եւրոմիութեան անդամ պետութիւններէն կ'ակնկալենք Թուրքիոյ կողմէ Հայաստանի ապօրինի շրջափակման վերացման Հարցին մէջ լիարժէք ներգրաւում եւ Հետեւողականութիւն», ըսաւ Սարգսեան:*

*Այն ինչ կը վերաբերի ղարաբաղեան Հարցին, ապա նախագաՀը յիշեցուց, որ Ատրպէյճանի նախագաՀին Հետ տեսակցած է քանի մը օր առաջ: «Արդիւնքներու մասին կանուխ է խօսիլ, սակայն տեսակցութիւնը ինքնին դրական երեւոյթ է: Բանակցութիւններու յաջող ելքը կախեալ է մեր ժողովուրդները խաղաղութեան պատրաստելու եւ բացասական խօսելաոճէն Հրաժարելու Հրամայականներէն: Հայաստանն ու Արցախը ձեռնպաՀ են իրավիճակը ապակայունացնող քայլերէն եւ կ'որդեգրեն ժողովրդավարութեան, մարդու իրաւունքներու եւ ազատ խօսքի Հիման վրայ պետութիւն կառուցելու ճամբան», եզրափակեց Սարգսեան:*

### ՆԱՄԱԿՆԵՐՈՒ ՓՈԽԱՆԱԿՈՒՄ

*Գագաթաժողովի շրջագիծին մէջ Հայաստան Եւրոմիութեան Հետ փոխանակեց նամակներ, որոնք կը նախանշեն ապագային միտուած Համագործակցութեան օրակարգը: Այդ տեղի ունեցաւ արտաքին գործոց նախարար Էտուարտ Նալպանտեանի ու Եւրոմիութեան արտաքին գործոց նախարար Քաթրին Աշթընի միջեւ տեսակցութեան ընթացքին: Հայաստանի ու Եւրոմիութեան միացեալ յայտարարութեան մէջ կը շեշտուին երկկողմանի սերտ յարաբերութիւնները: Կողմերը կը խոստանան զարգացնել կապեր՝ զանազան ոլորտներու մէջ, մանաւանդ՝ ժողովրդավարական Հաստատութիւններու ամրապնդումին, քաղաքացիական շրջանակներու մշակման եւ փտածութեան դէմ պայքարի առումով: Յայտարարութեան մէջ նշուած է, որ Հայաստանն ու Եւրոմիութիւնը պիտի չստորագրեն խոր եւ Համապարփակ ազատ առեւտուրի գօտիի շուրջ Համաձայնագիրը, որովՀետեւ Հայաստան ունի միջազգային նոր յանձնառութիւններ, այսինքն՝ անդամակցութիւն Մաքսային միութեան:*

ՄԵՐ ԱՆԿԻՒՆԷՆ

# ՎԱՐԴԵՆԻՍ-ՄԱՐՏԱԿԵՐՏ ՃԱՆԱՊԱՐՀԻ ԿԱՌՈՒՑՈՒՄԸ ԱԶԳԻ ՀԱՅՐԵՆԱՍԻՐՈՒԹԵԱՆ ՄԱՐՏԱՀՐԱՒԷՐԱՅԻՆ ՓՈՐՁԱՔԱՐ

Հայաստան Համահայկական Հիմնադրամի հեռուստամարաթոնի այս տարուան ծրագիրը կ'առաջադրէ Վարդենիս-Մարտակերտ մայրուղիի շինարարութիւնը, որ նախապէս բացուած Գորիս-Ստեփանակերտի եւ Հիւսիս Հարաւ ճանապարհներու շարքին պիտի ըլլայ երրորդը: Արցախի եւ Հայաստանի մատուցուած փոխադրական միջոցառումներու զարգացման, շրջաններու միջեւ հաղորդակցութեան ստեղծման եւ տնտեսական վերելքին նպաստելու կողքին, Վարդենիս-Մարտակերտ ուղին, նաեւ կոչուած է ունենալու ռազմավարական բարձր նշանակութիւն:

Հայաստան Համահայկական Հիմնադրամը, իր հիմնադրութեան առաջին օրէն իր շնորհաբեր ձեռքը երկարեց միջնադարեան յետամնաց պայմաններու տակ կքած Արցախի եւ Հայաստանի սահմանամերձ գիւղերու եւ քաղաքներու անտեսուած, յոգնաբեկ եւ յուսակորոյս ազգաբնակչութեան՝ անոր երաշխաւորելով ապահովութիւն, յոյս, կորով եւ նախաձեռնող ոգի:

Արդարեւ, Հայաստան Հիմնադրամը, իր կազմութեան առաջին օրէն նուիրուեցաւ շինարարական, կառուցողական, կրթական, առողջապահական եւ փիզիքական ապահովութեան առաջադրանքներու գործադրութեան: Հետեւողական աշխատանքով սկսաւ հայթայթել անոր տարրական, այլ՝ առաջնահերթ այն էական պէտքերը, ինչպիսին էին թորեալ ջուրը, ելեկտրական սարքաւորումները, ջրառոգման համակարգը, որոնցմէ զրկուած էր քաղաքացին:

Հայաստան Համահայկական Հիմնադրամը կառուցեց ճամբաներ ու պողոտաներ՝ գիւղէ-գիւղ եւ գիւղէ-քաղաք՝ անձնական, կրթական, դարմանական, ընկերային, շինարարական, գիւղատնտեսական եւ վաճառականական տեղափոխութիւնները դիւրացնելու եւ աւելի մատչելի դարձնելու համար: Այդ ձեռքբերումները ասպարէզ բացին գիւղատնտեսութեան, տեղական արտադրութիւններու փոխադրութիւններուն եւ վաճառման առջեւ: Շարժման մէջ դրուեցաւ հայ գիւղացին իր ձգտումները արդարացնելու համար: Սառած կամ անգոյ առեւտրական կեանքը սկսաւ իր կազմաւորման ու զօրացման բախտորոշ գործընթացը:

Հայաստան Համահայկական Հիմնադրամը նորոգեց մաշած, խլխլած կրթական հիմնարկները, կառուցեց արդիական դպրոցներ, հիմնեց գրադարաններ, մարզարաններ, հասակ առնող սերունդներուն ջամբելու համար յառաջադէմ ուսում՝ ամառնային տաք եւ ձմեռնային ցուրտ եղանակներուն դէմ բարենպաստ պայմաններու ստեղծումով:

Հայաստան Համահայկական Հիմնադրամը կառուցեց արդիական դարմանատուներ, հիւանդանոցներ, ծերանոցներ հայրենի սահմաններուն մէջ կարենալ խնամուելու, հոգատարութիւն ստանալու համար: Բացաւ ըմպելի ջուրի եւ ջրառոգման արդիական համակարգ:

Այս էական իրագործումները կատարուեցան շնորհիւ Հայաստան Համահայկական Հիմնադրամի շուրջ հաւաքուած, միասնացած հայութեան, որ ջերմօրէն ողջունելի եւ գնահատելի է: Մինչեւ օրս, այդ էական իրագործումները արժած էին աւելի քան 250 միլիոն տոլար, որուն գոյացումը արդար հպարտութիւնը կը կազմէ մեր հայրենանուէր երախտաշատ հայորդիներուն, որոնք քիչով, շատով, յանուն հայրենիքի կառուցման, ամէն տարի իրենց նիւթական ներդրումը կը կատարեն հեռուստամարաթոնային հանգանակութիւններով:

Իր այս տարուան ծրագրով, Հայաստան Համահայկական Հիմնադրամը հրապարակ իջաւ հանգանակային յանդուգն մարտահրաւէրով մը, որ ոչ միայն Հայաստանի եւ Արցախի միջեւ հեռաւորութիւնները կրճատելու եւ ռազմագիտական խորը նշանակութիւն ունեցող նպատակ ունի, նաեւ վերջին հաշուով ունի Արցախը պաշտպանելո՛ւ, Արցախին տէր կանգնելո՛ւ, Արցախը իրե՛ն պահելու անփոխարինելի վճռականութիւն եւ արժանապատուութիւն: Թշնամին ու ամբողջ աշխարհ պէտք է իմանար Արցախի ազգաբնակչութեան այս ազգային վեհ դիրքորոշումը, ինչպէս հպարտօրէն եւ բարձրաձայն պիտի յայտարարէր Արցախի փոխ Վարչապետ Արթուր Աղաբէկեան: Դրացին՝ ազերի Ալիեւը, թիկունքը քարիւղին տուած, կը յոխորտար մօտ ատենէն, իր առաւօտեան յաղթական նախաճաշը ընել Ստեփանակերտի մէջ:

Վարդենիս-Մարտակերտ մայրուղին, սկսեալ Հայաստան աշխարհի հիւսիսէն մինչեւ Արցախով մէկ, իր երեսուն միլիոն տոլար արժողութեամբ, պիտի կտրէ 70 մղոն երկարութիւն, որուն հանդիպակած 300 գիւղեր պիտի կապուին իրարու ու իրենց մատուցուած փոխադրական միջոցներու շնորհիւ պիտի ներգրաւուին ներքին եւ միջազգային շուկայական ոլորտներուն մէջ:

Ինչպէս ցոյց տուինք նախապէս, Վարդենիս-Մարտակերտ մայրուղին պիտի դառնայ Հայաստանի հիւսիսային տարածա- 4

# ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԵՆԷՆ ՎԵՐԱՊՐԱԾՆԵՐՈՒ ՎԿԱՅՈՒԹԻՒՆՆԵՐԸ՝ ԹՐՔԵՐԷՆՈՎ

*Ռակըփ Զարաքօլուի «Պելկէ» հրատարակչատունը նոր ու ստուար հատոր մը եւս հրատարակած է Հայոց Ցեղասպանութեան մասին: Այս անգամ ան ընթերցողներու տրամադրութեան տակ դրած է Հայաստանի Գիտութիւններու Ակադեմիայի անդամ, գիտնական ու Հայոց Ցեղասպանութեան վերաբերեալ նիւթերու մասնագէտ Վերժինէ Սվազլեանի լայնաշունչ մէկ գործը, որ կը բովանդակէ Ցեղասպանութենէն վերապրածներու յուշեր, վկայութիւններ, ինչպէս նաեւ այդ տառապալից շրջանին մասին յօրինուած հայերէն ու թրքերէն երգեր:*

*Վերժինէ Սվազլեանի այս գիրքը 55 տարիներու աշխատանքի մը արդիւնքն է: Թէեւ հոն խօսողները այլեւս ողջ չեն, բայց հեղինակը մէկ երկրէն միւս երկիրը շրջելու ընթացքին հաւաքած է անոնց վկայութիւնները ու տեսողական փաստաթուղթերու վերածած զանոնք՝ այդ վկայութիւնները բառ առ բառ թուղթին յանձնելով:*

*Հատորին թարգմանութիւնը կատարած են Տիգրան Տէր Ողորմեաճեան եւ Պետրոս Զաւիքեան:*

# ՀԱՅԿԱԿԱՆ ՆՈՐ ԱՒԻԱՓՈԽԱԴՐՈՂ «SKYNET»-Ը...

2

*թիւն»ն է (որը ղեկավարում է ԼՂՀ ԿԱ Քաղաւիացիայի Վարչութեան ղեկավար Դմիտրի Ատբաշեանը):*

*Ընկերութիւնն արդէն ունի մէկ Բրիտանական «Jet Stream 32» օդանաւ՝ փոքր եւ միջին հեռաւորութեան՝ 1200 կմ. չառաւղով: Այլ խօսքով՝ «կարող ենք ծածկել ներհայաստանեան թռիչքները, այդ թւում՝ հեռաւորները՝ Երեւանից Կապան եւ Ստեփանակերտ, ինչպէս նաեւ Թբիլիսի եւ Բաթում, Ռուսաստանի Հարաւ եւ Իրանի հիւսիս»,- նշել է Վարդանեանը:*

*Օդանաւի ձեռքբերման հարցում օգնել է «Արմենիա Միջազգային Օդանաւակայաններ» ընկերութիւնը, որը կառավարում է «Զուարթնոց» օդանաւակայանը: «Հնարաւոր է, այն կ'աջակցի մեզ օդանաւակայանների կայանման եւ սպասարկման վճարների հարցում՝ հաշուի առնելով ներքին թռիչքների կարեւորութիւնը Հայաստանի համար»:*

*Ըստ Վարդանեանի՝ 18 ուղեւորների համար նախատեսուած օդանաւը գտնւում է աշխատանքային վիճակում: Առաջիկայում այն նախատեսւում է ուղարկել ընթացիկ վերանորոգման Գերմանիա կամ Շուեդիա, որտեղից այն կը վերադառնայ Յունուարի վերջին:*

*Այդ օդանաւով ընկերութիւնն արդէն թռիչք իրականացրել է (Հարսանեկան ճամբորդութիւն Հայաստանով):*

ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ԽՈՀԵՐ

# ՇԱՐԺՈՒՄ ԴԷՊԻ ՄԱՐՄՆԱԿԱՆ ԱՆՇԱՐԺՈՒԹԻՒՆ (Ա)

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Դէպի մարմնական անշարժութիւն, կամ՝ դէպի մարմնական վերահսկուած շարժում:

Մարմնական շարժումի կասեցման գործընթացը կը սկսի մանկական տարիքէն, բջիջային ընտանիքին (nuclear family) միջոցով: «Տան մէջ մի՛ վազեր, մի՛ ցատկեր, մի՛ խաղար», կը լսէ մանուկը անընդհատ: Տունը խաղալու տեղ չէ, քանի որ մեծերը կրնան խանգարուիլ եւ արժէքաւոր ու անարժէք իրերը կրնան ջարդուիլ:

Դպրոցին մէջ մանուկն ու պատանին կը սորվին երկար ժամեր անշարժ նստիլ դասարաններուն մէջ՝ ուսուցիչին լաւ լսելու պատրուակով: Եթէ «աւելորդ» շարժում մը կատարեն, դպրոցին պարտականութիւնն է պատժել զանոնք: Իսկ պատիժը ամօթալի է եւ նսեմացուցիչ (եթէ հայկական դպրոցի աշակերտ է, յաջորդ օրը ակումբներուն մէջ կը խօսին իր անընդունելի արարքին մասին, ինչպէս նաեւ ծնողքին մասին՝ որ չէ կարողացած դաստիարակել իր զաւակը): Դպրոցական դասընթացքներէն ետք, դարձեալ տան մէջ աշակերտը երկար ժամեր կը մնայ անշարժ որպէսզի սերտելով իր դասերը յետագային դառնայ առաքինի ազգային մը (ինչպէս կը տեսնենք մեր շուրջը), օգտակար ըլլայ հասարակութեան (կը տեսնենք թէ ինչպէս մեր շուրջի աղքատներն ու կարօտեալները անտէր չեն մնար) եւ իր գիտելիքով հասնի յաջողութիւններու (բոլոր յաջող անձնաւորութիւնները ժամանակին եղած են լաւ սերտողներ): Մարդու երեխան կը մեծնայ անշարժութիւն «սորվելով», աւելի ճիշդ՝ սորվելով շարժիլ այն ժամանակատարածութեան մէջ զոր կանխորոշած է «սորվեցնող»-ը:

Անասնական աշխարհը անշարժութիւն չի ճանչնար: Անասուններուն երեխաները կը մեծնան խաղալով, վազելով ու շարժելով: Մարդկութիւնը անշարժութիւն չէր ճանչցած ասկէ 6-7 հազար տարի առաջ: Անշարժութիւնը սկսաւ՝ երբ քուրմերն ու թագաւորները իրենց կեցութիւնը եւ ինքնութիւնը ապահովեցին կառուցելով պալատներու եւ աթոռատեղիներու պատերը, եւ իրենք իրենց տեղաւորեցին այդ պատերէն ներս: Իրենք զբաղեցան երկիրը կառավարելով եւ աղօթելով: Մինչդեռ պատէն դուրս գտնուող մեծամասնութեան համար մարմնական շարժումը մնաց էական՝ կապուած հողագործութեան, որսորդութեան, ժողովրդական պարի եւ խաղի հետ: Միայն դրամատիրութեան ժամանակ է որ փոխուեցաւ «դուրս»-ի եւ «ներս»-ի քանակային տոկոսը՝ «ներս»-ի բնակիչները դառնալով մեծամասնութիւն: Ամրացաւ գրասենեակային աշխատանքը՝ ուր գործողութիւնը կեդրոնացաւ քանի մը քառակուսի մեթր տարածութեան մէջ, ինչպէս նաեւ տարածուեցան գործարանները՝ ուր գործողութեան հիմնական կրողը դարձաւ մեքենան:

Մինչ բնութեան մէջ մարդկային շարժումը թելադրուած է փորձառական գործադրութեամբ (հողի մշակում, որսորդութիւն եւ անոնցմէ բխած պարեր եւ պաշտամունքային ծէսեր), ազնուական ու պուրժուական անշարժութեան մէջ շարժումը կը որոշուի ըստ նիստ ու կացային օրէնքներու՝ ինչպէ՛ս նստիլ ճաշասեղանին առջեւ, ինչպէ՛ս բռնել պատառաքաղն ու դանակը (մինչեւ ճաշասեղանին ու պատառաքաղին հնարումը, այս իրերու պակասին պատճառով մարդկային անօթութեան դէպքերու արձանագրութիւններ տակաւին չեն յայտնաբերած հնէաբանները), ինչպէ՛ս բարեւել (գեղջուկին բարեւը անբարեկիրթ է), ինչպէ՛ս վալս պարել առանց դիմացինին ոտնակոխ ընելու (ոչ ոք գեղջուկին սորվեցուցած է ինչպէ՛ս շուրջպար պարել):

Այսօր մնացա՞ծ են արդեօք բաց տարածութիւններ՝ որոնք պիտանի ըլլան ազատ շարժումի համար: Իւրաքանչիւր տարածութիւն անձի մը կամ պետութեան մը սեփականութիւնն է եւ ոչ ոք պիտի ուրախանայ եթէ ուրիշը շարժի իր տարածութեան վրայ: Իսկ լայն ու բաւարար տարածութիւն ունենալու համար պէտք է մաս կազմել աշխարհի ամենէն աւելի քիչ շարժող մարդոց՝ մեծահարուստ գործարարներու, դասակարգին:

Կը ծագի հարցումը՝ ե՞րբ, ո՞ւր, ինչո՞ւ եւ ինչպէ՞ս շարժիլ: Մանուկն ու պատանին դպրոցի մէջ շարժելու իրաւունք ունին միայն կարճ դադարներու եւ մարմնամարզութեան պահերու միջոցին, միշտ հսկիչի կամ մարզիչի մը հսկողութեան տակ: Արտադպրոցական ժամերուն անոնք շարժելու իրաւունք ունին միայն ակումբներու մէջ, որոշուած ժամկէտներու ընթացքին եւ ակումբի ղեկավարներուն կողմէ սահմանուած քանի մը խաղի միջոցով (ֆութպոլ, պասքէթպոլ, թենիս, եւլն.), որոնք անմեղ խաղեր ըլլալէ աւելի շարժումով արտայայտուած մրցակցութիւններ են: Եւ այդ մրցակցութեան համար պարտաւոր են հպատակիլ տուեալ խաղի «օրէնքներու» շարժումներուն, որոնք բոլորն ալ ձեւակերպուած են հասնելու «յաղթանակ»-ի:

Ուրեմն, փոքր տարիքէն սկսեալ երեխան ազատօրէն շարժելու տարածութիւն չունի: Կրնայ շարժիլ միայն ըստ «օրէնքներու» եւ անպայմանօրէն մրցակցային գաղափարը իրագործելու նպատակով:

Խիստ կարեւոր է այս մրցակցային գաղափարը: Մրցակցութիւն կը նշանակէ պարտադրաբար կազմուած հակառակ կողմի մը պարտադիր պարտութիւնը: Օրինակ, ՖԻՖԱ-ի 2014-ի Աշխարհի Բաժակի որակաւորման նախապատրաստական մրցաշարքերուն պաշտօնապէս մասնակցեցան 203 ազգ-պետութեան ազգային հաւաքականները, որոնցմէ 171-ը պարտադրաբար անցան պարտուողներու շարքը: Մնացած 32 «յաղթական»-ները պիտի մասնակցին գալ տարուայ բաժակին, որոնցմէ 31-ը պէտք է 4

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

Այսու հաճոյքով կը տեղեկացնենք, թէ ՀԲԸՄ-ի Կեդրոնական Վարչական Ժողովը, Յանձնաժողովին կազմը համալրելու համար երեք նոր անդամներ նշանակած է յանձինս Տեարք Ժիրայր Տեփոյեանի, Ռուբէն Թէրզիպաշեանի եւ Լեւոն Նիկոլեանի:

Այս առիթով Յանձնաժողովիս դիւանը վերակազմուած է հետեւեալ ձեւով

| | |
|---|---|
| Պերճ Թէրզեան | Ատենապետ |
| Օննիկ Կարիպեան | Ա. Փոխ Ատենապետ |
| Վիգէն Ճիզմէճեան | Բ. Փոխ Ատենապետ |
| Տիկին Կասիա Ծղալեան | Ատենադպիր |
| Օննիկ Պըլըքտանեան | Գանձապահ |
| Ռուբէն Թէրզիպաշեան | Փոխ Գանձապահ |
| Գէորգ Երզնկացեան | Խորհրդական |
| Լեւոն Նիկոլեան | Խորհրդական |
| Ժիրայր Տեփոյեան | Խորհրդական |

**ՀԲԸՄ-Ի ԵԳԻՊՏՈՍԻ**

*10 Նոյեմբեր 2013* **ՇՐՋԱՆԱԿԱՅԻՆ ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎ**

## ԳԱԼՈՒՍՏԵԱՆ-ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆ

**2012-2013 ՏԱՐԵՇՐՋԱՆԻ**

**ՇՐՋԱՆԱՒԱՐՏՆԵՐՈՒ ՀԱՆԴԷՍ**

Հովանաւորութեամբ՝

**ԳԵՐՇ. Տ. ԱՇՈՏ. ԵՊՍԿ. ՄՆԱՑԱԿԱՆԵԱՆԻ**

Բարեխնամ Առաջնորդ Եգիպտոսի Հայոց Թեմի

Նախագահութեամբ՝

**ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ՆՈՒՊԱՐ ՍԻՄՈՆԵԱՆԻ**

Ատենապետ Գահիրէի Պատկ. Թեմական Ժողովի

Կիրակի, 8 Դեկտեմբեր 2013, երեկոյեան ժամը 6:30-ին

Պըլըքտանեան Հանդիսասրահին Մէջ

Սիրալիր Հրաւէր Բոլորին

**ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ**

ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ԽՈՀԵՐ

3

## ՇԱՐԺՈՒՄ
## ԴԷՊԻ ՄԱՐՄՆԱԿԱՆ ԱՆՇԱՐԺՈՒԹԻՒՆ (Ա)

կրէ պարտուածի տիտղոս: Ուրեմն, 202 ազգային հաւաքականներ՝ որոնք կը ներկայանան իբրեւ ազգային ամբողջականութիւններ, պէտք է պարտուին մրցակցութեան անունին տակ, մինչ մրցակցութիւն բառին պիտի տրուի ի վերուստ դրականացուած պատմողականութիւն մը՝ կեդրոնանալով *մէկ* յաղթողի գաղափարի կոքապաշտութեան վրայ: Ասիկա անկարելի պիտի ըլլար առանց սկզբնաքայլին՝ վերահսկուած շարժումին:

Մրցակցութեան պատմողականութիւնը դրամատիրութեան «ազատ շուկայ» կոչուած տնտեսութեան ողնասիւնն է: Ինչպէս որ 202 խումբեր եւ ազգեր պէտք է դուրս մնան, այնպէս ալ, ամենապարզ օրինակ մը տուած ըլլալու համար, տուեալ տարածութեան մը բոլոր նպարավաճառները մրցակցութենէն դուրս պիտի մնան՝ իշխող supermarket-ի մը գոյութեան համար: Արդ, մարզական մրցումները՝ իրենց վայելած հաղորդակցային (media) բացառիկ յարմարութեան շնորհիւ, մրցակցային գաղափարի լաւագոյն տարածողն են:

Վերահսկելով շարժումի վայրին, ժամանակին եւ ձեւին վրայ, ափ մը մարդիկ հսկած կ'ըլլան նաեւ արդիւնքին վրայ: Շարժումը դարձնելով մասնագիտական (professional), զայն կ'ենթարկեն արդի մասնագիտականութեան գլխաւոր օրէնքին՝ դրամին: Իսկ դրամը հոմանիշն է իշխանական ուժին: **ՖԻՖԱ**-ն աւելի անդամ երկիրներ ունի քան ՄԱԿ-ը: Եւ տակաւին ունինք անոր նախագահ Ճոզէֆ Պլաթըրի յայտնի յայտարարութիւնը՝ թէ **ՖԻՖԱ**-ն աւելի ազդեցիկ է քան ՄԱԿ-ը: Ըստ Ֆորպսի վիճակագրութիւններուն, Պլաթըր կը հանդիսանայ աշխարհի թիւ 53 ազդեցիկ անձը:

Ասիկա կը կատարուի ոչ միայն «բարձրագոյն» մակարդակով: Բոլոր վերէն վար կառավարուող ակումբային խմբաւորումները պէտք ունին մարզադաշտերու եւ մարզական պիտճէի, որպէսզի կարողանան հսկել իրենց անդամներու շարժումներուն վրայ, միաժամանակ այդ շրջածիրին մէջ յաջողին ներգրաւել նոր անդամ-ենթարկուողներ:

Իսկ ի՞նչ կը պատահի եթէ շարժումը հրաժարի ենթարկուիլ վերահսկողութեան եւ մերժէ իր մասնագիտականացումը: Ան կրնայ վերածուիլ զանգուածային ցոյց-բողոքի՝ յառաջացնելով իշխանական վերնախաւին սարսափը: Երբ ժողովուրդը շարժի ու գրաւէ հրապարակները, իշխանափոխութիւնը կամ ապաիշխանացումը կը դառնայ անխուսափելի:

Յաջորդ թիւով՝ ի՞նչ միջոցներով իշխանութիւնները կը փորձեն կասեցնել ցուցարարական շարժումները:

(Շար. 1)

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ ՀԱԿԱԾԽԱԽՈՏԱՅԻՆ ՊԱՅՔԱՐԻ ԿԸ ՍԿՍԻ

2

*«Բնապահպանների ձայնն ամէն օր լսում ենք, այն դէպքում, որ եթէ համադրենք ռիսկերը, ապա ծխախոտի չարաշահման ոլորտում աւելի մեծ են: Բայց, չգիտես՝ ինչու, հասարակական կազմակերպութիւնները չեն գործում այս»- ասել է վարչապետը:*

*Ընդ որում, Հայաստանի պաշտպանութեան նախարարութիւնը նոյնպէս սկսել է ծխելու դէմ պայքարի ծրագիր մշակել: Անցեալ շաբաթ ՀՀ պաշտպանութեան նախարար Սէյրան Օհանեանի կարգադրութեամբ ստեղծուել է աշխատանքային խումբ՝ Հայաստանի զինուած ուժերում ծխելու դէմ պայքարի ծրագիր մշակելու նպատակով:*

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Այսու կը ծանուցանենք եգիպտահայ յարգոյ մեր հասարակութեան, որ Առաջնորդարանին մօտ տրամադրելի են արեւմտահայերէն «Նոր Կտակարան»-ներ:

Փափաքողները, ունենալու համար, կրնան դիմել Ազգային Առաջնորդարան:

**Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

## ՎԱՐԴԵՆԻՍ-ՄԱՐՏԱԿԵՐՏ ՃԱՆԱՊԱՐՀԻ ԿԱՌՈՒՑՈՒՄԸ

3

շրջանը Արցախի հիւսիսային տարածաշրջանին կամրջող այն շինարարութիւնը, որ ոչ միայն ամէնէն կարճ, արագ եւ ապահով ռազմագիտական բանուկ ճանապարհը պիտի հանդիսանայ, նաեւ պիտի հանդիսանայ այն ուղին, որ ամբողջական պիտի դարձնէ Հայաստանի եւ Արցախի մայրուղիներու իրարու շղթայումը, նաեւ՝ Հայաստանի վրայով, կապուելու Եւրոպայի երկաթուղիներու հսկայ ցանցին, ինչ որ զարկ պիտի տայ Արցախին, դէպի Եւրոպա բացուելու աշխարհագրական հնարաւորութիւններու ստեղծման եւ զբօսաշրջիկութեան զարգացման:

Մեր ազգային էական կառոյցներուն ճիտի պարտքն է, միասնական եւ վճռորոշ չարքով մասնակցիլ Հայաստան Համահայկական Հիմնադրամի Վարդենիս-Մարտակերտ մայրուղիի անյետաձգելիօրէն հրատապ ծրագրի իրագործման նուիրուած հեռուստամարաթոնային հանգանակութեան արշաւին, յանուն հայրենիքի եւ ազգային արժանապատուութեան:

ՏՈՔԹ. Ա. ԳԱՋԱՆՃԵԱՆ

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Տիար Աւետիս Մովսէսեան, Տիար Ալէն Էմիրզեան, Տիկին Անի Մովսէսեան եւ զաւակը՝ Ալեքս, Տիկին Ալիս Մովսէսեան եւ զաւակունք (Աւստրալիա), Տիկին Զուարթ Մովսէսեան եւ զաւակունք (ԱՄՆ), Տիկին Լիւսի Մովսէսեան, Տէր եւ Տիկին Պետրոս Ա. Մովսէսեան եւ զաւակունք, Տէր եւ Տիկին Վազգէն Մովսէսեան, Տէր եւ Տիկին Յարութիւն Մովսէսեան եւ զաւակը, Տէր եւ Տիկին Խեչօ եւ Սոնա Յակոբեան եւ զաւակունք, ինչպէս նաեւ Մովսէսեան, Էմիրզեան, Գրիգորեան, Ճիզմէճեան, Ղազարեան (Գանատա), Մանիքեան (Գանատա) ընտանիքները եւ համայն ազգակից պարագաները կը ծանուցանեն թէ Կիրակի, 1 Դեկտեմբեր 2013-ին, առաւօտեան ժամը 11-ին, յաւարտ Ս. Պատարագի, Գահիրէի Ս. Գրիգոր Լուսաւորիչ Եկեղեցւոյ մէջ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց եղբօր, մօրեղբօր եւ ազգականին, Ողբ.՝

**ՊԵՏՐՈՍ ՄՈՎՍԷՍԵԱՆԻ**

մահուան Ա. տարելիցին առթիւ:

Հանգուցեալին յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ գտնուիլ:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

**Աղեքսանդրիոյ Ս. Պօղոս-Պետրոս Եկեղեցւոյ Հոգաբարձութեան տնօրինմամբ, յառաջիկայ**

Կիրակի, 1 Դեկտեմբեր 2013-ի

Առաւօտեան, յաւարտ Ս. Պատարագի

Ս. Պօղոս-Պետրոս Եկեղեցւոյ մէջ, Հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Եկեղեցւոյ մէջ ծառայած Բարեշնորհ Սարկաւագ՝

**ՈՂԲ. ՕՆՆԻԿ ԳԱԼՈՒՍՏԵԱՆԻ**

Մահուան Քառասունքին տխուր առթիւ

Հոգւոյն ի հանգիստ

Հանգուցեալին յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ գտնուիլ:

**ԴԻՒԱՆ ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ**
**ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**

## Հ.Բ.Ը.ՄԻՈՒԹԻՒՆ - ԳԱՀԻՐԷ

## ՍԱԹԵՆԻԿ Ճ. ՉԱԳԸՐ ՀԻՄՆԱԴՐԱՄ
## Առողջապահական Հոգատարութեան Ծրագիր

Գահիրէի ՀԲԸՄ-ի վարչութիւնը կը տեղեկացնէ Աղեքսանդրիոյ եւ Գահիրէի հայութեան, թէ Միութեանս «Սաթենիկ Ճ. Չագըր» Հիմնադրամի Առողջապահական Հոգատարութեան Ծրագիրին 2014 տարեշրջանի անդամագրուիլ փափաքողները պարտին իրենց դիմումնագրերը ներկայացնել յատուկ հարցաթերթիկներու վրայ 1 Նոյեմբերէն 2013-էն մինչեւ 10 Դեկտեմբեր 2013.

ԳԱՀԻՐԷԻ մէջ

15, Էմատ Էլ Տին փողոց, Ա. յարկ Հեռ. 25931555

Ուրբաթ օրերը առաւօտեան ժամը 10-էն յ.մ. ժամը 3

ՀԵԼԻՈՊՈԼՍՈՅ Կեդրոնը

26, Մուրատ Բէկ փողոց – Հելիոպոլիս Հեռ. 22916444 - 24151127

Առաւօտեան ժամը 10-էն յ.մ. 3, բացի Կիրակի եւ արձակուրդի օրերէն:

ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ Գրասենեակը

19, Օմար Լոթֆի փողոց - Ա. յարկ

Կամաա-ի (Համալսարանի) կայարան Հեռ. 5920469

Երկուշաբթիէն Հինգշաբթի յ.մ. ժամը 6-9

ԾԱՆՕԹ.- Ա) Նոր դիմումնագրերուն համար կը խնդրուի ներկայացնել ինքնութեան թուղթին պատճէնը, 2 նկար եւ հայ համայնքին պատկանելու փաստաթուղթ:

Բ) Նորոգութեան համար դիմողներէն կը խնդրուի ներկայացնել 1 նկար եւ 2013-ի ծրագիրին մասնակցութեան քարտին պատճէնը: Առողջապահական Հոգատարութեան Ծրագիրին բարեփոխեալ կանոնագրութիւնը ստանալէ յետոյ, վճարել Ե. Ո. 180 մասնակցութեան սակը:

ՀԲԸՄ-ը ինքզինքին կը վերապահէ, բոլոր կարգի դիմումներուն ընդունումը կամ մերժումը:

ԳԱՀԻՐԷԻ ՀԲԸՄ-Ի ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1715 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 12 ԴԵԿՏԵՄԲԵՐ 2013 ՀԱՏԸ ՉԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٧١٥ الخميس ١٢ ديسمبر ٢٠١٣


**ԼԻԲԱՆԱՆ**

## ՀԱՅ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ ԳԵՐԱԳՈՅՆ ՄԱՐՄԻՆՆԵՐՈՒ ՀԱՆԴԻՊՈՒՄ



Պէյրութի Թէքէեան Կեդրոնին մէջ Ուրբաթ, 6 Դեկտեմբերին տեղի ունեցաւ հայ քաղաքական կուսակցութիւններու ղեկավար մարմիններու ժողով: Նիստին՝ Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան Կուսակցութեան Կեդրոնական վարչութիւնը կը ներկայացնէին Կեդրոնական վարչութեան ատենապետ Ընկ. Յակոբ Տիգրանեան, փոխ ատենապետ պետական երեսփոխան Ընկ. Սեպուհ Գալփաքեան եւ Ընկ. Շաւարշ Ակինեան: Հայ Յեղափոխական Դաշնակցութեան պատուիրակութիւնը կը ղեկավարէր Բիւրոյի ներկայացուցիչ Հրանդ Մարգարեան, իսկ Ռամկավար Ազատական Կուսակցութեան Կեդրոնական վարչութեան պատուիրակութիւնը կը գլխաւորէր ատենապետ Մայք Խարապեան:

Ժողովակիցները քննարկեցին քաղաքական երեք կուսակցութիւնները յուզող հարցեր, հայ ժողովուրդին եւ Հայաստանի առջեւ ծառացած մարտահրաւէրները եւ համատեղ հետաքրքրութիւն ներկայացնող թղթածրարները, համագործակցութեան եւ համադրումի աշխատանքները, ինչպէս նաեւ մօտիկ ապագայի համահայկական ծրագիրները միասնական շարքերով իրականացնելու հրամայականը: (Ժողովէն բխած հաղորդագրութիւնը տես էջ 2):

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ԵՐԵՒԱՆ-ՊԱՂՏԱՏ ԿԱՊԵՐՈՒ ԶԱՐԳԱՑՈՒՄ




Իրաքի եւ Հայաստանի արտաքին գործոց նախարարները միատեղ մամլոյ ասուլիսի ընթացքին:

Իրաքի արտաքին գործոց նախարար Հոշեար Զիպարի երէկ այցելեց Երեւան ուր տեսակցութիւն ունեցաւ Հայաստանի նախագահ Սերժ Սարգսեանի եւ արտաքին գործոց նախարար Էտուարտ Նալպանտեանի հետ:

Քննարկուեցան Հայաստան Իրաք երկկողմանի յարաբերութիւնները, տարբեր ոլորտներու մէջ համագործակցութիւնը զարգացնելու միջոցները, կապերու սերտացումը եւ շրջանային խնդիրները: Զրուցակիցները վերահաստատեցին, որ Երեւան եւ Պաղտատ ունին յարաբերութիւնները աւելի բարձր մակարդակի բարձրացնելու ներուժ եւ կարողութիւն: Հայ պաշտօնատարները եւ Զիպարի նաեւ հաստատեցին, որ երկկողմանի կապերու ամրապնդումին մէջ դեր ունեցած են իրաքահայերը: Զիպարի եւ Նալպանտեան ստորագրեցին Հայաստանի եւ Իրաքի արտաքին գործոց նախարարութիւններուն միջեւ փոխադարձ համագործակցութեան մասին փոխըմբռնման յուշագիր:

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ՎԼԱՏԻՄԻՐ ՓՈՒԹԻՆ.- «ԿՈՎԿԱՍ ԵԿԱԾ ԵՆՔ... ՄՆԱԼՈՒ»



«Ռուսերը չեն պատրաստուիր Անդրկովկասէն հեռանալու: Հակառակը, մենք կը պատրաստուինք ամրապնդելու մեր դիրքերը Անդրկովկասի մէջ, կեդրոնանալով այն լաւագոյնին վրայ, որ մեզի մնացած է մեր նախնիներէն»: Այս մասին յայտարարեց Ռուսիոյ նախագահ Վլատիմիր Փութին, որ Դեկտեմբեր 2-ին այցելեց Հայաստան: Փութինի օդանաւը նախ ժամանեց Կիւմրի, ուր ան նախագահ Սերժ Սարգսեանի հետ այցելեց ռուսական 102-րդ ռազմակայան եւ ստուգեց Հայաստանի մէջ տեղակայուած ռուս զինուորներու պատրաստուածութիւնը, ապա ներկայ գտնուեցաւ հայ-ռուսական միջտարածաշրջանային համագումարի բացման հանդիսութեան: Նախապէս, երկու նախագահները ծաղկեպսակներ զետեղած էին նաեւ Սպիտակի երկրաշարժի զոհերու յիշատակին:

Նախագահ Սարգսեան յայտարարեց, որ Փութինի այցելութիւնը դրական ազդեցութիւն կը ձգէ ռուսական ռազմակայանի մարտունակութեան եւ ռազմական պատրաստուածութեան վրայ: Ան դիտել տուաւ, որ Հայաստան մեծ աշխատանք տարած է անդամակցելու համար Մաքսային միութեան: Սարգսեան իր ուղերձին մէջ մանրամասնօրէն անդրադարձաւ Հայաստան Ռուսիա համագործակցութեան վրայ, զանազան ոլորտներու մէջ: Ան շեշտեց հայ եւ ռուս ժողովուրդներու բարեկամութեան կարեւորութիւնը:

Խօսելով Մաքսային միութեան Հայաստանի անդամակցութեան մասին Փութին նշեց, որ միութեան միանալու պարագային, Հայաստան պէտք է իր ուժերուն նկատմամբ վստահութիւն ունենայ: «Պէտք է անհրաժեշտ բարձիկներ ստեղծել Հայաստանի տնտեսութեան համար», ըսաւ Փութին: Անոր խօսքով, Հայաստան կը համարուի Եւրասիական համարկումի լիիրաւ մասնակից: «Մաքսային միութեան անդամակցելու որոշումը, Հայաստանի եւ հայ ժողովուրդի ինքնիշխան որոշումն էր», ըսաւ Փութին:

Անդրադառնալով ղարաբաղեան հակամարտութեան Փութին դիտել տուաւ, որ տարածաշրջանի խնդիրները պէտք է լուծուին ոչ թէ զէնքի, այլ՝ դիւանագիտութեան, բոլոր կողմերուն համար ընդունելի պայմանաւորուածութիւններուն օգնութեամբ:

### ԽՈՐՀՐԴԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐ ԵՐԵՒԱՆԻ ՄԷՋ



Անցնելով Երեւան, Սարգսեան եւ Փութին ծաղիկներ զետեղեցին Հայոց ցեղասպանութեան զոհերու յիշատակը յաւերժացնող Ծիծեռնակաբերդի յուշահամալիրին: Ապա նախագահական պալատին մէջ տեղի ունեցաւ նախագահներ Սարգսեանի եւ Փութինի առանձնազրոյցը, որուն յաջորդեց ընդլայնուած կազմերով պատուիրակութիւններու ժողովը: Բանակցութիւններուն իբր արդիւնք ստորագրուեցան 12 համաձայնագիրներ, ներառեալ Հայաստանի եւ Ռուսիոյ միջեւ մինչեւ 2020 թուական տնտեսական համագործակցութեան ծրագիրները: Ստորագրուած համաձայնագիրները կը վերաբերին քաղաքական, տնտեսական, ռազմական համագործակցութեան, հիւլէական անվտանգութեան, ուժանիւթային, կրթական եւ զբօսաշրջութեան ոլորտներուն:

Նախագահները ապա տուին մամլոյ ասուլիս: Նախագահ Սերժ Սարգսեան յայտարարեց, որ Երեւանի եւ Մոսկուայի միջեւ կը ստեղծուի միջպետական նախագահական խորհուրդ:

«Երեւանն ու Մոսկուան որոշած են ղարաբաղեան խնդիրը լուծել խաղաղ ճամբով, հիմնուելով հիմնարար սկզբունք- 4

## ԹՐՔԱԿԱՆ ԱՌԱՋԱՐԿ

Թրքական մամուլը կը շարունակէ անդրադառնալ արտաքին գործոց նախարար Ահմատ Տաւուտօղլուի Երեւան կատարելիք այցելութեան: Սապահ թերթին համաձայն, նախարարը երկու առաջարկներով Երեւան պիտի մեկնի: Ան յոյս ունի, որ Երեւանի մէջ կը տեսակցի Հայաստանի Հանրապետութեան նախագահ Սերժ Սարգսեանի եւ արտաքին գործոց նախարար Էտուարտ Նալպանտեանի հետ: Ըստ թրքական լրատուամիջոցներուն, Տաւուտօղլու Երեւանին պիտի առաջարկէ Ատրպէյճանցիներուն յանձնել ազատագրուած տարածքներէն երկուքը, որոնց փոխարէն Թուրքիա կը բանայ Հայաստանի հետ սահմանները:

## ՆԱԼՊԱՆՏԵԱՆ-ՄԱՄԵՏԻԱՐՈՎ ՏԵՍԱԿՑՈՒԹԻՒՆ



Ուքրանիոյ մայրաքաղաք Քիեւի մէջ Դեկտեմբեր 6-ին տեղի ունեցաւ Հայաստանի եւ Ատրպէյճանի արտաքին գործոց նախարարներու տեսակցութիւնը:

Էտուարտ Նալպանտեան եւ Էլմար Մամետիարով նախ ունեցան առանձնազրոյց, ապա ընդլայնուած կազմով քննարկում, ներկայութեամբ ԵԱՀԿի Մինսքի խմբակի համանախագահներուն եւ ԵԱՀԿի գործող նախագահի անձնական ներկայացուցիչին: Քննարկումները կեդրոնացան ղարաբաղեան հակամարտութեան լուծման բանակցութիւնները շարունակելու անհրաժեշտութեան վրայ: Նախարարները եւ համանախագահները պայմանաւորուեցան յառաջիկայ շաբաթներուն ընթացքին շարունակել խաղաղ կարգաւորման հոլովոյթի շուրջ յետագայ քննարկումները: Համանախագահները խոստացան տարածաշրջան այցելել յառաջիկայ շաբաթներուն: Նախարարները ընդգծեցին բանակցութիւններուն մէջ Մինսքի կարեւոր դերը եւ շնորհակալութիւն յայտնեցին համանախագահող երկիրներուն:

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ




Հայոց Ցեղասպանութեան 100-ամեակի սեմին աւելի քան երբեք անհրաժեշտ է միասնական մօտեցումներով ու համատեղ ջանքով դիմագրաւել Հայաստանի Հանրապետութեան, Արցախի, Ջաւախքի ու Սփիւռքի առջեւ ծառացող մարտահրաւէրները:

Կոչ կ'ուղղենք մեր ժողովուրդին որ 100-ամեակի նշումը ամէնուրեք կատարուի համահայկական տարողութեամբ ու միացեալ նախաձեռնութիւններով: Ժամանակն է որ մեր քաղաքական աշխատանքներուն մէջ բացուի պահանջատիրութեան նոր էջ՝ ճանաչումէն ու դատապարտումէն անդին: Այս ուղղութեամբ հարկ է մէկտեղել մեր անժամանցելի եւ ամբողջական իրաւունքներու ձեռքբերման քաղաքական ու օրինական երեսներու ուսումնասիրութիւնները եւ պահանջատիրական լիցք տալ ՀՀ Պետական Յանձնաժողովի նախաձեռնութիւններուն:

Կոչ կ'ուղղենք ՀՀ իշխանութիւններուն՝ լիովին անդրադառնալու Հայ-Թուրք արձանագրութիւններու կործանարար հետեւանքներուն, ՀՀ Ազգային Ժողովին՝ իր օրակարգէն միանգամընդմիշտ հանելու անոր վաւերացման հարցը եւ ՀՀ Նախագահին՝ յետս կոչելու իր ստորագրութիւնը:

Հայաստանի անվտանգութեան ապահովումը, հոն ժողովրդավարական ու ընկերային արդար կարգերու հաստատումը եւ մեր պետականութեան ծաղկումն ու հզօրացումը առաջնակարգ հրամայականներ են: Առաւել՝ անհրաժեշտ է կասեցնել հայրենիքը դատարկող արտագաղթը եւ ազգովին դիմագրաւել այդ լուրջ վտանգը որոշակի ծրագիրներով:

Պարտինք նաեւ յատուկ թափ տալ Հայաստան-Սփիւռք յարաբերութիւններուն, զանոնք դարձնելով մնայուն, լաւապէս կարգաւորուած եւ փոխադարձ հասկացողութիւններու ու շարունակական մշակման միասնական գործընթացի վրայ խարսխուած:

Արցախի ինքնորոշման իրաւունքին համար աշխարհով մէկ տարուող մեր քարոզչական ու քաղաքական պայքարը հարկ է ընդարձակել շեշտադրելով՝ ԼՂՀի ճանաչումը իր փաստացի եւ սահմանադրութեամբ ամրագրուած սահմաններով: Նաեւ՝ խթան հանդիսանալ ռազմավարական նշանակութիւն ունեցող համահայկական այն բոլոր նախաձեռնութիւններուն, որոնք կը միտին ամրապնդել Արցախի պետականութեան հիմերը եւ ապահովել անոր տնտեսական զարգացումը:

Ջաւախքի պարագային, անհրաժեշտ է ազգովին նեցուկ կանգնիլ իր պատմական հողերուն վրայ ապրող հայութեան իրաւունքներուն եւ ձեռնարկել անոր ընկերա-տնտեսական իրավիճակի բարելաւման քայլերու:

Սփիւռքահայութեան պարագային՝ Հայ Դատի մարզէն ներս վերջին տասնամեակներու կարեւոր ձեռքբերումներուն վրայ պարտինք խարսխել պահանջատիրութեան թղթածրարի արծարծումը: Իր սեփական ջանքերուն կողքին Սփիւռքը կարիք ունի նաեւ ՀՀ պետական հոգածութեան առաջ տանելու համար հայապահպանման ու հայակերտման իր կարեւորագոյն առաքելութիւնը: Իսկ ոչ դասական Սփիւռքի նոր ձեւաւորուող շրջաններուն պարտինք հաղորդել կազմակերպ հաւաքական կեանքի հասկացողութիւն եւ զանոնք մղել ծրագրուած աշխատանքի:

Սուրիահայութեան ապրած տագնապը մեր բոլորին տագնապն է: Այդ կենսունակ գաղութը համազգային ուշադրութեան, գուրգուրանքի ու օժանդակութեան կիզակէտը կը մնայ ու պիտի շարունակէ մնալ մինչեւ խաղաղութեան հաստատում ու ամբողջական վերականգնում: Պարտինք մղել ողջ հայութիւնը որպէսզի ան սուրիահայութեան բազմաթիւ կարիքներուն հասնելու կողքին՝ ճիգ թափէ անոր անվտանգութեան երաշխիքներ ապահովելու:

Քաջ կը գիտակցինք, որ հզօր Հայրենիք ու յանձնառու Սփիւռք, որպէս զիրար ամբողջացնող, զիրար զօտեպնդող օղակներ, միասնական ճիգերով պիտի շարունակաբար վերահաստատեն աշխարհասփիւռ հայութեան մէկ ժողովուրդ ըլլալու հանգամանքը եւ մեծ ու ամբողջական Հայաստանի կերտումի հաւատոյ հանգանակը:

**ՍՈՑԻԱԼ ԴԵՄՈԿՐԱՏ ՀՆՉԱԿԵԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԻՒՆ**
**ՀԱՅ ՅԵՂԱՓՈԽԱԿԱՆ ԴԱՇՆԱԿՑՈՒԹԻՒՆ**
**ՌԱՄԿԱՎԱՐ ԱԶԱՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԻՒՆ**

*Պէյրութ, 9 Դեկտեմբեր 2013*

## ԵՒՐՈՊԱԿԱՆ ՆԵՐԴՐՈՒՄԱՅԻՆ ԴՐԱՄԱՏՈՒՆԸ 60 ՄԻԼԻՈՆ ԵՈՒՐՈՅԻ ՎԱՐԿ ԿԸ ՅԱՏԿԱՑՆԷ՝ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ «ՀԻՒՍԻՍ-ՀԱՐԱՒ» ՆԱԽԱԳԻԾԻՆ

*Եւրոպական ներդրումային դրամատունը 60 միլիոն եւրոյի վարկ կը յատկացնէ՝ Հայաստանի մէջ «Հիւսիս-Հարաւ» ճանապարհային նախագիծի ֆինանսաւորման համար: Այս մասին նշուած է դրամատան հրապարակած հաղորդագրութեան մէջ:*

*«Եւրոպական ներդրումային դրամատան միջոցներով կը ֆինանսաւորուի Հայաստանի մէջ առանցքային երթեւեկի միջանցքի այժմէականացումը: Այդ նախագիծը պիտի նպաստէ Հայաստանի մէջ տնտեսական եւ ընկերային զարգացման եւ կը բարելաւէ տարածաշրջանային համարկումը, որ շահաւէտ պիտի ըլլայ ամբողջ տարածաշրջանին համար», յայտնած է դրամատան փոխ-նախագահ Վիլհելմ Մոլթերիեր:*

4

## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՄԱՐԹՖՈՆ ԵՒ ԹԱՊԼԷԹ

Հայ եւ ամերիկեան «Technology and Science Dynamics Inc/Armtab Technologies» ընկերութիւնը ներկայացուցած է հայաստանեան յղացումով Armtab եւ Armphone թապլէթ (Tablet) եւ սմարթֆոնը (Smartphone), որոց վաճառքը նախատեսուած է 2014-ի տարեսկիզբէն: Հաղորդակցութեան ելեկտրոնային այս գործիքները յղացուած են Հայաստանի մէջ սակայն կ'արտադրուին ամերիկեան եւ հոնկ-քոնկեան գործատուներու կողմէ:

Ըստ զանոնք արտադրողներուն, այդ ապրանքներուն որակը ոչինչով կը զիջի համաշխարհայնօրէն ծանօթ մակնիշներու արտադրութիւններուն: Մնաց, որ հայկական այդ գործիքները իրենց նմաններէն աւելի աժան պիտի ըլլան:

Թապլէթներու գինը $250-էն $280-ի միջեւ է: Արտադրուած առաջին գործիքները նուիրուած են վարչապետ Տիգրան Սարգսեանին:

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԲՆԱԿՉՈՒԹԻՒՆԸ ԿԸ ԾԵՐԱՆԱՅ

*ՄԱԿ-ի բնակչութիւններու հիմնադրամի երեւանեան գրասենեակը յայտարարած է, թէ 2017-2018ին, Հայաստան մուտք պիտի գործէ ծերացող բնակչութեանց տէր երկիրներու խումբին մէջ:*

*Երկրի մը բնակչութիւնը կը բնորոշուի որպէս ծերացող, երբ տուեալ բնակչութեան 65 տարեկանէն վեր անդամներու համեմատութիւնը կը գերազանցէ ընդհանուրին 14%ը, ինչ որ պիտի ըլլայ Հայաստանի պարագան: Այդ ընթացքը երթէ շարունակուի, 2050-ին, ծերունիները պիտի կազմեն Հայաստանի բնակչութեան 33%ը:*

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ՌՈՒՍԱԿԱՆԷՆ ԱԺԱՆ ԻՐԱՆԵԱՆ ԿԱԶԻՆ ԹԵԼԱԴՐԱԾ ՀԱՐՑԱԴՐՈՒՄՆԵՐԸ

*Երեւանի մէջ Իրանի դեսպանը՝ Մոհամմատ Ռէյիսի, Փութինի այցելութեան վաղորդայնին, Դեկտեմբեր 6-ին լրագրողներու հետ հանդիպում մը ունեցած է, որուն ընթացքին ոչ այնքան ալ պատահականօրէն՝ անդրադարձած է կազի սակագինի հարցին:*

*Դեսպանը դիտել տուած է, որ Իրան Հայաստանին կազ կը վաճառէ շուկայի գիներէն շատ աւելի ցած սակագինով: Այսինքն, Հայաստանէն ստացած իւրաքանչիւր 3 քիլովաթ/ժամ ելեկտրականութեան փոխարէն Իրան Հայաստանին կը մատակարարէ 1 խոր.մեթր կազ, ինչ որ աւելի ցած սակագինի կը համապատասխանէ, քան՝ Ռուսաստանի կիրարկածը, որ վերջերս յայտարարուած զեղչէն ետք՝ կը կազմէ 189 տոլար 1.000 խոր. մեթրի համար:*

*Դեսպանը առանց բառերը ծամծմելու աւելցուցած է նաեւ թէ Հայաստանի հետ «ելեկրականութիւն՝ կազի դիմաց» փոխանակումը բնաւ ձեռնտու չէ իր երկրին համար, որովհետեւ նախ՝ Իրան ի՛նք ելեկտրականութիւն արտածող պետութիւն է, եւ երկրորդ՝ շահաբեր ալ չէ այդ գործառնութիւնը, բայց կը շարունակեն որովհետեւ անգամ մը այդ մասին պայմանագիր կնքած են, ուրեմն կը յարգեն իրենց խոստումը, ապա նաեւ որովհետեւ Հայաստան բարեկամ երկիր է:*

*Ելեկտրականութեան ներկայի սակագիներով՝ առաքման եւ յարակից բոլոր ծախսերով, իրանեան հազար խոր. մեթր կազը Հայաստանին կ'արժէ վաթարագոյն պարագային 181 տոլար: Այս պայմաններուն մէջ բացատրութեան կը կարօտի այն երեւոյթը, թէ ինչո՞ւ Հայաստան Ռուսաստանէն 270 տոլար սակագինով կազ գնած, պարտքեր կուտակած է, որուն համար ալ «Հայռուսգազարդ»ի բաժնեթուղթերու վերջին 20%-ի բաժինն ալ հարկ եղաւ զիջիլ ռուսական կողմին: Դեռ աւելին, իրանեան կազի այս սակագինը, Ռուսաստանի ներկայիս խոստացած զեղչեալ՝ 189 տոլարէն ալ աժան է:*

*Այս բաղդատութիւնները կը կատարուին «բարեկամական» սակագիներու միջեւ, քանի որ եւրոպական շուկային վրայ հազար խոր. մեթր կազին սակագինը Դեկտեմբերի սկիզբը կը կազմէր 298,7 տոլար (ըստ իտալական ENI-ին):*

*Վերոնշեալ հարցադրումներէն ետք կը մնայ գտնել գլխաւոր հարցումին պատասխանը. արդեօք պատմութեան մէջ գոյութիւն ունեցա՞ծ է պետութիւն մը, որ առանց պատճառի, կամ ակնկալութեան «բարեկամական» որեւէ քայլի դիմած է այլ պետութեան մը նկատմամբ:*

**ԼԻԲԱՆԱՆ**

## «ՄԱՆԿԱՎԱՐԺ ՄԱՍՆԱԳԷՏՆԵՐՈՒ ՊԱՏՐԱՍՏՈՒԹԵԱՆ ԾՐԱԳԻՐ»

*Հայկազեան Համալսարանի եւ Լիբանանի Ազգային Իշխանութեան Ուսումնական Խորհուրդի գործակցութեամբ Հայկազեան Համալսարանը եւ Ազգային Իշխանութեան Ուսումնական Խորհուրդը Նոյեմբեր 27, 2013 երեկոյեան ժամը 6:00ին Հայկազեան Համալսարանի մէջ ընդունելութեան մը ընթացքին յայտարարեցին սկզբնաւորութիւնը գործակցութեան մը, նպատակ ունենալով ազգային վարժարաններու 10 ուսուցիչ-տնօրէններու պատրաստութիւնը, որոնք պիտի հետեւին մանկավարժութեան բաժանմունքին մէջ մագիստրոսի (MA in Educational Administration, MA in Special Education) դասընթացքներու ծրագիրի մը՝ յաջորդ տասը տարիներուն ընթացքին: Համալսարանն ու Ուսումնական Խորհուրդը պիտի հաւասարապէս տրամադրեն հարկ եղած ֆոնտերը:*

*Յայտագիրը սկսաւ Հայկազեան Համալսարանի Հոգաբարձութեան անդամ՝ Տիկին Սեդա Գարակէօզեանի բարի գալուստի խօսքով: Ան նշեց թէ «Հայկազեան Համալսարանը կը շարունակէ իր կրթական ծրագիրներով հետեւողական եւ չինիչ դեր խաղալ Հայ ազգի ուսուցիչ-տնօրէններ եւ առաջնորդներ պատրաստելու իր առաքելութեամբ եւ կոչումով»: Ապա ան հրաւիրեց Լիբանանի Հայոց Թեմի Առաջնորդ՝ Գերաշնորհ Շահէ Եպիսկոպոս Փանոսեանը որ խօսք առաւ այս առիթով եւ շեշտեց թէ «համագործակցութեան առիթը արդիւնքն է ժամանակակից կեանքի պահանջքներուն: Անիկա, նոյնպէս, առիթն է սերունդներու կազմաւորման եւ ժամանակակից կարողականութեան տիրացած մարդուժի պատրաստութեան հրամայականներու, որոնք հաւասարապէս կը յուզեն Հայկազեան Համալսարանն ու Ազգային Ուսումնական Խորհուրդը»: Ան շարունակեց, ընդգծելով, թէ. «մարդուժի պատրաստութեան հարցը հաւաքաբար մեզ յուզող հիմնահարցերէն մին է որ կ'ենթադրէ հաւաքական կամք ու ճիգ»:*

*Հայկազեան Համալսարանի Նախագահ Վեր. Դոկտ. Փօլ Հայտօսթեան, գոհունակութիւն յայտնեց այս համագործակցութեան եւ ըսաւ. «Եթէ Լիբանանեան համալսարաններու առաքելութիւնը կ'ամփոփուի բարձրագոյն ուսում ջամբելու մէջ, Հայկազեանի առաքելութիւնը կ'ընդլայնուի ազգային, հոգեւոր, մշակութային ու տնտեսական մտահոգութիւններով եւս, եւ եթէ եկեղեցիի մը առաքելութիւնը մասնաւորապէս հոգեւոր ու ընկերային աշխարհին կը հասնի, հայ եկեղեցւոյ առաքելութիւնը կը տարածուի հայ իրականութեան բոլոր ոլորտներուն վրայ: Այսպէս կը դիտենք մենք մեր նոր համագործակցութեան պատկերը»:*

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԵԱՆ ԹԱՆԳԱՐԱՆԸ 2015ԻՆ ԹԵՔՆԻՔ ՆՈՐ ՁԵՒԵՐՈՎ ԵՒ ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԵԱՄԲ ՊԻՏԻ ՆԵՐԿԱՅԱՆԱՅ

Հայոց Ցեղասպանութեան Թանգարան-Հիմնարկը վերանորոգման նպատակով փակ է ու պիտի վերաբացուի 2015ի Ապրիլ 24ին՝ նոր ցուցադրութեամբ: Դեկտեմբեր 9-ին կայացած մամլոյ ասուլիսին ընթացքին այս մասին յայտնած է Հայաստանի Գիտութիւններու ազգային ակադեմիայի Հայոց Ցեղասպանութեան Թանգարան-Հիմնարկի փոխտնօրէն Սուրէն Մանուկեանը: Անոր համաձայն՝ վերանորոգման իբրեւ արդիւնք Թանգարանի տարածքը պիտի աւելնայ 2.5 անգամով, ինչպէս նաեւ պիտի աւելնայ մէկ յարկ:

«Եթէ այժմ մէկ յարկում է ամփոփուած Թանգարանային ողջ հարստութիւնը, ապա 2015ին Թանգարան-ինստիտուտը կ'ունենայ երկրորդ յարկ: Վերանորոգումից յետոյ առաջին ժամանակաւոր ցուցադրութիւնը կը լինի 2014 Թուականի Ապրիլին՝ առաջին աշխարհամարտի 100-ամեակի կապակցութեամբ:Թանգարանը հիմնական ցուցադրութիւնը կը վերաբացի 2015 Թուականի Ապրիլի 24ին՝ բովանդակային ու տեխնիկական նոր յագեցուածութեամբ», յայտնած է Սուրէն Մանուկեան:

Անոր համաձայն, կան կարեւոր դրուագներ, որոնք դուրս մնացած են Թանգարանին ուշադրութենէն եւ այժմ փորձ կը կատարուի շեշտը անոնց վրայ դնելու: «Որոշուել է ցուցադրուող նմոյշների միջոցով շեշտադրել Հայոց Ցեղասպանութիւնը ոչ միայն իբրեւ բազմահազար հայերի կոտորած, բայց եւ իբրեւ հայկական քաղաքակրթութեան կործանման եւ հայրենիքի կորուստ», նշած է Ս. Մանուկեան՝ աւելցնելով, որ ցուցադրութիւնը պիտի ուղեկցուի նորագոյն թեքնիքի կիրարկումով: «Կը լինեն 3 տի. լուծումներ, պատկերներ, «Թաչսքրիններ», որոնք հնարաւորութիւն կ'ունենան հարիւրապատիկ աւելացնել ցուցադրուող նմոյշների քանակը», յայտնած է Թանգարան-Հիմնարկի փոխտնօրէնը:

Խօսելով Հայոց Ցեղասպանութեան Թանգարան-Հիմնարկի գործունէութեան մասին՝ Սուրէն Մանուկեան դիտել տուած է, որ յետագայ կատարելիքներուն մէջ հիմնական են ցեղասպանագիտական կեդրոն դարձնելու նպատակով Հայաստանը համապատասխան նախադրեալներով օժտելը: «Այս տարի առաջին անգամ տպագրուեց ցեղասպանագիտական հանդէս գիտական պարբերականը, որը հայաստանեան գիտական դաշտ մտցրեց ցեղասպանագիտութիւնը որպէս գիտական ճիւղ: Նախատեսւում է Դեկտեմբերին տպագրել եւս մէկ համար, որը կ'ունենայ նաեւ անգլերէն տարբերակ:

Ցեղասպանագիտութիւնը որպէս գիտութիւն արմատաւորելու գործում կարեւոր է նաեւ Երեւանի պետական համալսարանի հետ Թանգարան-ինստիտուտ համագործակցութիւնը, ցեղասպանագիտական մագիստրոսական ծրագրի մեկնարկը», նշած է Սուրէն Մանուկեանը: Այս մէկը նաեւ թոյլ պիտի տայ Հայաստանը վերածել համաշխարհային ցեղասպանագիտական կեդրոնի: Այդ առումով Սուրէն Մանուկեան կարեւոր նկատեց նաեւ նշանաւոր ցեղասպանագէտ Իսրայէլ Զարնիի, որ ցեղասպանութեան հանրագիտարանի գլխաւոր խմբագիրն է, անձնական գրադարանի նուիրատուութիւնը Հայոց Ցեղասպանութեան Թանգարան-Հիմնարկին:

«Ամէն երկու տարին մէկ Ցեղասպանագէտների միջազգային ընկերակցութիւնը անցկացնում է քոնկրէս, որը 2015 Թուականին կ'անցկացուի Հայաստանում: Աշխարհի ամենայայտնի 500 ցեղասպանագէտները կը լինեն այստեղ», աւելցուցած է Սուրէն Մանուկեան:

ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ԽՈՀԵՐ

## ՇԱՐԺՈՒՄ
## ԴԷՊԻ ՄԱՐՄՆԱԿԱՆ ԱՆՇԱՐԺՈՒԹԻՒՆ (Բ)

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Անցեալ սիւնակը կ'անդրադառնար թէ ինչպէս արդի դրամատիրութիւնը կը փորձէ սահմանափակել մարմնական շարժումը եւ վերահսկել անոր վրայ:

Իսկ ի՞նչ կրնայ պատահիլ եթէ մարդ համարձակութիւն ունենայ չենթարկուիլ վերահսկողութեան: Եթէ անհատ մըն է, որ փողոց կ'իջնէ մարմնամարզութիւն ընելու, ցատկելու, պարելու եւ շարժելով ուրախանալու՝ առանց խանգարելու ուրիշներու երթեւեկութիւնը, կա՛մ կը ձերբակալուի անցորդներու տեսողական անդորրը պղտորած ըլլալու համար, եւ կա՛մ կ'ուղարկուի հոգեբուժարան: Հոգ չէ թէ ամէն վայրկեան մեր տեսողական անդորրութիւնը կը խանգարուի դիտելով շարժող ինքնաշարժներու աններդաշնակ գոյները եւ քաղաքի շէնքերու արտաքին տգեղութիւնը: Ինքնաշարժներն ու շէնքերը չեն ձերբակալուիր...:

Եթէ իր իրաւունքները պաշտպանելու համար փողոց իջնողը ժողովրդային զանգուած մըն է՝ որ կը շարժի *իր* բնական որոշումով եւ առանց վերուստ հրահրուած ամբոխավարութեան, սպառնալիք կը դառնայ իշխանական խաւի գոյութեան համար: Շարժում-անշարժութեան (ժողովուրդ-իշխանութեան) ճեղքուածքային երկուութիւնը մակերես կը բարձրանայ, ուր երկուութեան ձախ կողմը (շարժում, ժողովուրդ) կը մերժէ ենթարկուիլ աջ կողմին (անշարժութիւն, իշխանութիւն): Վերջինս կ'անցնի հակազդեցութեան, գործադրելով տարբեր միջոցներ, որոնցմէ յիշեմ քանի մը նմոյշ.

### 1.-ԲՌՆՈՒԹԻՒՆ

1999 Նոյեմբերին, Ամերիկայի Սիաթըլ (Seattle) քաղաքին մէջ տեղի պիտի ունենար դրամատիրութեան ռազմավարական սպառողականութեան ամենէն աւելի ուժեղ ներկայացուցչական կազմին՝ Առեւտուրի Համաշխարհային Կազմակերպութեան (WTO) համաժողովը: Պատմականօրէն աննախադէպ իրադարձութեամբ մը, աւելի քան 40 հազար ցուցարարներ յաջողեցան ձախողեցնել համաժողովը: Իսկ ցոյցը աւարտեցաւ ամերիկեան ոստիկանութեան դաժան յարձակումով՝ գործածելով Թմրեցուցիչ եւ արցունքաբեր պայթուցիկներ, կապարէ փամփուշտներ, եւլն.:

2008 Փետրուար 19-ին Հայաստանի նախագահական ընտրութիւններն էին, որոնք անցան Քոչարեանի եւ Սարգսեանի բացայայտ զեղծարարութեան հովանիին տակ: Յաջորդ օրը հսկայ բազմութիւն մը բողոքի ցոյցերով իջաւ փողոց եւ շարունակեց մնալ այնտեղ մինչեւ Մարտ 1: Շարժումին ինքնավստահութիւնն ու յարատեւութիւնը մտահոգիչ դարձան իշխող վերնախաւին, որ յաջողեցաւ ոստիկանական առաւելագոյն բռնութեան միջոցով լռեցնել բազմութիւնը եւ վերջ տալ ցուցարարներու շարժումին, յառաջացնելով բազմաթիւ զոհեր ու վիրաւորեալներ: Շարժումը կանգնեցաւ, օլիկարքական իշխանութիւնը հանգիստ վերաբազմեցաւ իր գահին վրայ: Բայց ոչ այնքան հանգիստ: Արիւնալի դէպքերը ծնունդ տուին աքթիւիսթական շարժումներու, որոնցմէ իւրաքանչիւրը ուղղուած էր յատուկ դրութեան մը, օրինակ, արգիլելու բացօթեայ Սինեմա Մոսկուայի քանդումը, կամ կասեցնելու Մաշտոցի Այգիի վերածումը վաճառականական կեդրոնի, կամ պայքարելու Թեղուտի թունաւորման քաղաքականութեան դէմ, եւ շատ ուրիշ ժողովրդավարական շարժումներ, որոնք յաճախ երկար դիմադրութենէ ետք յաջողեցան հասնիլ իրական արդիւնքներու: Աքթիւիսթական շարժումներու դիմագրաւումը յաճախ աւելի դժուար է քան կեդրոնացած ցուցարարներու մեծաքանակ բազմութեան ջախջախումը: Վերջին պարագային, լուծումը միանշանակօրէն նոյնն է՝ նախ պետութեան տիրապետած հաղորդակցական միջոցներուն ընդմէջէն բացասականացնել ցուցարարներուն դիմագիծը (ինչպէս փորձեցին ընել Քոչարեան եւ հեռատեսիլի Հ1 ալիքը) եւ ապա ուղղակիօրէն յարձակիլ անոնց վրայ օգտագործելով զէնքերու «միջազգայինօրէն ընդունուած» տեսակներ: Ամէն բան «օրէնքի սահմաններ»-ուն մէջն է: Մինչդեռ աքթիւիսթական շարժումներէն իւրաքանչիւրը ունի իրեն յատուկ մտածելակերպ ու գործելակերպ, հետեւաբար իւրաքանչիւր պարագային իշխանութիւնը պէտք է մտածէ գործադրել լռեցման տարբեր ու «ստեղծագործ» միջոցներ՝ ըստ տուեալ իրադարձութեան: Խնդիրը այն է, որ իշխանութիւն մը չի կրնար ըլլալ «ստեղծագործ». եթէ ստեղծագործ դառնայ՝ կը դադրի ըլլալ իշխանական:

ԻԱ. դարասկզբին, Եգիպտոս ականատես եղաւ ժողովրդային եւ յատկապէս աշխատաւորական դասակարգի աննախադէպ շարժումներու, որոնք խանգարեցին վերնախաւին հանգստութիւնը: Եգիպտոսի աշխատաւորական շարժումներու մասնագէտ Ճոէլ Պէյնին կը գրէ. «Մուպարաքի հեռացումին նախորդող տասնամեակին, աւելի քան երկու միլիոն աշխատաւոր մասնակցած է շուրջ 3400 գործադուլի եւ հաւաքական գործողութեան:» (Joel Beinin, 'Egyptian Workers After June 30', *Middle East Research and Information Project*, 23 August 2013, http://www.merip.org/mero/mero082313): Ասիկա աննախադէպ էր Եգիպտոսի պատմութեան մէջ եւ արդիւնքն էր պետութեան նէօլիպերալ քաղաքականութեան, որ երկրին բարիքները կեդրոնացուց ալ աւելի սակաւաթիւ վերնախաւի մը ձեռքը եւ կտրուկ կերպով աւելցուց աղքատներուն քանակը: Նէօլիպերալները պաշտպանելու համար, Մուպարաք եւ իր ներքին գործոց նախարարը երկիրը վերածեցին ոստիկանական դրութեան, որ իր կարգին բազմապատկեց ենթակայ զանգուածներուն վճռականութիւնը: Ծանօթ է 2008-ի Մեհալլայի զանգուածային ցոյցերը, որոնք թէեւ ունեցան ողբերգական աւարտ, բայց վերանորոգեցին ժողովուրդի մեկուսացուած բազմութեան մղումը դէպի նորանոր շարժումներ՝ հասնելով մինչեւ 2011 Յունուար 25-ի յեղափոխութիւնը: Հակառակ յեղափոխութեան 18 օրերուն գործադրուած արտակարգ բռնութեան (աւելի քան 800 զոհ եւ աւելի քան 1000 վիրաւոր), շարժումը կը պսակուի բռնութեան թօթափումով եւ մուպարաքեան ընտանիքի իշխանութեան աւարտով: Իսկ ինչ կատարուեցաւ Փետրուար 11-էն ետք, բոլորովին ուրիշ հարց է...:

2011 Սեպտեմբերին, Նիւ Եորքի մէջ մեծ թափով սկսաւ Գրաւել Ուոլ Սթրիթ (Occupy Wall Street) շարժումի գործողութիւնը, «գրաւելով» աշխարհի ամենահարուստ վերնախաւին սեփականացուցած ամենազգայուն տարածութիւնը՝ Ուոլ Սթրիթը: Ոստիկանութիւնը մեծ դժուարութեամբ վերջ դրաւ այս շարժումին, կատարելով կատաղի ու մեծաքանակ ձերբակալութիւններ, շղթայակապումներով տանջելով ցուցարարները, թիթեղեայ իրեր արձակելով դէպի ցուցարարներուն ուղեղները, գաղտնի ոստիկանութեան ենթակայ խռովարար տարրեր ներմուծելով խաղաղ ցուցարարներուն մէջ: Եւ այս բոլորը «օրէնք»-ի սահմաններուն մէջ: Այսքան վտանգաւոր էր Ուոլ Սթրիթ շարժումը աշխարհի «ամենաուժեղ» երկրին համար:

### 2.-ՇԱՐԺՈՒՄԻ ԻՄԱՍՏԱԶՐԿՈՒՄԸ

Կամ՝ վերահսկուած շարժումի վերականգնումը:

Հայկական Ցեղասպանութեան 50-ամեակին առիթով, 1965 Ապրիլ 24-ին Երեւանի մէջ տեղի ունեցան ժողովրդային ինքնաբուխ ցոյցեր: Թէեւ ցոյցերուն ուղղակի դրդապատճառը ցեղասպանութիւնն էր, բայց ան իր ներքին շերտերուն մէջ կը կրէր նաեւ ըմբոստութիւն իշխանութիւններուն դէմ: Ան իր մէջ կը պարունակէր ամէն տարի կրկնուելու եւ աճելու հնարաւորութիւն: Այս ցոյցերուն հետեւանքով, 1966-ին Հայաստանի կառավարութիւնը կը սկսի Ծիծեռնակաբերդի յուշահամալիրի կառուցումը, որուն բացումը կը կատարէ 1967 Նոյեմբերին: Ուշադրութեան արժանի է, թէ ընտրուած է Երեւանի ծայրամասը գտնուող մեկուսացած տարածութիւն մը, ուրիշ հարց թէ բարձունքն ու միջավայրը բացառիկօրէն գեղեցիկ են ու ազդեցիկ: Յուշահամալիրը կը յաջողի իր տարածութեան մէջ պարփակել ժողովուրդի շարժումը եւ շարժառիթը կանխասահմանել յիշատակի ոգեկոչման ազգային շրջանակի մէջ: Ոչ մէկ վախ կար որ այդ տարեկան շարժումը դուրս գար որոշուած տարածութենէն եւ վերածուէր բողոքացոյցի իշխանութիւններուն դէմ:

Եգիպտոսի 2012-ի նախագահական ընտրարշաւին, Ահմատ Շաֆիքի բանաւոր խոստումներէն մէկն էր Թահրիր հրապարակէն անկիւն մը յատկացնել յետագայ ցուցարարներուն: Անկիւն մը՝ անշուշտ պարիսպներով պաշտպանուած եւ ոստիկաններով պաշարուած, որպէսզի ցուցարարները «ազատօրէն» յայտնէին իրենց կարծիքը: Շաֆիք քաջ գիտէր շարժումի վերահսկողութեան կարեւորութիւնը:

### 3.-ԲՌՆՈՒԹԻՒՆ՝ ԱՌԱՆՑ ԲՌՆՈՒԹԵԱՆ

Ծիծեռնակաբերդի կառուցումէն ետք, Հայաստանի ժողովուրդի անշարժ դրութիւնը կայուն մնաց մինչեւ 1988 Փետրուար՝ երբ սկսաւ Ղարաբաղեան Շարժումը: Այստեղ արդէն չկար համաժողովրդական ինքնաբուխ շարժումը կէտային դրութեան վերածելու (Երեւանի սթրաթեժիք հրապարակներէն եւ ընդհանրապէս Երեւանէն հեռացնելու) միջոց: Եւ, ինչպէս կ'ակնկալուէր, այս շարժումը շուտով իր մէջ պարփակեց նաեւ ապախորհրդայնացման ուժեղ միտումներ: Խորհրդային իշխանութիւնը բանակային-ոստիկանական ուժ չգործադրեց ցուցարարները փարատելու համար: Խորհրդային Միութիւնը ➪ 4





ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ԽՈՀԵՐ



## ՇԱՐԺՈՒՄ ԴԷՊԻ ՄԱՐՄՆԱԿԱՆ ԱՆՇԱՐԺՈՒԹԻՒՆ (Բ)

այլեւս կորսնցուցած էր արեւմտեան հաղորդակցութենէն զերծ մնալու իր պատսպարուածութիւնը եւ Կորպաչեւ կը փորձէր ճամբաներ բանալ արեւմուտքին հետ, իսկ արեւմուտքը պատրաստ էր Կորպաչեւի որեւէ թերացում մատի փաթթոց դարձնել: Անկարող ըլլալով բռնի ուժով մարեցնել շարժումը, խորհրդային կարգերը արձանագրեցին իշխանական նշանակալի կորուստներ Հայաստանի մէջ, ընդհուպ մինչեւ Միութեան փլուզումը 1991 Դեկտեմբերին: Ասիկա չի նշանակեր որ Ղարաբաղեան Շարժումը իշխանութիւններու տկարացման *միակ* պատճառն էր (կրնայ ըլլալ այս շարժումն ինքը մասամբ իշխանութիւններու տկարացման արդիւնքն էր), բայց, անկասկած, անիկա իշխանական համակարգի *աւելի* տկարացման միջոց մը եղաւ:

Յստակ է որ բռնութեան բացակայութիւնը չէր բխած ժողովրդական շարժումներու հանդէպ խորհրդային իշխանութեան ունեցած համակրանքէն, հետեւաբար, բռնութեան գոյութիւնը իրական էր եւ որեւէ պատշաճ պահու գործադրելի:

**4.-ԸՆԿԵՐՎԱՐՈՒԹԵԱՆ ՄԻՋՈՑ**

Արդի ընկերվարութիւնը (democracy), կամ միեւնոյնն է՝ լիպերալ ընկերվարութիւնը, շարժումի կասեցման անհրաժեշտ միջոց մըն է: Եթէ կը դժգոհիս ղեկավարներէդ, սպասէ՛ չորս, հինգ, վեց տարի, եւ յաջորդ ընտրութիւններուն ընտրէ՛ ուրիշին: Իսկ մինչ այդ, ընտրուած անձը, քանի որ *քու* ընտրածդ է, իրաւունք ունի պատերազմներ հռչակել, բնութիւնը թունաւորող գործարաններ հիմնել, հանրային տարածութիւններ սեփականաշնորհել, անտառներ վերացնել, երկրին պարտքերը աւելցնել, հասարակական ծառայութիւնները նուազեցնել, եւլն.: Եւ քանի որ *քու* ընտրածդ է, ուրեմն պէտք չունիս բողոքելու, այլեւս պէտք չես զգար բողոքելու: Իրաւունք չունիս ցոյցերով իջնել փողոց:

1968 Մայիսի սկիզբը կայացած Ֆրանսայի ուսանողներու եւ աշխատաւորներու անարշիսթական ցոյցերը անդամալուծեցին երկիրի դրամատիրական տնտեսութիւնը: Ոստիկանական ուժի սահմանափակ գործադրութիւնը ալ աւելի բորբոքեց ժողովուրդը եւ բազմապատկեց ցուցարարներուն քանակը: Շուրջ մէկ ամսուայ յեղափոխական կացութենէն ետք, Շարլ տը Կօլ կը յայտարարէ խորհրդարանի կազմալուծում եւ խորհրդարանական նոր ընտրութիւններ: Այս քայլը որոշիչ կ'ըլլայ յեղափոխական տրամադրութեան աստիճանական չիջումին համար: Յեղափոխութենէն դէպի բարեփոխում, արմատական փոփոխութենէն դէպի խորհրդարանական կայունութիւն: Շարժումը կը չիջի լիպերալ ընկերվարութեան օգնութեամբ:

Բնականաբար, միշտ չէ որ խորհրդարանական եւ կառավարական վերափոխութիւնները կը դադրեցնեն շարժումները: Եգիպտոսի յեղափոխութեան կիզակէտին՝ 2011 Յունուար 31-ին, նախարարական կազմին փոփոխութիւնը ոչ մէկ ազդեցութիւն ունեցաւ ցուցարարներուն վրայ:

Հասկնալի է, որ զանգուածային շարժումի կասեցման հետ կապուած վերոյիշեալ չորս կէտերը բացարձակ չեն եւ ոչ ալ միակն են: Ինչ որ նշեցի լոկ կմախքային ուրուագիծ մըն էր, նպատակ ունենալով շեշտել շարժումի եւ իշխանութեան անհամատեղելի դրութիւնը:

Յաջորդ սիւնակով՝ լեզուական գործօնին չահագործումը շարժումի կասեցման համար:

(Տար. 2)

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Այսու կը ծանուցանենք եգիպտահայ յարգոյ մեր հասարակութեան, որ Առաջնորդարանին մօտ տրամադրելի են արեւմտահայերէն «Նոր Կտակարան»-ներ:

Փափաքողները, ունենալու համար, կրնան դիմել Ազգային Առաջնորդարան:

**Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

## ԵՒՐՈՊԱԿԱՆ ՆԵՐԴՐՈՒՄԱՅԻՆ ԴՐԱՄԱՏՈՒՆԸ 60 ՄԻԼԻՈՆ...

2

*Նախագիծը հսկայ տարողութիւն ունեցող ծրագիրի մէկ մասն է, որուն նպատակը 556 քմ. երկարութիւն ունեցող «Հիւսիս-Հարաւ» ճանապարհային միջանցքի բարելաւումն է (Հայ-վրացական Բաւրայի անցակէտէն մինչեւ Իրանի սահման):*

*Նախագիծը կը ֆինանսաւորուի Ասիական զարգացման դրամատան եւ Եւրոպական Միութեան հարեւանութեան ներդրումային հիմնադրամին կողմէ:*

*Նշենք, որ ասիկա Եւրոպական ներդրումային դրամատան կողմէ Հայաստանի մէջ կատարուած 6-րդ ներդրումն է, որուն լոյսին տակ Հայաստանի մէջ վարկաւորման պարտաւորութիւնը հասած է 12 միլիոն եւրոյի:*

## ՎԼԱՏԻՄԻՐ ՓՈՒԹԻՆ.- «ԿՈՎԿԱՍ ԵԿԱԾ ԵՆՔ... ՄՆԱԼՈՒ»

1

*ներուն վրայ: Մենք նաեւ որոշեցինք շարունակել առեւտուրի եւ ռուսական ներդրումներու կայուն զարգացումը», ըսաւ Սարգսեան:*

*Անոր համաձայն, յատուկ ուշադրութիւն պիտի դարձուի ուժանիւթային եւ հաղորդակցութեան ու փոխադրութեան ոլորտներուն:*

*Փութին իր կարգին ողջունեց Հայաստանի եւ Ատրպէյճանի նախագահներու վերջին տեսակցութիւնը ու խոստացաւ զօրակցիլ բանակցութիւններուն: «Մենք կը ցանկանանք, որ տարածաշրջանին մէջ յետ այսու արիւն չհեղուի», ըսաւ Ռուսիոյ նախագահը: Ան հաստատեց, որ Հայաստան ռուսական զէնք կրնայ գնել ներռուսական գիներով: Փութին նշեց, որ Հայաստանի եւ Ռուսիոյ միջեւ ապրանքաշրջանառութիւնը մէկ տարուան ընթացքին աճած է 20 առ հարիւրով եւ հաստատեց, որ երկու կողմերը կը խորացնեն համագործակցութիւնը հիւլէական ոլորտին մէջ: Խօսելով կազի գիներուն մասին, Փութին նշեց, որ իրենք որոշած են բնական կազը Հայաստանին վաճառել մէկ խորանարդ մեթրը 189 տոլարով, մինչ Եւրոպայի մէջ այդ գինը կը հասնի մինչեւ 500 ամերիկեան տոլարի:*

## ՄԱՀ ԵՒ ԱԶԳԱՅԻՆ ՅՈՒՂԱՐԿԱՒՈՐՈՒԹԻՒՆ ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ԵՒ ԳԱՀԻՐԷԻ ՊԱՏԿԱՌԵԼԻ ԹԵՄԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐՈՒ ԵՐԿԱՐԱՄԵԱՅ ԱՆԴԱՄ ՏԻԱՐ ՌՈՒԲԷՆ (ՃԷՔԻ) ԿԷՎՐԷԿԵԱՆԻ

Հինգշաբթի, 28 Նոյեմբեր 2013-ին ի Տէր հանգաւ Աղեքսանդրիոյ եւ Գահիրէի Պատկառելի Թեմական Ժողովներու երկարամեայ անդամ Տիար Ռուբէն (Ճէքի) Կէվրէկեան:

Հանգուցեալին թաղման կարգը եւ ազգային յուղարկաւորութիւնը տեղի ունեցաւ 29 Նոյեմբեր 2013-ին, յետ միջօրէի ժամը 1-ին, Գահիրէի Ս. Գրիգոր Լուսաւորիչ Եկեղեցւոյ մէջ, հանդիսապետութեամբ Թեմիս Բարեխնամ Առաջնորդ Գերշ. Տ. Աշոտ Եպս. Մնացականեանի եւ մասնակցութեամբ հոգեւոր դասի: Հանգուցեալին յիշատակը յարգելով՝ վերջին հրաժեշտի եկած էին Գահիրէի Թեմական եւ Քաղաքական Ժողովներու ատենապետները եւ երեսփոխանները, գաղութիս սգակիր անդամներ, ինչպէս նաեւ օտարներ:

Արարողութեան ընթացքին Առաջնորդ Սրբազան Հայրը դամբանական խօսքին մէջ վեր հանեց Ազգային Իշխանութիւններու բազմավաստակ անդամին հայրենասիրական ոգին, անմնացորդ նուիրումը եւ բարձր արժանիքը, որ իր կեանքի ընթացքին հետեւողական եւ բծախնդիր ծառայութեամբ ի սպաս դրաւ Եգիպտահայ համայնքի մշակութային, մարզական, ընկերային, գաղութային եւ յատկապէս ազգային գործերուն:

Այս առիթով Սրբազան Հայրը Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ Թեմական Ժողովներու եւ գաղութիս անդամներու ցաւակցութիւններ յայտնեց սգակիր ազգականներուն եւ հարազատներուն:

Այնուհետեւ, յանուն «Յուսաբեր» Մշակութային Ընկերակցութեան վարչութեան եւ յարակից մարմիններու եւ միութիւններու հայերէնով եւ արաբերէնով դամբանական կարդաց Տիար Լեւոն Դելփեան:

Յետ եկեղեցական կարգի, հանգուցեալ Ռուբէն (Ճէքի) Կէվրէկեանի մարմինը փոխադրուեցաւ Հելիոպոլսոյ Ազգային գերեզմանատուն եւ ամփոփուեցաւ ընտանեկան դամբարանին մէջ:

Խունկ եւ աղօթք հանգուցեալի անմոռաց յիշատակին:

**ԴԻՒԱՆ**

**ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

## ԳԱՀԻՐԷԻ ԹԵՄԱԿԱՆ ԺՈՂՈՎԻ 2013-Ի Գ. ՆԻՍՏ ԵՒ ԹԵՄԱԿԱՆ ՀԱՄԱԳՈՒՄԱՐ ԺՈՂՈՎ

Այսու կը ծանուցենք, թէ Հինգշաբթի, 12 Դեկտեմբեր երեկոյեան ժամը 8:00-ին Պըլըքտանեան սրահին մէջ, Հելիոպոլիս, պիտի գումարուի Գահիրէի Պատկառելի Թեմական Ժողովի 2013-ի Գ. նիստը:

Իսկ Թեմական Համագումար Ժողովը պիտի գումարուի Ուրբաթ, 13 Դեկտեմբեր 2013-ին կէսօրուան ժամը 11:00-ին Գահիրէի Ազգային Առաջնորդարանին մէջ:

ԴԻՒԱՆ

ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

## ԹԵՄԱԿԱՆ ԺՈՂՈՎԻ 2013 ՏԱՐԵՇՐՋԱՆԻ Բ. ՆԻՍՏ

Աղեքսանդրիոյ Պատկառելի Թեմական Ժողովի 2013 տարեշրջանի Բ. Նիստը պիտի գումարուի Ուրբաթ, 20 Դեկտեմբեր 2013-ի առաւօտեան ժամը 11:00-ին Ազգային Առաջնորդարանի դահլիճին մէջ:

ԴԻՒԱՆ ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ

ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

Հիմնուած 1948

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.
TCHAHAKIR
Armenian Weekly


P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com


ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1716 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 26 ԴԵԿՏԵՄԲԵՐ 2013 ՅԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٧١٦ الخميس ٢٦ ديسمبر ٢٠١٣


ԹՈՒՐՔԻԱ

## ՏԱՒՈՒՏՕՂԼՈՒԻ «ՍՊԻՏԱԿ ԷՋԸ»



*Թուրքիոյ արտաքին գործոց նախարար Ահմատ Տաւուտօղլու յայտարարեց, որ իրենք սպիտակ էջ բացած են Հայաստանի հետ եւ կառուցողական դիրքորոշում պիտի առնեն Երեւանի հետ յարաբերութիւններու կարգաւորման եւ ղարաբաղեան հակամարտութեան կարգաւորման հարցերուն մէջ:*

*Տաւուտօղլու այդ մասին տեղեկացուցած է Անգարայի մօտ Ֆրանսայի եւ Զուիցերիոյ դեսպաններուն, որոնց հանդիպած է Լիթուանիոյ դեսպանատան մէջ կազմակերպուած ընթրիքի ընթացքին: Դեսպանները նախարարին հարցադրած են Երեւանի մէջ կատարած վերջին յայտարարութիւններուն մասին:*

*Թուրք նախարարը Պոլսոյ մէջ տեսակցեցաւ Հայոց պատրիարքական ընդհանուր փոխանորդ Արամ Արք. Աթէշեանի հետ: Տեսակցութեան մէկ հատուածը դռնփակ ընթացաւ:*

*Նախարարը Արքեպիսկոպոսին նուիրեց նկարազարդ ափսէ մը, իսկ Աթէշեան Տաւուտօղլուին ներկայացուց գիրք մը:*

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՑՈՅՑ ԸՆԴԴԷՄ ՌՈՒՍԻՈՅ ՀԵՏ ՀԱՄԱՁԱՅՆՈՒԹԵԱՆ

*Հայաստանի Ազգային ժողովը գումարեց արտակարգ նիստ, քննարկելու համար զանազան թղթածրարներ, անոնց շարքին Հայաստանի եւ Ռուսիոյ կառավարութիւններուն միջեւ ստորագրուած համաձայնութիւնը, ըստ որուն, «Հայռուսկազարդ» ընկերութեան Հայաստանի կառավարութեան պատկանող բաժինին 20 առ հարիւրը կը վաճառուի ռուսական «Կազբրոմ» ընկերութեան: Իշխող Հանրապետական կուսակցութեան երեսփոխանները սակայն չներկայացան քուէարկութեան նիստին, ուստի քուէարկութիւնը յետաձգուեցաւ:*

*Նախապէս, Սահմանադրական դատարանը սահմանադրական որակեց Երեւանի եւ Մոսկուայի միջեւ ստորագրուած նշեալ համաձայնութիւնը: Համաձայնութեան ընդդիմացող ուժերը կը հաւատան, որ նշեալ համաձայնութեան պատճառով, Հայաստան մինչեւ 2043 թուական կախեալ պիտի մնայ ռուսական կողմէն:*

*Խորհրդարանական նիստին զուգահեռ, Ազգային ժողովին մօտ տեղի ունեցաւ բողոքի հաւաք, «Որոշողը մենք ենք» նախաձեռնութեան պատասխանատուներուն կազմակերպութեամբ: Ցուցարարները յայտարարեցին, որ «Հայռուսկազարդ» ընկերութեան Հայաստանի կառավարութեան մասնաբաժնի 20 առ հարիւրը «Կազբրոմին» վաճառելու որոշումին համաձայնող երեսփոխանները պիտի համարուին ազգի դաւաճաններ: «Այսօր կը բացայայտուին այն երեսփոխանները, որոնք կը ծառայեն հանրութեան շահերուն եւ անոնք որոնք սերտօրէն կը համագործակցին վարչակարգին հետ», ըսին բողոքող քաղաքացիները:*

*Ցուցարարները փակեցին Բաղրամեան պողոտան եւ սկսան վանկարկել «Ինքնիշխան Հայաստան»: Հաւաքին ընթացքին տեղի ունեցաւ հրմշտուք ցուցարարներուն եւ ոստիկաններուն միջեւ: Ձերբակալուած քաղաքացիներէն շատեր նոյնիսկ ոստիկանատուն չփոխադրուեցան այլ ազատ արձակուեցան կարճ ժամանակ ետք:*

ՆՈՐ ՏԱՐՈՒԱՆ ԵՒ
Ս. ԾՆՈՒՆԴԻ ԱՌԹԻՒ
«ՃԱՀԱԿԻՐ»
Կը Շնորհաւորէ Իր Բոլոր
Աշխատակիցները,
Ընթերցողները Եւ Բարեկամները
Մաղթելով Անոնց
ԵՐՋԱՆԿՈՒԹԻՒՆ,
ԽԱՂԱՂՈՒԹԻՒՆ,
ԵՒ ՔԱՋԱՌՈՂՋՈՒԹԻՒՆ

ԱՐՑԱԽ

## ԶԻՆԱԴԱԴԱՐԻ ԽԱԽՏՈՒՄՆԵՐ

*Լեռնային Ղարաբաղի Հանրապետութեան պաշտպանութեան նախարարութիւնը յայտարարեց, որ Ատրպէյճանի հետ շփման գիծին վրայ անցնող շաբթուան ընթացքին տեղի ունեցած են 200 խախտումներ: Ատրպէյճանական ուժեր հայկական դիրքերուն ուղղութեամբ արձակած են աւելի քան 1200 կրակոց: Հայկական ուժերը հաւատարիմ մնացած են զինադադարի համաձայնութեան եւ վստահօրէն իրականացուցած են մարտական դիրքերու պաշտպանութիւն:*

## ԲԱԿՕ ՍԱՀԱԿԵԱՆ.- «ԱՐՑԱԽԸ ՊԷՏՔ Է ՎԵՐԱԴԱՌՆԱՅ ԲԱՆԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ ՍԵՂԱՆ»



*Արցախի Հանրապետութեան նախագահ Բակօ Սահակեանի հանդիպումը ԵԱՀԿ Մինսկի խումբի համանախագահներուն հետ:*

*Արցախի Հանրապետութեան նախագահ Բակօ Սահակեանը Դեկտեմբերի 17-ին ընդունել է ԵԱՀԿ Մինսկի խմբի համանախագահներ Իգոր Պոպովին (ՌԴ), Ժակ Ֆորին (Ֆրանսիա), Ջէյմս Ուորլիքին (ԱՄՆ) եւ նրանց ուղեկցող անձանց:*

*Արցախի Նախագահի աշխատակազմի տեղեկատուութեան գլխաւոր վարչութիւնից յայտնում են, թէ հանդիպմանը քննարկուել են ատրպէյճանա-ղարաբաղեան հակամարտութեան կարգաւորմանը եւ տարածաշրջանային գործընթացներին վերաբերող մի շարք հարցեր:*

*Երկուստեք կարեւորուել է ԵԱՀԿ Մինսկի խմբի շրջանակներում ատրպէյճանա-ղարաբաղեան յարաբերութիւնների խաղաղ կարգաւորումը եւ ուժային տարբերակների բացառումը:*

*Նախագահ Սահակեանը գործընթացի առանցքային նախապայմաններից է համարել պաշտօնական Ստեփանակերտի լիիրաւ մասնակցութեամբ բանակցային լիարժէք ձեւաչափի վերականգնումը եւ Ատրպէյճանի կողմից ագրեսիւ ու ապակառուցողական քաղաքականութեան դադարեցումը:*

*Հանդիպմանը ներկայ էին Արցախի Հանրապետութեան արտաքին գործերի նախարար Կարէն Միրզոեանը, ԵԱՀԿ գործող նախագահի անձնական ներկայացուցիչ, դեսպան Անջէյ Կասպշիկը, պաշտօնատար այլ անձինք:*

## ՕԼԱՆՏ Կ'ԱՅՑԵԼԷ ՀԱՅԱՍՏԱՆ



*Ֆրանսայի նախագահ Ֆրանսուա Օլանտ ընդունեց Ֆրանսայի հայկական կազմակերպութիւններու համակարգող խորհուրդի պատուիրակութիւնը եւ յայտարարեց, որ Հայաստան պիտի այցելէ 2014-ի Մայիսին, ընդառաջելով Հանրապետութեան նախագահ Սերժ Սարգսեանի հրաւէրին:*

2

## ՀԻԱՍԹԱՓՈՒԹԻՒՆ ՓԷՐԻՆՉԷՔԻ ԳՈՐԾՈՎ

*Հայաստան-Զուիցերիա միաւորումը խորապէս հիասթափուած է մարդկային իրաւունքներու եւրոպական դատարանի առած որոշումին հանդէպ, որ կը վերաբերի Հայոց ցեղասպանութիւնը ժխտող թուրք գործիչ Տողու Փէրինչէքի դատական թղթածրարին: Միաւորումին համաձայն, այդ որոշումը կասկածի տակ կը դնէ ցեղասպանութեան դէմ զուիցերիական օրէնքի գործադրութիւնը:*

*«Խօսքի ազատութիւնը իրաւաբանօրէն աւելի բարձր դասուած է, քան զոհերուն ցաւը», յայտարարեց միաւորումը եւ Պեռնի իշխանութիւններուն կոչ ուղղեց բողոքելու մարդկային իրաւունքներու եւրոպական դատարանի մեծ պալատի որոշումը: Յիշեցնենք, որ թուրք հակահայ գործիչ Փէրինչէքը 2008 թուականին Զուիցերիոյ մէջ դատապարտուած էր Հայոց ցեղասպանութեան հրապարակային ժխտումին համար:*

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՍԴՀԿ ՀԱՄԱԽՄԲՈՒԵԼՈՒ ԿՈՉ Կ՚ԸՆԷ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՁԱԽ ՈՒԺԵՐՈՒՆ



*ՍԴՀԿ Հայաստանի Վարչութիւնը հանդէս եկաւ յայտարարութեամբ՝ կոչ ընելով բոլոր քաղաքական ձախ ուժերուն համախմբուելու եւ միասնաբար պայքարելու յանուն սոցիալական արդարութեան եւ օլիգարխիկ համակարգի դէմ քաղաքական պայքար սկսելու համար:*

*Յայտարարութեան մէջ ըսուած է.-*

*Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան կուսակցութեան յայտարարութիւնը երկրում տիրող վիճակի վերաբերեալ Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան կուսակցութեան Հայաստանի կազմակերպութիւնը, վերլուծելով 1991 թ.-ից մինչեւ այսօր մեր Հայրենիքում վարուող ներքին քաղաքականութիւնը, արձանագրում է.*

*Մէկը միւսին յաջորդող իշխանութիւնները փոխում են անձանց, բայց ոչ երբեք համակարգը:*

*1. Այս համակարգը կոչուած է հարուստին հարստացնելու եւ աղքատին աւելի աղքատացնելու:*

*2. Վերջին 24 տարիների ընթացքում իրար յաջորդող իշխանութիւնների թեթեւ ձեռքով ոչնչացուել եւ օտարին է յանձնուել Հայաստանի ազգային հարստութիւնը, որը հանդիսանում է Հայաստանի ինքնիշխանութեան կարեւորագոյն բաղկացուցիչ մաս:*

*3. Հայաստանն այլեւս սուվերեն պետութիւն չէ ներքին ռեսուրսների օգտագործման առումով: Առկայ համակարգը կուլ է տուել Հայաստանի էներգետիկ, հանք արդիւնաբերական, արտադրական համակարգերը, տեղական արտադրողը խեղդուած է, իսկ Հայաստանից ամէն տարի դուրս են բերւում միլիարտաւոր տոլարների հասնող գումարներ:*

*4. Հայաստանում առկայ է ընկերային անարդարութեան մի համակարգ, որը երկիրը տանում է դէպի գաղութացման:*

*5. Հայաստանում չատ մեծ թուերի է հասնում արտագաղթն ու գործազրկութիւնը, իսկ աշխատաւոր զանգուածը, որի հիմնական գործատուն օլիգարխիան է, զրկուած է սեփական իրաւունքները պաշտպանելու գէթ մէկ տարրական հնարաւորութիւնից:*

*6. Հայաստանում չեն գործում աշխատաւոր մարդուն պաշտպանելուն ուղղուած արհմիութիւնները, խախտուած վիճակում է 8 ժամեայ աշխատանքային կրաֆիկը:*

*Ելնելով այս ամէնից եւ փաստելով, որ Հայաստանում կայացած չէ քաղաքական համակարգը՝ ՍԴՀԿն կոչ է անում բոլոր ձախ ուղղուածութիւն ունեցող քաղաքական ուժերին օր առաջ համախմբուել եւ ստեղծել ամուր եւ միասնական միութիւն՝ յանուն սոցիալական արդարութեան եւ օլիգարխիկ համակարգի դէմ քաղաքական պայքար սկսելու համար:*

*Այս նպատակով ՍԴՀԿ-ն սկսում է խորհրդակցութիւններ առանց բացառութեան բոլոր ձախ ուժերի, այդ թւում նաեւ ձախակողմեան գաղափարախօսութիւն կրող անհատների հետ, ընդհանուր միասնական պլատֆորմ ստեղծելու համար:*

*Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան կուսակցութիւնն արդէն 2014 թ.-ի սկզբին կը տեղեկացնի հանրութեանը իր գործողութիւնների եւ անելիքների մասին:*

«ԺՈՂՈՎՈՒՐԴ».-

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԲՆԱԿՉՈՒԹԻՒՆԸ ԿԸ ՆՈՒԱԶԻ, ԻՍԿ ԱՏՐՊԷՅՃԱՆԻ ԲՆԱԿՉՈՒԹԻՒՆԸ՝ Կ՚ԱՒԵԼՆԱՅ

*«Ժողովուրդ»ը գրում է. «ՀՀ Ազգային Վիճակագրական Ծառայութիւնը Հայաստանի բնակչութեան վերաբերեալ բաւական ուշագրաւ փաստեր է հրապարակել: Ըստ պաշտօնական տեղեկութեան՝ ՀՀ-ում բնակչութիւնը 2010թ. կազմել է 3,2 մլն. մարդ, իսկ 2012թ. այն դարձել է 3 մլն.:*

*Թէ ինչքա՞ն է իրականում, դժուար է միանշանակ ասել: Բայց ուշագրաւ է հարեւան Ատրպէյճանում առկայ բնակչութեան թուաքանակի տինամիկան: Նոյն Ազգային Վիճակագրական Ծառայութեան տուեալներով՝ Ատրպէյճանում բնակչութիւնը 2010թ. կազմել է 9 մլն., իսկ 2012-ին՝ 9,3 մլն.:*

*Այս տարիներին աճել է նաեւ Ղազախստանի, Ռուսաստանի, Ուզպեկստանի եւ ԱՊՀ այլ երկրների բնակչութեան թիւը: Իսկ ահա Հայաստանում ժողովրդագրական վիճակը գնալով անկում է ապրում: Ու պարզ չէ, թէ ի՞նչ կը լինի Մաքսային Միութեանն անդամագրուելուց յետոյ»:*

ՀԱՅ ԹԵՐԹԸ ԸՆԿԵՐՆ Է ՀԱՅ ՏԱՆ

## «ԻԹԻՀԱՏ» ՕԴԱՆԱՒԱՅԻՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆԸ ՄՈՒՏՔ ԿԸ ԳՈՐԾԷ ՀԱՅԱՍՏԱՆ




*Արաբական Միացեալ էմիրութիւններու ազգային «Իթիհատ» օդանաւային ընկերութիւնը 16 Դեկտեմբերին յայտարարած է, որ շաբաթական չորս թռիչք պիտի կատարէ Ապու Տապի-Երեւան ուղղութեամբ: Դէպի Հայաստանի մայրաքաղաք թռիչքները պիտի սկսին յառաջիկայ տարուան 2 Յուլիսին:*

*Ընկերութեան հաղորդագրութեան համաձայն, Միացեալ էմիրութիւններու գլխաւոր փոխադրողը երկու դասակարգ ունեցող «A320» օդանաւեր պիտի օգտագործէ՝ շաբաթական 1088 ճամբորդի փոխադրութիւն կատարելով:*

*Ընկերութեան հրապարակած հաղորդագրութեան մէջ նշուած է. «Երեւանը Հայաստանի մեծագոյն քաղաքն է ու աշխարհի հնագոյն, մնայուն կերպով բնակեցուած քաղաքներէն մէկը: Նոր թռիչքները գոհացում պիտի տան Արաբական Միացեալ էմիրութիւններու եւ Երեւանի միջեւ օրէօր աճող օդային ճանապարհորդութեան պահանջքին: Անոնք նաեւ օգտակար պիտի ըլլան աշխարհով մէկ սփռուած հայերուն, ու յատկապէս Միացեալ Նահանգներու հայկական գաղութին՝ բանալով դէպի Երեւան նոր օդանաւային ուղի»:*

*«Իթիհատ» օդանաւային ընկերութեան դէպի Երեւան թռիչքներու իրականացումը համահունչ է մեր՝ զարգացող եւ արագ աճող շուկաներ ներթափանցելու ռազմավարութեան հետ: «Իթիհատ» ընկերութիւնը պիտի ըլլայ Ծոցի երկիրներէն միակ առեւտրային օդանաւային ընկերութիւնը, որ ծառայութիւններու ամբողջական ծրար պիտի տրամադրէ դէպի Երեւան», յայտնած է «Իթիհատ»-ի նախագահ եւ գլխաւոր գործադիր տնօրէն Ճէյմզ Հոկընը՝ նշելով, որ նոր ուղղութիւնը «պիտի նպաստէ զբօսա-*

4

## ՕԼԱՆՏ Կ՚ԱՅՑԵԼԷ ՀԱՅԱՍՏԱՆ

1

*Ֆրանսայի նախագահը բարձր գնահատեց Ֆրանսայի հայկական կազմակերպութիւններու համակարգող խորհուրդի աշխատանքը:*

*Հայկական պատուիրակութիւնը ներկայացուց իր ծրագիրը եւ ստացաւ նախագահին զօրակցութիւնը: Քննարկուեցան նաեւ Ցեղասպանութեան 100 ամեակին առթիւ կազմակերպուելիք ձեռնարկները:*

ՀԱՅԱՍՏԱՆ

ՍԴՀԿ ԱՏԵՆԱՊԵՏ.

## «ԹՈՒՐՔԻԱՆ ԱՄԷՆ ԻՆՉ ԱՆՈՒՄ Է, ՈՐՊԷՍԶԻ ՍԻՐԻԱՅՈՒՄ ՔՐԻՍՏՈՆԵԱՆԵՐ ՈՒ ՅԱՏԿԱՊԷՍ ՀԱՅԵՐ ՉՄՆԱՆ»



*Թուրքիան ամէն ինչ անում է, որպէսզի Սիրիայում քրիստոնեաներ ու յատկապէս հայեր չմնան, հայկական համայնքը վերանայ: Այս մասին, Դեկտեմբերի 19-ին, Հայաստանում Սիրիայի գործերի ժամանակաւոր հաւատարմատար Իսսամ Նայալի հետ հանդիպման ժամանակ նշել է ՍԴՀԿ Հայաստանի վարչութեան ատենապետ Նարեկ Գալստեանը: Հանդիպմանը մասնակցել են նաեւ ՍԴՀԿ Հայաստանի վարչութեան անդամներ՝ փոխատենապետ Վազգէն Մեսրոպեանը, արտակարգ եւ լիազօր դեսպանորդ Դմիտրի Մարտիրոսեանը եւ Գագիկ Մելիքեանը:*

*Իսսամ Նայալը շնորհակալութիւն է յայտնել Հայաստանին ու հայ ժողովրդին Սիրիայի հարցում ունեցած հաւասարակշիռ վերաբերմունքի համար, ինչպէս նաեւ ընդգծել Սիրիայում բնակւող հայերի դերն այդ երկրում խաղաղութեան ամրապնդման հարցում: ՍԴՀԿ ատենապետն ընդգծել է իրենց համար Սիրիայի տարածքային ամբողջականութեան պահպանման, ինչպէս նաեւ եղբայրական երկրում խաղաղութեան հաստատման կարեւորութիւնը: Խօսելով տարածաշրջանային խնդիրների մասին՝ նա իր խօսքում նկատել է, որ Սիրիայում խաղաղութեան հաստատմանը դէմ է յատկապէս Թուրքիան:*

*«Խօսակցութիւններ կան, որ որոշ թուրքական կազմակերպութիւններ գլխագին են նշանակել ամէն մի սպանուած հայի համար»,- նշել է ՍԴՀԿ ատենապետը:*

*ՀՀ-ում Սիրիայի գործերի ժամանակաւոր հաւատարմատարը յոյս է յայտնել, որ շուտով Սիրիայում խաղաղութիւն կը վերահաստատուի, եւ Սիրիայի ու Հայաստանի մէջ կը վերականգնուեն երբեմնի աշխոյժ եւ սերտ քաղաքական, տնտեսական եւ մշակութային կապերը:*

## ԱԿԱԴԵՄԱԿԱՆ ՆԻՍՏ ՎԵՆԵՏԻԿԻ ԿԱ ՖՈՍԿԱՐԻ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻՆ ՄԷՋ Ի ՊԱՏԻՒ ՊՐՈՖ. Հ. ԼԵՒՈՆ ԶԷՔԻԵԱՆԻ ԳԻՏԱՀԵՏԱԶՕՏԱԿԱՆ ՎԱՍՏԱԿԻՆ ԻՐ ԵՕԹԱՆԱՍՆԱՄԵԱԿԻՆ ԱՌԹԻՒ

Գործընկերներու, բարեկամներու եւ նախկին սաներու բազմութիւն մը, ժամանած Իտալիոյ տարբեր քաղաքներէն եւ արտասահմանէ, հաւաքուեր էր Չորեքշաբթի, 11 Դեկտեմբերին, Կա Ֆոսկարի Համալսարանի Բարատտոյ դահլիճին մէջ նշելու համար Պրոֆ. Պօղոս Լեւոն Զէքիեանի կամ պարզապէս Հ. Լեւոնի եօթանասնամեակը, յիշելով անոր մանկավարժական, դասախօսական եւ գիտահետազօտական վաստակը: Բացման խօսքը կատարեց, ի բացակայութեան Բաժանմունքի տնօրէն Պրոֆ. Թիցիանա Լիփփիելլոյի՝ որ կը գտնուէր Փեքին, փոխտնօրէն Պրոֆ. Դանիելա Մենեգինի:

Հ. Լեւոնի յաջորդը իր հիմնած ամբիոնին վրայ՝ Պրոֆ. Ալդոյ Ֆերրարի կը վարէր նիստը:

Նախ խօսեցաւ Մխիթարեան Միաբանութեան Ընդհ. Աբբահայր Գերյ. Հ. Եղիա Վրդ. Քիլաղպեան, որ չեշտեց թէ Հ. Լեւոն Մխիթարի զաւակն է: Ապա խօսք առաւ Գերպ. Կլաուդիոյ Գուջերոտտի, յատկապէս ժամանած Մինսկէ՝ ուր Պապական Նուիրակ է. նա խորապէս վերլուծեց Հ. Լեւոնի հայագիտական երկասիրութիւններուն աստուածաբանական խորքը, վեր հանելով յատկապէս անոր կողմէ կատարուած ինքնատիպ մշակումը ազգի կամ էթնոսի աստուածաբանութեան: Ըստ Գերպ. Գուջերոտտիի՝ Հ. Լեւոն քօղազերծեց գիտական միջազգային հասարակութեան համար Հայ Եկեղեցւոյ տիտաններուն աստուածաբանական յոյժ ինքնատիպ միտքը, անդրազանցելով նեղիմաց բանասիրապաշտութեան մը սահմանները՝ առանց դրժելու սակայն բանասիրական խստապահանջութեան:

Ժրոֆ. Գաբրիելլա Ուլուհոճեան բնութագրեց Հ. Լեւոնի մանկավարժական դաստիարակչական գործը, յատկապէս հայակերտումի ուղղութեամբ՝ Հայ Լեզուի եւ Մշակոյթի ամառնային խտացեալ Դասընթացքի արդէն չուրջ երեսուն տարի է, ամէն Օգոստոսին, անխափան կիրարկուող ծրագրին ընդմէջէն:

Օքսֆորդի հայագիտութեան ամբիոնի ղեկավար եւ ամառնային Դասընթացքի 1986-ի առաջին իսկ տարուան սան Պրոֆ. Թէոյ Ֆան Լինթ վերլուծեց Հ. Լեւոնի կերպարին բազմաշխարհեան կամ աշխարհաքաղաքացիական, կողմոպոլիտ բացուածքը: Բոլոնիայի հայագիտութեան ամբիոնի վարիչ՝ Պրոֆ. Աննա Շիրինեան, չեշտեց Հ. Լեւոնի նպաստը Հայ մշակոյթի, հայերէն լեզուի եւ յատկապէս արեւմտահայերէնի պահպանման գործընթացին մէջ: Կա Ֆոսկարիի Թրքագիտութեան ամբիոնի Վարիչ Պրոֆ. Իամպիերոյ Բելլինջերի եւ Վրացագիտութեան ամբիոնի հիմնադիր եւ նախկին վարիչ Պրոֆ. Լուիջի Մագարոթթոյ բացատրեցին իրենց կարգին թէ Հ. Լեւոն

4

# ՀԵՏԱՔՐՔՐԱԿԱՆ ՓԱՍՏԵՐ ԱՄԱՆՈՐԻ ՄԱՍԻՆ

Ամանորը կը տօնէ ողջ աշխարհը: Սակայն իւրաքանչիւր երկիր ունի զայն տօնելու իր առանձնայատկութիւնները:

Մեծն Բրիտանիոյ մէջ ամանորեայ սեղանի զարդը կը համարուի Սուրբ ծննդեան խմորեղէնը: Այդ խմորեղէնին մէջ կը դնեն մատանի, մետաղադրամ եւ նալ, որոնք իբր թէ պէտք է կանխագուշակեն ճակատագիրը գալիք տարուան համար: Այսպէս ՝ որուն հասնի մատանին, ան այդ տարի պիտի ամուսնանայ. մետաղադրամը հարստութեան խորհրդանիշն է. իսկ փոքր նալը կը համարուի երջանկութեան խորհրդանիշը:

Իտալիոյ մէջ լուսամուտներէն կը նետեն հին արդուկներ եւ աթոռներ: Այստեղ Նոր Տարին կը սկսի Յունուար 6-ին: Իտալացի Կաղանդ Պապան Պապպօ Նաթալին է: Իտալիոյ մէջ համոզուած են, որ Նոր Տարին պէտք է սկսիլ առանց հին իրերու: Այդ պատճառով անոնք իրենց տան լուսամուտներէն կը նետեն բոլոր հին իրերը:

Ֆրանսայի մէջ պէտք է գրկել գինիով լեցուն տակառը եւ շնորհաւորել Ամանորը: Ֆրանսական Կաղանդ Պապան Փեռ Նոէլն է: Ան կու գայ Ամանորի գիշերը եւ նուէրները կը դնէ երեխաներու կօշիկներուն մէջ: Տօնածառին մօտ կը դրուի գինիով լեցուն տակառ, զոր պէտք է գրկել եւ շնորհաւորել Նոր Տարին:

Գերմանիոյ մէջ Կաղանդ Պապան կու գայ աւանակի վրայ նստած: Քնանալէ առաջ երեխաներու սեղանին նուէրներու համար պնակ կը դնեն:

Փանամայի մէջ Նոր Տարին կ'աւետեն կէս գիշերին հնչող զանգերով եւ ինքնաշարժներու ազդանշաններով: Փանամացիները այդ պահուն բարձր կը պոռան, որպէսզի թարմացնեն եկող տարին:

Հնդկաստանի մէջ Ամանորը կրակներու տօն է: Հնդկաստանի տարբեր շրջաններու մէջ Ամանորը կը նշեն տարուայ տարբեր եղանակներուն: Մարտի սկիզբը կը նշեն Լոռին, այս տօնին ժամանակ երեխաները նախօրօք տան մօտ կը հաւաքեն չոր ճիւղեր եւ հին իրեր: Երեկոյեան կը վառեն մեծ կրակ, որուն շուրջ կ'երգեն ու կը պարեն: Իսկ երբ կու գայ աշունը, կը տօնեն Տիւալին: Տան կտուրներուն եւ պատուհաններուն մօտ կը տեղադրեն հազարաւոր ճրագներ:

Չեխիոյ եւ Սլովաքիոյ մէջ Կաղանդ Պապան ոչխարի մորթով զուարճալի եւ բարի ծերունի մըն է՝ Մագլաուշ անուանումով: Բոլոր փոքրիկները, որոնք տարուան ընթացքին լաւ սորված են եւ չարութիւն չեն ըրած, կը ստանան իրենց ուզածը:

Հոլանտայի մէջ Կաղանդ Պապան նաւով կու գայ: Փոքրիկները մեծ ուրախութեամբ անոր կը սպասեն նաւահանգիստը:

Իրանի մէջ Նոր Տարին կը նշեն Մարտ 21-ի գիշերը: Կէս գիշերին կը սկսին կրակել: Բոլոր չափահասները իրենց ձեռքերուն մէջ կ'ունենան արծաթէ մետաղադրամ՝ ի նշան անոր, որ մօտակայ տարին մնան իրենց հարազատ վայրին մէջ: Նոր Տարուան առաջին օրը ընդունուած է ջարդել տան հին ամանեղէնը եւ փոխարինել նորով:

Պուլկարիոյ մէջ Ամանորի գիշերը կը հաւաքուին դրացիները, ընկերները եւ հարազատները: Կէս գիշերին երեք վայրկեան կ'անջատեն տան բոլոր լոյսերը եւ կատարեալ մթութեան մէջ կը սկսին համբուրուիլ:

Յունաստանի մէջ հիւրերը կը կրեն մեծ եւ փոքր քարեր, զոր կը նետեն շեմին մօտ եւ կ'ըսեն,- «Թող այս տան հարստութիւնը ըլլայ այնքան ծանր, որքան այս քարը»: Իսկ եթէ հիւրին ձեռքը փոքր քար կայ, ուստի զայն կը նետեն եւ կ'ըսեն,- «Թող տան տիրոջ աչքի թախիծը ըլլայ այնքան փոքր, որքան այս քարը»:

ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ԽՈՀԵՐ

# ՇԱՐԺՈՒՄ
## ԱՆՇԱՐԺՈՒԹԻՒՆ ԼԵԶՈՒԻ ՕԳՆՈՒԹԵԱՄԲ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Ինչպէս անցեալ երկու սիւնակներուն մէջ կ'ակնարկէի, դրամատիրական չրջանը ամէն ճիգ գործադրեց դիմագրաւելու մարմնական անհատական չարժումը եւ արգիլելու անոր աճը զանգուածային չարժումի: Դրամատէր-իշխանաւորը պէտք ունի իրեն ենթարկուող զանգուածի՝ թէ՛ իբրեւ աշխատող եւ թէ՛ սպառող, որ ստիպուած ըլլայ իր կեանքի նուազագոյն պայմանները ապահովելու գնով նպաստելու իր տիրոջ հարստութեան կուտակման ու վերակուտակման: Զանգուածը պէտք չէ տնօրինէ իր ճակատագիրը: Իսկ երբ այդ զանգուածը փողոցացոյցերով չարժի՝ գրաւելով գործարաններն ու փողոցները, ցոյց տուած կ'ըլլայ իր մարդկային տարողութիւնն ու կչիռքը (ի դէմս մարդու մեքենայացման դրամատիրութեան ձգտումին) եւ դրամատիրութիւն-իշխանութիւնը դատարկած կ'ըլլայ իր գոյութեան ինքնասահմանեալ իմաստէն:

Լեզուական գործօնը եւս իր դերն ունի կանգնեցնելու չարժումը: Որքան որ հիմնահոսանքային հաղորդակցական միջոցներն ու «հռչակաւոր» հրատարակչատունները լիովին կը գտնուին դրամատիրութեան վերահսկողութեան տակ (տպագրական ծախս, եւ մանաւանդ՝ չուկայացման (marketing) հետ կապուած բոլոր մենատիրական մեքենայութիւնները), իշխանական խաւը կը փորձէ չահագործել լեզուական գործօնը, ստեղծելով բառերու, նախադասութիւններու եւ արտայայտութիւններու կարծրատիպեր՝ որոնք կը յառաջացնեն անչարժութեան եւ կայունութեան պատրանք: Բաւարարուիմ երկու օրինակով.

### 1. ՍԹԱԼԻՆԻ ԻՆՔՆԱԿԵՐՊԱՐԻ ՍՏԵՂԾՈՒՄԸ՝ Ի ԴԷՄՍ ԼԵՆԻՆԻ

Լենին-Սթալին կը դնեմ դրամատիրութեան բնաբանին մէջ: Սխալմունք մը չէ ասիկա: Պէտք է կարդալ Մարքսի *Das Kapital*-ի հատորները համոզուելու համար որ մարքսիզմն ու խորհրդային համայնավարութիւնը խորքային տարբերութիւններ ունին իրարմէ՝ կապուած յաւելեալ արժէքի, ազգ-պետութեան, օտարացումի, ֆեթիչիզմի եւ բազմաթիւ այլ հարցերու կապակցութեամբ: Այն ինչ որ Խորհրդային Միութեան մէջ գործադրուեցաւ համայնավարութեան անունով, պարզապէս պետական դրամատիրութիւն (state capitalism) մըն էր: Ասոր քննարկումը նիւթէս դուրս է, բայց կարեւոր սեպեցի զայն չեչտել՝ խուափելու համար թիւրիմացութենէ:

Անհատական պաչտամունքի ծիրին մէջ, Սթալին իր ղեկավարութեան աւելի քան երեսուն տարիներուն ընթացքին (1922-1953) աստիճանաբար կերտեց ինքնակերպար մը, երբեմն հակակերպար ունենալով Լենինը: Լենին դարձաւ Սթալինի կերպարի հայելին: Այս կերպարներէն մէկն էր անչարժ, միշտ մտածող Սթալինը, ի դէմս միշտ չարժող Լենինին, որ լաւագոյն կերպով արտացոլուած է այդ ժամանակուայ քանդակներուն մէջ, ուր Լենինի մարմինը միշտ գործողութեան մէջ է՝ աջ ձեռքով կը հրամայէ, «բարձրաձայն» կը խօսի, մինչ Սթալին կը ներկայանայ մտախոհ վիճակներով:

Շարժում-անչարժութիւնը թարգմանուած է նաեւ բառերու միջոցով, արտայայտուած պաչտօնական ճառերու, խորհրդային մամուլի եւ ընդհանրապէս խորհրդային բառապաչարին մէջ: Այս առումով իբրեւ նմոյչ պիտի ընտրեմ *Երգեր Լենինի եւ Սթալինի մասին*(1) երգարանը, որ կը պարունակէ երկու ղեկավարներուն նուիրուած խորհրդային երգերու ռուսերէն խօսքերն ու երաժչտութիւնը եւ կը ներկայացնէ սթալինեան վերջին չրջանի մտապատկերը:

Գիրքին մէջ Լենինի տիպարը մեծ մասամբ ներկայացուած է Սթալինի առնչութեամբ: Ահաւասիկ օրինակ մը.

«Փոթորիկներու ընդմէջէն ազատութեան արեւը չողաց մեզի, / Եւ մեծն Լենին մեր ուղին լուսաւորեց: / Սթալին դաստիարակեց մեզի ըլլալ ժողովուրդին հաւատարիմ, / Ոգեչնչեց մեզի դէպի աշխատանք եւ սխրագործութիւն:»(2) Լենին կ'առնչուի «փոթորիկ» բառին հետ, իսկ Սթալին՝ «հաւատարիմ»: Առաջին բառը արտա-մարդկային (մարդը չէ որ «փոթորիկ» կը յառաջացնէ) կատաղի չարժում մըն է, իսկ երկրորդը մարդկային անչարժ ենթարկուածութիւն մը:

Նոյնն է նաեւ հետեւեալ քառատողը. «Զայրացած կերպով բոցավառուեցաւ կայծակը բռնկուն / Ամրափակերուն [barricade] վրայ, / Իսկ Լենին կանգնեցաւ ղեկին մօտ Սմոլնիի մէջ, / Իր քովը ունենալով Սթալին:»(3) Լենինի հետ առնչուող բառը արագ չարժումի վտանգը ներկայացնող «կայծակ»-ն է՝ ան ալ «զայրացած» վիճակով, մինչդեռ այս (եւ *միայն* այս) պարագային Սթալին պարզ հետեւող մըն է Լենինին:

Բաց աստի, երգարանին մէջ Սթալին զերծ մնացած է «փոթորիկ»-ներէ եւ «կայծակ»-ներէ: Ասոնք միայն Լենինի յատկութիւններն են:

Ուչագրաւ է Լենին-Հայրենիք եւ Սթալին-Մայր-Հայրենիք զոյգ կապերը. «Հարազատ լենինեան պատգամներով՝ / Պահպանել մեր ժողովուրդի ոգեւորութիւնը: / Կենդանի, ծաղկուն Սովետներով՝ / Ազատօրէն ծաղկի Հայրենիքը: / Մեր սիրտերը լեցուած են սիրով, / Սթալին եւ Մայր-Հայրենիք: / Մենք պատրաստ ենք մեր սիրտը նուիրել / Ձեզի՝ Սթալին եւ Մայր-Հայրենիք:»(4) Հայրենիքը՝ որուն հետ կապուած է Լենին, ենթադրուած է ըլլալ առնական ու աւելի չարժուն, իսկ Մայր-Հայրենիքը՝ կապուած Սթալինի հետ, ներգրաւուած է ֆեմինիզմով՝ կանացի նուազ չարժումով:

Երգարանին մէջ Սթալինը «իմաստուն» է, այսինքն կը խորհի ու կը մտածէ. «Մեր իմաստուն առաջնորդ, սիրելի ուսուցիչ»(5), կամ «Ժողովուրդի մեծ, իմաստուն առաջնորդ»(6): Լենին մէկ անգամ կը ներկայանայ իբրեւ «իմաստուն», բայց որուն անպայմանօրէն կը յաջորդէ Սթալինի գերադասութեան չեչտումը. «Իմաստուն Լենին եւ մեծն Սթալին:»(7) Սթալին *աւելի* իմաստուն է քան Լենին:

Սթալինին առնչուող յաճախակի բառերէն է «ծաղկիլ»-ը (ռուսերէն՝ ռասցվեսթի, ցվեսթի), որ արմատական փոփոխութեան հրաւիրող բառ մը չէ երբեք, այլ կը ներկայացնէ ընթացող կեանքի մնայուն գեղեցկութիւնները եւ անվրդով պրելակերպը: Դէպի անչարժութիւն մղող բառ մըն է, հակառակ Խորհրդային նախասկզբունքի յեղափոխական գաղափարախօսութեան՝ փրոլեթարիական յեղափոխութիւն (երբեք չիրականացուած), յեղափոխական ոգի, եւլն.: Բայց ինչպէ՞ս կրնայ յեղափոխութիւն ծաւալուիլ «ծաղկող» երկրի մը մէջ:

«Յեղափոխութիւն» բառին բացակայութիւնը եւ «ծաղկիլ» բառին ներկայութիւնը կրնայ մեզի հասցնել մինչեւ արաբական յեղափոխութիւնները, որոնց «յեղափոխութիւն» անուանումը արեւմտեան հաղորդամիջոցներուն կողմէ չուտով փոխուեցաւ «Արաբական գարուն»-ի:

### 2. ԵԳԻՊՏՈՍ՝ ՅԵՂԱՓՈԽՈՒԹԵՆԷՆ ԴԷՊԻ ԳԱՐՈՒՆ

2011 Յունուար 25-ը Եգիպտոսի յեղափոխութեան օրն էր: Ընդամէնը երկու ամիս ետք՝ Մարտին, արեւմտեան հաղորդամիջոցները այս իրադարձութիւնը (եւ ընդհանրապէս արաբական յեղափոխական իրադարձութիւնները) սկսան անուանել «Արաբական գարուն»:

Գարունը աննման է: Ամէն տեղ ուրախութիւն է, երգ ու պար: Ամէն գարնան երկինքը կը դառնայ ջինջ, ծաղիկները կը փթթին, վարդերը կը տարածեն իրենց կախարդական բոյրը, սոխակները կը վերսկսին գեղերգել (յիչեցի դպրոցական նախակրթարանի չարադրութիւնները):

Գարունը գեղեցիկ է, հրապուրիչ է, կախարդական է, երազային է, եթերային է, ան կը հալեցնէ սառած տրամադրութիւնները, կը մխիթարէ յուսախաբ հոգիները, կը միացնէ սիրահար սիրտերը (յիչեցի դպրոցական բարձր դասարաններու չարադրութիւնները):

Գարունը խորապէս բանաստեղծական է.

«Գարունը այնքա՜ն ծաղիկ է վառել, / Գարունը այնպէ՛ս պայծառ է կրկին. / – Ուզում եմ մէկին քնքչօրէն սիրել, / Ուզում եմ անուչ փայփայել մէկին» (Վահան Տէրեան, *Գարուն*):

«Էլի գարուն կը գայ, կը բացուի վարդը, / Սիրեկանը էլի եարին կը մնայ: / Կը փոխուին տարիքը, կը փոխուի մարդը, / Բլբուլի երգն էլի՛ սարին կը մնայ» (Եղիչէ Զարենց, *Էլի գարուն կը գայ, կը բացուի վարդը*):

«Գարունն եկաւ կարմիր - կանանչ, / Արչալոյսով, ծիածանով. / Գարունն՝ հագած չողք ու ճաճանչ՝ / Գոգն ու ծոցը ծաղիկներով» (Աւետիք Իսահակեան, *Գարունն եկաւ*):

«Ու քայլեցի խայտալով ու չաղ տալով մայթերին / Մանուչակներ ու վարդեր ու չուչաններ ձիւնաթոյր, / Ու մարդիկ ինձ տեսնելով՝ իրենց յոգնած աչքերին / Տեսան ուրիչ մի աչխարհ, գարուն տեսան նորաբոյր (Յովհաննէս Շիրազ, *Գարնանամուտ*)»:

Այս բոլորը չատ լաւ: Բայց ասոնք յեղափոխութիւն չեն յառաջացներ եւ ոչ ալ կրնան ներկայացնել յետյեղափոխական չրջանի փոթորկոտ կացութիւնը: Եւ ճիչդ այս նպատակով է որ ստեղծուեցաւ «Արաբական գարուն» եզրը: Շարժում արտայայտող «յեղափոխութիւն» բառը ոչ միայն կը ներկայացնէ անցեալ մը՝ Յունուար 11-ին կատարուած եւ աւարտած գործողութիւն մը, այլ անոր անընդհատ կրկնութիւնը կրնայ արտադրել նորանոր չարժումներ:

4

ՁԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ



## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Այսու կը ծանուցանենք թէ Ազգային Բարեբարուհի Մարկըրիթ Պայծառ Յակոբեանի յիշատակին հաստատուած Հիմնադրամի 2013-ի եկամուտները, որ կը կազմեն 3,450 Ե.Ոսկի, պիտի բաշխուին հետեւեալ կերպով.

| Թիւ | Անուն | ԳՈՒՄԱՐ Ե.Ո. |
|---|---|---|
| 1- | Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ Հոգեւորականներ | 242.00 |
| 2- | Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ Սարկաւագներ | 103.50 |
| 3- | Շնորհալի Երգչախումբ | 345.00 |
| 4- | Ս. Եկեղեցւոյ Տիկնանց Խնամակալութեան | 207.00 |
| 5- | Գալուստեան եւ Մերճանեան մանկապարտէզներու ուսուցչուհիներ | 540.00 |
| 6- | ԱՐԵՒ - Օրաթերթին | 805.00 |
| 7- | ՅՈՒՍԱԲԵՐ - Օրաթերթին | 805.00 |
| 8- | ՋԱՀԱԿԻՐ Շաբաթաթերթին | 402.50 |
| | ԸՆԴՀԱՆՈՒՐ ԳՈՒՄԱՐ | 3,450.00 |

ԴԻՒԱՆ

ԳԱՀԻՐԷ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

ԱՅԼԸՆՏՐԱՆՔԱՅԻՆ ԽՈՀԵՐ

## ՇԱՐԺՈՒՄ ԱՆՇԱՐԺՈՒԹԻՒՆ ԼԵԶՈՒԻ ՕԳՆՈՒԹԵԱՄԲ

3

Ռամի Խուրի նոյնիսկ արեւելապաշտական միտում կը գտնէ «Արաբական գարուն»-ի գործածութեան մէջ. «Ես կը կարծեմ թէ «Արաբական գարուն» եզրին ժողովրդականութիւնը Արեւմտեան աշխարհին մէջ լուռ կերպով կ'արտացոլէ Արեւելապաշտութեան նուրբ գործադրութիւնը, մէկտեղելով բոլոր արաբները իբրեւ մարդկային մէկ զանգուած՝ ուր բոլորն ալ կը մտածեն ու կը վարուին միեւնոյն կերպով:»(8):

Ըլլայ Սթալինի ինքնանկարագրութեան համար գործածուած բառերը կամ արաբական յեղափոխութիւններուն բառային վերածումը «գարուն»-ի, կ'արտացոլեն միեւնոյն երեւոյթը՝ վախը զանգուածային շարժումէն:

(Վերջ 3)

### ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1. *Փեսնի օ Լենինէ ի Սթալինէ* (ռուսերէն), Մոլոտայա Կվարտիա Հրատարակչութիւն, Մոսկուա, 1952:

2. Անդ, *Խորհրդային Միութեան Հիմներգ*, խօսք՝ Ս. Միխալքով եւ Կ. Էլ-Ռեկիսթան, երաժշտութիւն՝ Ա. Ալեքսանտրով, էջ 7: Այս եւ յետագայ քաղուածքներու ռուսերէնէ հայերէն թարգմանութիւնները իմս են: Թարգմանութիւնները կատարած եմ ազատ՝ ոչ-բանաստեղծական, սկզբունքով:

3. Անդ, *Սմոլնիի մէջ*, խօսք՝ Եա. Շվետով, երաժշտութիւն՝ Վ. Պելով, էջ 18

4. Անդ, *Սուրբ լենինեան դրօշ*, խօսք՝ Օ. Քոլիչեւ, երաժշտութիւն՝ Ա. Ալեքսանտրով, էջ 10:

5. Անդ, *Երգ Սթալինի մասին*, խօսք՝ Ա. Սուրքով, երաժշտութիւն՝ Մ. Պլանթէր, էջ 62:

6. Անդ, *Մեծն Սթալին կ'առաջնորդէ մեզի դէպի համայնավարութիւն*, խօսք՝ Վ. Խարիթոնով, երաժշտութիւն՝ Ա. Նովիքով, էջ 156:

7. Անդ, *Սուրբ լենինեան դրօշ*, խօսք՝ Օ. Քոլիչեւ, երաժշտութիւն՝ Ա. Ալեքսանտրով, էջ 10:

8. Ramy G. Khoury, ‘Drop the Orientalist term ‘Arab Spring”, *The Daily Star*, 17 Օգոստոս 2011:

### ՃՇԴՈՒՄ

Անցեալ սիւնակին մէջ democracy բառին հայերէնը թիւրիմացաբար գործածած էի «ընկերվարութիւն»: Պէտք է սրբագրուի՝ «ժողովրդավարութիւն»: Հ. Ա.

## «ՋԱՀԱԿԻՐ»ԻՆ

Առ ի գնահատութիւն թերթիս տարած ազգային գործունէութեան, եղած են հետեւեալ նուիրատուութիւնները.-

| | |
|---|---|
| Տէր եւ Տիկին Վազգէն Գալթագճեան (ԱՄՆ | 3400 |
| Տէր եւ Տիկին Միհրան Սէֆէրեան (Լիբանան) | 1400 |
| Տէր եւ Տիկին Յակոբ Ժամկոչեան (ԱՄՆ) | 700 |
| Տէր եւ Տիկին Պերճ Գոգորեան (Գանատա) | 200 |

## ԱԿԱԴԵՄԱԿԱՆ ՆԻՍՏ ՎԵՆԵՏԻԿԻ ԿԱ...

2

ի՛նչպէս կը հաշտեցնէ գիտական անաչառութիւնը մարդկօրէն բառեխառն եւ հաշտարար կեցուածքի հետ:

Հուսկ, Միլանի Համալսարանի Հայերէնի դասախօս Պրոֆ. Ժայքար Սվազլեան, որ միանգամայն Նախագահն է Իտալիոյ Միութեան, յիշեց Հ. Լեւոնի հետ իր գործակցութեան տարիները իբրեւ քարտուղար, երբ ան կը վարէր Մուրատ-Ռափայէլեան Վարժարանի տնօրէնութիւնը (1982-1985):

Վերջաւորութեան խօսք առաւ Հ. Լեւոն՝ որ յայտնեց իր շնորհակալութիւնը նախ Բարձրեալին, ապա իր ծնողաց եւ դաստիարակներուն: Շնորհակալութիւն՝ խօսողներուն եւ ներկաներուն, սիրոյ եւ համակրանքի իրենց այս ջերմ վկայութեան համար:

Շնորհակալութիւն նոյնպէս Համալսարանի իշխանութիւններուն եւ Ուսանողական Տուներու Վարչութեան՝ յատկապէս իրենց մատուցած մեծ նպաստին համար Ամառնային Դասընթացքի իրականացման: Հ. Լեւոն չեշտեց մանաւանդ՝ որ իր գործունէութեան ծեծագոյն ներշնչումը կը պարտի մօրը, որ եղած է իր մեծագոյն ուսուցիչը, Մխիթար Աբբահօր՝ համամարդկային ու համահայկական այդ վիթխարի կերպարին:

Հանդէսը փակուեցաւ Մաէստրոյ Արամ Իփէկճեանի դուդուկի վարպետ նուագով, որ կատարեց Հ. Լեւոնի նախասիրած մեղեդիներէն ոմանք՝ «Դլէ Եաման», «Հաւուն հաւուն», «Քելէ, քելէ» եւ ուրիշներ:

## «ԻԹԻՀԱՏ» ՕԴԱՆԱՒԱՅԻՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆԸ ՄՈՒՏՔ ԿԸ ԳՈՐԾԷ ՀԱՅԱՍՏԱՆ

2

*շրջութեան զարգացման Հայաստանի մէջ, ինչպէս նաեւ աւելի եւս պիտի ամրապնդէ արդէն կայացած առեւտրային եւ զբօսաշրջային կապերը Հայաստանի եւ ԱՄԷ-ի միջեւ»:*

*«Գտնուելով Ապու Տապիէն մօտ երեք ժամ հեռաւորութեան վրայ՝ Հայաստանը իտէալական ուղղութիւն է զբօսաշրջիկներուն համար, որոնք հիասքանչ տեսարաններէ ու բազում ժամանցի վայրերէ բացի կը փնտռեն հիանալի մշակոյթ եւ բազմամեայ պատմութիւն», նշուած է հաղորդագրութեան մէջ:*

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ
### Ի ԳԻՏՈՒԹԻՒՆ ՀԱՄԱՅՆՔԻՍ ԲԱՐԵՊԱՇՏ ԶԱՒԱԿՆԵՐՈՒՆ

Դեկտեմբեր 31-ին, երեկոյեան ժամը 12:00-ին, Սուրբ Գրիգոր Լուսաւորիչ Առաջնորդանիստ եկեղեցւոյ մէջ պիտի կատարուի տարեմուտի միասնական աղօթք մեր երկրի եւ մեր ժողովուրդի խաղաղ եւ անվրդով կեանքին համար:

Կը հրաւիրենք մեր բարեպաշտ զաւակները ներկայ գտնուելու տարեմուտի այս աղօթքին:

Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Չորեքշաբթի, 1 Յունուար 2014-ին, Կաղանդի եւ Տարեմուտի առիթով,
Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մայր Տաճարին մէջ
պիտի մատուցուի Ս. Պատարագ:
Յաւարտ Սուրբ եւ Անմահ Պատարագի պիտի կատարուի
Հայրապետական մաղթանք

### ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ՀԱՅՐԱՊԵՏ Ն.Ս.Օ.Տ.Տ. ԳԱՐԵԳԻՆ Բ. ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

Կենաց եւ Արեւշատութեան
եւ
### ՄԱՅՐ ԱԹՈՌ Ս. ԷՋՄԻԱԾՆԻ ԱՆՍԱՍԱՆՈՒԹԵԱՆ
համար

Սկիզբ Ս. Պատարագի առաւօտեան ժամը 10.30-ին

Կը խնդրուի հաւատացեալ ժողովուրդը ներկայ ըլլալու եւ Նոր Տարւոյ սկիզբը իր ուխտը նորոգելու եւ աղօթելու համայն աշխարհի խաղաղութեան, Մայր Աթոռ Ս. Էջմիածնի անսասանութեան, մեր հայրենիքի խաղաղ պայմաններու մէջ բարգաւաճութեան եւ Հայ ժողովուրդի բարեկեցութեան համար:

Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Կիրակի, 5 Յունուար 2014-ին

### ՃՐԱԳԱԼՈՅՑ

**Ս. Ծննդեան Տեառն Մերոյ Յիսուսի Քրիստոսի:**

Կիրակի երեկոյեան, ճրագալոյցին պիտի կարդացուին Մարգարէական գիրքեր եւ Դանիէլ Մարգարէի Թուղթը:

Սկիզբ Երեկոյեան Ժամերգութեան ժամը 4.30-ին
Ընթերցում Մարգարէական գիրքերու ժամը 5.00-ին
Սկիզբ Ս. Պատարագի երեկոյեան ժամը 6.00-ին

Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Երկուշաբթի, 6 Յունուար 2014

### ՏՕՆ Է ԾՆՆԴԵԱՆ ԵՒ ԱՍՏՈՒԱԾԱՅԱՅՏՆՈՒԹԵԱՆ ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ

Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մայր Տաճարին մէջ պիտի մատուցուի հանդիսաւոր Ս. Պատարագ եւ ապա պիտի կատարուի Ջրօրհնէքի արարողութիւն:

Պիտի Պատարագէ

### ԳԵՐՇ. Տ. ԱՇՈՏ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՄՆԱՑԱԿԱՆԵԱՆ

ԲԱՐԵԽՆԱՄ ԱՌԱՋՆՈՐԴ ԵԳԻՊՏՈՍԻ ՀԱՅՈՑ ԹԵՄԻ

Յընթացս Ս. Պատարագի պիտի ընթերցուի Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Բ. Ամենայն Հայոց Կաթողիկոսի Ամանորի եւ Ս. Ծննդեան պատգամը:

Արարողութիւնները պիտի ձայնասփռուին առաւօտեան ժամը 10-էն սկսեալ եգիպտական ձայնասփիւռի եւրոպական բաժնէն:

Սկիզբ առաւօտեան Ժամերգութեան ժամը 8.30-ին
Սկիզբ Ս. Պատարագի առաւօտեան ժամը 10.00-ին

Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ